48րդ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ԴԱՒԹԵԱՆ-ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ

# ՃԱՇԱԿ
## ՆՈՐ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ

Ա. ՉԱՏՈՐ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Վ. ՄԻՆԱՍԵԱՆ
Սուլթան Համամ փողոց, Թիւ 33
1901

48րդ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ [illegible]ԹԵԱՆ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ

# ՃԱՇԱԿ

## ՆՈՐ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ



Ա. ՀԱՏՈՒ

معارف نظارت جلیله‌سنك فی ١٠ شباط سنه ١٣١٩ تاریخلو ٢٧٥
نمره‌لی رخصتنامه‌سیله وصمباط داودیان معرفتیله طبع اولنمشدر



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Վ. ՄԻՆԱՍԵԱՆ
Սուլթան Համամ փողոց, Թիւ 14
1904

# ՆՈՐ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ՝ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ՀԱՄԱՐ

Հաւաքածուները, ծաղկաքաղները, հատընտիրները մեր մէջ ամէնէն առատ ու ճոխ հրատարակութեանց տեսակներէն մէկը կը կազմեն։ Գրաբար՝ գրաբարի ուսուցման համար՝ եւ աշխարհաբար՝ աշխարհաբարի մշակման համար՝ գրական շատ մը հատորներու փունջեր հրապարակ նետուած են մինչեւ այսօր, զանազան աստիճաններու համար, զանազան հեղինակներու կողմէ։ Բայց ամէն քննող աչք դիտած է անշուշտ որ, այդ հաւաքածոյներու առատութեան մէջ, մանաւանդ անոնք որոնք բարձրագոյնները ըլլալու յաւակնութիւնը ունին, միակողմանիութեան ու սահմանափակութեան տարօրինակ դրոշմ մը ունին իրենց վրայ, կարծես ճակատագրականօրէն։ Մենք տարբեր բան մը կ'ենթադրենք մանաւանդ ուսումնաւարտներու կամ ուսումնաւարտ ըլլալիքներու յատկացուած հաւաքածոյ մը։ Անիկա պէտք է ընդգրկէ ամէն նիւթ, կարելի եղածին չափ յստակ կերպով մը, գրական ու գեղեցիկ արտայայտութիւններու ձեւին տակ տեսակ մը վերաքաղը ըլլալու համար, իր մտքին մէջ, զանազան դասաւանդութեանց միջոցին խըռնուած, դիզուած, ամբարուած ծանօթութիւններուն։ Այս ըմբռնումով է որ ներկայ հաւաքածոյին տուինք նոր թօն մը, անանկ փունջ մը շինեցինք զայն, որ ծաղիկներու ամէնէն ճանչցուածները եւ ամէնէն հոտեղ ու հիւթեղները չէ որ միացուցինք միայն, այլ ամէն տեսակ ծաղիկներուն նմոյշները հաւասարապէս, ամէնուն ալ թարմերը ըլլալու պայմանաւ։ Զատուած կտորներու ընտրութեան միջոցին չնայեցանք միայն անունին, չնայեցանք ստորագրութեան համբաւին ինչ աստիճանի ըլլալուն. երբ նիւթը նոր, գրուածքը գեղեցիկ ու գաղափարը օգտակար եւ ուժեղ ըլլալու առաջին կենսական յատկութիւնները ունէին։ Այսպէսով ունեցանք հատուածներ՝ որոնց հեղինակները մեզի իսկ անծանօթ են։

Յետոյ մեր ընտրութեան մէջ, ինչպէս պիտի տեսնեն անոնք որ ուշով քննեն գործս, լայն տեղ մը տալ ուզեցինք ուղղակի հայերէն արտադրուած կտորներու, քան թարգմանութիւններու։

Այս հատորը եւ ասոր երկրորդը որ անմիջապէս պիտի յաջորդէ անոր, պարզ դասագիրքեր ըլլալու կոչուած չեն. անոնք փոխանցութեան կամուրջներ պիտի ըլլան, զարգացման եւ ուսումի

ճամբուն մէջ, դպրոցականէն դէպ ի իրականը, տղայականէն դէպ ի կատարեալը, ամբողջական ու ամփոփ շտեմարաններ պիտի ըլլան անոնք, մանրանկար ամփոփոյթը՝ ամենէն կուռ ծանօթութիւններուն։ Ու չվերաբերելով ոչ աշակերտ տղոց, ոչ դպրոցէն դուրս ապրող չափահասներու, երկուքն ալ կրնան կարդալ հաւասարապէս. գրողն ի՛նք պիտի սիրէ զայն կարդալ։

Ընդհանուր նիւթերը, ինչպէս պիտի տեսնուի, բաժնած ենք զանազան դասակարգերու, եւ անիկա՝ առանց նախասահմանուած որոշ դրութեան մը հետեւելու. եթէ դրութենական մանրամասն ու կանոնաւոր դասաւորում մը ընել հարկ ըլլար, բաժանումները շա՛տ կ՚անցնէին անշուշտ տասներեքը, գործը խճողուն կ՚ըլլար եւ հետեւաբար նաեւ՝ անյարմար։

Նկարագրութիւն, Ընկերային Նիւթեր, Իմաստասիրութիւն, Բանաստեղծութիւն, Կենսագրութիւն, Կրօնական Նիւթեր, Ազգագրութիւն, եւայլն, եւայլն։

Կը կարծենք թէ անոնք՝ կարեւոր ճիւղերը կը կազմեն ընդհանուր զարգացումի մարմինին. անոնց նկատմամբ մաքուր գաղափարներ կազմելով՝ բազմակողմանի հմտութեան հարցին մէջ քայլ մը առած կ՚ըլլայ մարդ։ Մանաւանդ այդ զանազան ճիւղերու մասին համառօտ ուսումնասիրութիւններ դրինք իւրաքանչիւր համախմբումի գլուխը, ու ատոնցմով մտադրուեցանք ո՛չ միայն, զոր օրինակ, կարելի եղածին չափ որոշ գաղափար մը տալ իմաստասիրութեան ինչ ըլլալու մասին, աշխարհի մէջ անոր խաղացած դերին ու անոր տիեզերական հերոսներուն, անոր ստեղծիչներու մասին, այլ եւ ճանչցնել թէ ի՛նչ վիճակ ունեցած է եւ ունի այդ գիտութիւնը մեր մէջ։ Օրինակներ տուինք. բայց չուզեցինք անուններու չափազանց երկար տողանցումով մը ծանրաբեռնել. ամենէն գլխաւորները յիշեցինք, ու այդքանն ալ՝ խնդրին դրական երեւոյթը չզլանալու համար։

Այս գործը իր վիճակին մէջ նոր է հետեւաբար՝ ամէն տեսակէտներով, ու մենք ա՛տ կ՚ուզենք միայն. նորը կը դաւանինք միշտ լաւագոյնը ամէն բանի մէջ, գրականութեան մէջ ալ հետեւաբար. Նորը ու կեանքոտը ուզեցինք դնել այս գիրքին մէջ։

Որքան որ յաջողեցանք, ան է զոհացումը եւ փառքը ամէնէն առաջ հոս ստորագրութիւն ունեցող միտքերուն եւ յետոյ մեր։

Կ. Պոլիս, Օգոստոս 1904

# Ա. — ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ

Ազգագրութիւնը (éthnographie) ժողովուրդներու կեանքին բարոյական, հոգեկան եւ ֆիզիքական երեւոյթներուն գիտութիւնն է, որ շատ կարեւոր ու հետաքրքրական կողմեր ունի:

Ազգագիրը կը քննէ ժողովուրդին մարդաբանական հանգամանքը, մարմինին կազմութիւնը, շարժուածքը, անոր բնակարանը եւ պարագաները, զգեստը եւ զարդերը, կերակուրներն ու խմելիքները, կենցաղավարութիւնը եւ զբաղումները, ընտանեկան բարքն ու սովորութիւնները, հաւատալիքներն ու աւելապաշտութիւնները, լեզուն, գիրը, արուեստը, անգիր դպրութիւնը, *հէքեաթ*ներն ու անէծքները, եւայլն: Այս ծրագիրով, լեզուաբանութիւն, տեղագրութիւն, ցեղագրութիւն, ռամկագիտութիւն, վարք ու բարքի՝ պարելակերպի ուսումնասիրութիւն, տեղագրական համբորդութիւններ՝ ամէնքն ալ մաս կը կազմեն ընդհանուր ազգագրութեան:

Հաւաքուած մանրամասն տեղեկութիւններուն վրայ հիմնուելով՝ կը կառուցուի շէնքը ցեղի մը ամբողջ ազգագրութեան որ անոր կեանքին, մարդկային ընկերութեան մէջ անոր ունեցած դիրքին ճշգրիտ պատկերը կ'ըլլայ:

Ազգագրութիւնը ինքնին շատ հին գիտութիւն մը չըլլալով հանդերձ, բաւական կանոնաւոր վիճակի մը մէջ մտնել սկսած է՝ վերջին 19րդ դարու երկրորդ կէսին մէջ:

# ՃԱՇԱԿ

# ՆՈՐ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ



## 1. ԼԵԶՈՒԱՔՆՆԱԿԱՆ

*Լեզուները ստեղծողը կամաւոր արուեստը չէ ։ Երբ վօլաբիւքը յաջողի, տուաջին բացառութիւնը պիտի կազմէ ։*

*Լեզուները կ'սկսին հասարակ խօսակցութեամբ, եւ այդ վիճակին մէջ «աշխարհաբար» են, այսինքն է «խօսից բարբառ». մտադրութեամբ եւ մանաւանդ գրութեամբ կը մշակուին եւ կ'ըլլան «գրաբար» այսինքն է «գրոց բարբառ» ։ Այդ եղելութեանց գործիչը քաղաքակրթութիւնն է ։ Լեզուները երկու տարբեր ուղղութեանց հետեւելով կ'սկսին երկճղիլ ։ Երբ մէկ կողմէն «խօսից բարբառ»ը կը փոփոխուի կենցաղական պատճառներով, զորօրինակ դրացութեամբ, դաղթականութեամբ, եւայլն, միւս կողմանէ «գրոց բարբառ»ն ալ կը փոփոխուի կամաւորական պատճառներով, զորօրինակ գիտութեամբ, գրականութեամբ, եւայլն ։ Ո'րչափ զօրաւոր են այդ առթական պատճառները, ա'յնչափ լեզուի մը երկու ճիւղերը տարամէտ ուղղութեամբ կ'ընթանան, եւ «խօսից բարբառ»ը «գրոց բարբառ»էն կը տարբերի ։*

*Նոր ժամանակներու սովորութիւն է «խօսից բարբառ»էն հատուածներ նոյնութեամբ գրի առ-*

նելով պահել առանձին՝ իբր թանգարանական կամ հետաքրքրական նիւթեր։ Իսկ «գրոց բարբառ»ները գրական կեանք ունենալնուն համար, նոյնութեամբ կ'ապրին դարէ դար, մինչդեռ «խօսից բարբառ»ները շարունակ այլայլութեամբ անզգալաբար կը փոփոխուին։

Հիներուն յաջորդող նոր «խօսից բարբառ»ները իբրեւ նոր լեզու եւ նոր գրականութիւն՝ կարեւորութիւն կ'առնան, եւ այսպէս՝ անոնց համապատասխանող «գրոց բարբառ»ներ կը կազմուին։

Աշխարհի գլխաւոր եւ ծաղկեալ լեզուները այդ ընթացքը ունեցան, հայերէնն ալ այդ ընթացքէն դուրս չի կրնար ըլլալ։

Գրաբար մը հասած է մեզի, որ ստոյգ տասնեւհինգ դարերու հնութիւն կը կրէ, աւելին ալ անհաւանական չէ։ Այդ գրաբարը կամաւորապէս ստեղծագործուած լեզու մը չէ, այլ նոյն ժամանակի «խօսից բարբառ»ին տարամէտ ճիւղն է։ Այսօր ալ հայերէնը «խօսից բարբառ»ներ ունի մէկէ աւելի, որոնք ընդհանրապէս մեր աշխարհաբարը կը կազմեն, եւ միեւնոյն ատեն այդ աշխարհաբարին հետ տարամէտ ուղղութեամբ «գրոց բարբառ» մըն ալ կայ, զոր կը գործածենք գրոց մէջ, այլ ոչ ոք կը խօսի զայն, բայց եթէ երբեմն գրական անձ մը՝ ատենաբանութեան բեմին վրայ։

Որչա՞փ էր «խօսից բարբառ»ին «գրոց բարբառ»էն տարամիտութիւնը հինգերորդ դարու սկիզբը, եւ ո՞րչափ է հիմա՝ քսաներորդ դարու սկիզբը։

Հիմակուանը փորձառութեամբ կրնանք չափել, իսկ հինգերորդ դարուն վերաբերեալ խնդրին լու-

ծումը մակաբերական զննութեանց կը մնայ, քանի որ գիրի առնուած հաստատուն նմոյշ մը չունինք ձեռուընիս, եւ կարծիքները կրնան տարբերիլ։

Միայն թէ նկատի առնելու է որ հիմա ալ «զ» նախդիրը, նախադրութեանց առաջ դրուիլը, «որ» յարաբերականը, հոլովմանց տարբերութիւնը եւայլն, որոնք հին գրաբարին յատկանիշները կը սեպուին, տակաւին կենդանի կը մնան «խօսից բարբառ»ներուն մէջ, մանաւանդ հայ լեզուին բնավայր եղող գաւառներու մէջ։

Իսկ թէ ո՞ր գաւառին «խօսից բարբառ»ը մեզ հասած «գրոց բարբառ»ին հիմ կազմեց, ճշգրիտ տեղեկութիւնները թերի են. միայն թէ կը դիտենք որ հին գրաբարի պետերուն մեծամասնութիւնը Տուրուբերանցի էր, թէ գործածութեան ասպարէզը Արարատցին տուաւ, եւ թէ երկու բարբառներու միջինն ու զօդիչն է Վասպուրականցին։ Իրա՛ւ ալ այդ երեք նահանգներուն այժմեան «խօսից բարբառ»ներուն մէջ կը գտնուին հին գրաբարի յատկանիշները՝ երբեմն ամբողջութեամբ՝ երբեմն մերձաւորութեամբ։

ՄԱՂԱՔԻԱ ԵՊՍ. ՕՐՄԱՆԵԱՆ



# Զ. ԻՒԹԼԻՊԷՌԿ ԼԵՌԱՆ ՎՐԱՅ



*Հռչակաւոր լեռ մը չէ, սակայն գեղեցիկ է. ահեղ ահարկու բաներ չունի, բայց ինչ որ ունի քաղցր է եւ սիրուն։ Ցիւրիխի մօտ է, Հիւսիսա-յին-Արեւմտեան կողմը, կէս ժամ հեռաւորու-թեամբ՝ երկաթուղիով,*

*Մօն Պլանի քով գաճաճ մըն է անշուշտ, բայց իր համեմատութեանը մէջ՝ ատ ալ բան մը։ Մօն Պլան ալեհեր ծերունի մըն է՝ պռստուն, խոժոռ, մեծաշուք ու քիչ մը դաժան։ Իւթլիպէռկ՝ գրգա-նոյշ մանկուհի մըն է՝ ժպտուն, անմեղ, նազելի ու միշտ ծիծաղկոտ։*

*Տակաւին կենդանի է մտքիս մէջ յիշատակը այն ժամերուն զորս անցուցի Իւթլիպէռկի գագաթը միս մինակ, հեշտօրօր երազներու եւ հոգեպարար յոյզերու, յուշերու հետ առանձին։*

*Աղմուկէն կը դառնայի. ուսանողի յոգնաչար-չար կեանքի մը բոլորումէն յետոյ՝ հանդարտու-թիւն կը փնտռէի։ Ետիս ձգած էի Բարիզի շռինդն ու ժխորը, խճողեալ միջավայրի յարակից ամէն տաղտուկ եւ իրարանցում, ու Զուիցերիոյ գեղա-զուարճ դաշտին մէջ շրջան մը ընելով՝ Ցիւրիխ ե-կած էի, խաղաղ լճին վրայ կարճ հանգիստի մը խաղաղ իրականութիւնը վայելելու։*

*Չկային հոն այլ եւս ո՛չ ժամերու բաժանում, ո՛չ հասնելու անձկութիւն, ո՛չ հոգ ու պայքար.*

բոլոր ժամերս իմս էին՝ բան մը չընելու միայն յատկացուած։

Իրիկունները, երբ նաւակին մէջ ընկողմանած՝ խոկերու, մտածումներու հեշտանքին անձնատուր՝ ջուրերու վրայ կը դեգերէի աննպատակ, կ՚զգայի թէ կը հանգչէի, կ՚զգայի թէ կեանքը կը վայելէի։ Լռութիւն, ամայութի՛ւն բաւական էին պարփակելու հոգիիս բոլոր ըղձանքը. Ջուր, երկինք, դաշտ ու ծառ՝ բաւական էին լեցնելու սիրտս։

Իւթլիպէռկի վերելքը չկար իմ ծրագրիս մէջ. Իրիկուն մը պանդոկին մէջ, օրիորդ մը ներշնչեց ինծի այդ գաղափարը։ Դէմքը դժգոյն էր ատ օրիորդին, աչքերը խրազուն, կապոյտ։ Հիւանդ տառապող հոգի մը կար իր տխուր նայուածքին մէջ՝ որ յարգանք կ՚ազդէր, եւ խօսքերուն կ՚ընծայէր լուրջ ու համոզիչ չեշտ մը։

Հետեւեալ առաւօտ կանուխ ճամբայ ելայ ուրեմն։ Պիտի կարծէք թերեւս թէ խոշոր երկաթածայր քիրեր, լեռնային կազմածներ, եւայլն, պիտի գան ի հանդէս, վերելքի մը սովորական անխուսափելի առաջնորդով, կարաւանով, եւ որ ի կարգին, Չէ՛, չէ՛, ատանկ բաներ չկան։

Օթէլին դրան առջեւէն կառք մը կը նստիմ պարզապէս, քաղքենիի հագուստով. քառորդ ժամ վերջը կայարան էի. հոն պատրաստ է կառախումբը՝ վակոններու քիչ մը տարօրինակ կազմութեամբ, եւ ետեւէն առջեւէն վայրաշարժ մեքենաներով։ Տոմսակ մը կ՚առնէք 4 1/2 ֆրանքի, կը տեղաւորուիք թիկնաթոռին վրայ, ու վերելքը կ՚սկսի։

Նախ ուղղաձիգ գնացք մը՝ անզգալաբար զառիվեր, յետոյ դարձդարձիկ խարխափումներ, ուղղութիւնը միշտ դէպ ի վեր. այնուհետեւ անտառին մէջն էք այլ եւս, լերան քղանցքէն բռնած։

Կոնաձեւ անհագին զանգուած մըն է որ՝ գաղտնիքներով լեցուն՝ կը բարձրանայ ձեր գլխուն վրայ. երկաթուղին գրկած է այդ զանգուածը, եւ օձապտոյտ գալարումներով կը դառնայ, կը սողոսկի անոր շուրջը, կը մխրճի անոր մէջ։ Իր գծած շրջանակները հետզհետէ կը նեղնան, խարիսխը հետզհետէ կը հեռանայ ու դուք կը բարձրանաք շարունակ։

Միշտ անտառին մէջ, միշտ ծառերու տակ կանաչ, հովանոտ եւ զով, կը դառնաք ու կը բարձրանաք, հինաւուրց մայրիները, եղեւնիները նախ իրենց բունը կը ցուցնեն ձեզի մութին մէջ, շուքին մէջ. յետոյ, քիչ յետոյ, իրենց հպարտ գլուխը կուգան խոնարհեցնել ձեր ոտքերուն տակ, պայծառ օդին մէջ, արեւուն հանդէպ։

Վակոնին բաց պատուհաններէն կը նշմարէք երբեմն միմիայն ոստեր ու տերեւներ որոնք ամէն բան կը գոցեն. երբեմն այդ ոստերուն եւ տերեւներուն մէջէն կապոյտի կտոր մը որ իր վաղվաղուկ հեշտանքը պարգեւելով կ'անցնի. շատ քիչ անգամ ալ լայն անջրպետ մը որ յանկարծ կը բացուի եւ ընդոստ զուարթութեամբ մը կ'ողողէ ձեր սիրտը, ի հանդէս բերելով անհունութիւնը ազատ ու անկաշկանդ, երկինքին անհունութիւնը, ջուրին ու գեղածիծաղ դաշտերուն անհունութիւնը։ Կը տեսնէք հեռուէն մերթ քաղաքը

ամբողջ տարածուած քարտէսի մը պէս, մերթ լիճը անհոգ ու միապաղաղ որուն մէջ ձեր նայուածքը կ'երթայ կը սուզի անձկանօք։

Կը սուզիք դուք ալ ձեր էութեամբը՝ երազներուն մէջ, հեշտանքի ծփանքներուն յանձնուած, ու կը մոռնաք ինքզինքնիդ մինչեւ որ սուլիչին սուր ճիչը կուգայ սթափեցնել ձեզ։ Հասա՞ծ էք։

Բայց ո՛չ գագաթը, երկաթուղին կանգ կ'առնէ, անկէ անդին պէտք է գրեթէ մագլցիլ մինչեւ Իւթօքուլմ, որ է լերան կատարը։

Հոն, այն հսկայ բարձրութեան վրայ, առանձին կը կանգնի թեւատարած չէնք մը, որ հեռուէն՝ աղօթքի կեցած ճգնաւորի մը տպաւորութիւնը կ'ընէ ձեր վրայ։ Պեղակերտ Վիլլա մըն է այդ չէնքը, չահագէտ ձեռնարկուի մը կողմէ հաստատուած իբր պանդոկ։

Գաւազանին վրայ սաղարթախիտ ծառերուն տակ կը տեղաւորուիք, առջեւնիդ ունենալով ընդնակնաբար զուլացուցիչ գաւաթ մը, ու անկէ վերջը՝ ընելիքնիդ ուրիշ բան չէ, բայց միայն դիտել, դիտել դէպ ի աջ, դիտել դէպ ի ձախ, դիտել դէպ ի առաջ, դիտել դէպ ի ետեւ, դիտել ու սքանչանալ։

Երկիւղածութեան սուրբ զգայումով մը կը համակուի մարդ այս տեսարանին առջեւ ու մտածելէ դադրած՝ «ա՜հ» մը կը թռի կուրծքէն, պաշտումի այլայլութեանը մէջ, կը յափշտակուի, ու կը վերանայ ու երանութիւնը կարծես կը շօշափէ, կը զգայ, կը շնչէ զայն անյագ. կ'ըմբոշխնէ այդ երանութիւնը սիրատոչոր ու կարօտակէզ։

Փաչտելու կարօտը բնութեան մէջ իր լիառատ յագուրդը առած՝ կը մեկուսանայ, կ'ամփոփուի սիրոյ այն սրբութեանը մէջ ուր չկան կեղծիք, չկան նենգութիւն ու դառնութիւն, սիրելու պէտքը կը յագենայ անվրդով, առանց պայմանքի, առանց հիասթափութեան։ Սիրտը գտած է իր անունդը՝ բնութեան ծոցին մէջ. զուտ անապակ բնութեան սնունդներու ամենէն անխարդախը, ամենէն անպատիրը, մաքուր անարատ բնութիւնը։

Գո՞հ էք, երջանի՞կ էք։

Եւ այդ հեշտունակ բերկրութեան մէջ ոտքի կ'ելլէք կայտառ ու կենսալից. պէտք ունիք պտտցնելու ձեր երջանկութիւնը։

Անձուկ սարահարթ մըն է Իւթլիպէուկի գագաթը. Իւթօզօլմ սարահարթին մէկ մասին վրայ շինուած է պանդոկը. Անցեալը քի՞չ չատ պարտէզի մը ձեւով փոքրիկ ճեմելավայր մըն է, ուր տեղ տեղ, դալարադալար տաղաւարներ կան ծառերով ծաղիկներով գոցուած, այնքան սիրուն եւ հրապուրիչ, որ առջեւէն անցած ատեննիդ ներս կը քաշեն զձեզ։

Հոն, այն տաղաւարներէն մէկուն տակ թաւ խոտին վրայ սեղան մը դնել կուտաք, ու կ'ունենաք փառաւոր ճաշարան մը, որուն չքեղութեանը բնաւ չի հաւասարիր ներսինը, պանդոկին մէջինը, իր բոլոր ճոխութիւններովը ու զարդարանքներովը։

Կերակուրները անսատգլուտ են, թապլըտ'օթ՝ 5 ֆր։ Զնայելով այն հեռաւորութեան եւ առանձնութեան, ամէն բան թարմ ու մաքուր, զուտ ֆրան-

սակայն խոհանոցի արտադրութիւն. գինին պատուական, ախորժակը անշուշտ սրուած, առողջ մարդու ախորժակ. բան մը չի պակսիր՝ ընելու համար մէկը այն հաճելի ճաշերէն որոնց յիշատակը կը պահէ մարդ. մանաւանդ, աղանդերէն ետքը, սուրճի քանի մը ումպէն ալ վերջը՝ վառուած սիկառին հեշտութի՛ւնը, հո՛ն այն դիրքին մէջ, հոգեկան այն արբշիռ տրամադրութեան մէջ, սովորական հոտաւէտ մուխերը որ կ՚արձակուին, կը ներշնչուին ու կ՚արտաշնչուին, տարբեր զգլխում մը կը պարգեւեն հոն. տարբեր վայելք մը, ծխելու այն հազուագիւտ վայելքներէն, որոնք ամենէն հաստատակամ ծխաթողներուն ալ կսկիծ ու փորձութիւն պիտի պատճառէին։

Կերակուրներէն յետոյ, եթէ սիեսթի սովորութիւն ունիք, քաղցր է տարածուիլ այն թաւ խոտերուն վրայ, ու՛ ծառերուն մէջէն մաղուելով հասնող մեղմ հովին անուշ գգուանքներուն տակ մրափել։ Անկէ վերջը, ժամանակ է գահավէժները տեսնելու եւ անոնց մէջ իջնելու։

Սարահարթին եզերքը կ՚երթաք, անդունդը բացուած է ոտքերնուդ տակ, մութ՝ խաւարչտին անդունդ մը, որուն վրայ խիտ առ խիտ կը բարձրանան դարաւոր ծառեր, գոցելով, հովանաւորելով ամէն տեղ. հողէ սանդուխներ կան փորուած, որոնք կը տանին զձեզ մինչեւ յատակը, տեղ տեղ մէկ ծառի կոճղէն դէպ ի միւսը երկընցուած առկախ կամուրջներ, որոնք կ՚առաջնորդեն ձեզ ամէն ուղղութեան՝ գահավիժուելու վտանգին. սարսուռը քալեցնելով ձեր ոսկորներուն

*մէջէն։ Երբ յատակը հասնիք, պուրակներ կան հոն, անձաւներ, ժայռեր, մութ ու նեղ անցքեր, որոնցմէ անցած ատեննիդ շուրջերնիդ կը նայիք սրտատրոփ, ու կը լարէք ականջնիդ. ծառերու սովորական խժլտուքը, հողի կտորի մը թաւալումը, որուն ուրկէ գալը չէք կրնար տեսնել, կամ միջատի մը պարզ ճռլտուքը որուն ուր ըլլալը չէք կրնար նշմարել՝ սոսկումի պէս բան մը կը պատճառեն ձեզի այդ՝ ամէն կողմէ գոց ու մռայլ անդունդին մէջ, ուր մինակ էք։ Կը շտապէք վեր ելլել սարահարթին վրայ ուր արեւ կայ, ուր հորիզոն կայ ազատ ու պայծառ։*

*Ցորեկ մը անցընելու համար միայն գացեր էի Իւթլիպէռկ. գիշերն ալ հոն մնացի։*

*Պիտի չմոռնամ այն գիշերը, Օգոստոսի տաք գիշեր մը, խնկալից, բուրումնաւէտ, աստեղազարդ երկինքին տակ, առանց լուսնի, հեռուէն՝ պսպղուն, դողդոջուն ճրագներու ուրուագծած համայնապատկերին առջեւ՝ լուռ, անշշուկ, գիշերային համայնապատկեր մը խորհրդաւոր ու մեծափառ....։*

*Չէ՛, չէ՛, ատիկա չի նկարագրուիր, կ'զգացուի՛ միայն։*

*Հետեւեալ առաւօտ՝ գրեթէ չուզելով կը մեկնէի Իւթլիպէռկէն, կը վերադառնայի քաղաք, եւ կէս օրուան կառախումբով կ'ուղղուէի դէպ ի Վիէննա։*

ՅԱԿՈԲ ՍԹԱՄՊՈՒԼԵԱՆ

# 3. ԱԼՊԵԱՆՆԵՐՈՒՆ ՄԷՋ

## Ա.

*Վայրկեաններ կան որ միշտ ներկայ կը մնան, որոնցմով մարդ կը սիրէ ապրիլ երկար ատեն։ Տեսարաններ կան որ ժամանակ մը պարզուած կը մնան նախապէս անոնցմով հմայուած աչքերուն առջեւ։ Ալպեան շղթաներուն մէջ ըրած ճամբորդութիւնս ու Մօն Պլանի այցս մատակարարեցին ինծի այդ հաճոյալի վայրկեանները եւ տեսարանները։ Հիմա որ ինքզինքս քաղաքի մը ժխորին ու տափակութեանը մէջ կ՚զգամ, թանձր ու ճնշող մթնոլորտի մը մէջ, երազէ արթնցողի մը պէս կը սիրեմ ապրիլ այդ երէկի քաղցր անցեալովս, որ ներկայի մը ուժգնութիւնը կուտայ զգացումներուս։ Ամենայն սիրով պիտի կրկնէի ճամբորդութիւնս, եթէ սիրելի ընթերցողը հաճէր ընկերանալ ինծի, վայելելու համար բնութեան այդ սքանչելիքները։ Իրաւ է որ մեր մէջ տակաւին լեռան անզուսպ սէրը ծնած չէ, ու շատ անգամ կը խրտչանք, այդ զգացումէն մղուած՝ իրենց կեանքը երբեմն վտանգի տակ դնողներուն վրայ. ինչ փոյթ, բաւական է ունենալ քիչ մը բարի կամեցողութիւն ու լեռի, ձիւնի, սառոյցի սէրը անխուսափելի՝ կերպով պիտի գրաւէ սիրտդ։ Լեռնագնացութիւնը ունի իր անթիւ բարիքներն իր*

վտանգներուն հետ, ու բնութիւնը գիտէ իր գործը կատարել, դիւթել ու տիրապետել։

Պատրաստութիւններու մէջ, ամենէն կարեւորն է ունենալ սրածայր գամերով շինուած ամուր կօշիկներ, եւ հաստատ ու երկար գաւազան մը, սուր երկաթով վերջացած։ Գիտե՞ս թէ ո՛րքան կեանքեր կը պարտին իրենց շարունակութիւնը այդ գամերուն ու ցուպին։ Կը վստահացնեմ քեզ որ բնաւ վտանգը պիտի չփնտռենք ու համեմատաբար աւելի դիւրին լեռները պիտի ընտրենք, սակայն կանխազգուշութիւնը միշտ հարկաւոր է, այդ կրանիդէ ժայռերուն վրայ վտանգը փնտռելու պէտք չկայ։

Ճամբա՛յ ելլենք ուրեմն։ Շոգենա՛ւը ընտրենք, եթէ կ՚ուզես, որով արեւմտեան Եւրոպայի ամէնէն մեծ լիճը, դեղեցիկ ու կապոյտ Լեմանը, մօտէն տեսած կ՚ըլլաս։ Շոգենաւը արդէն նազանքով կը հեռանայ Ժընէվի ճոխ քարափներէն. լճին ընդարձակութեանը վրայ ենք։ Տեսարանը հիանալի է, վերը՝ ամառուան բաց կապոյտով անամպ երկինք մը, առաւօտեան խիստ թեթեւ ու բարակ մշուշով մը սքօղուած, վարը՝ ջուրին մութ կապոյտ մը, անամպ ան ալ, որ միայն շոգենաւին հետքի ծիր կաթինովը կը գծուի, ու եզերքներուն մօտ տատանող ճերմակ կարապներու թեւերուն ցոլքերովը կը փայլի։ Երկու գեղեցիկ երկինք, երկու գեղեցիկ նկարներ, որոնք տարբեր չարքի վրայ բարձրացած գեղածիծաղ լեռներու ու բլուրներու կանաչազարդ քանդակովը կը շրջանակուին։ Լճեզերքը, սարաւանդին վրայ, ամէն կողմ, բարե-

կեցիկ փոքրիկ քաղաքներ, ուժեղ բուսաբերութեամբ մը շրջապատուած։ Տեսարանը գրեթէ միշտ նոյն խոշոր գիծերը կը պահէ եւ սակայն ինչ զանազանութիւն, մանրամասնութիւններու մէջ։ Նաւէն իւրաքանչիւր հեւքին՝ հորիզոնը կ'ընդլայնի, ու ափերը կը գրաւեն միշտ ուշադրութիւնդ։ Փոքր լիճն անցանք, մեծին վրայ ենք. ծովի մը անհունութիւնը կարելի չէ զգալ, հեռուն լեռները կ'ուրուագծեն, սակայն շնորհալի եզերքներու վրայ մարող մահկաձեւ կապոյտ տարածութեան եւ ծիծաղկոտ վառ կանաչ սարաւանդներու տեսքը մասնաւոր անուշութիւն մը ունի, պարզապէս հմայիչ է եւ ուրախ։ Արդէն բաւական ամարանոցներ, գիւղեր անցանք, նպատակ չունիմ այդ ամէնը մանրամասնելու, պիտի բաւականանամ հանդիպիլ, մեր շոգենաւին հետ, քանի մը գլխաւոր նաւահանգիստները։ Զուիցերական եզերքին վրայ ահա կը տեսնենք Գօփէն, որուն դղեակը Նեքիրի, Մատամ տը Սդալի եւ ուրիշ նշանաւոր խորհողներու բնակութիւնը եղած է եւ հիմա ուխտատեղի մը։ Առաջին անգամ ըլլալով Նիոն կը հանդիպինք, նոյն եզերքին վրայ։ Սա ծառերով պարիսպ բարձրաւանդակին վրայ Վոլթէռ, ամբողջ տարի մը, Լեմանի գեղեցկութեան վրայ զմայլած է։ Դէմը, ձախ եզերքին վրայ, մեծ մասամբ ֆրանսական, կը հանդիպինք միայն Դոնօն եւ Էվիան, նշանաւոր իրենց հանքային ջերմուկներովը, ուր ընդհանրապէս Բարիզցիները առողջութիւն կը փնտռեն, երբեմն ալ կուգան լուալ իրենց յանցանքներն ու մեղքերը, Մէրսիէի պէս։

Ֆրանսական եզերքը շատ աւելի հուժկու բուսականութիւն մը ունի, ոչ մէկ տեղ ընկուզենին ու շագանակենին այնքան բարձր ու տերեւաշատ աճած են որքան հոս։ Մինչդեռ Զուիցերիական եզերքներն աւելի շնորհագեղ, աւելի ծիծաղկոտ, աւելի նուրբ նկարագիր մ'ունին։ Նաւը կրկին դէպ ի աջ կը զարնէ, այն կողմը մնալու համար մինչեւ խորը։ Ահաւասիկ Ուշին, Լօզանի նաւահանգիստը, Վէվէն, իր գեղեցիկ քարափներովը, իր շոքոլայի գործարաններովը, Մոդուէօն, Զուիցերիոյ այս Նիսը՝ իր մեղմ կլիմայովն ու լճին խորը ունեցած գեղեցիկ դիրքովը։ Բարձրաբերձ լեռներու խոշոր ամփիթատրոն մը լճին այս մասը կը շրջափակէ։ Թէրիթէէն երկաթուղի մը արագօրէն կը մագլցի լեռն ի վեր մինչեւ Ռօշէ տը Նէյ, ուրկէ հիանալի ու ընդարձակ տեսարան մը կը վայելէ մարդ Ալպերու եւ Ժիւռայի վրայ։ Նոյն իսկ վարը, լճին վրայէն, տեսարանը գեղեցիկ է, ճիշտ դէմը կը գտնուի Ռօնի տղմուտ բերանը, որ լճին յատուկ ջուրերուն մէջ կը բացուի, հեռուն Տան տիւ Միտին, շողշողուն՝ արեւուն ճառագայթներուն տակ։ Ահաւասիկ Շիյյօնի նշանաւոր դղեակը։ Դղեակին դիրքը շատ սիրուն է, անոր հնօրեայ վեհ պարիսպները կը հանգչին, կը ծածանին պիտի ըսէիր, վճիտ բիւրեղին վրայ։ Քիչ մը անդին ահա Վալէի Ռօնը որ իր տղմուտ հոսանքը կը թափէ Լէմանի յստակութեան մէջ։ Բարեբախտաբար, գոնէ հոս, տիղմին շրջանը սահմանափակ է ու յիսուն մէթր ընդարձակութեամբ, տղմուտ Ռօնը կը հալի, կը լուծուի կը մաքրուի, կը կապուտնայ,

*վարը Ժընեվի վճիտ Ռօնը կազմելու համար։ Ու վերջապէս յետին նաւահանգիստը Գուվռէ ենք արդէն ու Վալէի մէջ։ Լեռներու ու հովիտներու շարքը սկսած է, բայց չյապաղենք, շոգեկառք պէտք է նստիլ ու կէս ժամու չափ եւս՝ տափակութիւններէն պիտի ազատինք։ Ռօնի հովիտը, որ Վալէի ամէնէն լայնն է, հազիւ տեղ տեղ քիլոմէթրի մը կը հասնի, Ռօնէն երկու մասի բաժնուած։ Շոգեկառքը կը սուրայ, կը հիանաս արդէն երկու եզերքին վրայ խրոխտօրէն բարձրացող ապառաժներուն վրայ, որոնք կարծես վրադ պիտի գլտորին։ Տե՛ս սա սիրուն Ջրվէժը, Փիսվալ, որ բարձրէն կը թափի ուղղաձիգ, բոլորովին փոշիացած՝ ճերմակ ու վերէն վար ծիածանի ժանեակներով փաթթուած։*

Բ.

*Ու վերջապէս Ցէնհօ, հազար երկու հարիւր մէթր բարձրութեամբ փոքրիկ գիւղ մը՝ սարաւանդին վրայ բարձրացած։ Տասնէ աւելի խոշոր պանդոկներ Ալպերու հիացողները կը հիւրընկալեն։ Տեղը գեղեցիկ է, դէմդ, ետեւի շարքին վրայ, կը բարձրանայ Դուրանի ձիւնապատ լեռը, որուն կողերուն վրայ, եռանկիւնի սրածայր գլխով Դէդ Նուառը, Առքիլն ու ուրիշներ։ Աջ կողմդ, հեռուն, կը բարձրանայ Էկիւիյլ Ռուժի հսկայ զանգուածը, բազմաթիւ ցցուածքներով, որ Մօն Գլանի զուգահեռական, կը կազմէ Շամոնիի հովիտը. Լերկ ու կարմիր ժայռերէ ահագին խցան մըն է ան, որ*

ձորն ու տափաստանը կը փակէ, երկուքի բաժնելով զանոնք։ Քիչ անդին, հսկայ ապառաժէ ուղտ մը երկու կուտկէնով, վտանգաւոր լեռներ երկուքն ալ. խոտը անգամ չէ համարձակած անոնց վրայ մինչեւ վեր բարձրանալ։ Քիչեր միայն կրցած են ելլել հոն։ Պէլ Ուազօի սիրուն գլուխը, որուն կողքին վրայ ենք, կը տիրէ մեր վրայ։ Վարը միշտ միեւնոյն անտեսանելի հեղեղը կը փրփրայ։ Գարնանային վառ կանաչ մը կը ծածկէ ամէն կողմ, անտառը մինչեւ 2000 ու աւելի մէթր կը բարձրանայ, կուենին, իր բարակ կոճղովը, եղեւինին կը յաջորդէ։ Ի՞նչ փոյթ թէ վարը, քաղաքներու մէջ, անտանելի տաք մը կը տիրէ, թէ շատեր կը հիւանդանան. հոս օդը զով է մսելու չափ, սառնարանը, ամէն կողմէ անթիւ ջրվէժներով գահավիժող սառ ջրով փրփրոտ առուակները կը զովացընեն օդը։ Երկու քայլէդ կը հանդիպիս առուակներուն, — ճերմակ ժապաւէններ կանանչին վրայ։ Գոհ ես տափաստանէն ու արդէն իսկ յոգնութիւնդ մոռցած։

Գիւղացին, հանդարտ ու պարկեշտ, խաշնարածութեամբ կ՚զբաղի, խեղճը հարթ տեղի գաղափար չունի, ու խոտի ահագին խուրձեր, գլխուն վրայ առած, տուն կը բերէ, վերը կամ վարը գտնուած պատառ մը տափարակին կամ զառիվայրին վրայէն քաղած։ Բնակելի տեղերուն անձկութեանը պատճառաւ, ժողովուրդը ցրուած կ՚ապրի շատ փոքր խումբերով, երբեմն հինգ տասը տունէ բաղկացած։ Զուիցերիոյ ամէնէն աղքատ նահանգն է Վալէն. կառավարական հոգա-

ծուխէնէ հեռու։ Ինչպէս ընել նահանգի մը հետ՞ որ ամբողջ լեռ է, անդունդ է, ձիւնէ, սառէ կազմուած է։ Վարը, հովիտներուն մէջ, կան բազմամարդ ու համեմատաբար ծաղկած գիւղեր, մանաւանդ Ռօնի հովտին մէջ, երկաթուղիին եզերքը։ Հինգ վեց տարիէն, Սէմբլօնի փապուղիին բացումը մեծապէս պիտի նպաստէ հովտին բարգաւաճման, ընելով զայն Արեւմտեան Եւրոպայի եւ Իտալիոյ ամենակարճ ճամբուն վրայ։ Իսկ լեռներու վրայ ապրողներն սկսած են օգտուիլ օտարականներէն, որոնց թիւը տարուէ տարի կը շատնայ։ Օր մը շոգեկառքը հոս ալ պիտի մագլցի հեւալով ու յոգնած, Ռօնի հովիտէն Մօն Պլան երթալու համար. ծրագիրը պատրաստ է արդէն։ Իրաւ է որ երկիրը մեծ մասամբ իր գեղեցկութիւնը պիտի կորսնցնէ, սակայն բարեբաղդաբար ամէն տեղ ելլելու բնաւ տրամադրութիւն ու կարողութիւն չունի ան, եւ մէկէ աւելի տեղեր ամայի ու կոյս պիտի կրնան մնալ։

Աս տեղացիք իրենց մէջ ֆրանսերէնէ, իտալերէնէ ու գերմաներէնէ խառն անհասկնալի լեզու մը կը խօսին, բայց ամէնէն փոքրն ալ քիչ շատ կոկիկ ֆրանսերէն կը խօսի օտարին հետ։ Կաթոլիկ են․ ունին սիրուն զանգակատունով եկեղեցի մը, որուն երէցը ամէն ինչ է գիւղացիին համար։ Ունին նաեւ փոքրիկ դպրոց մը, 10—15 տղոց համար։ Օտարներու համար անգլիական եկեղեցի մը ու աւետարանական բողոքական պաշտօն կայ։ Յուզիչ է մանաւանդ տեսնել այդ բարձրութեան մէջ բաւական չնորհքով հագուած խեղճուկ գիւղացի-

ներու երկխուզածութիւնը. կիրակի օրը եկեղեցին լեցուն է, չորս կողմէն հոն կը դիմեն երէցին քարոզը լսելու համար։ Կոկիկ քարոզ մը, եթէ երբեմն երբեմն քաղաքացիներու ճոխ զարդարանքով բարեպաշտուհիներու հասկնալի ըլլալու վրան չատ բաց ճիգով մը, ամէնուն ալ անհասկանալի կէտեր չունենար։ Շատ դժուարահաճ չըլլանք խեղճ երէցին նկատմամբ, որ գիւղին դատաւորն, բժիշկը, եւայլն է։ Միթէ ամէն ինչ հոս օրհնաբանութիւն մը չէ՞, յաւիտենական ձիւնով ու սառոյցով ծածկուած անհագին ու հսկայ լեռը, մեծաղըզորդ հեղեղը, անվերջ անտառը, փչացող ջրվէժը, բաց անդունդը, շիւղը՝. փառաբանութիւն ու ալելու չե՞ն կարդար Գերագոյնին, Որուն անհուն զօրութիւնն ու անսահման իմաստութիւնը այս ամէնը զանգեր ու կարգադրեր է։ Եկեղեցիին մէջ ու եկեղեցիէն դուրս մարդն ալ ամէն վայրկեան կը փառաբանէ զԱյն, միշտ նոյն հիացման աղաղակը բարձրացնելով. ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ հրաշալի։ Ուրիշ մը կ'ըսէ «Զkrշkoն» ու մի ուրիշ «Օվkrիխըլվլի». ամէն քայլիդ կը լսես այս հիացող ձայնը։

Ժընէվ Մ. ՆԱԼՊԱՆԴԵԱՆ

# 4. ԾԱՂԻԿՆԵ՛Ր, ԿԱՐՄԻ՛Ր ԾԱՂԻԿՆԵՐ

(ՀԷՔԵԱԹ)

## Ա.

*Սա անհագին բարձրութիւնէն վար՝ ուրկէ անցնող մարդը կրիայի մը չարժող խեցիին կը նմանի ու պարապ անդունդ մը իր լայն երախը բացած՝ կարծես կը յօրանջէ, այս հսկայ ապառաժներուն տակէն Եփրատն է որ վար կուգայ. ալիքները տափակ, մաշած քարերուն կը զարնեն խուլ շառաչումով՝ փրփուրներ, ճերմակ պղպջակներ ցատքեցնելով։ Անբնակ, խոպան բնութիւնը իր աւանդական հողով ու քարովը նոյնը մնացեր է։ Ասդին անդին օձի շապիկներ թափթփած են ու սարդի երկայն թելեր կ'երեւան մեծ պարապէն դարվար։ Վարը, գետը՝ տմոյն, մառախլապատ, իր տխտան օձի հաստակովը պառկած՝ կ'երիզայ երկայն, գլուխ կուտայ հորիզոնին վրայ ու կը ծռի կը կորսուի. բարձրէն անցնող թռչունները փետուրներ վար կը ձգեն, որոնք դարձ դարձիկ, ոլորուն, պտոյտներով վար կ'իջնեն, կամ քարի կտոր մը յանկարծ մողէզի մը վազքէն փրթելով վար կը վազէ դէպ ի գետը, վարերը, խոշունկը թնդացընելով։ Դէմը, հորիզոնին վրայ լեռներ կան խիտ անտառներով ծածկուած, որոնց թաւ կանաչը հոծ ստուերներու հետ կը խառնուի ու կիսատ մըթութիւն մը կուտայ, եւ այդ ծառերուն մէջ պահ-*

ուռած հիւղակները ճերմակ երդիքներնին կը ցուցնեն՝ ասդին անդին կիսով թաւուտի մէջ թաթխուած։ Այս պակուցիչ բարձրութենէն վար ուր մահուան անդունդը կոյր աչքով մը երկինքն ի վեր կը նայի եւ ուր արեւին լոյսը բեկբեկելով ծիրանիի բարակ շառաւիղներ կը ցանցնէ, ուր Եփրատը իր անյատակ կռնակին վրայէն ալիքներ կը ճչէ... այս ապառաժներու բարձրութենէն՝ մարդ մը ինքզինք վար նետած է։

Բ.

Երեք օր էր որ կորսուեր էր։ Զաւակներն ու կինը յուսահատ փնտռտուքով ամէն տեղ, ամէնէն անսպասելի ու ամէնէն ծածուկ տեղերը փնտռեցին ու չգտան։ Գիշերը իր անկողնին մէջէն այնչափ կամացուկ, ոտքերուն ծայրը կոխելով, գացած էր որ ո՛չ զաւակները եւ ո՛չ իսկ կինը կրցած էին գիտնալ, խենթեցե՞ր էր արդեօք։ Տարօրինակ, անհասկնալի հով մը առած տարած էր զայն։ Չգտա՜ն։

Վերջին ապաւէնի մը յոյսով, յուսահատի համակերպութեամբ ուզեցին ապառաժներուն մէջ փնտռել որոնց վրայ աղաւնիին ոտքը հազիւ կը կայնի եւ մարդը գործ չունի արդէն։ Մայրը սպասեց ու երկու պզտիկները փնտռելու ելան։ Սոսկո՜ւմ... ցից քարի մը ծայրը, ոտքերը դատարկութենէն կախ, ուռած աչքերով, մարդ մը նըստած անդունդն ի վար կը դիտէ, քստմնելի վտանգին գիտակցութիւնը զինքը չի խռովեր։ Վայրի

բաղերը կը դիտէ, որոնք կը թուին, հազիւ երեւցող սպիտակ գնտակներ կ'ըլլան ու կ'աներեւութանան. գետին երկայնքը, հոս հոն կանաչ մարդահասակ եղէգները կը տատանին լուին ու ահարկու հրաւէրի մը պէս. զի՛նքը կը կանչեն արդեօք. կը նայի, մինչեւ անթարթ՝ վարը կը նայի, ու կարծես չի լսեր աղերսող ձայները իր զաւկըներուն, որ հեռուն կեցած՝ զարհուրած դիմագծերով՝ ձեռքով զինքը կը կանչեն։ Անդունդը արդեօք իր թո՛վքն ունեցաւ, թէ իր գրկին մէջ քնացող ահարկու հանդարտութիւնը ցուցուց, որուն գլուխ դնողը յաւիտեան կը քնանայ անհունութեան քունը քաշելով, ուր ա՛լ մարդ պիտի չգայ արթնցընելու իր պառկած տեղէն եւ ուր ա՛լ աշխարհի հովերը պիտի չփչեն իր սրտէ՛ն դալուար աշնան տխուր կա՛յծներ գալարել տալով. գետը մեղմ օրօրներ պիտի ըսէ իր ալեակներուն բերնովը ու կանաչ գորտնքուրգերը հանդարտ տատանումներով ներդաշնակութիւն մըն ալ անոնք պիտի ըլլան ու երգեր պիտի ըսեն, մահուա՛ն անո՛ւշ երգեր։ Ծաւերն ալ իր հետ մէկտեղ աչք պիտի խփեն։

Գ.

Ինչ թնդիւն է աս որ վարէն կուգայ խո՛ւլ ու խորունկ՝ քարայրէ մը ելող ջաղացքի ջուրերուն հանած աղմուկին նման, զոր ժայռերը հանդիսաւոր ու վսեմ ձայնով մը կ'եղանակաւորեն. ահա լայն ու տարածուն տատանում մը տեղի կ'ունենայ ջուրերուն մէջ. գետին ճողփիւնը կը թնդայ

գինովի դանդաչիւնով, ու քարերուն, ժայռերուն կը զարնուի. վայրի բադեր արդեօք ինչո՞ւ վարը անհամբեր, արագ արագ ճախրանքով ելեւէջ կ'ընեն ու խռոված վեր կը թռին ճչելով. բայց գետը նորէն իր հանդարտ վէտվէտումներուն կծիկը կը քակէ ու դիմացի կանաչ կաղնիներուն մէջէն կը սողայ, քնանալ կ'երթայ անտառն ի վար, լեռներն ի վար։ Հեռուն ծառերը նորէն լուին իրենց տեղը անշարժ կ'սպասեն ու հողէ խրճիթներն այդ ստուերներուն տակ մենաւոր, անխռով երազանքի երանութեան մէջ կը կենան՝ կը կենա՛ն, ու արեւը անոնց ճերմակ հողէ պատերն ու տանիքը կը փայլեցնէ, մինչդեռ գամբռ մը՝ իբրեւ թափառական մենակեաց՝ այդ վայրերուն մէջ կը հաջէ խուպոտ հաջիւնով իր ձայնը սաղարթախիտ ծառերէն ներս հնչեցնելով։

Ու՛ր գնաց յանդուգն մարդը որ քիչ մը առաջ քարին վրայ նստած, ոտքերը անհունութեանէ մը դարվար կը կախէր՝ հսկայական պարապը ծաղրելով. խե՞նդ մըն էր արդեօք թէ քարերուն մէջ ապրող ճին մը. չէ՛, ահա զոյգ մը որբեր՝ կաքաւի ձագերու պէս՝ որոնք մինակ են մնացեր քարերուն վրայ։

Ծը՛ռ, ճը՛ռ, ծղրիդներն իրենց երգը կ'երգեն, օդին մէջ վայրի թռչուններն ալ սո՛ւր սո՛ւր ճիչեր կը հանեն։ Հուտա երկու պզտիկներ կուլան, դառնապէս կուլան, ու անցնող բազէին, փչող թեթեւ հովին հարցումներ կ'ընեն, վար գացողը ալ չի՞ դառնար։

— Ըսէ՛ք, ո՞վ քարնր, հայրերնիս ո՞ւր գնաց,

հոս, քիչ մը առաջ քարին վրայ նստեր էր, զինքը կը տեսնէինք որ վար կը նայէր, ո՞վ կանչեց վարէն զինքը, դուք չտեսա՞ք, պզտի՛կ ծղօտներ, որ իրեն քովը կամաց մը կը չարժէիք, ձեզի բան մը չըսա՞ւ մեզի ըսելու, բան մը չապսպրե՞ց։

Թառող Թռչունը Թռելու պահուն փետուրները կը հաւքէ, գլուխը քի՛չ մը առաջ կը ծռէ, Թեւերը կիսատ մը վար կը կախէ ու վերջին Թափով մը Թեւ կուտայ ու կը սլանայ։

Կաղչնայի գօսացած ցօղունները չարժեցան իրենց տեղը՝ ծռելով ու չոկելով անդադար, ու պզտիկները իրենց հարցումին գաղտնի պատասխանը հասկցան դուցէ այդ ԹեԹեւ դողդղացումները. իրարու պլլուեցան... վարը հայրիկը փնտռելու կ՚երԹային։

Արեւը այդ քարերը նորէն կը լուսաւորէ մաքուր աղուոր ճառագայԹներով, իր վճիտ պայծառուԹիւնը նորէն կ՚ողողէ առատ լոյսի հեղեղով այդ վայրերը՝ որոնք դժբախտ հօր մը ու մանուկներու կառափնատը եղան. ու վայրի ԹԹուկի՜ներու, քարէ բանջարներու քով հիմայ կարմիր ծաղիկներ կը բուսնին, կարմի՛ր՝ արիւնի գոյն, որոնք սիւքի մը ԹեԹեւ չունչովը կը դողդղան եւ չուքերու մէջ, քարերու տակ կ՚աճին, վախկո՛տ, գլխիկո՛ր որբերու պէս։

Այդ վիհը հիմա մահուան անդունդն է որ սարսուռ մը կը պատցնէ ճամբորդին երակներէն ներս, ուր նոյն իսկ ուլերը կը վախնան կճղակ դնել ու արածիլ անոնց վրայ. մինակ երկայն չարոց հարանեւոր մրջիւններ՝ սեւ կամ կարմիր գիծեր կ՚եր-

*կնցնեն՝ հեւքոտ ելեւէջով իջնելով ու ելլելով անդադար՝ որոնք վարը՝ ո՛վ գիտէ ո՛ւր բոյն ծակած են։ Ոչ ոք կը մօտենայ այդ տեղերուն։ Գիշերներուն լուսնկան կ'ելլէ միայնակ՝ լուի՛ն ու տխուր, կուգայ իր խուզարկու նայուածքով կ'անցնի այդ տեղերէն, լուսաւորելով հիւանդ լոյսով մը նոյն վայրի քարերը որոնք ա՛լ աւելի խռովալի կը դառնան կէս լոյս թեւատարած ստուերներու տակ. վարէն գետը կ'անցնի խորդալով՝ մէկ քանի արծաթի շողերէ փայլփլուն, օձի լեզուովը կը խածնէ իր ալիքներովը վար եկած քարերն ու ափունքը ծլած ջուրի մամուռները, եւ ականջ կուտայ գորտերուն թխրաւոր կրկռուքներուն որ կը պոռան՝ կը պոռա՜ն մութին մէջ, գե՛տը մոռցած թէ իր աւազները խաւ չարիցին դժբաղդ հօր ու զաւակներու դիակներուն վրայ եւ հեռունե՛րը քշեցին։ Ու անդունդը՝ Բելիար խափշիկ կնոջ մը սեւ ուրուականովը՝ անգիտակ թէ մարդիկ մոլորեցուց ու կուլ տուաւ, իր պչրոտ շրթունքներով կարծես կը ժպտի դեռ լուսնկային, որ վերը մաքուր կապոյտին մէջէն իրեն կը նայի։*

Ռ. Զ.

# Ե. ԳԱՒԱՌԱՅԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԽՈՒՆԿ ԵՒ ՄՈՍ

*Շաբաթ իրիկուն է։ Եկեղեցիին զանգակներուն կամ կոչնակներուն հնչելէն առաջ, տանը հարսերը ամէն գործ, աշխատութիւն աւարտած են. տախտը աւլուած, խսիրները փռուած, ու անոնց վրայ կապերտներ կամ գորգեր, ընդունելութեան սենեակին մինտէրներն ու բարձերը շարուած, կաղի լամբաները մաքրուած, լեցուած՝ մէկ խօսքով ամէն բան իր տեղը, տանը կարգն ու սարքը դրուած է։ Երբ զանգակները հնչեն, հարսերէն մէկը կ'առնէ սկիհաձեւ խնկամանը, որուն փոշիով շփուած դրուագազարդ արծաթը՝ կաթի գոյնով, կամ մաշած պղինձը՝ դեղինով կը փայլի. կը խառնէ օճախը, քիչ մը փոշի, քանի մը թաքուն կայծեր կը դնէ հոն, ու վրան կը շարէ օճախին մէջ սեւցած դիւրավառ ածուխներ. կը փչէ, կրակը կ'արծարծի, վրան կը լեցնէ քանի մը պտղունց խունկ, երբեմն կնդրուկ, կ'սկսի տանը բոլոր մասերուն մէջ, պատերուն երկայնովը, ամէն անկիւն պտըտիլ, բուրվառի պէս ծխել եւ քթին տակէն աղօթքներ մրմնջել։ Կը մօտենայ տանը մէջ գտնուող ամէն անձի, կը ծխէ անոնց երեսին՝ քսելով. «Աստուած ողորմի ձեր հին ու նոր ննջեցելոց հոգուն»։ Խունկը ընդունողը կը պատասխանէ. «Աստուած ողորմի հօրդ ու մօրդ կամ ձեր մեռելներուն հոգուն»։*

Խունկը անուշ եւ մեղկացնող հոտ մը ունի, կնդրուկը կծու եւ գգուող, երկուքն ալ հաւասարապէս միսթիքական զգացումներ կը վերարթընցնեն։ Եթէ տանը կինները դեռ նոր կորսնցուցած են իրենց մէկ հիւանդը, խունկը կը բանայ անոր վէրքը որ դեռ չէ սպիացած. կ'արծարծէ հանգուցեալին յիշատակը, սիրտերը կը փղձկին ու աղի արցունքը կ'սկսի վազել։ Այս տրամութիւնը հրապոյր մ'ունի հոգեկան. այս լալին կամ մեղմանոյշ հծծիւնները զարմանալի հաճոյք մը, սփոփանք մը կը հայթայթեն սրտին։

Խունկին հոտը տարածուած է ամբողջ փողոցին մէջ. տարիքոտ կիներ եկեղեցիէ կը վերադառնան, ո՛րը սուգի՝ սեւ, ո՛րը կէս սուգի՝ խանուէգոյն եազմայով։ Անոնց քալուածքը ծանր է, ամէն մէկուն սրտին մէջ, եկեղեցիին խունկը արթընցուցած է յիշատակ մը, փողոցին եւ տան մէջ. միեւնոյն խունկը շարունակել կուտայ այդ խորհրդաւոր տպաւորութիւնը։

Մոմը նուէրի գաղափարին մարմնացումն է գաւառացի կնոջ սրտին մէջ։ Երբ խնդիրք մը պիտի ընէ սուրբին. երբ ո՛ր եւ է սրբավայր ուխտի գացած է, պարտաւոր կ'զգայ ինքզինքը անպատճառ նուիրական ընծայատարութեան մը։ Մոմը պէտք է վառէ սուրբի պատկերին առջեւ եւ դիտէ անոր դէմքը՝ որ շողերուն ետեւ դեղնած է ու մելամաղձոտ։ Մեր եկեղեցիներուն Աստուածածինները, զարմանալի կերպով, ընդհանրապէս անուշիկ ու տրտում նայուածք ունին։ Ջղային խորհրդաւոր բաներէ շուտ ազդուող կիներ կան, որ անզգա-

լապէս Աստուածածնի դիմագծութիւնը կը նմանցընեն, միշտ միեւնոյն պատկերին երկրպագելով, միեւնոյնին առջեւ արտասուելով եւ ակներեւ տարբերութիւն մը դնելով իրենց Աստուածամօր եւ ուրիշներուն միջեւ։ Մոմը որ կը վառի ու կը հալի դժգոյն շողերով, աղօթողին կը պատկերացնէ կեանքը որ աստիճանաբար կը շիջանի. կը ներկայացնէ հանդերձեալ կեանքը՝ ուր բոցերու պիտի մատնուի մեղաւոր մարդուն հոգին...։ Մոմին անբաժան ընկերն է խունկը։ Ջերմուկներ, ծառեր կամ բնութեան գեղածիծաղ գրկին մէջ, ուր սուգն ու թախիծը, խորհրդաւոր մտածումները ինքնին կ՚անհետանան. այդ տեղե՛րը մանաւանդ հարկ է խունկը, որ դիւրացնէ մոմին լոյսին ազդեցութիւնը՝ հոգիին վրայ։ Խունկը կը մխայ մոմիկին քովիկը եւ հաւատացեալը արուեստակա՛ն կերպով կ՚իմանայ իր ջիղերուն գրգռումը, իր կրօնական զգացումին վերափթթումը։ Առանձնաշնորհուած մոմեր կան. կան նաեւ ռամիկ եւ քաղաքացի մոմեր։ Առանձնաշնորհուած են այն մոմերը. որ պատրաստուած են սպիտակ զուտ մեղրամոմէ, ծաղկեդրուագ եւ քանդակազարդ սիւններու պէս. ասոնք համր ու անլոյս կը տնկուին կը մնան մեծ սուրբերու առջեւ, խորաններու վրայ, իբրեւ մշտատեւ վկայ հաւատացեալներուն ջերմեռանդ պաշտումին։ Ռամիկ են այն նիհարիկ դեղնորակ մոմերը, որ ամէն քսակի մատչելի են եւ որոնք հոգիով աղքատներուն պէս անշշուկ ու անփայլ ճաճանչներով կը մարմրին խեղճուկ ու սեւցած պատկերներու առջեւ։ Քաղաքացի մոմե-

րը նոր հնարուած են։ Զտուած ճարպէ պատրաստուած սպարմաչէտներն են անոնք։ Անոնք նոր հնարուած են, քաղքենի դասակարգին պէս։ Հին ատեն, կրօնականներէն դուրս, որոնք նուիրապետութիւնը կը կազմէին եկեղեցիին, միացած ժողովուրդը՛ երկու դասակարգ կը ներկայացնէր, ազնուական եւ ռամիկ։ Մոմերն ալ ըստ այնմ բաժնուած էին։ Հիմա քաղքենի դասակարգը իր գոյութիւնը ամէն բանի մէջ կը յատկանշէ, հո՛ս, մոմերուն մէջ ալ։ Կան տեղեր որ ճարպէ մոմ ալ կ՚ընդունին հիմա սուրբերը։ Ասիկա եկեղեցական տնտեսագիտութեան արդի գրութիւնն է, որ միտքերու առաջդիմութեան հետ ուղիղ կը համեմատի։

ՆՈՒՐՀԱՆ



# Ց· ԱՒԱՆԴԱՎԷՊ

*Սա ժայռերը՝ որոնց վրայէն բազէները կը ճախրեն եւ օձերը կը սողան սուլելով, ուր մամուռներ փաթթուելով անոնց կողերուն վրայ գորշ կանանչ մը կ'երանգեն, ատենօք, աւանդութիւն մը կ'ըսէ, այդ հսկայ ժայռերը մարդիկ էին մեզի պէս։*

*Անյիշատակ ժամանակի մը մէջ՝ այդ խոպան տեղէն հպարտ ամբոխ մը կ'անցնէր, հեռու երկիրներէ եկող հարսնեւորներու խուժան մը. եւ թմբուկին, զուռնին ձայնը, երգողներու, ծնծղաներու հնչիւնը, զգեստներուն շողիւնները՝ հեռուն, դաշտերուն մէջ կ'երկննային, ու հարսը քօղին մէջ ծածկուած՝ իր գեղեցկութիւնը կը պահէր։ Յանկարծ անզուսպ փափաք մը կ'ուռեցնէ հարսին սիրտը՝ որ դէմքը բանայ ու վայրի սիրով մը իր գեղեցկութիւնը անծանօթ տեղերուն ցոյց տայ. կը նետէ քօղը ու իր աննման դէմքը արեւին կը ցուցնէ։ Այն ատեն անոր գեղէն ու հպարտութենէն զայրացած՝ բնութիւնը անէծքով կը շանթահարէ բոլորը հո՛ն, այդ տեղը, եւ անփոփոխելի այլակերպութեամբ, մա՛րդիկը քար կը դառնան՝ անշարժ ու համր։*

*Հիմա, մշտական սպասումով՝ անոնք կ'սպասեն հոն. անոնց մէջ կը նշմարուին խանգարուած*

աւրուած դիմագծեր՝ մանուկի, պառաւի եւ պարմաններու, վայրենի աչքեր կան ահռելի սեւեռումներով՝ մոլեգին արտայայտութեամբ մը բաց մնացած. կծկուած, խորշոմած երեւոյթներ կ'երեւնան որ կարծես լալու կը պատրաստուին, ու չեն լար. եւ ցաւ մը կը յայտնուի, ցաւ մը որ զիրենք տանջած է. իրարու վրայ խռնուած սեղմ կամ անջատ՝ անծանօթ էակներ որոնք սակայն՝ առասպելի զրոյցէն դուրս, խուսափող նմանութեամբ գծուած իրական պատկերներ ցոյց կուտան: Առտուան արեւին տակ եւ իրիկուան մարող ցոլքերուն լոյսովը՝ անոնք յաւիտեան պիտի փայլին հոն:

Աւանդութիւնը այդ դժբաղդներու պատմութեան՝ քարերուն եւ ապառաժներու մէջ՝ յուսատու, մխիթարող հաւատք մըն ալ դրած է, հոն ուխտատեղի մը եղած է ուր հիւանդները, ցաւածները վերջին ապաւէնի մը յոյսով, կինները մանաւանդ այդ ցուրտ քարերուն կը տանին իրենց տառապանքները, եւ միամիտ դիւրահաւանութեամբ մոմ մը կը վառեն ու ետ կը դառնան: Եւ ժայռերը միշտ յոխորտ ու խիզա՛խ՝ իրենց գլուխները կ'երկարեն երկինքին մէջ, ուր երբեմն զարնան ճերմակ ամպի կտորներ կանգ կ'առնեն անոնց վրայ եւ մանր փրփուրներով կը ժանեկազարդեն զանոնք, վայրի թուզեր եւ կանանչ թըփիկներ կը բուսնին վերերը անոնց ծերպերուն մէջ, կայծակը կը զարնուի երբեմն ու կտորներ կը փրցընէ անոնցմէ. եւ մռայլ օրերուն, անձրեւներու ատեն, ագռաւները սո՛ւր, սո՛ւր կը ճչեն, անձ-

ջուրը սողալով վար կ'իջնէ ու հովերն ալ շաչելով անոնց վրայէն կը վազեն։

Անցորդներու նայուածքները վեր կը դառնան մերթ անհամբեր՝ հսկայ բարձրութենէն, եւ վրդովուած յուզումով կը հարցնեն անոնք ինքնին թէ իրա՞ւ այս քարերը մարդ եղած են առենով, կեանքը իրա՞ւ անոնց մէջէն ալ անցած է. սա քարերը որոնց վրայ անհամար թռչուններու հազարաւոր փետուրներ ցրուած են։

Ռ. ԶԱՐԴԱՐԵԱՆ



# 7. ԷՔՍ-ԼԷ-ԲԷՆԻ ՋԵՐՄՈՒԿՆԵՐԸ



Էքս-Լէ-Բէնը ապահովաբար աշխարհի ամէնէն գեղեցիկ, ամէնէն զմայլելի կէտերէն մէկն է, չքնաղ ամառանոց մը եւ անուանի ջերմուկներու քաղաք մըն է միանգամայն։ Զուիցերիոյ եւ Ֆրանսայի սահմանագլուխին վրայ, Լիոնէն քանի մը ժամ հեռաւորութեամբ միայն, Պուրժէի՝ աննման, խաղաղիկ, կապուտակ փոքրիկ սիրուն լճակին եզերքը կառուցուած, Սավուայի ձիւնապատ հսկայ լեռներուն շղթայով պատած, իր ճերմակ լայն մաքուր արահետներովը, ծաղկազարդ պարտէզներովը, կանաչներու տակ թաղուած հեշտալի վիլլաներովը երազային քաղաքի մը տպաւորութիւնը կ'ընէ այցելուին վրայ։ Իշխաններու, ամէն կարգի ազնուականներու, նախարարներու, դրամատէրներու ճշմարիտ զբօսավայր մը, ուր մարդկային մտքի տարօրինակ անհեթեթութեամբ մը, այս տենչալի բնութեան ծոցին մէջ իսկ, փրկարար ջերմուկներու քովիկը շատեր կուգան հսկայ Քազինոյի մը խաղերուն մէջ, Բոքերի եւ Պաքարայի սեղաններուն շուրջը կորսնցնել իրենց առողջութիւնը եւ դրամը։

Էքս-Լէ-Բէնի ջերմուկներուն համբաւը երէկուընէ չ'սկսիր, բազմաթիւ յիշատակներ կը ցուցընեն թէ Հռովմէական կայսրութեան տակ Էքս-Լէ-Բէնի ջերմուկներուն կը դիմէին ստուար թիւով։ Պոմպէոս ինքն իսկ կը թուի գնահատած ըլլալ զանոնք. արդարեւ բաղնիքին մօտ անագին

կամարի մը ճակատը աւրուած արձանագրութեանց մէջ կը կարդացուի Պոմպէոսի անունը Թուականով մը, եւայլն։

Այժմու Էքս-Լէ-Պէնը իր բաղնիքներու կատարելագործեալ կահաւորմամբը, իբր ծծմբոտ ջերմուկ, անհերքելի կերպով աշխարհի մէջ մէկ հատիկ է։

Ջերմուկները երկու գլխաւոր աղբիւրներ ունին, որոնցմէ իւրաքանչիւրը կուտայ օրական չորս միլիոն լիթր 44° ջերմութեամբ ջուր. այս երկու աղբիւրներէն զատ բաղնիքին մէջ բերուած է 11 աստիճան բարեխառնութեամբ սովորական աղբիւրի մը ջուրը, այնպէս որ այս երեք ջուրերու զանազան բաղադրութեամբ՝ կարելի է տալ զանազան աստիճանի բարեխառնութեամբ լոգանքներ հիւանդութեան եւ բժիշկին պատուիրանքին համեմատ։ Բաղնիքը ունի երեք յարկեր. իւրաքանչիւր յարկի համեմատ ջուրի հոսանքին զօրութիւնը կը տարբերի՝ առաջին յարկի հոսանքը բնականաբար նուազ զօրաւոր է քան երկրորդինը, եւայլն։

Այս ջերմուկներու շատ մը գործածութեանց կերպերէն որոնք ի գործ կը դրուին բաղնիքին մէջ, ամէնէն յիշատակելին եւ չահեկանը Էքս-Լէ-Պէնի յատուկ մասնաւոր մէկ միջոցն է, որ կը կայանայ սովորական ցուշին եւ մարձումին միացման հետ։ Այս ցուշերը կը գտնուին տարօրինակ մաքրութեամբ, պարզ, բայց գեղեցիկ ճաշակով շինուած ճերմակ յախճապակեայ պատերով եւ տախտակամածով փոքրիկ սենեակներու մէջ. ապակեայ երկրորդական պատեր կրնան աւելցուիլ,

գոցել սենեակներու վրայի կամ քովի մասերը եւ այսպէսով աւելցնել մթնոլորտին ջերմութիւնը եւ չոդիին ճնշումը։ Ջերմուկին ջուրերը կը հանեն, որոշեալ բարեխառնութեամբ, խողովակներու միջոցաւ այդ քառակուսի սենեակներուն մէջ. հիւանդը կը նստի ցած եւ փոքրիկ նստարանի մը վրայ կամ կը պառկի կռնակի վրայ. ջուրը կուգայ շարունակաբար ողողել հիւանդը. մինչդեռ բաղնիքին սպասեակը իր ձեռքով կը մարձէ մարմինին հիւանդ մասերը. գործողութիւնը 5—10 վայրկեան կը տեւէ որմէ վերջ հիւանդը կը սրբուի եւ կը չորցուի։ Ջերմուկներու գործածութեան ուրիշ հարիւր կերպերը կան տակաւին, մասնաւորապէս չոդիի ընդհանուր կամ մասնաւոր լոգանքներ, եւայլն։ Էքս-Լէ-Պէնի ջերմուկներուն դարմանումը մասնաւորապէս արտաքին հականեխական եւ մեքենական դարմանում մըն է. մեքենական դարմանում մը մանաւանդ կարծրացած դընդերներու, չծռող յօդաւորութիւններու, քրոնիկ յօդացաւի դէմ. միւս կողմէ կը նպաստէ, կը չափաւորէ մորթին զգայնութիւնը սննդական փոխանակութիւնները, եւայլն. մանաւանդ վազած ջուրի հոսանքին զօրութեան եւ քանակութեան ճնշման եւ բարեխառնութեան տակ մորթին բնախօսական պաշտօնները տարօրինակ կերպով կը բարուոքին. անդամներու մէջ անշարժ մնացած ախտաբանական հեղուկներ ընդհանուր շրջաբերութեան մէջ կը հալին եւ այսպէսով անդամները կը վերստանան իրենց սովորական ճկունութիւնը։ Մասնաւոր չափազանց աշխատութենէ առաջ եկած

Ջղային զանազան տկարութիւններ մեծապէս կ'օգտուին Էքսի ջուրերէն։ Բաղնիքին յատկացուած են քանի մը նշանաւոր բժիշկներ։

Էքս-Լէ-Պէնը ունի իր իշխանավայել օթելներուն հետ նշանաւոր թատրոն մը ուր ամէն իրիկուն Բարիզի եւ Լիոնի օբերային արուեստագէտներէն կազմուած ընտրեալ խումբ մը Վակների, Կունոյի, Մասընէի, Մայերպէրի, Վէրտիի նման անմահ երաժիշտներու օբերաները կը ներկայացընեն. սքանչելի նուագախումբ մը ամենօրեայ նուագահանդէսներու շարքով մը կ'օրօրէ հիւանդին կամ այցելուին երեւակայութիւնը եւ այս ամէնը այնպիսի կլիմայի մը տակ ուր ամառուան կիզիչ օդերը բնաւ գոյութիւն չունին, հիանալի լճակի մը եզերքը, որուն վրայ կարապի նման վայելչագեղ նաւակներ եւ նաւեր ամէն վայրկեան մօտակայ փոքրիկ ճամբորդութիւններու համար այցելուին տրամադրութեան տակ կը գտնուին, եւ բաց ի քանի մը հարիւր անգլիացիի կարճ կամ երկայն, ծեր կամ երիտասարդ՝ բայց միշտ տգեղ, բնական կամ արուեստական՝ բայց միշտ երկար, տնկուած ակռաներով, պզտիկ յարդէ գլխարկով, ամբարտաւան կերպով վեր ցցուած կոնաձեւ մազերով, իրենց սովորական չապիկով եւ փողկապովը, կարճ շրջազգեստով անվայելուչ միսերու սովորական տաղտկալի առօրեայ տեսքէն, հիւանդը կը վայելէ ջերմուկներու ազդեցիկ օգտակարութեան հետ բնութեան եւ արուեստին ընծայած ամէնէն չքնաղ հրապոյրները։

Մ. Պ. ԹԻՒԼՊԷՆՏՃԵԱՆ

# 8. ԾՈՎԱԿԻՆ ՀԱՐՍԸ



## Ա.

*Ծովակին երկու ափերուն վրայ, դէմ առ դէմ, երկու գեղեցիկ գիւղեր կային. մէկը մինչեւ հիմա կը մնայ դեռ, միւսը կորսուած է ջուրերուն տակ։*

*Այն գիւղին մէջ, որ ա՛լ հիմա չ՚երեւար, մանկամարդ կին մը ծովուն հարսը կը կոչուէր. ամէն առտու արեւը ծագելէն շատ առաջ երբ ծովակը հովուն համբոյրներուն տակ իր ափերը կը գգուէ ու ալիքները հեռաւոր ծփանքներ կ՚ոլորեն, ծովուն հարսը, հեռո՛ւն անորոշ լողացող սեւ թռչունի մը կը նմանի որ կ՚երթա՛յ կ՚անհետի ու ծովուն մէջ կը կորսուի մանրցած։*

*Իր երեսներէն ցայտած շառաւիղները ջուրերուն մէջ կը թափէին, ու հասակը ուռիի մը կը նմանէր գետերուն ափունքն ի վար թուլցած երկա՛յն ուռիներուն պէս, մազերը բարտիներէն վար սողացող լուսնի շողերը՝ կարծես ուսն ի վար, աչքերն ալ՝ լեռները փախչող եղնիկները։ Ու երբ, ծովուն հարսը առտուանց ծովակէն կը հեռանար ձուկերուն մէջ մոլեգին յուզում մը կ՚իյնար։ Այսպէս կը պատմէին ծերերը, որ հիմա իրենք ալ չկան։*

## Բ.

Ամէն գիշեր, կէս գիշերին ուշ ատեն՝ ծովակին ափունքին վրայ առկայծ լոյս մը կը դողդղայ ու անքթի՛թ՝ ծովուն նշմար կուտայ, յանկարծ ջուրերուն մէջէն փրփուրի շառաչներ կը լսուին. ու ճերմակ պղպջակի մէջ փաթթուած՝ ծովէ՛ն տղայ մը կ՚ելլէ, գեղեցիկ, փրփուրներէն ծնած կարծես։ Ու ամէն գիշեր՝ միայնա՛կ, ծովի խիճերուն ու գորտերուն քով՝ ամայութեան մէջ՝ ծովին սիրահարները իրար կը սիրեն մինչեւ լոյս, մո՛ւթ խաւարին մէջ լռութիւնը կ՚ընդհատուի միայն գորտերու կրկուքներովը, որոնք կ՚երկարին ու ծովուն մէջ կը մարին։

Ու երբ արուսեակը ծայր կուտայ դիմացի գիւղին վրայ՝ լերան ետեւէն, ծովակի տղան զանի նշան կը բռնէ աչքով, ու թեւերը ալիքներուն կ՚երկարէ, սիրականը ետեւէն կը նայի՛ ու կը նայի՛ երբ լողացողը կը պզտիկնայ, սեւ թռչուն մը կ՚ըլլայ, յետոյ կէտ մը, ու ալ չ՚երեւար։

Առտուանց լուսուն դէմ երբ ծովուն հարսը քայլերը կը դարձնէ ու տուն կը դառնայ, ալիքները ափերուն կը զարնեն ու ձուկերուն մէջ տարօրինակ յուզում մը կ՚իյնայ։

## Գ.

Օր մը դրացի պառաւ մը եղելութիւնը կը հասկընայ, ու էրիկը իր կնոջը՝ ծովու հարսին՝ գաղտնիքը կ՚իմանայ։

*Ճրագը իր տեղը այն. գիշեր նորէն անկասկած իր նշանը կուտար, ու երբ տղան ծովակին կէսը հասած է ա՛լ՝ յանկարծ մութին մէջէն մոլեգնած ձեռք մը ճրագը գետին կը նետէ ու ծովու հարսին մազերը թեւը կը պլլէ. արցունք, աղերսանք անգութ էրկանը մոլեգնութիւնը չեն կրնար իջեցընել, ու քարերուն վրայ մեռած միջոցին՝ հարսը կ'ա՛իծէ էրիկը, կ'անիծէ պառաւը ու գիւղը՝ վերջին անգամ։*

*Միւս օրը, առտուանց, երբ արուսեակը կը ցաթէ հեռակայ լերան ետեւէն ուր ամէն անգամ ծովուն սիրահարները կը բաժնուէին, իրիկունը լեռը պառկող հովիւը երբ գիւղը դարձաւ՝ ո՛չ գեղ գտաւ, ո՛չ մարդ. ջուրը կլլած էր ամէնքն ալ։*

*Հիմա ջուրին մէջ ամէն գիշեր, կէս գիշերին՝ նոյն գիւղին տեղը աղօտ ճրագ մը կը վառի։ կ'ըսեն ու առտուան դէմ՝ արուսեակին ցաթելու պահուն՝ ճրագը կը մարի, ծովը տարօրինակ յուզում մը կ'ունենայ, ու երկու ճերմակ թռչուններ՝ կարմիր կտուցով՝ յանկարծ այն տեղ կ'երեւան, մեղմիկ, հանդարտ ջուրը կ'ակօսեն պզտիկ ալեակներ հանելով, յետոյ նորէն կ'անհետին, ու երբեք ցորեկները չեն տեսնուիր։*

*Ծովա՛կ, անոնց անունը մարդու մի՛ ըսեր։*

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆ

# Գ. ՅՈՊՈՊ ԹՌՉՈՒՆԸ (¹)

## ( ԱՒԱՆԴԱՎԷՊ )

Չքնաղ առտու մը գարնան
Ցօղատ, կիսալոյս,
Աղուոր աղջիկ մ'աննըման,
Հարսնցու մի կոյս

Լողարանին մէջ մինակ,
Անփոյթ պչրանքով,
Կը լուացուի ու ճերմակ
Շուշան մ'է տեսքով:

Մազերն ըսփիւռ ոսկեզօծ՝
Կը սանտրէ անի,
Եւ կը սարսռան լանջքը հոծ
Ու պորտն հոլանի:

Ու վարսերը կը ցրուին,
Վիժակ սռնապան՝
Ծըփալով շուրջն իր մարմնին,
— Խորան մաքրութեան:

(¹) *Այս աւանդավէպը գրուած է Բիւրակն 1900, Թիւ 21ին մէջ հրատարակուած ժողովրդական հէքեաթի մը հետեւողութեամբ։*

Այլ բաղնիքին կիսաբաց
Դուռնէն աղջըկան
Եղբօր աչքն է հանդիպած՝
Քրոջ մերկութեա՜ն…:

Օ՜հ, ի՜նչ ամօթ, Աստուա՜ծ իմ,
Փրկէ՛, փրկէ՜ զի՛նք.
«Թռչուն մ'ըլլամ ու թռչի՛մ
Երկինքէ երկինք…:»

Եւ աղուորը սարսռագին,
Յանկարծ կ'առնէ թեւ,
Մոռցած սանտրը դեռ գլխին,
Մազերուն վերեւ:

*
* *

Յոպոպ թռչունն է այսօր
Սիրուն աղջիկն այն,
Բրբուկն ալ՝ սանտրը անոր,
Ըստ աւանդութեան:

ԱՐՏԱՇԷՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ



# Բ. ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ

Բանաստեղծը ներշնչուած ստեղծող է։ Բանաստեղծութիւնը, հետեւաբար, ներշնչումի, ստեղծումի եւ գեղեցիկ արտայայտումի ամբողջութիւնն է։ Աւելի յստակօրէն սահմանել զայն՝ գրեթէ անկարելի է։ Բանաստեղծութիւնը, — ըսած են նոյն իսկ գրագէտներէ ոմանք — մարդկային կեանքին նմանութիւնը եւ նկարչութիւնն է. միայն՝ բացատրութիւն՝ որ միակողմանի է սակայն. բանաստեղծութեան մէջ բնութեան ալ նմանութիւնը եւ նըկարչութիւնը կան։ Յաջող բանաստեղծութեան մը էական պայմաններն են. Ա. — *Ներշնչում*, Բ. — *Խանդ եւ հիացում*, Գ. — *Զգայնութիւն* կամ յուզուելու եւ յուզելու տրամադրութիւն։ Բանաստեղծական հանճար մը պէտք է, անպատճառ, ունենայ այս երեք յատկութիւնները։ Բանաստեղծութիւն մը, սակայն, իր մէջ ներշնչում, խանդ եւ զգայութիւն ունենալէ զատ, պէտք է նաեւ ներդաշնակ լեզու մը ունենայ, որ «պարուրէ ականջն ու սիրտը՝ յուզելով»։ Այս պատճառաւ է որ արդէն, մեծ մասամբ, բանաստեղծութիւնները չափուած ու որոշ ձեւերու մէջ կը կաղապարուին՝ պահանջմանցը համաձայն մասնաւոր կանոններու որոնց ամբողջութիւնը կը կոչուի *տաղաչափութիւն*։ Հայերէնի համար երկու է տաղաչափութիւնը. նախ կայ *հայկ. չափ* ըսուածը որ *առանց յանգի* է. եւ հիմա

գործածութենէ ինկած, եւ, երկրորդ՝ կայ *սովորական չափը* որ *յանգաւոր* է, այսինքն իր պարունակած տողերուն վերջաւորութիւնները նոյնաձայն են։ Ասով հանդերձ բանաստեղծութիւնը երբեք ստիպուած չէ գերին ըլլալ տաղաչափութեան, շատ յաջող արձակագիր-բանաստեղծներ գտնուած են ամէն ազգերու գրականութեանց մէջ, բաւական է որ բանաստեղծը միշտ կարենայ ներդաշնակութիւն տալ իր լեզուին։ Ճիշտ այնպէս ալ, պէտք չէ մոռնալ որ ամէն *տաղաչափուած ոտանաւոր՝ բանաստեղծութիւն չէ*։

Բանաստեղծութիւնը ընդհանրապէս կը պարունակէ երեք գլխաւոր սեռեր. 1. — *Քնարերգական* (Poésie Lyrique), 2. — *Դիւցազներգական* (Epique), 3. — *Թատերական* (Dramatique), եւ երկու երկրորդական սեռեր որոնք են. 1. *Վարդապետական* (Didactique), ու 2. — *Նկարագրական* (Descriptive)։ Քնարերգական բանաստեղծութիւնը մարդկային հոգիին ամենէն մտերիմ զգայութիւններուն արտայայտութիւնն է։ «Քնարերգական» կը կոչուի, անոր համար որ, առաջին բանաստեղծները, մանաւանդ Յունաստանի մէջ, իրենց բանաստեղծութիւնները կ՚երգէին քնարի մը ընկերակցութեամբ։ 2. — Դիւցազներգական բանաստեղծութիւնը ոտանաւորի ձեւով դիւցազնական արարքներու պատմութիւնն է։ 3. — Թատերական բանաստեղծութիւնը կ՚ընդգրկէ այն բոլոր երկերը որոնց նպատակն է բեմի վրայ դնել եղերական կամ եղերա-կատակերգական գործողութիւն մը (եղերերգութիւն, թատերգութիւն կամ տռամ)։

Իսկ 1. —Վարդապետական իմաստասիրական բանաստեղծութիւնը, նպատակ ունի սորվեցնել սկըզբունքներ, ըլլան անոնք գիտութեան թէ արուեստին վերաբերեալ: 2. —Նկարագրական բանաստեղծութիւնն ալ նկարագրական (1) մըն է, այսինքն պատկերացումը իրերուն՝ բանաստեղծութեան պահանջումներուն համաձայն գրուած: Հինէրէն՝ Պինդար (հելլեն քերթող՝ 520—436 Ն. Ք.) եւ Որատիոս (լատին քերթող՝ 64—7 Ն. Ք.) զոր օրինակ, գերազանց քնարերգակներ եղած են. Հոմերոս եղած է գրէթէ անհաւասարելի դիւցազներգակ մը, որուն ճունչովն ու ոգիովը սնած Բագրատունի Հ. Արսէնը, մեր դիւցազներգակը ունեցանք հայերս ալ: Սոֆոկլէս, Ռասին, Քորնէյլ, Ալֆիերի, Շէքսպիր թատերգակ-բանաստեղծներ են, Սրապիոն Հեքիմեան հայ թատերգակ-բանաստեղծ է. Վերգիլոս եւ Պուալօ վարդապետական բանաստեղծութիւններ արտադրած են, Տանդէ ալ՝ մասամբ: Իսկ նկարագրական-բանաստեղծութիւններով զբաղած են Սէ դ Լամպեռ, Լաֆոնդէն եւ մեր մէջ, Ճատեր, զորօրինակ, Դուրեան, Անէմեան, Աղ. Փանոսեան, Ա. Ցարութիւնեան, Լ. Սեղբոսեան, Ա. Ծատուրեան, եւայլն: Պէշիքթաշլեան եւ Թէրզեան թէ՛ նկարագրական եւ քնարերգական բանաստեղծներ եղած են:



(1) Նկարագրականին վրայ ընդարձակօրէն՝ տես իր կարգին.

# 1. ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ



## Ա. ԾԱՌԵՐՈՒՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ

*Գտնուա՞ծ էք Ցունիսին, կէսօրէ մը յետոյ, շոճիններու անտառի մը մէջ, ու հոն ընկողմանած: Հոն, լիառատ լոյսին տակ, թմրած դաշտերու լը-ռութեանը մէջ, լսա՞ծ չէ՞ք այն օդային շշուկը՝ որ կանաչ փուշերով ցցուած ճիւղերու մէջէն կը սուրայ, եւ որ հակապատկերը կը կազմէ դուրսը՝ ամառուան շլացուցիչ ճառագայթներէն սփռուած տրտմութեան: Անիկա երգ մըն է օրօրող, ծփծը-փուն, լայն եւ մեղամաղձոտ: Թէոկրիտէս երկու հազար տարիէ աւելի է, արդէն անոր մեղկ քաղց-րութիւնը տօնած էր: Այդ երգը գերմանուրբ դըր-ուանքի հառաչներ ունի եւ հազիւ հազ իմանալի հեծծիւններ, որո՛նք այնչա՛փ ծածուկ են: Կարծես թափառիկ հոգիի մը ձայնն է, պիտի ըսէին, որ երկիրը կ'աւաղէ:*

*Իջէ՛ք հիմա, մինչեւ բլուրին ստորոտը՝ դէպ ի մարգագետինները, ուր գետակը հանդարտ կը հոսի նունուֆարներու քօղի մը տակէն. մտիկ ը-րէ՛ք կաղամախիներուն երգը: Բոլորովին ուրիշ խառներգ* (=miscellanée) *մըն է. — զուարթ, յստակ, կայտառուն եւ զովարա՛ր: Լսել կը կարծես ժքթանքը Ապրիլի տեղատարափի մը որ տերեւ-ները արատներով կը պխակէ:*

*Բայց ծառերուն համերգը՝ իր բովանդակ գե-ղեցկութեանն ու վեհութեանը մէջ այն ատեն կը*

յաղթանակէ, երբ արեւմտեան հովը կը սուրայ անտառներուն մէջէն, աչնան անձրեւոտ գիշերներուն։ Նուագախումբը՝ այն ատեն կը զարնէ համակ խուլ ու գոռ երգեր, աղաղակներ՝ նման սրինգի անորոշ կերպով երկարաձգուած չեչտերուն՝ եւ տեղատարափին կուռ հոսումները՝ որոնք դողդոջուն խազերու ջրհեղեղի մը պէս կը թափին։ Մերթ մեղմացում մը։ Մինակ, քամիին սուր ողբը կը չչէ ամէնէ՜ն նուրբ ճիւղերուն մէջէն եւ զանոնք կը թեթեւցնէ՝ նման տաւիղի մը լարերուն։ Այս եզական երգայարդարութիւնը կը շարունակէ ատեն մըն ալ՝ վայրկենապէս խաղաղած ճիւղերուն մէջէն։ Հեռուէն կը վերսկսի սարսուռ մը՝ նման ծովի մակընթացիկ խաղացքին նախակարապետ չչնչիւնին, եւ աղեխարշ մենաւոր սօսաւիւնը նորէն հերարձակ անտառին փոթորկայոյզ մռնչիւնին հետ կը խառնուի։

## Բ. ԹՌՉՈՒՆՆԵՐՈՒՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ

Գարնան ալ սքանչանալու համար թռչուններուն երաժշտութիւնը ունիմ։ Նախ՝ ցրուած եւ հազիւ դաշնակաւորուած խազերու նախերգանք մը, սարեակներու սուլումներ, խայտիտներու թրթռումներ, կարմրալանջներու գեղգեղներ։ Բայց արդէն վարը՝ դաշտագետնին վրայ ուր ցորենները կը կանաչնան, հարիւրաւոր ձայներ կ'երգեն զարթօնքը. արտոյտներու առաւօտեան խումբն է ան։ Անոնք կը բարձրանան վեր՝ մարգարիտ գոյնով երկնքին մէջ, եւ մէկ կողմէ բարձրանալով համ-

դէրձ՝ կ'երգեն, յաւէ՜տ անխոնջ։ Անոնք՝ ՝վերը բոլորովին կորսուած, նոր ցաթող արեւին վարդագոյն նշոյլներուն մէջ հատիկ հատիկ կը թափեն իրենց խազերը զուարթութեան մարգարիտներու պէս։ Ամենուրեք, ճամբուն ցանկերէն՝ գետակին դալարաւէտ դարափներէն՝ անտառին տամուկ խորքերէն՝ հրաշալի ամբողջութիւն մը կը լեցնէ միջոցը. չիկահաւերու վիպերգներ, կտաւաքաղներու ու եկքանիկներու ճռուողիւններ, տորդիկներու եղանակաւորումներ, յոպոպի թրթռուն եղանակին անդրադարձը, փիլորեակին սրինգը, մինչեւ այն խաղաղիկ ժամը՝ ուր ցորեկուան երգիչները լռած ըլլալով, սոխակը՝ այս անբաղդատելի մեներգուն՝ գիշերուան մէջ կը գեղգեղէ, սաստիկ ու քաղցր սիրոյ օրհներգը։

## Գ. ԶԱՆԳԱԿՆԵՐՈՒՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ

Եւ զանգակները՝ որոնց ղօղանջները անտեսանելի եւ աղմկալից ճամբորդող ոգիներու պէս օդը կը ճեղքեն, ի՜նչ զօրաւոր՝ միանգամայն թովիչ երաժշտութիւն է անոնցը. ինչպէս կը փոխեն իրենց ձայնի ելեւէջներն ու հանգամանքը պարագային համեմատ։ —Գեղջուկ զանգակներու նուագահանդէսը՝ կիրակի առտու մը վճիտ զուարթութիւն մը ունի, ապշեցուցիչ խանդ մը։ Շուրջս Պիէվրի ձորին ամէն մէկ գիւղը կամ աւանը իր խազը կը նետէ երկչոտ կամ սուր, թաւ կամ խիստ։ Մետաղեայ թրթռումները, մերթ արծաթեայ՝ ինչպէս լերան մէջ հոտի մը բոժոժը, մերթ բարձրահնչիւն՝ ինչպէս օդային երգիոնի մը կորափողերը

իրար կ'ընդհատեն, իրարու կը համապատասխանեն, միահաղոյն կ'երգեն, յետոյ իրարմէ կ'անջատուին, կրկին իւրաքանչիւրը՝ հովին քմահաճոյքներուն համաձայն իր քաղցրանուագ թռիչը սանալու համար: Հնչիւններու համադրութիւնն ու անջատումը, արեւոտ մթնոլորտին մէջէն՝ սիրտը կ'ուրախացնեն կամ երազել կուտան անոր, բայց զուարթ կամ երազող՝ առտուան զանգակներու այս նուագահանդէսէն կազդուրիչ տպաւորութիւն մը կը կրէ մարդ: Զգացողութիւնը բոլորովին կը տարբերի սակայն, երբ այս միեւնոյն ղօղանջները թրթռան իրիկնամուտին. այն ատեն, արեւին մարը մտնելուն կամ վերջալուսին ժամերուն մելամաղձութենէն անմասն չ'ըլլար ան: Որչափ ալ շողշողուն գոյնով ներկուի իրիկուան ծիրանին, ո՛րչափ ալ ներդաշնակ ըլլայ երեկոյեան երաժշտութիւնը, դարձեալ զգացում մը կը թողու, որովհետեւ ասոնք հակառակ կամքիդ խորհիլ կուտան վերջացած օրուան կորսուած ժամերուն, որոնք մութին մէջ խորասուզուած են եւ զորս այլ եւս երբեք չպիտի գտնենք: Հոգ չէ, զուա՛րթ կամ տրտում, Մայիսի արշալոյսի մը պէս զուարթուն կամ աշնանային իրիկնամուտի մը պէս վրդովուն, զանգակներու այս համերգը աննման քաղցրութիւն մը ունի, դիւթական թելադրիչ կարողութեամբ մը. իր անրջային թեւերուն վրայ գրգանքով կ'օրրէ ան զմեզ, եւ, այն օրը՝ ուր զանգակատունները համր ըլլան, այսինքն ազօթքը դադրի, երկրի վրայ սքանչացում մը ու մխիթարութիւն մը պակաս պիտի ըլլան:

## Դ. ԿԵԱՆՔԻ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ

*Համապազօրեայ կեանքին զանազան աղմուկներն ալ ինծի կը վերապահեն ինքնատիպ եւ չէնցընող երաժշտութիւն մը։ Այդ աղմուկները՝ իւրաքանչիւրը զատ զատ առնելով՝ մասնաւորաբար քաղցրանուագ ոչինչ ունին, բայց երբ անոնք միահաղոյն կը հնչեն եւ երբ զանոնք քիչ մը հեռուէն մտիկ կ՚ընէ մարդ, կազդուրիչ եւ ուժեղ ներդաշնակութիւն մը կը կազմեն։*

*Սակայն աւելի գիւղին մէջ պէտք է զանոնք մտիկ ընել, ուր իրենց թափովը երեւան կու գան, պողոտաներուն վրայ սայլերու ծանր ու նուագաւոր ճռճռոցը, դարբնոցին մուրճի հարուածները, ագարակներուն խորէն լսուող հաչիւնները, տուներուն մէջ լորամարգիներուն կանչը, բերդերու միջնորմներուն վրայ սրափողերու նուագները, փողոցի կանչուըռտուքները, Սէնի բլուրներուն վրայ հովին բերած յուշկապարիկներու ձայները, եւ ա՛լ աւելի հեռո՛ւն՝ տապաղձարանէն վերադարձող գործաւորին լիաբերան երգած գեղջկական երգին բրդուճները, — բոլոր ասոնք անգիտակցաբար իրարու կը խառնուին եւ սքանչելի ներդաշնակութիւն մը կը հիւսեն, նուագախումբ մը՝ զարմանալի կերպով երփներփնուած, որ կարծես ուրախութեան եւ գործունէութիւն օրհներգը կը խմբատօնէ։*

*Վերջապէս կայ վերջին երաժշտութիւն մըն ալ, զոր կը հասկնան եւ կը վայելեն միայն անոնք որ ինծի պէս կեանքի ճամբուն երեք քառորդը*

հասած են։ Այս վերջինը համակ ներքին է, համակ իմացական, եւ միայն հոգին է որ կը թափանցէ անոր համր ներդաշնակութեան։ Բայց, ինչպէս կ'ըսէ Ճոն Քիթս բանաստեղծը, «Քաղցր են այն մեղեդիները զորս կը լսենք, աւելի քաղցր են սակայն անոնք՝ զորս ականջը չի լսեր»։ Այն երաժշտութիւնը՝ որուն վրայ կը խօսիմ, յիշատակներո՛ւնն է։ Անոնք՝ լուռ, թեթեւ ինչպէս թաւշաթեւ ցայգաթիթեռները, մեր ներքին էութեան խորքէն կը բարձրանան, վաթսուններցի վերջալուսային ժամերուն, եւ ստուերային ձայները խմբով կը չնչեն, — մանկական կամ խիստ ձայներ, սիրած դէմքերու կամ անհետացած բարեկամներու ձայներ, ծծմայրի մը երգին պէս հեռաւոր, դըգ-ուանքներու պէս քաղցր, նաեւ դառն՝ մերթ խղճի խայթի մը պէս։ Անոնք կը զարթուցանեն ընտանի գիւղանկարներ, բաղդաւոր կամ անբաղդ ժամեր, անոնք արցունքով թրջուած են կամ դեռ եւս անխառն ուրախութեամբ մը թրթռուն։ Բայց միշտ իրենց երգը սիրելի է մեզի, նախ՝ վասնզի մեր երբեմնի անձնաւորութենէն արձագանգ մը կ'անթեղեն, եւ յետոյ, վասն զի այս աննիւթական երաժշտութիւնը մեզի համար թերեւս անդէնն՝ յաւիտենական երաժշտութեան խորհրդաւոր նախերգանքն է։

Թարգմ. Ա. Կէճէեան ԱՆՏՐԷ ԹԷՕՐԻԷ



# 2. ՎԵՐՋԱԼՈՅՍ

Այն պահուն ուր ծիրանի իրիկնալոյսը կ'սկսի՝ հոգիս ալ իսկ եւ իսկ կ'սկսի անոր անձկալ, ինչպէս լուսատարփ թիթեռնիկ մը։ Ի՜նչ անօսր զգացում է այն որ անբացատրելի խռովքով կը լեցընէ զիս, վարանամիտ եւ կասկածոտ կ'ընէ։ Դուրս կը նայիմ զարմացած, աշխարհ նոր կ'երեւայ հիմայ եւ ինքզինքս կորսուած կը տեսնեմ այս տեղ։ Նոր երկինքը որ բոսորագոյն կը ծաւալի քաղաքին վրայ՝ զայն ուրիշ կերպ կը ցուցնէ։ Մէկէն ի մէկ կը յիշեմ թէ ի՜նչ սարսափելի տեղ է այս արգելանոցը ուր մօտ առ մօտ խռնուած՝ զիրար կը կեղեքենք։ Եւ զզուած եմ նմաններէս, ա՜խ, կ'ուզեմ փախչիլ՝ դուրս ելլել այս չորս պատէն ուր սադին անդին կը զարնուիմ մեղուի մը նման որ սխալմամբ հոս մտած ըլլայ։ Կ'ուզեմ փախչիլ այս բազմամբոխ պողոտաներէն ուր մարդիկ չափազանց անմիտ կ'երեւան իրենց անհոգութեամբը՝ քիչ մը իրենց իսկութեան վրայ խորհելու, քիչ մը աշխարհաքինին նայուածք ձգելու՝ — կ'ուզեմ մէն միայնակ ըլլալ բնութեան առջեւ որպէս զի դիւրին ըլլայ ինքզինքս ալ մոռնալ հայեցութեամբ։ Լուսեղէն օրհասը որ կ'սկսի՝ գուշակել կուտայ անեզր, արձակ կեանք մը երկար ատեն անձանձիր լցուած մէկ մտածութեան մը խաղաղաւէտ խոճոճումով, որ վերջալուսի բոսորութեան ընդհա-

նուր, դանդաղ տրտմութիւնն ունի, անոր յոգնածութիւնը երբ սակաւ առ սակաւ կը մարի, կը ցնդի՝ ցանկութեան կրակոտ երազի մը պէս։

Եւ փողոցին աղմուկը որ կուգայ միտքս խանգարել, անցուդարձը որ երթալով կը շատնայ, անտանելի կը դառնայ այն ատեն։

Կանթեղալոյսը կ'արտորայ՝ ձեռքի լուսածայր ցուպը պլպլացնելով եւ կարծես նշան կուտայ ամէնուն՝ տուն դառնալու։ Եւ ի՜նչ են մեծ մասամբ այս մարդիկը որ կ'աճապարեն տխմար չաղփաղփութեամբ զբաղելու ծխալից սենեակներու մէջ, քաղաքականութեան մեծ մարդոց վրայ խօսելու հիացմամբ, սակարանի գիները յեղյեղել ճաղատ ճակատներու լրջութեամբ։ Անոնց սիրտը երբե՛ք բան մը պիտի չզգայ, երբե՛ք պիտի չխանդոտի, երբե՛ք պիտի չտրտմի անծանօթ պատճառներով։ Քաղաքակրթեալ կեանք պիտի անցընեն չնչարգել քաղաքի մը մէջ՝ փոխանակ աշխարհիս մեծութիւնը տեսնելու, որոնք սրահէ սրահ պիտի պտըտին կեղծ ու ծիծաղելի ձեւերու միայն ուշադիր, կնոջ դիմաց ծունկի վրայ՝ առանց սիրոյ։

Եւ չռինդը կառքերուն որոնք կը թաւալին ապակիներ ցնցելով, բանուորին լպիրշ երգը որ դիմացի գինետունէն կուգայ՝ ուր կը նստի բաժակը առջին քաշած՝ կերկերաձայն կոկորդն ու հազոտ կուրծքը օղիով լուալու, երգէոնիկի մը սուր երաժշտութիւնը որուն դէմ շուներուն հաչոցը կը բողոքէ, քաղաքի կեանքին հազարումէկ ձայները այս պահուս ուր քնութիւնը լռակաց կը խորհի, չեմ ուզեր լսել։ Գիրքս անգամ կը սահի կ'իյնայ ձեռ-

քէս ու չի կրնար միտքս ամփոփուիլ անոր տողերուն մէջ։

Ու կը յիշեմ թէ հիմայ ի՜նչչափ անդորր են դաշտերու բլուրները։ Այդ տեղուա՜նքը կ'ուզէի թափառիլ։ Հոդ ներքին յուզումս կը գտնէր լայն ասպարէզ ուր խոյանար, եւ տակաւ խաղաղէր ընդարձակ խորհրդածութիւններով։

Ա՜խ, այո՛, ընդարձակ հոգեկից խորհրդածութիւնը պիտի գտնէի սօսիներու սարսռագին հովանիին տակ՝ երբ արեւու ճառագայթ մը կատարէ կատար կ'իյնայ. կամ թէ հին, խարխուլ կամուրջին մօտ՝ որուն ներքեւ կը փրփրի հեղեղատը արձագանգ արթնցնելով։

Կամուրջին տակ կնճիւններ բուսած են որոնց ծաղկակոպերը հազիւ հազ կը կարմրին եւ ջուրը երկայն ծղօտները ծեծելով՝ կը ծածանէ զանոնք։ Ոչ ոք կ'անցնի հոդկէ. դիմացը՝ անտառն ալ խորին եւ անձայն կը կենայ ու ես հոդ մինչեւ լուսնաժամը մտքովս յառած կը մնամ Հնդկաստանի սուրբերուն պէս։

Բայց, ափսո՜ս, լայնատարած է քաղաքը, հեռու են անտառ ու դաշտ, եւ փողոցներու աղմուկը աւելի ատելի կը դառնայ։ Կ'երթամ պատուհանս գոցել, բայց կը կայնիմ դիտելու երկու ծիծեռնակ որոնք անոր քարին տակ կախուած՝ բոյն կը շինեն ու արագ արագ կը թռչկոտին փողոցին մէկ ծայրէն միւսը՝ սուր ճիչերով։



# 3. ՀՈՎԻՏԻ ԵՐԳ



*Չէք լսեր վայրկեան մը, սուլերներ որ կը փափսաք. խօլական երգերը պուրակին, կը սոսկամ ձեր չեչտերուն վայրագութենէն, եւ ի զո՛ւր կը փորձեմ տաղել հոգիիս քերթուածը՝ որուն միամտութիւնը կը տրտմեցնէ ձեզ։*

*Մենաւոր — ա՛խ, թէ որ խոհերս ալ իս մենիկ ձգէին — առտուընէ ի վեր բնութեան խորհուրդներուն մէջ կը թափառիմ, ու լացի, որովհետեւ գեղեցկութիւնները կարծես կը հեգնեն զիս։*

*Տիւանդորրէս կ'արթննամ մահաքունի պղտոր երազով մը, ուրկէ դուն արթնցնէիր իս, դուն՝ ինծի սիրահար, դուն՝ յանկարծ իմ մօտս։*

*Ու «երկի՛նք տար իս» գոչէի քեզի, քաջալերուելով վհուկ ժպիտէդ որ, սրտիս չիրմին վրայ բացուած հմայքի վարդ, բացատրէր ինծի լռութիւնը սիրոյ յոյսին՝ դէպ ի երջանկութիւն գնացքին մէջ հարսնենի։*

*Հովիտը կը սահմանափակուի ուղղաձիգ կաղամախներու մէջ, որոնք՝ երկինքին կը մօլտան յաւերժաբար բաներ մը՝ զորս չեմ հասկնար։ Սիւքը, գեղեցիկ նուագի մը արձագանգին պէս գոգցես անհուն եւ վաղանցիկ, կը սրսկուի սաղարթներուն մէջէն ու կը ծնդուսէ կիզարոյր մացառները՝ որ կը թրթռան առաջին սիրոյ սարսուռին հանգոյն։*

Խնամուած բոյսերուն հիւանդագին արտաշըն-չումը կը փայփայէ ջիղերս՝ որոնք կը խրտչին լոյսի շլացքէն եւ մշուշներու կը նային։

Ձմռան տեղատարափներէն լճացած փոքրիկ ճահիճները իրենց մալարիայով կը խնկարկեն այս անձուկ տաճարի խորհուրդները՝ զորս կը պաշտեմ։

Ու ճճիները, անտոհմ հոգիին պէս որ կուլայ, թուփերուն մէջէն իրենց ճռինչներով աղօթել կը թուին։

Երանի՜ կուտամ անոնց։

Աղօթել գիտեն։

*
* *

Ջուրը, ծերպի մը մէջէն, խոյս կուտայ եւ կը սողոսկի գայլախազներուն վրայէն։ Պաղ է. կը զովացնեմ անով ճակտիս տենդը։

Եւ, միամիտ, կը նայիմ անոր ջուրին մէջ որ կը սահի տանելով ստուերները որ վերէն կը թա-փին ու կը թափառին իր նիհար ալքերուն մէջ։

Նի՜հար՝ ոչ իսկ առուակ մը՝ կարծես լանջքը հազիւ աղջնակի մը որ սիրոյ առաջին բնազդէն դողաց։

Կը նայիմ հոն սարսռագին, փնտռելով — կը վարանիմ խոստովանելու — պատկերդ որ սըր-տիս մէջ քանդակուած է եւ որ թերեւս բիբերէս ցոլանայ անոր վճիտ ողորկութեան մէջ։

Վճիտ՝ ինչպէս կապոյտը ուր քու հոգիդ կը ճամբորդէ, այգի եւ կաթի անուրջ, հեշտալա-ցիկ բոյրը շուշանին՝ զոր ինքս փրցուցի։

*
* *

Արեւի կաթիլներ, անթափանց սրտին որ մե-

նութենէն կը սրսփայ, կը զանա՛յեն հովտին կանաչութիւնը։

Տերեւի եւ ոսկիի դիւթախա՛ղ, կապոյտ սընդուսի մը կը փակչի գագաթը լերան եւ կատարը ծառերուն. կիզիչ լռութիւն մը երբեմն կեանք կուտայ գետինը փռուած գօս տերեւներուն, որոնք տխուր շչնկոց մը կը ճըւան։

Թիթեռնիկները կը յածին վայրի ծաղիկներուն վրայ։ Կը յիշեմ թէ որքա՛ն խաղացած եմ անոնց հետ։

Առաջին տրափները։

Թիթեռնիկները նոյնը կը մնան, աւա՛ղ, անոնք կը սիրեն ծաղիկները արեւին տակ. ու մենք որքա՞ն կը փոխուինք։

* * *

Ո՛վ կը հասկնայ իմ հոգիիս անդո՞րը։ Վարդի թերթերէ պատանքի մը մէջ փաթթեցին սիրոյ իտէալս։

Ու ինծի կը հարցնեն թէ ի՞նչու կը սիրեմ վերջալոյսը։

Ցետին պար մը կը դառնան ստուերները՝ որոնք կը մեղկանան արեւին շիջամերձ շողերուն ներքեւ։ Բնութեան սուգը չ'անցնիր՝ ըլլայ գարուն թէ ամառ միշտ սիրահար սրտերու պէս։

Ու տխրութիւնը կը շեշտուի։

Ցորեկի տօնին կը յաջորդէ գիշերի լռութիւնը։ Գեղին զանգակը կը հնչէ տկար զանգով մը։

Մխախոտի մշակները ալ պիտի հանգչին, վաղը վերսկսելու համար իրենց տաժան աշխատանքը։

Ու ես մշտաթափառ խոկս պիտի հանգչեցնեմ սիրոյդ երազէ բարձին վրայ։

ՎԱՀԱՆ ՄԱԼԵԶԵԱՆ

# 4. ԿԱՊՈՅՏԻՆ ՏԱԿ

Գեղէն երկու քայլ դուրս, լայնատարած գետինները են որ կը փռուին։ Կանաչի անսահման տիպարութեան վերեւ ու արեւմտի երկայն եւ ելեւէջաւոր հորիզոնին կռնըկովը պառկած, գեղանի վերջալոյսը ոսկիի եւ ծիրանիի փոխն ի փոխ ողողումի մը մէջ, կ'երազէ ու կը նուաղի։ Նրբին երանգներու յաջորդութիւն մը, իր ամպէ կապոյտ անկողնին նուաղած. եզերքներուն վրայ կը դեգերի։ Տեսարանը գեղեցկութեան ու ներդաշնակութեան կրկին հանգամանքներով կը փայլի, ու բնութեան լեզուէն հասկցող մարդուն համար անկարելի է չզգալ հաղորդութեան այն լուսաւոր նրբին երիզը, որ կ'երկարի համագոյներու յարաբերութիւններուն մէջ։

Մօտիկս, մարմանդին վրայ նստած, ճերմակ-քամբակ գառնուկներու հօտիկ մը կ'արածի։ Բոժոժիկի անուշ թնդիւն մը մերթ անկապ երաժըշտութեան քանի մը անուշ վանկեր կը թրթռացընէ, մատաղ հօտազն՝ ընկողմանած արեւախիտ կանաչ կապերտին վրայ. սրբահար պայի մը նման, եղէգի նրբին սրինգով, տարտամ սրինգով, տարտամ ու անուշ երաժշտութիւն մը կը փորձէ։ — Ի՜նչ մաքուր ու գրաւիչ հովուերգական։

Հարթ ու լայն ճամբուն վրայէն, որուն երկու եզերքներովը վայրի վարդերը, մորմենիններն ու վայրի սալորենիները կը ծաղկին, երկրագործներ

կը վերադառնան՝ մաճն ու գութանը ժողված ու դանդաղ եւ հուժկու եզներուն ճիտէն կախուած։ Ու եզներուն յամր քալուածքին ու ծանր նայուածքին մէջ օրուան աշխատութեան յոգնութիւնը կը խտանայ, կարծես, եւ երկրագործներուն բահերն ալ բրիչները, Բիւվիս տը Շավանի հրաշակերտներէն մէկին վարիանքը կը թուին ըլլալ։

*
* *

Քիչ մը ատեն, շարք մը հողմաղացներ՝ իրենց վտիտ թեւերը յոգնութեան եւ սպառումի տարածումով մը պարզած՝ անվերջանալի խաչելութեան մը չարչարանքին խորհրդանշանը մատներել կուտան։ Ու ծառի մը տակ քանի մը զուարթ եւ երջանիկ ընտանիքներ կը ոլքատան, ուր կանանչը խիտ ու զմրխտագոյն թաւիշի մը պէս կը փռուի։

Դիմացը, արեւելքի կողմը, Քուրու Տաղի հուժկու եւ մթին բազուկները դիրար գրկելով, իրարու խառնուելով, պայքարի, ըմբշամարտութեան պատկեր մը կը ձեւացնեն։ Անոնց ստորոտը արտերու երկրաչափական մաքուր կանաչութիւններուն մէջ, գիւղանկարի տարտամ ուրուանկարներ կը գծագրուին, ծառերու՝ անորոշ՝ ուրուագիծ շարքերով։

Քիչ մըն ալ այգիներուն կողմը։

Բլրակներու կանանչ կողիկներուն վրայ, իրենց գոյնզգոյն աչուկները, տակաւին երկչոտ ամփոփումով մը, բանալ սկսած են դաշտերու բոլոր անանուն ծաղիկները։

Մացառներու ճնճղուկները սկսած են իրենց իրիկնամուտի մաքուր ու անմեղ սիրահարութիւն-

*նորը, եւ արտօսրը, այդ միակ պզտիկ թռչունը՝ մեծ բարձրութիւններու տենչանքովը արբշիռ՝ վերը, կապոյտին խորերուն մէջէն, ճռուողուն երգերու մէջ, իր հոգին ու սիրտը կը հատցնէ։ Ու հեռուհետէ կը բարձրանայ անկապոյտ խորութիւններու մէջ, անտեսանելի ըլլալու չափ, մինչդեռ կը լսեմ տակաւին իր երգը՝ որ վերերէն կուգայ։ Այն ատեն կը յիշեմ Շէլլին (1), մելամաղձութեան ու տառապանքի մեծագոյն բանաստեղծներէն մէկը, որ կապոյտներու մէջ կորսուող արտօսրին ետեւէն լացած է ինծի պէս, աննշան պզտիկ բանաստեղծ՝ աշխարհի մեծութիւններուն մէջ խեղդուած։*

*Եւ կը փորձեմ, բլրակին վրան ու ծաղիկներուն վրան ընկողմանած՝ կռնակս հողին ու գետնին, աչքերս ու հոգիս կապոյտին ու արտօսրին, երազել վերջալոյսի այս նշուլաշար պահուն, բոլոր այն քաղցրութիւններուն վրայ, որոնք ինծի իրականութեան պատրանքը պիտի կարենային տալ, որոնք իմ պարպուած սրտիս մէջ կեանքի սէրը պիտի կարենային լեցնել։*

*Հիմա՛, կրնա՛ս երթալ, աղուոր, լուսաւոր արեւ—երգէ՛, զեփիւռ, երգէ՛ դուն ալ, կանաչ տերեւ, գլխիս վերեւ,—եկո՛ւր դուն ալ, անուշ գիշեր, ես աստղերուն տակ, ես աստղերուն մէջ, կ'ուզեմ երազել մինչեւ արշալոյս.—Մե՜ղք որ մինակ եմ։*

Կ.

---

(1) Շէլլի=Անգլիացի բանաստեղծ.

# 5. ԱՐՑՈՒՆՔ ՈՒ ԾԻԾԱՂ

*Արցունքն ու Ծիծաղը իրարու հետ կը վիճէին այսպէս․*

*—Ես քեզմէ գերագոյն եմ, կ'ըսէր Ծիծաղը, ես եմ կեանքին հզօրագոյն տարրը․ մարդը նախ զի՛ս կը ճանչնայ, մանկան առաջին բարբառը ժպի՛տն է։*

*—Ո՛չ, կը պատասխանէր Արցունքը, առաջին ձայնը զոր երախան կ'արձակէ՝ ցաւի ճիչ մըն է, ես կը շողամ իր աչքերուն մէջ երբ առաջին անգամ բացուին անոնք։*

Ծիծաղ․ *—Ե՛ս եմ որ կը ճառագայթեմ մօր դէմքին վրայ, երբ կողին մէջ կ'զգայ ան՝ թաքուն կեանքն իր զաւկին, եւ ես եմ որ անոր աչքերուն մէջ կը դնեմ, երբ մանկիկը ծնի, այն նայուածքը, զոր բանաստեղծներն երկինքին հետ բաղդատեցին։*

Արցունք․ *—Ես եմ որ մօր թարթիչներէն կը կախուիմ, երբ երկունքի ցաւերուն մէջ կը ծնի ան՝ իր զաւակը, որովհետեւ իր մայրը դատապարտուած է տանջանքի մէջ ծնելու, եւ ե՛ս եմ որ, երբ մա՛հը մանուկին տխեղծ կեանքին վրայ փչէ, անոր բիբերուն խորը կը դնեմ այն նայուածքը, զոր բանաստեղծները անդունդին հետ բաղդատեցին։*

Ծիծաղ․ *—Բնութեան մէջ՝ ե՛ս կ'իշխեմ, արեւն*

երկնքին ծիծաղն է, որ կեանք կը հեղու աշխարհի վրայ, աստղերը գիշերին ժպիտներն են, որ խաւարը կը լուսաւորեն, այգն առաւօտին ծիծաղն է, որուն առջեւ ամօթահար խոյս կուտայ աղջամուղջը։

Արցունք.—Ես ցօղն եմ որ խոտերուն նուրբ վիզերը մարգարիտներով կը պճնէ, ես ամպն եմ որ կ՚որոտայ եւ ծովը՝ որ կը մռնչէ, ես հեղեղն եմ որ կը գահավիժի, եւ առուակն եմ որ կը մրմնջէ, ես եմ որ բնութեան մէջ կը տիրապետեմ։

Ծիծաղ.—Ես լոյսն եմ, եւ լոյսը առաջին ստեղծուածն է Արարչին։

Արցունք.—Բայց մութը լոյսէն առաջ կար, արարչագործութենէն առաջ քաոսը կար, որուն մէջ կը ծփար ջո՛ւրը, սկզբնական ու յաւիտենական տարրը, եւ ես չիթ մըն եմ քաոսէն։

Ծիծաղը չպատասխանեց։



# Ե. ՀԱՆԳԻՍՏ

## (ԱՐՁԱԿ ՔԵՐԹՈՒԱԾ)



Հոգի Աստուծոյ շրջէր
ի վերայ ջուրց :
Ս. ԳԻՐՔ

«Եղիցի լո՛յս» : Ու խառնիճ արգանդէն
Մթութիւնը խոյս կուտար .
Վարագոյրը բացուած էր ,
Տիեզերք Արարչին հետ դէմ առ դէմ ,
Երկիւղով մը կը դողար :
Աստուած դիտեց ,
Իր նայուածքը հրաշէկ —
Որմէ , ետքը , փոխ պիտի տար
Արծիւներուն ու կոյսերուն —
Ածեց չորս դին .
Ինք ալեւոր , ինք յոգնած էր ,
Ու վիզը ծուռ ,
Հանգիստի խորշ մը որոնեց :
Տիեզերքը , դեռ մանուկ ,
Կայտառ , յորդում մ'ունէր կարծես .
Տարերքները , նորածին ,
Կը խայտային անհուն լոյսով ողողուն :
Անքաւութիւնը կը շարժէր , ու կայուն ,
Խորշ մը չի կար ուր Արարիչը հանգչէր :
Ամէն տեղ հանգիստ գտնելէ յուսահատ՝

Ինկաւ աշխարհ, ջուրերուն վրայ Ովկիանին,
Ու հոն ծփալ սկսաւ:
Լոյսէ մազերը տարածած ալեաց վրան,
Ճակատը՝ վեր՝ լուսնակին,
Ճակատը վեհ՝ բոցէ տարերքներուն դարձուց,
Եւ հեւքով մը մտածեց.
—«Ամէն բան կատարեալ է,
Յաւերժական իմ կեանքէս
Բաշխեցի տիեզերքին,
Մեծ մեքենան լարեցի
Անհունութեան մը համար:

---

Աշխարհ ցնցուիլ սկսաւ,
Իր Աստուածային հիւրին ներքեւ կը դողար անձայն:
Փոքրիկը՝ վախէն հեռու կը փախչէր,
Կապարի պէս ծանր լռութեան մէջ
Որոշ կը լսուէր Աստուծոյ սրտին ձայնը:
Հատիկ հատիկ, սակայն լեցուն անբաւ սարսուռով:
«Ամէն բան կատարեալ է» շարունակեց մտածելը.
«Ջնջում, վերածնում, ծնում ու ջնջում,»
«Ամէն բան պիտի փոխուի, ու միշտ»
«Հիւլէ մը պիտի չջնջուի ամէնքէն,»
«Խո՛րշ մը, հանգիստի անկիւն մը,»
«Խո՛րշ մը տուէք յոգնած Աստուծոյ համար:»
Վիթխարի տարերք շարունակեցին ընթացքնին,
Փոքրիկը հեռուներէն մռնչել սկսաւ,
Ովկիանը կը ծփար անհանդարտ ու փրփրալի,
Եւ յոգնա՛ծ արարչագործութենէն՝
Յօրանջեց Աստուած:

Ձանձրոյթի այդ հառաչը՝ Աստուծոյ սրտէն թռած՝
Գնաց Եդեմ, հողին խառնուեցաւ,
Ու ռոպէ մը ետք Ադամ՝ ինք ալ ձանձրոյթ համակ՝
Հանգիստ անկիւն մը կ'որոնէր:

*
* *

«Նորութի՛ւն» շարունակեց մտածել Աստուած,
— Վեցերորդ օրը ծագած էր արդէն
«Ահա նոր աշխարհ մը, դո՛ւն ալ կը ձանձրանաս...:
«Լա՛ւ, ընկերութիւնը մեզի կը նուիրեմ:
«Արեւ, լուսին, ովկիան, հով, գեփիւռ, ծաղիկներ,
«Թող փայլին, թող երգեն, թող բուրեն մեզ համար:
«Ի՞նչ, գոհ չե՞ս, ա՛ռ մեզի ընկերուհի մըն ալ,
«Ձանձրոյթի շփացա՛ծ զաւակ...:»
Եւ Մայիսի բուրումով լեցուն,
Աստուած՝ Եւան կը նուիրէր Ադամին:
«Միայն, ըսաւ, երբոր յոգնիմ, ինծի համար»
«Տեղ մը պահեցէք, որ հանգչիմ ձեր սրտին մէջ...:»
Իսկ Ադամ կը յօրանջէր անդադար,
Դժգոհ՝ կարծես՝ բնութենէն, աշխարհէն,
Անհռելի իտէալին կը յառէր:
Եւա կը համոզէր Ադամը·
«Ուզէ՛, Ան Աստուած է, ամէն բան կուտայ·»
«Գեղեցկութիւն, գիտութիւն, անմահութիւն»:
Աստուած տուաւ բոլո՛րն ալ,
Անյագ հոգին չէր գոհանար ատոնցմով:
«Տո՛ւր, տո՛ւր, աւելի՛ն տուր,
«Աստուածութեանդ կէ՛սը տուր,»
«Կը ձանձրանա՛մ, ա՛խ, հանգչելու խորշ մը տուր»:

*
* *

Ովկիանին վրայ դեռ կը ծփար Աստուած.
Մտածեց. «Հանգչելու խո՞րշ մը,
«Բայց Ե՛ս չի գտայ զայն...:»
Ու իրիկուան դէմ, բռնած Ադամի ձեռքէն,
«Եկո՛ւր տանիմ» ըսաւ, «փնտռած հանգիստդ՝ հո՛ն:»
Քալեցին, քալեցին: Լուսնկան կը կարմրէր:
Ադամ պաղ մը զգաց յանկարծ.
Աստուած մեկնած էր քովէն.
Շիրմին սեւ փոսը կը փռուէր ոտքին տակ.
Եւ ամպերէն՝ Աստուած որոտալով՝
«Ձանձրոյթի՛ զաւակ,
«Յաւիտենական հանգիստըդ հո՛ն է» ըսաւ...:

Ռ. ՈՐԲԵՐԵԱՆ



# 7. ՁԿՆՈՐՍԸ

(ՊԱԼԼԱՏ)

*Ջուրը եռաց, ջուրն ուռեցաւ ափը, ձկնորս մը նստեր, հանդարտ՝ կարթին կը նայէր, մինչեւ սրտին խորը զով, եւ այսպէս նստած երբ կը դիտէր, ալիքը դէպ ի վեր կը ճեղքուի, յուզուած ջուրէն տամուկ կին մը դուրս կը ժայթքէ։*

*Կինը երգեց անոր, կինը խօսեցաւ անոր, ինչո՞ւ ծոցս կը խուզարկես մարդկային միջոցներով, մարդկային փափագներով, քու սահմանէդ դուրս՝ մահուան վիհին մէջ։ Ա՜խ, եթէ գիտնայի՛ր՝ ի՛նչպէս ձկնիկը երջանիկ է յատակը, հոն պիտի գայիր, եւ այն ատեն առողջ պիտի ըլլայիր։*

*Սիրուն արեւը, ինչպէս լուսինն ալ, չե՞ն լողար ծովուն մէջ. անոնց պատկերը, երբ ջուրը ծծէ, կրկնապատիկ աղուոր չ՚ա՞նդրադառնար, քեզ չ՚ը՞նդգրկեր խորունկ երկինքը, խոնաւութեամբ լուսաւորուած կապոյտը։ Քու դէմքդ իսկ չի՞ հայելանար հոն՝ այս յաւիտենական տարածութեան մէջ։*

*Ջուրը եռաց, ջուրն ուռեցաւ. եւ անոր մէջ ոտքերը փայփայեց, իր սիրտը այնչափ ըղձանքով առլցուեցաւ՝ որչափ սիրելի ողջոյնէ մը։ Կինը խօսեցաւ անոր, կինը երգեց անոր, ա՛լ անոր գործը լմնցած էր, կէս մը կինը զայն քաշեց, կէս մը ան ինքզինքը ձգեց, եւ աներեւոյթ եղաւ։*

ԿԷՕԹԷ

# 8. ՏՂՈՑ ՃԻՉԸ



*Մատաղ գառները մարգերուն մէջ կը մայեն.—Մատաղ թռչնիկներն իրենց բոյնին մէջ կը ճռճռան.—Մատաղ եղնորթներն իրենց շուքին հետ կը խաղան.—Մատաղ ծաղիկները դէպ ի արեւմուտք կը բացուին.—Բայց մատաղ, մատաղ տղաքները, ո՜վ եղբայրներս,—Տեսէ՛ք, ահա կուլան դառնօրէն,—Կուլա՛ն, մինչդեռ կը խաղան ուրիշները,—Անկայ մարդոց աշխարհին մէջ։*

*Ա՜խ, կը պոռան տղաքը, ա՛լ յոգնեցանք,—Ու չենք կրնար վազել ցատքել.—Եթէ դալար խոտերուն կարօտը կը քաշենք, անոր համար է—Որ կ'ուզենք պառկիլ հոն ու քնանալ։—Ծունկերնիս կը դողան երբ գետինը ծռինք,—Ու կը սայթաքինք երբ քալել ուզենք։—Մեր ծանր ու դալուկ կոպերուն վերեւ—Էն կարմիր ծաղիկը ձիւնի պէս տժգոյն կ'երեւայ,—Որովհետեւ օրն ի բուն մեր ճնշող բեռը կը քաշենք—Մութ ածուխին մէջէն, հողին տակ.—Կամ ամբողջ օրը երկաթէ անիւները կը մղենք—Մեծ գործարաններուն մէջ։*

*Օրն ի բուն անիւները կը դռնչեն ու կը դառնան,—Իրենց հովը երեսնուս նետելով,—Մինչեւ որ սիրտերնիս աւրուի, գլուխնիս պտոյտ ունենայ,—Մինչեւ որ պատերն անգամ դառնան իրենց տեղը։—Երկինքը կը դառնայ ճերմակ ու*

դողդոջուն մեծ պատուհանին մէջ. —Կը դառնայ երկայն լոյսն ալ որ պատերն ի վար կը կաթի.— Կը դառնան սեւ ճանճերն ալ որոնք ձեղունին վրայ կը վխտան. — Ամէն բան կը դառնայ, ամբողջ օրը, ու մենք ալ ամէնուն հետ կը դառնանք. —Եւ օրն ի բուն, երկաթէ անիւները կը խորդան,—Ու երբեմն, փափաք կ'զգանք աղաչելու անոնց. —«Ո՛վ անիւներ, —յիմար պաղատանքով մը — «Կեցէ՛ք: Գոնէ այ։օր լուռ — մնացէք:»

Այո՛: Լո՛ւռ մնացէք: Թողէ՛ք որ իրարու շընչելն իմանան—Վայրկեան մը գէթ, բերան բերնի: —Թողէ՛ք որ իրարու ձեռք բռնեն զովացնող սեղմումով մը — Իրենց քնքուշ մարդկային երիտասարդութեանը: —Թողէք որ հասկնան թէ այս մետաղէ ցուրտ շարժումը —Ամբողջ կեանքը չէ զոր Աստուած կը շինէ կամ կը յայտնէ, —Թողէ՛ք որ իրենց հոգին զօրացնեն այն մտածման դէմ — Թէ ձեր մէջ, թէ ձեր տակ միայն կ'ապրին, ո՛վ անիւներ: —Բայց նորէն, օրն ի բուն, երկաթէ անիւները յառաջ կ'ընթանան — Որպէս թէ ճակատագրին գործիքներն ըլլային, — Եւ այդ տղոց հոգիները, զոր Աստուած դէպ ի լոյսը կը կանչէ, —Մութին մէջ, կոյր, կը քաշկռտուին:

ՏԻԿԻՆ ԵԼԻԶԱՊԷԹ ՊԱՐԷԴ ՊՐԱՈՒՆԻՆԿ

## Ց. «ՔԷՄԱՆԻ»Ն



Փազար-Պաշիի, Վերին Վոսփորի այդ կեանքոտ զբօսավայրին, ամէնէն վառվռուն ու կենդանի իրիկունն է այն, ամբողջ ամառնային եղանակին մէջ, որու միջոցի՝ միայն կ'ապրի արդէն, եւ անկից վերջը, երբ բնութեան խիստ ազդակները ցոյց տան գլուխնին, երկինքէն, ծովէն, օդէն ու հողէն, ինքը կը թմրի կ'իյնայ անկեանք ու անշարժ միայնութեան մէջ, ձմեռը՝ անզգայ՝ պատի խորշերու, գետնի ծակերու մէջ անցընող անասուններուն նման։ Օղլի չոգիին ու Ինճէ Սազի կարօտող հառաչներուն գիրկընդխառնումէն ձուլուած խենթեցնող տաքութիւնը կը վայելէ ամէն մարդ, ցաւի ու երջանկութեան, տխուր ու անոյշ զգացմունքներու երկու իրերակից ովկիաններուն մէջտեղը առկախ, մազէ ցանցի մը մէջ բազմած օրօրուելով։

Կիներու վարդաբոյր ու կաթնաթոյր դէմքեր, վիզեր, ծոծրակներ, մեղրաթոր շրթունքներու մէջէ բացուող հեշտահոս բերաններ, ճլուըլուն անուշ խօսակցութիւններ, — անուշ՝ որովհետեւ անո՛ւշ կուգան նոյն պահուն, — կ'աւելցնեն հրայրքը զգացող ու զգայնո՛տ հոգիներուն։ Այրերու ոգեւոր զգացումները կը շատցնեն տապն ու պչրանքը կիներուն, սիրելու եւ սիրուելու · պէտքը անոնց փրփրած սիրտերուն։

Աչքերը կը փայլին ամէն «ապրող»ի դէմքին վրայ՝ ոմանք մթագնած են արդէն, հանդարտութենէն ալեկոծութեան ու ալեկոծութենէն նորէն հանդարտութեան անցնող մռայլ ծովերու նման, ու կը խօսի՛ն՝ Սեռի, Երաժշտութեան ու Գեղեցիկի — բնութեան այդ երրեակ հեշտանքներովը առլցուն կեանքի մը բովանդակ վայելքը արտացոլացնելով։

Նայուածքը անկայուն կ՚ոստոստէ գլխարկէ գլխարկ, կուրծքէ կուրծք, մանեկիկէ մանեկիկ ու կը սա՛հի կը մխրճուի այդ անմահացնող հեշտութիւններէն մէկ մեծագոյնին, Երգին ու Նուագին արտադրիչ պատճառին, ակին, աղբիւրին, արդանդին գո՛գը մինչեւ։

Հինգ այրեր են որ կը կազմեն հեշտագրգիռ ան ԻՆՃԷ Սազը, ծերուկ մը ու երիտասարդներ՝ որոնք գերի խաղերուն զորս դուրս կուտան իրենց կոկորդէն, ուտէն, քանոնէն կամ ջութակէն՝ կը պոռան, կը լռեն, կը հնչեն, կը մրմնջեն, զգալո՛վ իրենց մրմունջը, հնչիւնը, լռութիւնն ու պոռչըտուքը։

Ան, ջութակը մանաւանդ, որ կը ջախջախուի ճպոտին կրակոտ, զգայուն ելեւէջներուն տակ, թոքախտաւորի ահռելի սկըրթուքով մը կը քերէ մարդուն կոկորդն ի վար, կուրծքի ամբողջ վանդակի ներսիդին ու սիրտին խորչերը, ալիքները, փրփուրներ, խռովք, հաճոյք, լաց ու խինդ, արցունք ու զայրոյթ, ամէն, ամէն զգացում բըղխեցնելով հոն։

— Ջութա՛կ, թելերդ չփրթին, ապրի՛ս, կը

ձայնէ յանկարծ կենսապաշտ երիտասարդ մը, որ՝ Ջութակահա՛րին արթնցուցած ցնցող երգերուն անձնատուր՝ գարեջուրի շիշ մը առջեւը՝ կը սարսռայ ամէն մէկ բաժակի պարպուելուն, Ջութակին ամէն մէկ թելի թրթռալուն։

«Բէմանի»ն կը բորբոքի, իր արուեստագէտի հոգին՝ քարիւղին, ալքոլին, փայտի տաշեղներու խառնուրդ դիւրավառ զանգուած՝ կը բռնկի լուցկին այդ պզտիկ բոցէն ու կ՚այրի, կը տաքցնէ, կը հրդեհէ ամբողջ մարմինը, ամբողջ ջիղերն ու երակները։

Սեւ մազերէն ըմբոստ խոպոպ մը միայն իջած է սեւցած ճակատէն վար, միւսները պողպատ գամերու չափ ցցուն, շանթարգելներ են կարծես՝ որոնք կը քաշեն, կը լափեն զգացումի ամէն կայծակ, կամ ելեկտրական ասեղներ՝ որոնք իրենց սո՛ր ծայրերէն խինդ ու յոյզ ու խռովք կը հոսեն ընդունակ մարմիններուն մէջ։ Նիհա՛ր գլուխը անջատ կտորի մը չափ թոյլ, նետուած է Ջութակին իրանին վրայ։ Մշուշապատ աչքերը կը նային շեշտակի դէտին, անորոշ կէտի մը, ուր ի՛նչ հորիզոններ, ի՛նչ հմայքներ կը բացուին, ինչ խո՛ր հըրա՛յրքներ կը ժայթքեն Կէյզէրեան Աղբիւրներու ջերմ ու առատ բղխումով։

Կը ցնցուի անդադար, ›պրկուած են բոլոր ջիղերը։ Մատները չո՛ր, կը սարսռան թելերուն վըրայ, որոնք ճպոտէն խարազանուած՝ կը խօսին, կը դեղգեղեն, կը հառաչեն, կը խոստովանցնեն, կ՚աղօթեն ու կը պաշտեցնեն։

Ջութակահարը կը տառապի, տառապանքնե-

րուն ամանէն անուշներովը թերեւս. կը գալարուի, կը չարչրկուի, անոր կառչած՝ անոր ձուլուած՝ կը քայքայուի, լեռնակուտակ ալիքներու փոթորկին մէջ կապկպուող նաւուն պէս, որուն մէջ խռովքը կը տիրէ։

— Ջութա՛կդ չկոտրի՛ …։

Ու արուեստագէտը նորէն կը բռնկի, նետուող այդ կայծերուն ամէն մէկէն նոր վառք մը կը ստանան, իր միտքն ու սիրտը, եւ՝ Բնութեան անեղծ զաւակ՝ արեւելքի երաժշտութեան որդեգիր՝ կը սարսռայ ան անգամ մըն ալ, նորէն կը քաշքըշէ ճկուն ճպոտը, եւ կը խնկարկէ խորանը Տըրտմութեան Տաճարին։

Բ. ՇԱՀՊԱԶ



# 10. ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

## ԱՐՁԱԿ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

*Աշնանավերջն այն պահն է ուր Բնութիւնն իր Ամառուան հանդերձները կը հանէ՝ քնանալու համար Ձմեռուան քունը, ձիւներուն տարածուն վերմակին տակ։*

*Մեծ քայքայումն է որ կ'սկսի. ամէն բան կը տժգունի, ամէն բան կը թափի, ամէն բան կը մեռնի։*

*Թատերական ներկայացումէ մը յետոյ, թատրոնը մնացա՞ծ էք. տեսարանին փողփողմանց ու շքեղութեանց վրայ կ'իջնէ վարագոյրը, որուն ետեւ կը քակեն, կ'անդամահատեն, կ'անհետացնեն կեղծ այն աշխարհը. — բազմութիւնը դուրս կը խուժէ, նախ արդուզարդերէն, գոհարի, թաւիշի, ոսկիի ցոլքերէն եւ այտի, լանջքի, շրթունքի հրմայքէն մերկացնելով՝ թիկնաթոռ ու օթեակ, հետ տանելով աղմուկը, փայլը, զուարթութիւնը, կեանքը. սպասաւորը կը մարէ մէկիկ մէկիկ բոլոր լամպարներն ու ձեղունին լուսահոս ջահը. ա՛լ հիմայ ստուերն ու լռութիւնը գիրկընդխառն պիտի պառկին հոն մահու անշարժութեան մը մէջ։ — Միեւնոյն բանն է որ Բնութեան մէջ տեղի կ'ունենայ, երբ ծիրանազգեաց Ամառն հրաժեշտ կուտայ իր հուրերով եւ իր երփնաճոխութիւններով։*

*Տերեւները, դեղնած, կը թափին, զուժկան հո-*

վլին փչումին տակ. ու ինչ որ այդ տերեւներուն մէջ թաքչած էր, թռչուններուն խնծիղը, կը սլանայ հոլաթեւ՝ դէպի ո՛ւր որ միշտ կը ժպտի երկինքը. եւ ծառերը՝ կամաց կամաց հանուելով իրենց կանաչ զգեստէն՝ հիմայ կը դողդղան, իրենց սեւ վտիտ մերկութեան մէջ։

Առաջին ցուրտերը կ՚սկսին, ու Բնութիւնը՝ ամառուան հեշտաւէտ գաղջութեամբ դեռ մարմինը պարուրուած՝ մշուշներու շալը կը ձգէ ուսերուն, իր մերկ՝ մսկոտ ուսերուն որ կը սրսփան։

Մութ թանձր ամպեր կոյտ կոյտ կ՚ելլեն կ՚աղտոտեն երկինքը, մրոտելով անոր ջինջ լուսաւոր կապոյտը, սպաննելով անոր թափանցիկ երփնագեղ պայծառութիւնները, տարածուելով ծածկելով զայն ամբողջ, եւ ա՛լ մնաք բարով չքնաղ կարմիր արշալոյսներ ու հրավառ մելամաղձիկ արեւամուտներ եւ դիւթական աստեղազարդ գիշերներ. ա՛լ երկինքը՝ մութ, միօրինակ, ցած կափարիչ մըն է գերեզմանի։ Գացին, խարտիշահեր արեւն՝ իր արիւնոտ երիտասարդ ճառագայթներով, եւ արծաթագիսակ լուսինը իր դողդոջուն երազացան շողերով. հիմայ ծերուկ՝ դեղնած արեւ մըն է, որ ամպերուն մուշտակին մէջ փաթթուած, ուռած, ցրտին օդապարիկի մը պէս հազիւ երբեմն կ՚երեւայ, ինք իսկ մսելով՝ իր դողդոջուն ճառագայթներն ամփոփած. եւ եթէ երբեք լուսնի ծուէն մը, ցուրտէն կարմրած, կ՚երեւայ սեւ երկնակամարին մէկ պատառուածքէն, պատուհանէն կիսովին դուրս ելած պառաւի դէմք մը կը թուի։

Ծովն իր երեսը խոժոռած է. իր ջուրերն այլ

եւս չունին իրենց կապոյտ ժպիտները, իրենց թաւչային միապաղաղ մակերեւոյթները, իրենց վճիտ պայծառ թափանցկութիւնները․ քանդող հոգին անցած է, եւ կոհակներն, հիմայ ուռած, իրենց լորձնոտ չրթունքով կ'սպառնան. Ննջաւոր ծառը կը ցուցնէ ինքզինքը, եւ ա՛լ թռչուն մը պիտի չթառի հոն, ա՛լ լուսնի նշոյլ մը պիտի չխաղայ հոն, ա՛լ հաճոյքի նաւակ մը պիտի չսուրայ հոն, ա՛լ մարդկային մարմին մը պիտի չլողանայ հոն։ Մըրրիկները միայն պիտի վազեն անոր վրայէն եւ անիկա պիտի մանչէ անոնց վայրագ ընթացքին տակ։

Իրենց ծա՛ղիկները կը կորսնցնեն պարտէզները, եւ իրենց դալարիքը՝ դաշտերն, որոնց ցրտին դատարկութեան մէջ ա՛լ պիտի չմայեն ոչխարները, այծերն ա՛լ չոստոստեն պիտի։

Եւ ծաղիկներուն, դալարիքին ու այծերուն հետ, կեանքն ալ որ բացօթեայ, արեւին տակ կը խայտար՝ պիտի քաշուի, պիտի բանտուի տուներուն մէջ։ Պարա՛պ անտառներն, բարեկամներու զոյգերն ալ պիտի չթափառին թեւէ թեւ. պարա՛պ՝ ծովափներն, հիմա ծովին ճերմակ կատաղութեամբ ծածկուած, ուր ա՛լ պիտի ման չգան զբօսասէրները. պարա՛պ՝ հանրային պարտէզներն ուր նուագածութիւնն ա՛լ պիտի չհնչեցնէ իր տարածուն զուարթութիւնը եւ ուր գիշերը ծառերու մէջէն լապտերներ պիտի չվառեն իրենց լուսացայտ նայուածքը։ Ամէն տեղ տժգոյն միայնութիւն մը որ ցուրտէ, կը սարսռայ։

Ու տակաւ կ'սկսին անձրեւները, սգաւոր երկինքին անհուն տրտմութիւնը որ կ'արտասուէ։

Ցուրտերը կը սաստկանան, հովերը մորթը կը խածնեն, վայրենի հովերը որք հիմայ իրենց կատարեալ եւ անդիմադրելի տիրապետութիւնը կ՚ստանան. անոնց ամէնի անցքը կը դողդղացնէ պատուհանները՝ ցուրտէն կափկափող ակռաներու պէս, կը ցնցէ ծառերը, կը պատռէ ծովը, եւ գիշերը, մութին մէջ, ահով մտիկ կ՚ընենք անոնց մեներգը որ օդին մէջ կ՚ոռնայ։

Իր պերճանքէն զրկուած՝ մերկ, վտիտ, տգեղ, աղտոտ՝ Բնութիւնը կը զոփայ հիւանդ ծերուկ կնկան մը պէս. քանի մը օր ալ՝ ու պիտի պառկի, ուժասպառ՝ համասփիւռ խաղաղ ձիւներուն տակ, ճերմակ բանտ անսահման՝ ուր այդ հսկայ շերամը պիտի քնանայ, մինչեւ որ քանի մը ամիսէն աւելի գեղեցիկ դուրս սլանայ Թիթեռնիկ-Գարունը։



# 11. ՀՈՎԻՏԸ



Ամէն բանէ, յոյսէ՛ն անգամ, սիրտս ա՛լ անյոյս, պարտասուն՝
Գիտի տաղտուկ չի տայ բախտին, ըղձանքներովն իր անհուն.
Տո՛ւր ինձ միայն, ո՜հ, տուր ինձ, դուն, ո՛վ հովիտ իմ մանկութեան
Օթեւան մը, օրուան մ՚համար, ուր ըսպասեմ ես մահուան:
Կը տեսնեմ արդ թէ կեանքն ինչպէս ամպի մ՚ետին ինձ համար,
Անցեալին թանձր ըստուերին տակ կը նըւաղի աննշմար,
Սէ՛րն է միայն. որ մընայ դեռ՝ զերդ պատկեր մը վեհաշուք:
Որ կ՚ապրի լոկ զարթնումէն ետք երազէ մը վա-ղանցուկ,
Հանգստացի՛ր ալ, հոգեա՛կդ իմ, կայանին մէջ այս յետին,
Ուղեւորի մը պէս, որ՝ սիրտն յուսով զեղուն, խնդագին՝
Չի փութար ներս, այլ կը նստի դուրսը, քաղքին դրան քով,
Եւ կը շնչէ պահ մ՚անուշիկ իրիկուան օդն հեշ-տանքո՛վ:
Քու օրերդ ալ, նըման աշնան օրերուն, կարճ, տրտմահար.

Կը խոնարհին ինչպէս շուքը բլրակներուն դարն ի վար,
Մտերմութիւնը քեզ կը մատնէ, գութն հայի քեզ անըզգայ,
Եւ մինաւոր կը յածիս դու շիրիմներու ճամբուն վրայ.
Բայց բնութիւնն հո՛ն է՝ որ քեզ կ՚ուղղէ սիրով հրաւէր,
Խորասուզուէ՛ իր ծոցին մէջ որ միշտ դիմացդ է բացուեր.
Շուրջդ ամէն բան երբ կը փոխուի, Բնութիւնն է նոյնն յարատեւ,
Եւ օրերուդ վըրայ ծագէ ամէն առտու նոյն արեւ:

*Թարգմ.* Ե. ՎԱՐԴԱՆԵԱՆ ԼԱՄԱՐԹԻՆ

## 12. ԳԱՐՆԱՆ ԵՐԳԵՐ

### ՅՈՒԼԵԱՆԵՐԸ

Խուրձ մը թարմ Յուլեա ձեռքեր խնամոտ
Բերեր դրեր են հոս սընարիս մօտ.
Ծըռիմ ու ինչպէս նշխարի մը սուրբ՝
Համբուրեմ իրենց տերեւները նուրբ.
Հրճուանքով ծըծեմ բուրումներն անուշ
Նախանձոտ վարդին պէս չունենար փուշ,
Այլ ողորկ՝ փափուկ է իրենց ցողուն,
Ա՜հ, ի՜նչ, զգլխիչ հոտ մը կը զեղուն,
Ու որչա՜փ չքնաղ է իրենց պսակ՝
Վեց թերթիկներէ յօրինուած հիւսակ:

Անոնք ծնած են ձորերու եզերք.
Երբ այգը ծագէր, երբ իրենց յանկերգ
Կը նուաղէին նախշուն թռչնիկներ..
Հոն կը փքքէին այս խեղճ ծաղիկներ.
Ու գուրգուրալով մեղմիկ հովերն ալ
Գըգուէին իրենց կոհակներ ծալ ծալ:
Բայց վարձկան ձեռքեր զանոնք փրցուցին.
Ու դեղձան հիւրերն եկան իմ խուցին
Պահ մը խնկարկել մըթնոլորտ խոնաւ,
Իրենց հեշտ բոյրին հոգիս էր ծարաւ:
Ու ծաղկազարդի ծաղիկներ սիրուն
Դըրախտին ծոցէն ինձ բերեն գարուն,
Բայց, ափսո՜ս իրենց կեանքն անուշահոտ
Շուտով մարեցաւ, ու ափ մը չոր խոտ,
Ցիրուցան եղան յիմար հովերուն,
Ու ես կը խորհիմ տրտմութեամբ լեցուն
Անոյշ ծաղիկներ թէ ունին հոգեակ՝
Թերեւս ան իրենց բոյրն է անուշակ,
Ու բոյրը հասնի՝ ցնդի խուսափուկ...:
Արդեօք մեր հոգի՞ն ալ բոյր մ'է փափուկ:

Մ. ԱՃԷՄԵԱՆ



# 13. ՏԵՐԵՒԱԹԱՓ



Ծածկած էր աշունն երկրիս երեսը
Տերեւաթափով սոյն մեր անտառին
Ա՛լ խորհրդաւոր ոչ էր պուրակը,
Լռած էր անուշ ձայնը սոխակին:
Ծաղիկ հասակին մահին դուռ հասած՝
Տըխուր պատանիկ՝ դանդաղ քայլով մը,
Վերջին անգամ մ՚ալ կը շրջէր յոգնած՝
Ցանկալի անտառն իր մանկութեանը:
«Մընա՛ դու բարո՛վ... անտառդ իմ սիրուն,
Կ՚ընկնիմ ես, սուգըդ գուժկան իմ բաղդին,
Կը տեսնեմ մահիս ես գուշակութիւն
Ցամէն այն տերեւ որ գետին կ՚ընկնին:»
Կը մեռնի՛մ,...: Նըսեմ հովեր հարաւի
Ցուրտ շընչովն ՚իրենց՝ զիս շօշափեցին.
Գեղեցիկ գարունս աչքէ կը փախչի
Իբրեւ ըստուեր մը չքոտի ու սին,
Ընկի՛ր դու, ընկի՛ր, վաղանցուկ թերթիկ.
Սա տըխուր ճամբան քօղարկէ՛ աչքէ,
Ձայն վայր ուր վաղիւ կը մտնիմ լռիկ,
Ծածկէ՛ իմ մօրըս յուսահատ ցաւէ:
Բայց իմ սիրուհիս երբոր հերարձակ
Այն լուռ ամայի ծառաստունկին տակ
Արեւին մուտքին գայ զիս արտասուել,
Թեթեւ շըրշիւնովդ նայէ՛ վերցընել
Ըստուերս, որ գտնեմ քիչ մը ըսփոփանք:»

Ըսաւ ու գնաց... եւ ա՛լ չը դարձաւ:
Վերջին տերեւն որ անտառէն ընկաւ,
Կընքեց ըզվերջին օրն անոր կեանքին.
Կաղնիին ներքեւ տապանը բացին...
Սակայն սիրուհին երբեք հոն չեկաւ.
Մենակայ վէմին չեղաւ այցելու,
Ու խաշնարածը՝ մօտ հովիտներու՝
Միայն վըրդովեց ոտքին ձայնովը
Տխուր դամբանին խոր լռութիւնը:

Ն. ՌՈՒՍԻՆԵԱՆ



# 14. ՔՈՅՐՆ ՄԵՌԵԱԼ (*)

«Միակ քոյրս էր, — կ՚ըսէր կոյսն ողբագին —,
Միակ եղբայրն զոր ինձ տուած էր երկին.
Նա հինգ ամօք երիցագոյն քան զիս էր,
Եւ երբ մեր մայր շատ վաղ մեռաւ թռաւ յեթեր,
Անհայր արդէն՝ նա ինձ եղաւ հայր ու մայր.
Ո՜հ, իւր պէպէքն էի որ վրայ գուրգուրայր։
«Նա դեռ տղայ, ընդունելով այն պաշտօն
Զոր տայր իրեն մեր տխուր բախտ. լուրջ՝ զգօն
Էր եւ խոհուն, եւ համատի ընկերներ
Թեթեւաքայլ երբ կուգային զայն տանել
Ի պար, ի պտոյտ. «Ո՜հ, կ՚ըսէր նա, քո՛յրըս հոգայ։»
Եւ կը ծըռէր կրկին գլուխն ի վերայ
Մի գոգնոցի կամ գլխարկի զոր չինէր
Ինծի համար, որ խաղալի առընթեր։
Երբ տրտմեցնէր. զիս մի աղէտ մանկային,
Իսկոյն իւր գոգ կը վազէի լալագին.
Եւ իւր համբոյրք կը ջնջէին իմ արցունք,
Եւ ժպիտն անդրէն դառնայր գտնէր զիմ աչկունք.
Երեկոյին նա կը կցէր զիմ ձեռներ,
Ծունըր դնէի իւր քովիկը աղօթկեր.
Թոթովելով բառերն իրեն աղօթքին
Եւ իրեն հետ նայելով հոն ուր էին,
Կ՚ըսէր, մայրիկն ու հայրիկը ւ՚ ամենուն
Հայրը՝ Աստուած, եւ մանաւանդ որբերուն։
Երբ քունն աչերս առնոյր, այլ բարձ չուզէի՝

(*) Այս ոտանաւորը ուղղուած է առ Օր. Տիրուհի Գալէնտէր, որ քոյրն է Տիկին Ղամբէռուհի Դ. Ռշտունիի.

*Բաց իւր ծունգէն, եւ առաւօտուն զարթնուի*
*Իւր համբուրով ։*
*«Այսպէս անցին տարիներ ։*
*Մի ամառուին (*) ընտրեց ում զիւր տուաւ սէր,*
*Տրխուր իւր պէս, թէպէտ բնաւից տայր ծիծաղ.*
*Եւ գրաւական իւրեանց սիրոյն մի չքնաղ,*
*Դստրիկ (**) եկաւ ծաղկել յիւրեանց մթին բուն ։*
*Այլ չէր յոգնած ճակատագիրն ապառում.*
*Մեռա՜ւ իւր այր, եւ միայնա՛կ մնաց ինք՝*
*Հիւանդագին եւ սրտահար, որք մ'ի գիրկ.*
*— Մահու համբոյր մի նմա տուած էր Հիմէն. —*
*Ցամառ հազ մի օգին քաղէր իւր կրծէն ։*
*Հուսկ անկողին ինկաւ ուստի այլ չելաւ,*
*Տառապեցա՜ւ արտասուելով վաղազրաւ*
*Իւր մանկութիւն, եւ սուղ միջոցն ուր կարծեր*
*Էր թէ ահա բախտին ճակատ կը ժպտէր ։*
*Իւր առաջին ամաց վիշտը ե՛ս էի,*
*Իւր հուսկ ժամուց տանջանքն եղաւ խելացի*
*Անմեղ աղջիկն որ մամային կ'ըսէր, «Ե՛լ,*
*«Շատ պառկեցար, շատոնց զիս գիրկդ չես առել.*
*«Ի՞նչու գոցես աչուկդ, ինծի սրդողե՞ր*
*«Ես, ա՛լ խելօք կը կենամ, զիս չե՞ս սիրեր.»*
*Սպրդեցաւ արցունք մի գոց աչերէն,*
*Մինչ իւր հոգին խուսափեր էր շրթներէն ։*
*Ա՜հ, չէր ուզած մեռնիլ առանց տեսնելու*
*Զիս հուսկ նուագ եւ գրկելու, — զի երկու*
*Օրէ հետէ քովը չէի — եւ հոգին՝*
*Մերձ ի թռանել՝ բանտարկեր էր ի ծոցին.*

(*) Գ. Հ. Ոշտունեին ։
(**) Տիկին Վարդանուշ Ց. Ունճեան (ծնեալ Ոշտունի) ։

«Ո՜հ, Պարոն, դեռ երեսնամեայ չէր իմ քոյր.
Արդ աշխարհ՜ն ինձ անապատ մ'է լոկ թափուր.
Երրորդ անգամ, ա՜խ, որբացայ, ի՜նչպէս արդ
Աղբիւր հապա. յայն քաղցր անուանց զորոնք մարդ
Կուտայ այնոց ոյց քով ծընի եւ կ'ապրի,
Եւ ոյք այսպէս մասունքն են իւր սրտեկի.
Լոկ ֆոյր անուննն ինձ ներուած էր երկինքէն.
Եւ արդ եւ զա՛յն կը խըլէ բախտ իմ չրթնէն.
Մերկ ծառ մի եմ երկրի վերայ, հողմն երբոր
Փչէ ուժգին, կը կքէ գլխ կորակոր,
Եւ չունիմ զոք առընթեր ինձ յոր յենում...։
Իսկ որբն, աւա՜ղ, ձա՜գ ոյր մըրիկ աւրեց բոյն...։»
Եւ կ'արտասուէր։ Կարկեալ կայի իւր խորին
Սուգի առջեւ, եւ յուզեալ էր իմ հոգին.
Ո՜հ, ի՜նչ սփոփ կարէի տալ եղկելւոյն,
Ե՛ս այլ զգացած էի պարապն այն անհուն
Զոր մահ ի մեզ թողու, չափա՛ծ անդնդին
Մութ խորութիւնն որ կը կընէ մեր սրտին
Հատորները, եւ յոր՝ ապուշ՝ յառեմք մեր
Զորցած աչեր, հարցանելով ի զուր «է՞ր»։
«Լա՛ց, գոչեցի. լա՛մք, այո՛, լա՛մք. մահացուք
Զունին այլ ոյժ բայց թէ հառաչք՝ արտասուք,
Երբ անծանօթն այն զօրութիւն զոր կ'զգամք
Ի մեր վերայ եւ զոր սակայն չիմանամք,
Կը զարնէ մեզ. ի՛մ կարող եմք, — բայց եթէ
Արտասուելոյ որպէս մանուկ մի առնէ,
Լա՛մք եւ նըմա փառք տամք զի մեզ արցունքի
Գէթ չը զլացաւ շնորհ՜ն, ու ցօղ եռ սըրտի։»

ԱՐԱՑ
(Ռ. Յ. Պերպերեան)

## 15. ԱՆՎԵՐԱԴԱՐՁ



Գարունները միշտ հիներն են
Վարդածիծաղ ու բոցանոյշ,
Ամպեր կապոյտ, աչքեր մեղոյշ
Գինովութիւն մը կը բուրեն:

Ալեակներ նո՛ր են յաւիտեան,
Վաղն արշալո՛յսն է նոր դարուն,
Վիշտեր սրտէն փախչին հեռուն,
Ու խառնըւին հին մթութեան:

Երազանքի քաղցր են օրեր,
Լոյսով, բոյրով շաղուած յաւէտ,
Կեանքի ուղին միշտ արփաւէտ՝
Ծաղիկներուն մէ՛ջն է պահուեր:

Գետը պղտոր չէ՛ ալ հիմակ,
Վճիտ ջուրով կը ծաւալի,
Լուսընկային զերդ հայելի,
Լճակին պէս անդո՛րր համակ:

*
* *

Հոգին, սակայն, չո՛ւզեր հաւտալ,
Ամէն բան կեղծ կուգայ կարծես,
Մութին մարող ասուպին պէս
Կ'ուզէ ինքն ալ մութի՛ն երթալ:

Կը վերածնին միշտ գարուններ,
Թռչունները կուգա՛ն նորէն,
Տես արծիւներն ալ ամպերէն
Կը սլանան աւելի վեր:

Կ'որոնեմ զուր ու սրտաբեկ՝
Ձեզ չի տուի՛ գերեզմանին.
Շուրջըս համայնք վերածաղկի՛ն
Մտերմութի՛ւն, հաւատք, ո՞ւր էք...:

Ռ. ՈՐԲԵՐԵԱՆ

## 16. ՑԱՄՔԱԾ ԱՂԲԻՒՐ

Դաշտն եզերող ճամբուն վրայ ծիծաղկոտ,
Քիչ մը հեռու գիւղին հանդարտ շըշուկէն,
Փոքր աղբիւր մը կար աստնօք, որուն մօտ
Հանգիստ կ'առնէր ճամբորդն օրուան խոնջէնքէն:

Հեզամրմունջ ցայտումներով ներդաշնակ,
Այդ աղբիւրէն վճիտ ջուր մը կը հոսէր,
Ու ջուրն անյայտ կ'ըլլար հեռուն, մարգին տակ,
Ոռոգելով ճամբուն դալարն ու բոյսեր:

Տղայութեանս օրերուն մէջ թարմաւէտ,
Երբ սիրտն անվիշտ է դեռ, կեանքն ալ յուսատու,
Հո՛ն կ'երթայի, գիւղին մատղաշ տղոց հետ,
Ճակտիս կըրակն իր ջուրին մէջ մարելու:

Տարիներ վերջ, երբոր սրտո՛վ դալկահար՝
Կրկին անցայ այդ երբեմնի շէն ճամբէն,
Աղբիւրն անջուր գտայ, գետինն անդալար,
Թռչնոց ձայնն ալ վաղուց դադրած էր արդէն։

Եւ երեւոյթն այդ քայքայման, անշշուկ՝
Դիտեցի ես հոգիս խոցուած կարեվէր,
Աղբիւրին մօտ, ծառն ալ չի՛ տար անոր շուք,
Դալարազուրկ ծառն է տըխուր, անըստուեր։

Արեւուն դէմ, ցամքած աղբիւրն է լըռին
Փոշեպարար, ծարաւահիւծ, տխրամած.
Շուրջը դադրած է շունչն անուշ զեփիւռին,
Հո՛ն, անհունին հսկայ ձանձրոյթն է տիրած։

Ճանապարհին վրայ անշէն, ամայի,
Աղբիւրն հիմայ կը նիրհէ խո՛ր՝ անվրդով.
Տրտում աչքով ճամբորդն անոր կը նայի,
Ումպ մը ջուրի սին կարօտը քաշելով...։

ԳԱԲՐԻԷԼ ԽԱՆՃԵԱՆ

## 17. ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄՏԵՐՄԻՍ՝ ԵՐՈՒԱՆԴԻ ԳԵՐԵԶՄԱՆԻՆ ՎՐԱՅ

Բոլոր արցունքն աչուըներուս,
Թափեցի ցուրտ շիրմիդ հողին,
Ուր մարեցաւ արեւըդ լոյս՝
Երո՛ւանդ, չառիր դուն դեռ մարմին։

Ու պատռելով այն սըգաւոր,
Քօղն որ պատեց ըզքեզ ճերմակ,
Դեռ չը բացիր աչքերդ աղուոր,
Սեւ հողերով լեցուն հիմակ:

Մէյ մ'արթնցի՛ր, ինձ ակա՛նջ տուր,
Բարեկամիդ՝ ցորեկ գիշեր՝
Ողբերուն ձայնն աղէկըտուր,
Դամբանիդ հո՛ղն իսկ չեն շարժեր...:

Ա՛յս էր խոստումդ, «Ես կը մեկնիմ,
Ողջ եմ սակայն, ըսիր ինձ դուն.
Շիրմես՝ սիրոյս հաւատարիմ՝
Ձայն պիտի տամ քեզի ժպտուն»:

Քանի՛ անգամ սոխակն անուշ,
Երգեց իր երգը սրտագրաւ,
Գերեզմանիդ վրայ տրտմայուշ,
Անկից դեռ ձայն մը չը թըռաւ...:

Գիտե՛մ, այլ չե՛ս դառնար դուն հոս,
Ուր քաշեցիր այնքան ցաւեր,
Ուր այսքան վէրք արիւնահոս,
Հանեցին սիրտդ այրեացաւեր:

Երբ գիշերուան մութին մէջ լուռ,
Երկինք ջահերն իր կը վառէ.
Սիրտս թողած ծովն ու բլուր,
Քեզ անհունին մէջ կը փնտռէ:

Ո՜ւր ես, Երո՛ւանդ, այնչափ խըռով՝
Երբ թօթուեցիր բեռը կեանքիդ,
Յաւերժական իր տենչերով,
Ո՛ր աստղի ծոց թըռաւ հոգիդ:

Գոնէ գըտա՞ր հոն քու սրտիդ,
Պէս աղուոր սիրտ մը հարազատ,
Ու երազներ լուսաժըպիտ,
Ու սիրելու աշխարհ մ'ազատ:

Ըսէ՛, գըտար հոն, ո՛վ Երուանդ,
Անհունութեան մէջ երկնքին,
Անանկ անկիւն մ'Աստուածաւանդ
Ուր չունենայ ցաւեր հոգին:

Գերեզմանիդ հողին վրայ չոր,
Ուր կը թափին աչքիս արցունք,
Կը մըխայ սիրտս հըրատոչոր,
Սիրոյ անմահ տաճարին խունկ:

Բայց թէ ազատ կ'ապրիս հոն դուն՝
Ամէն մաշող ցաւերէ զերծ՝
Անվախճան կեանքն հոգիներուն,
Որոնց մարմնին լոյսն է անեղծ:

Ալ չը թափեմ ես արցունքներ,
Ե'րուանդ, խզուին մարմնիս կապանք,
Թո՛չի հոգիս երկինքն ի վեր,
Անհունին ծոց զիրար գտնանք:

ԿԱՐԱՊԵՏ ՈՍԿԵԱՆ

# 18. ՈՒՍՈՒՑԻՉԸ



Ռ. Ց. ՊԷՐՊԷՐԵԱՆԻՆ

Բո՛ց է պայծառ դէմքըդ բոլոր
   Դուն հոգիո՛վ ես արբշիռ.
Կ'երթաս կուգաս քայլամոլոր՝
   Խըռոխտ, խիզա՛խ, յաւէտ ժի՛ր:

Աչերդ՝ երկինք մը խանդավառ՝
   Հըսկաներու խոկն ունին
Ճակատդ՝ անհո՛ւն մի տաղաւար՝
   Ծրարած՝ կայծերն անհունին:

Միտքըդ՝ անդո՛ւնդ մը խո՛րունկ, մո՛ւթ՝
   Խորհուրդներո՛ւ անձնատուր.
Կը խորհիս լուռ՝ խոչեր ու խութ՝
   Ամէնն ըրած առաքուր:

Սիրտըդ ովկիա՛ն յարատատան՝
   Անծայրածի՛ր, անպարփակ,
Ու ալիքներ հո՛ն կը թնդան
   Խեղդել բոցերդ անապակ:

Ինչե՛ր գըրուած կան հոն՝ ինչե՛ր,
   Սըրտիդ ալքերն ահարկու,
Դէմքըդ ու բոց այդ քու աչեր՝
   Մեզ կը կարդան խանդդ հուժկու:

Գըձուձ կիրքեր, ատելութիւն,
   Քու մէջ հընոց մ'են թափեր.
Վ.ասն այն յուզուեր՝ կարմրեր ես դուն,
   Կը տատանիս տարուբեր:

Քեզ չեմ ճանչնար ու ճակտիդ՝ փո՛ւշ
Փո՛ւշ կը նետեմ աղտեղի,
Կ'ըսեմ — «Գինով մ'է ան ապուշ,
Որ իր ճամբէն կը շեղի:»

Այո՛, գինով մ'ալ դուն ես, դո՛ւն,
Արբած՝ բայց ոչ խըմումով,
Արբած՝ սիրով թըշուառ մարդուն՝
Դո՛ւն՝ բարիին ջատագով:

Ու կը խօսիս բաներ մ'անուշ,
Բանե՛ր մը վեհ՝ երկնային,
Որոնց մարդիկ չեն դըներ ուշ,
Ո՛չ իսկ երեսդ կը նային:

Բայց դուն՝ գործէ՛, գործէ՛ անդուլ,
Անխո՛նջ խօսէ՛ դուն յաւէտ,
Ինչ հոգ աշխարհ թէ կը մնայ խուլ,
Քարոզներուդ կենսաւէտ:

Աշխա՛րհ՝ տղա՛յ՝ դեռ չի տեսներ,
Խորախորհո՛ւրդ ապագան.
Բայց առատ հունձ՝ այդ պատգամնե՛ր՝
Պիտի տան վաղ անագան:

Օ՛ն, տիրապե՛տ կըրէ քու խաչ,
Վարէ՛ կեանքիդ ասպարէզ,
Մուրճն հալածէ՛ հըզօր ու քա՛ջ՝
Վըտանգի վարժ զինչ Արէս:

Թո՛ղ քող պատէ դէմքըդ բոլոր,
Թո՛ղն Անմահին լուսածիր,
Ուսերդ ձըգած վարսքըդ ոլոր՝
Քալէ՛ խըրոխտ, խիզախ, ժի՛ր:

Մ. ԹՈՒՐԵԱՆ

# 19. ԳԹՈՒԹԵԱՆ ՔՈՅՐԸ



Չորս սեւապատ մոմի լոյսին տակ աղօտ,
Գիշե՛ր մ'ամբողջ հըսկած է նա ծընրադիր
Նընջեցեալի մահասարսուռ մահճին մօտ
Անոր համար աղօթելով անձանձիր,
Չորս սեւապատ մոմի լոյսին տակ աղօտ...:

Գիշե՛ր մ'ամբողջ հըսկած է նա ծընրադիր՝
Անշունչ դիմա՛կ մ'ունենալով լոկ ընկեր...
Եւ խորասոյզ խորհուրդներու մէջ անծիր
Ու անըզգայ՝ թէ թմրած են իր ծընկեր,
Գիշե՛ր մ'ամբողջ հըսկած է նա ծընրադիր...:

Նընջեցեալի մահասարսուռ մահճին մօտ՝
Խընկամաններն առատ խունկով կը մըխան,
Տարածելով սենեակին մէջ մահահոտ.
Բոյր մ'ըզգըլխիչ... մինչ կը հըսկէ նա անձայն՝
Նընջեցեալի մահասարսուռ մահճին մօտ...:

Անոր համար աղօթելով անձանձիր,
Անոր՝ որուն կեանքն անծանօթ է իրեն,
Կարծես թէ նա ըսփոփանքով մ'երկնածիր,
Ա՛լ կը մոռնայ իր էութիւնն համօրէն.
Անոր համար աղօթելով անձանձիր...:

Չորս սեւապատ մոմի լոյսին տակ աղօտ,
Լուսաբացին դիաքաղներն երբ կուգան,
Արձանացած կը գտնեն հոն, մահճի՛ն մօտ,
Գըթութեան քոյրն որ կ'աղօթէ դեռ անձայն
Չորս սեւապատ մոմի լոյսին տակ աղօտ:

ՀՐՈՒՇԱՆ

# 20. ԵԶՈՎԲՈՍԻՆ ԱՌԱԿՆԵՐԸ

(ՍՐԲԱԳՐՈՒԱԾ)

---

## ՇՈՒՆՆ ՈՒ ՇՈՒՔԸ

ԱՇԽԱՐՀԻՍ վրայ խաբուողներ շատ կան
Շուքին ետեւէն վազողնե՛ր բոլոր,
Խենթեր, ա՛յնքան որ անոնց իրական
Թիւն՝ համրուած չէ՛ դեռ, մինչեւ այսօր...:
Եզովբոսի շունին անոնք կը նմանին,
Որ ջուրին վրայ տեսնելով շուքն իր պատառին
Թողուց բերնինն, ու խոյացաւ ջուրին յատակ...
— Եւ մա՛զ մնաց որ խեղճն ըլլար հոն շան սատակ,
Ձեզ օրինակ առէք ուրիշ շուն մը ճարպիկ
Որ ակռային տակ բռնած էր շերտ մը խորշիկ.
Երբ կամուրջէ մը անցած ատեն,
Ջուրին վրայ տեսաւ մօտէն
Ուրիշ շուն մը — բերանը միս — նըման իրեն,
—«Նախ՝ սա պատառս ուտեմ, ըսաւ, խոհեմօրէն
«Զայն կուլ տալէ ետքը՝ ա՛լ չեմ տընտընար,
«Միւսն ալ լափելու կ՚որոնեմ հընար,
«Թեւս յաջողիմ...»:
Իրն ուտել փութաց,
Եւ ջուրին եզերքն եկաւ սըրընթաց,
Ուր իր պատկերն իսկ տեսնելով կրկին,
«Ա՜հ, ա՜հ, գոչեց, կերեր է շերտն իր խորշիկին
Ա՛ն ալ, ճիշտ ինծի պէս...
«Կրնար ըլլալ, ուրեմն, որ վըրայ տայի ես...
«Միւսն ալ ինծի պէս խորհեր է անշուշտ...»:
—Եւ հեռացաւ՝ սիրտը թեթեւ ու փորը կուշտ:

*Թարգմ. ԱՂԵՐՍ. ՓԱՆՈՍԵԱՆ* Օ. ՇՕԼ

# Գ. ԲԱՐՈՅԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ



Բարոյականը գրականութեան մէջ (կամ՝ մէկ բառով՝ բարոյախօսութիւնը) ժողովրդականացումը եւ գրականօրէն արտայայտութիւնն է իմաստասիրութեան կարեւոր ճիւղերէն մէկուն՝ բարոյագիտութեան՝ վերաբերեալ սկզբունքներուն: Բարոյախօսները, իրենց իսկութեամբը, իմաստասէրներ են որոնք կ'ուսումնասիրեն մարդկային հոգին եւ կը նկարագրեն անոր զանազան վիճակները, անոր լաւ կամ գէշ կողմերը: Գրագիտութիւնը այսպէս կը սահմանէ զուտ բարոյախօսներուն դերը: *Բարոյագիտութիւնը* ուղղակի բարոյականութիւն կը խարոզէ. այդ չէ՛ սակայն *բարոյախօսութեան* պաշտօնը:

Երգիծաբաններն, զոր օրինակ, որոնք մարդոց ծաղրելի կողմերը վեր կը հանեն՝ զանոնք հարուածելու համար, անուղղակի կերպով, անոնք բարոյախօսներ են եւ ոչ՝ բարոյագէտներ: Հրապարակագրութիւնը գերազանցապէս բարոյախօսական ճիւղ մ'է, անշուշտ երբ կարելի եղածին չափ քիչ շահախնդիր ոգիով մը ի գործ կը դրուի ան: Բարոյագիտութիւնը ինքնին իմաստասիրութեան մէկ մասն ըլլալով՝ գրական զանազան ձեւերու չի կարօտիր. բարոյագիտական գրուածք մը կը պահանջէ միայն ան յատկութիւնները որոնք անհրաժեշտ են իմաստասիրական ոճին համար. մինչդեռ, ընդհակառակը, Բարոյախօսութիւնը գրական այլազան

սեռերու մէջ, իր տեղն ունի, եւ անթիւ կերպեր կան բարոյախօսութիւն ընելու: Մոնթէյն, Բասքալ եւ Լապրիւյեռ՝ Ֆրանսական գրականութեան մէջ՝ սքանչելի բարոյախօսներ եղած են: Մեր մէջ որքան եւս մնացած է բարոյագիտութիւնը այնքան զարգացած կրնայ նկատուիլ բարոյախօսութիւնը, եւ ասիկա անոր համար որ, թէ՛ յաջող երգիծաբաններ, յաջող հրապարակագիրներ, յաջող առակախօսներ կրցած ենք ունենալ եւ թէ՛, պարագաներու ստիպումովը, մեզի համար, ա՛յս կերպով բարոյական քարոզելը աւելի նպատակայարմար եղած է. յետոյ, անոր համար նաեւ որ, Գրական-իմաստասիրական ու Կրօնական-գրական ճիւղերն ալ, որոնք անմիջական խնամութիւններ ունին այս Բարոյական-գրական սեռին հետ, մեր մէջ, ինչպէս յայտնի է, բաւական մշակուած սեռեր են: Քուչներեան հիանալի բարոյախօս-առակախօս մըն է, Պէրպէրեան իբր հրապարակագիր գրած յօդուածներուն մէջ բարոյախօսութիւն ըրած է, Կարապետ Փանոսեան, Խօճասարեան Օգսէն ընտիր հրապարակագիրներ են, նորերուն մէջ յաջող հրապարակագիրներ պատրաստուելու վրայ են. եւ դիտելի է որ, այսօր, թըրքահայերու մէջ Բարոյախօսութիւնը տակաւ առ տակաւ կը միտի սոսկ հրապարակագրութեան մէջ սահմանափակուելու: Ռուսիոյ հայերն ալ ընտիր հրապարակագիրներ ունեցած են:

## 1. ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՊԱՏԿԵՐ ՄԸ



*Անգղիական նշանաւոր պատկերազարդ շաբաթաթերթ մը, Կրաֆիք, Ծնունդի թիւին հետ ունէր պատկեր մը, որ ինծի համար կը պարզէր պատերազմին ամբողջ հոգեբանութիւնը։*

*Պատկերը ինքնին խորհրդաւոր էր, եւ սովորական բառեր դայն պիտի նսեմացնէին յաւէտ։ Նոյն էջին կուշտը դրուած Լուիս Մօրիսի վեց տուները սակայն աւելի խորհրդաւոր կ՚ընէին սեւ ու ճերմակի այդ արտայայտութիւնը՝ զոր կը փորձեմ ծանօթացնել անոնց որ տեսած չեն այդ թիւը։*

*Պատկերը կը ներկայացնէ Հարաւ-Ափրիկէի պատերազմի դաշտին վրայ իյնող անգլիացի զինուոր մը. գլուխի վէրքը թաշկինակով մը կապած է, եւ ինք ուժասպառ ինկած է գետին՝ կռնակը տուած քարի մը, որուն օգնութեամբը միայն կրցած է գլուխն ու մարմինը քիչ մը վերցնել եւ ձեռքերն իրար կապած՝ աղօթել անանկ նայուածքով մը զոր հոգեվարքի աչքերուն մէջ միայն կարելի է տեսնել։ Քովիկը կը տեսնես իր հրացանն ու սաղաւարտը, քիչ մը հեռուն խորտակուած թնդանօթ մը։ Գիշերային լռութիւնը ամայութեան սոսկալի համայնապատկեր մը կ՚առեղծէ չորս դին։*

*Մահամերձ, անօգնական ու միայնակ զինուորը կը յիշէ թէ Ծնունդի գիշեր է, կը մոռնայ իր ցա-*

ւերը, կը մոռնայ իր զէնքերը, կը մոռնայ իր թըշնամիները, կը մոռնայ իր ընկերները, կը մոռնայ վերջապէս ամէն բան, այդ իր վերջի րոպէներուն մէջ, ու կը յիշէ իր ընտանիքը։ Եւ աղօթք մը կը թռի իր բերնէն. աղօթք մը, ո՛չ թէ իր երկրին յաղթութեանը կամ թշնամիներուն պարտութեանը համար, բայց վերջին աղօթք մը, թախանձանքի ու աղերսի է՜ն անկեղծը՝ որպէս զի տեսիլ մը ունենայ իր ընտանեկան յարկին տակ Ծնունդի այդ գիշերուան վիճակին։ Խեղճ երիտասարդ զինուորը գիտէ թէ հազարաւոր մղոններ կը բաժնեն զինքը իր սիրական տունէն. ուստի աղօթքի կը դիմէ սրտին այդ փափաքը չափով մը իրականացնելու համար։ Լոկ տեսիլ մը այդ Ծնունդի գիշերուան իր անգլիական տան շրջանակին. ահա վերջին եւ գերագոյն իղձը՝ Ծնունդի գիշերը Հարաւ-Ափրիկէի մէջ մեռնող քաջարի զինուորին։

Եւ իր այդ աղօթքը կը լսուի։ Հրեշտակ մը կ՚երեւայ պատկերին մէջ, եւ իր փափուկ մատներով մահամերձ զինուորին ճակատը կը գգուէ միւս ձեռքովն ալ մատնանշելով օդին մէջ պարզուած տեսարանը։ Ա՛յս էր մահամերձին խնդրածը։

Հոն կը տեսնէ ալեհեր մայրը, որ թուղթ մը կը կարդայ. քովը կայնող դեռատի կինը՝ մեռնող զինուորին կողակիցը՝ գլուխը անդին կ՚ոլորէ լալով. երեսը թաշկինակին մէջ թողլով։

Եւ սենեակին մէկ ուրիշ անկիւնը դրուած Ծընունդի լուսաւոր ծառին շուրջը կը տեսնուին չորս պզտիկ տղաքներ, որոնք իրենց Ծնունդի խաղալիքներովը զբաղած են։

Մահամերձ զինուորը կը նայի այդ տեսարանին վրայ, գոհ կը մնայ աղօթքին պատասխանը ստացած ըլլալուն համար, եւ ուժասպառ զինուորն օտար երկինքի տակ հոգին կը փչէ, հանդարտ ու զուարթ, քանզի վերջին նայուածքովը տեսած էր իր սիրական տունը։

Չեմ յիշեր որ տեսած ըլլամ կեանքիս մէջ գիծերու ու բառերու աւելի խորհրդաւոր արտայայտութիւն մը, քան «Կրաֆիք»ի այդ պատկերը։

Ա. Գ.

## 2. ՄԱՅՐԻԿԻՆ ՊԱՏՈՒԷՐԸ

Առօրեայ կեանքի պատահումներուն մէջ երբեմն աչքերնուս կը զարնեն անանկ աննշան պարագաներ որոնց մէջ խորհրդածութեան ամբողջ նիւթ մը կայ՝ եթէ միայն ուզենք պահ մը կանգ առնել ու մտածել։ Լրագրական յօդուածներով, կամ նոյն իսկ գիրքերու մէջ պարզուած ազնիւ թելադրութիւններ, բարի խորհուրդներ իրականացած կը գտնենք յանկարծ ընտանիքի մը մէջ կամ անհատի մը վրայ որոնք գուցէ կարդալ իսկ չեն գիտեր։ Բայց ընկերային կարգուսարքը կ՚ուզէ որ ազնիւը միշտ ազնուական կոչուածին քով փընտռուի ու բարձրը՝ հարուստին քով. ատոր հա-

մա՛ր է որ գրէթէ միեւնոյն շրջանակին մէջ կը դառնան մեր տեսութիւնները, եւ քիչ անգամ կը զիջանինք մտնել ժողովրդական խաւերուն՝ ուսումնասիրելու համար անոնց ըմբռնումներն ու ըղձացումները կեանքի պայքարի մասին — որուն հացը ճարելու պայքարը — աւելի անողոք քան անոնցը որոնք իրենց գիրքին ու պէտքերուն համապատասխան վաստակի մը համար տենդոտ աշխատութեան մը հեւքին մէջ են։ Սովորաբար, մեր հետախուզած տիպարներն են՝ շրջանաւարտի վկայականը գրպանը գործ փնտռող պատանին կամ վաճառականի գրագրութեան ներկայացող ընտրելին։ Իրենց ստացած կրթութեան դրական մասին թերի ըլլա՞լն է որ ձեռնունայն ետ կը դարձընէ այդ երիտասարդները, թէ ոչ՝ զիրենք ընդունելու եւ աշխատցնելու կարող անձերուն խստապահանջութիւնը։ Յաւիտենական նիւթը՝ յաւիտենապէս անլոյծ։

Անդին՝ դպրոցի երես չտեսնող սերունդ մը կայ, աղքատի զաւկըներ, պզտիկ հասակէնուն չարքաշութեան վարժուած, որոնց ականջէն բռնելով առտու մը փողոց կը հանէ հայրերնին՝ ըսելու համար. «Գնա՛ աւուրչէք մը վաստըկէ»․ կամ, եթէ հայր չունին, մայրերնին է որ կը կրկնէ նոյն բանը, քիչ մը աւելի փափկութեամբ ու գորովալից շեշտով մը․ «Տղա՛ս, նայէ՛ որ իրիկունը հաց մը ճարես։» Այս դասակարգը, ամէնէն աւելի կարեկցութեան արժանին, իրմով զբաղող մը, իր վրայ կարծիք յայտնողներ չունի կամ՝ շատ քիչ անգամ։ Անոնց ընձեռուած պաշտպանութիւն մը, անցողակի ու-

չադրութիւն մը երբեմն շատ աւելի արդիւնք կ'ունենան սակայն, քան անգիտակցաբար տրուած դըրամական նպաստներ։

Բարեկամ մը — նոյնքան սրտի՝ որքան գրչի տէր բարեկամ մը — իրիկուն մը Արեւելքի խըմբագրատան մէջ, ուր այցելութեանս եկած էր, վայրկենական տպաւորութեան մը տակ նամակ մը ուղղեց Թերթին Տնօրէնութեան՝ շաբաթականի յաւելում յանձնարարելով գրաշարի աշկերտի մը որ շատ չնչին բան մը կ'ստանար, իբրեւ սկսնակ, եւ մեքենական երթեւեկութիւններով ու ծառայութիւններով կը մնար ուր որ էր։ Յաջորդ օրը, տըղան կերպարանափոխ եղած էր կարծես ու արհեստ սորվելու սէր մը եկաւ վրան՝ ինքնաճանաչութեան տարտամ ըմբռնումով մը։ Եթէ բարեկամնիս, իր զգացած կարեկցութենէն մղուած, բարոյական պաշտպանութեան մը տեղ՝ դրամական նուէր մը ընէր այն վայրկենին, տղան թերեւս մնար միշտ նոյն ծոյլ աշկերտի վիճակին մէջ։ Այսօր գրաշար մը եղած է ու համեստ շաբաթական մը կ'ստանայ գոհ սրտով։

Աւելի թարմ իրողութիւն մը — աննշան՝ բայց նշանակալից — որ կը թելադրէ զիս այս տողերը գրելու։ Օր մը, Պոլսոյ բանուկ մէկ պողոտային վրայ, հանդիպեցայ իրենց բաղդին ձգուած այն տիպարներէն մէկուն, որոնք պզտիկ հասակէ կը նետուին իրենց «ասպարէզը» — արհեստ մը կամ մանր առուտուր մը — ու սքօղուած օրինակներ են ինքնօգնութեան, պարկեշտ աշխատասիրութեան։ Հազիւ տասներեք տարեկան տղայ մըն էր,

ապրիլի խոնաւ օդին բաճկոնակ մը միայն կրելով ու մէկ թեւին վրայ քանի մը զոյգ մուճակ անցուցած՝ տունի մէջ պատրաստուած պարզ մուճակներ։ Դիպուածով նայուածքս իրեն հանդիպեցաւ, իր գունատ դէմքին ու աղքատիկ երեւոյթին ձգողականութեամբը, առիթը չփախցուց՝ ըսելու համար։

— Էֆէնտի՛ս, ի՞նչ կ'ըլլայ, չիֆթ մը փապուճ առ։

— Տղա՛ս, ես փապուճը ի՞նչ ընեմ փողոցին մէջտեղ, ո՞ւր դնեմ։

— Առտուընէ ի վեր բան մը ծախած չունիմ, օրը իրիկուն եղաւ, մե՛ղք եմ։

Անանկ անկեղծ ու պաղատագին չեշտ մը կար իր ձայնին մէջ, որ չէի կրնար ճամբաս շարունակել, ու կարծելով գործնական բան մը ըրած ըլլալ, ըսի իրեն. «Տղա՛ս, այդ հինգ ղրշ.նոց փապուճէն հազիւ 40 փրյ. պիտի վաստըկիս, անանկ չէ՞. ա՛ռ սա ղրուշը։»

Բայց պզտիկը, փոխանակ ափը երկնցնելու իրեն կարկառուած արծաթ դրամին, ետ քաշեց ընդհակառակը, ու թեթեւ մը կարմրելով, աւելցուց — «Մայրիկս պատուիրած է ինծի որ ողորմութիւն չառնեմ...։»

Աւելորդ է ըսել թէ առանց բառ մը աւելցընելու, գնեցի զոյգ մը մուճակն ու փաթթելով... Ցիկառոյի մը մէջ, դէպի տպարան ուղղուեցայ։

Այդ պզտիկ տղուն արժանապատուութեան ըզգացումն ու մայրիկին պատուէրը լեցուն դաս մը, խոնարհ դասակարգի կեանքէն առնուած՝ հազուադէպ՝ բայց աղուոր օրինակ մը կը պարունակեն։

«Մայրիկին պատուէրը» թող կրկնեն շատ մը աղքատ ծնողքներ ու որբերու պաշտպաններ՝ իրենց տղոց կամ սաներուն, եւ անոնց ականջին օղ ընեն։

ՏԻԳՐԱՆ ԱՐՓԻԱՐԵԱՆ

# Յ. ԽՈՀԵՐ

Գիշերը երբ որ անկողին մտնենք, ճրագը կը մարենք ու մութին մէջ կը քնանանք, մինչդեռ երբ արթուն ենք, միշտ ճրագի պէտք ունինք, լոյսի պէտք ունինք։ Երբ մեռնինք, գերեզմանին խաւարին մէջ կը մնանք, բայց երբ տակաւին կենդանի ենք, միշտ լոյսի պէտք ունինք, մտաւոր եւ բարոյական լոյսի։ Որպէս զի արեւին մարը մտնելէն ետքը խաւարին մէջ չմնանք՝ մոմ մը կը վառենք, եւ մոմը կը լուսաւորէ մեզ, դիտա՞ծ էք, իր սպառումովը։ Այսպէս է հասարակաց բարիքին համար ալ աշխատողներուն կեանքը, անոնց կեանքին, անոնց բովանդակ էութեան սպառումովն է որ ժողովուրդները կը լուսաւորուին. — Գիտնականները, հեղինակները եւ այլ այս կարգի մեծ մարդիկ՝ մոմեր են որ կը վառին հոս ու հոն։ Եւ անոնք իրենց սպառումովը կը լուսաւորեն ամբոխը։ Որքան արդեօք երախտապարտ ենք անոնց։

ՍՄԲԱՏ

# 4. ՆՈՐ ՏԱՐԻ

## ԱՄԱՆՈՐԻ ՄՏԱԾՈՒՄՆԵՐ

*Տարի մը եւս, ժամանակի ահագին բեկոր մը, անջատուեցաւ մեր կեանքէն եւ խորասոյզ թաւալեցաւ անհունութեան մէջ։ Նոր տարիին հետ անդիմադրելի մղում մը կ'զգաս յետահայեաց ակնարկ մը նետելու։ Մարդկային կեանքին մէջ տարիները գլխաւոր հանգրուաններ են որոնք կը կէտանիշեն մեր գործերը, մեր արարքները ու մեր յիշողութեան մէջ խորունկ դրոշմներ կը թողուն, որոնք մինչեւ ծերութեան տարիներուն մէջ իսկ անաղարտ կը մնան ու մերթ ընդ մերթ սխրալի փողփողումներով մեր հոգեկան աչուըներուն կը ներկայանան։*

*Տարիի մը անդարձ բաժանումէն անմասն չեն տխրական մտածումներ, կարօտի զգայութիւններ, որոնք կը համախռնեն մեր միտքին ու մեր սիրտին մէջ, անսահման մորմոք ազդելով։ Նոր տարիի մը գալուստէն մեր զգալիք հրճուանքն ու գոհունակութիւնը անհնարին է որ փոխարինուի այն մեծ վիշտով, զոր կը պատճառէ ամբողջ տարուան մը փճացումը մեր էութենէն։*

*Բարեբաղդաբար, Նոր Տարին անա՛նկ հրապոյրներով կը ներկայանայ միշտ, իր ժամանումը ա՛յնպիսի նորանոր հաճոյքներ կը բերէ որ կը կարծենք թէ, ընդհակառակը, մեր կեանքը յաւելում մը կրած է, շահ մը ունեցած ենք, վերջապէս՝ որչափ տարիներն այսպէս հոլովին, անցնին կեանքի*

մը վրայ է, նոյն համեմատութեամբ ամանորի սովորական հրապոյրն ալ կ'անհետանայ։ Կաղանդը, կարծես մանկութեան ու պատանեկութեան համար հաստատուած հանդիսական օր մըն է ուր անոնք կը կայտռեն, կը խայտան՝ առանց զգալու աստիճանական նուաղումն այդ կայտռելին ու այդ խայտանքին, որոնց կը յաջորդեն լրջութիւնն ու խոհանքը։

Հին տարին փայլուն պատրանքի մը պէս կ'անհետանայ՝ տեղի տալով Նոր տարիին, ուր ամէնուն սիրտերն ակնկալութիւններով ու բղձանքներով լեցուած կ'ըլլան։ Նիւթական գաղափարներն ա՛յն աստիճան առլցած են մարդկային միտքը, որ կեանքի կարճելուն գաղափարը շատ հեռուն մը մնայ։ Նոր տարին նոր յաջողութիւններու ակնկալութիւն մը կը ներշնչէ։ Ամէն մարդ կը յուսայ իր ընկերային պայմանին մէջ քայլ մ'եւս առաջանալու, դիրքի բարձրացում մը ունենալու, որոշելու այն ուղին ուսկից պիտի քալէ ամբողջ տարի մը. Նոր տարին գաղափարներու, մտածումներու, ծրագիրներու միաւորում մը կը ցուցնէ, այդ վճռական վայրկեանին է որ ինքզինք քու մէջդ կ'ամփոփուիս աչքիդ առջեւ կը բերես անցեալին պարագաները մանրամասնօրէն ու անոնց փորձառութեամբը ապագային ընթանալիք շաւիղներդ կը ձեւես, կը չափես։ Գիտես սակայն որ բոլոր այդ երկար հաշիւներուդ ծայրը միշտ ցցուած կեցած է այն սոսկալի ուրուականը, յուսախաբութիւնը, որ սակայն չի վհատեցներ ու կը մնայ յարատեւ ու յարանորոգ, տարիներու անդուլ ընթացքին մէջ։

* * *

# 5. ՊՏԵՐՆԵՐԸ

Տեսած էք անշուշտ մեծ անտառի մը խորութիւններուն մէջ, երթեւեկի ճամբաներէն քիչ հեռուն՝ այս անշուք բոյսերը, որոնք ո՛չ ծաղիկ ունին եւ ո՛չ մասնաւոր հրապոյր։

Բնական պատմութեան մէջ թերեւս հանդիպած ըլլալնիդ պիտի յիշէք, այս աննշան ու ստորնակարգ բոյսերուն, որոնք շուք տեղեր կը բուսնին, ու կ'ապրին ու կը մեռնին առանց բան մը արտադրելու, ոչ ծաղիկ ունին եւ ո՛չ պտուղ, այլ միակ կանաչութիւն մը որով միայն կը ճանչցուին իբրեւ բոյս։

Խեղճուկ տեսք մը ունին անոնք՝ բնութեան այդ վեհ գոգին մէջ, ուր հաստաբուն ու հսկայ ծառեր իրենց ոստերովը անթափանց կուռութեան քող մը կը ձեւացնեն, բնութեան վեհութեան ու պատկառելի խորհրդաւորութեան պատկերը գծելով։ Հոդ՝ այս հսկաններուն քով պզտիկ բոյս մը կայ, որ անոնց բունին քովը կը բուսնի, եւ որուն բարձրութիւնը հազիւ թիզ մըն է, եւ բունը՝ հազիւ ռատասանի մը լայնութիւն։

Այդ կոյս ամայութեան անվնաս բոյսը, որ ո՛չ փուշ ունի եւ ո՛չ տատասկ, օր մը խլուած կը տեսնէք իր ապրած գեղատեսիլ անտառին խորէն՝ հանդարտիկ ու մեղմիկ վայրերէն՝ ուր հովանի ունէր երկինքի անսահմանը ընդգրկել նկրտող ծառերը,

դալ ծածկելու համար գետինը սէրկիի մը, եւ հոն ոտնակոխ ըլլալու համար, անարգ ու անարժան նիւթի մը պէս։

Ահա բոլոր կեանքը այս ողորմելի տունկին, որ իր վրայ կը յատկանշէ մենական խորհրդաւորութիւնը կոյս անտառներու, որոնց մէջ կը ծնի ու կ'ապրի գէթ առանց իր բունին վրայ կարենալ կըրելու՝ առաւօտ մը միայն՝ վաղանցիկ հմայքի մը նշանը, ծաղիկը որ իր տեսքովը մարդս հրապուրէ՛, եւ իր բոյրովը դիւթէր։

Կեանքիս մէջ քանի՛ անգամ որ առիթ ունենամ տեսնելու բնութեան այս զրկուած զաւակը՝ անտառի մը խորութիւններուն մէջ կամ սէրկիի մը գետինը, չեմ գիտեր ինչու աչքիս առջեւ կը պատկերանան կարգ մը մարդեր, որոնք ճիշդ պտեր մը պէս կ'ապրին, անծաղիկ ու անպտուղ։

Մենաւոր վայրերու առանձնութեան այս անխօս զարդերը, որոնք կանանչութիւն մը միայն ունին իբր բոյս զիրենք յատկանշող, մտքիս մէջ կը նմանանան կարգ մը մարդոց հետ, որոնք մարդկային կերպարանքը ունին միայն զիրենք մարդկութեան միացնող, զուրկ ընկերական կեանքի լուրջ ըմբռնողութենէ, եւ կ'ապրին ու կը մեռնին արտադրելով ոչինչ, ո՛չ ծաղիկ եւ ո՛չ պտուղ։

Այն հակասութիւնը որով բնութեան մէկ քմահաճոյքին կը զոհուի պտերը, անծաղիկ ու անպըտուղ կեանքի մը արդահատելի վիճակով, քաջ կը յատկանշէ պորտաբոյծներու եւ աննկարագիր անհատներու այս դասակարգը, որ՝ զուրկ առանձնական գործունէութեան մը թովիչ հրապոյրնե-

րէն՝ կ'ապրի անօգուտ կեանքով մը՝ անծաղիկ ու անպտուղ կամ առանց հմայքի ու արդիւնքի։

Պտերին պէս՝ որ իբր բոյս՝ բուսական աշխարհին հսկաներուն եւ պատկառելի մեծութեան դըրացնութիւնը կը վայելէ, թովիչ ու ամէնէն հըրապուրող դասակարգերուն քով՝ պտեր-մարդիկ կ'ապրին մարդկային ընկերութեան ամէնէն մեծ դէմքերուն քով, անոնց դրացի ու մերձաւոր, բայց առանց ուզելու նմանիլ անոնց, վայելելու համար հմայքը ու դիւթութիւնը գործունէութեան մը՝ որ անձնական կորովէն կը ծագի, այլ կ'երթան ապաստանիլ մեծութեան մը հովանիին ներքեւ, պտերին պէս որ կաղնիին բունին կը կառչի ու կը մնայ։

Բայց կամքէ եւ զգացողութենէ զուրկ պտերը ակամայ պիտի՝ արդարացնենք եւ պիտի արգահատինք վրան, իբրեւ զրկուած։ Կամեցողութիւն եւ զգացում ունեցող պտեր-մարդուն ինչ արդարացում պիտի գտնենք արդեօք։

Վ.



# Գ· ԳԵՂԱՐՈՒԵՍՏՆԵՐԸ



Գեղարուեստ կը կոչուին բոլոր այն մարդկային արտադրութիւնները՝ որոնք կը խօսին մարդուն մտքին եւ հոգիին եւ, միեւնոյն ժամանակ, անոր զգայարանքներուն՝ բառերու, ձայներու, գիծերու կամ գոյներու միջոցով:

Այսպէս, բանաստեղծութիւն, ճարտասանութիւն, երաժշտութիւն, արձանագործութիւն եւ նկարչութիւն ամէնքն ալ հաւասարապէս գեղարուեստներ են: Անոր հետ մէկտեղ, ասկից տարբեր, շատ մը սահմաններ տրուած են գեղարուեստին. գեղեցկագէտները եւ իմաստասէրները շատ անգամ իրարմէ բոլորովին տարբեր կերպով սահմանած են գեղարուեստը: Ու ասիկա՝ պարզապէս անոր համար որ, արուեստը շատ բազմամասն ամբողջութիւն մը ըլլալով՝ անկարելի է զայն բացարձակ սահմանի մը հպատակեցնել, զայն վերածել պարզ տարազի մը: Իրապաշտութեան (Réalisme) եւ գաղափարապաշտութեան (Idéalisme) խնդիրը, ինչպէս գրականութեան մէջ, հոս ալ գոյութիւն ունի:

Արուեստին նպատակը բնութիւնը օրինակե՞լ պէտք է ըլլայ (իրապաշտութիւն), թէ մտքին գաղափարները ներկայացնել՝ բնութեան առարկաները ձեւափոխելով (գաղափարապաշտութիւն): Դժուարալուծելի խնդիր մըն է աս, եւ, ամէնէն աւելի, կախում ունի անհատին գեղեցկագիտական

ու իմաստասիրական ըմբռնումէն: Գեղարուեստի այս տարբեր ճիւղերուն համար մասնաւոր դպրոցներ կան որոնք տաղանդաւոր գեղարուեստներ տուած են մարդկութեան, սակայն եղած են նաեւ մեծ արուեստագէտներ, ինչպէս են հին Ֆլաման դպրոցին վերաբերողները եւ Ռամպրանտ, որոնք, իրենց գործերուն մէջ, իրապաշտութիւն ու գաղափարապաշտութիւն կրցած են միացնել՝ աւելի կատարեալ ամբողջութիւններ արտադրելով: Գեղարուեստներու պատմութիւնը կ'զբաղի գեղարուեստական այն զանազան դրութիւններով ու եղանակներով որոնք նախասիրուած են այս կամ այն ազգին կողմէ, դարերու շրջանին մէջ: Եգիպտական, ասորական, բաբելական, պարսկական, յունական, հռոմէական, բիւզանդական, քրիստոնէական, գոթական, իտալական վերածնութեան, Ֆրանսական վերածնութեան, Ֆլաման, հոլանտական, սպանիական, ռոմանթիկ եւ արդի արուեստներ ամէնքն ալ կը տարբերին իրարմէ: Այսօր նըկարչութիւնը որոշ ուղղութիւն մը չունի. ռոմանթիկ ձգտումներու հետ, ոչ նուազ զօրաւոր ձգտումներ ալ գոյութիւն ունին դէպ ի բնապաշտութիւն: Արձանագործութիւնը եւ քանդակագործութիւնը հետզհետէ աւելի մեծ կատարելութեան մը կը հասնին: Այսօր քանդակագործութիւնը աւելի բնական ու ցայտուն արուեստի մը հակումներն ունին: Գալով ճարտարապետութեան, պէտք է ըսել որ, արդի ժամանակները, գեղարուեստի այս ճիւղին համար, աւելի քննադատող քան արտադրող ոգի մը ունին: Էյֆէլեան աշտարակին շինութիւնը մեծ

դէպք մը եղաւ ճարտարապետութեան համար, որովհետեւ ապացուցուած է վերջապէս հաստատորէն թէ. երկաթեայ շէնք մը աւելի թեթեւ կ'ըլլայ եւ հետեւաբար կրնայ աւելի մեծ բարձրութիւններ ունենալ, քան քարաշէն շինուածք մը: Այպազան սակայն ցոյց պիտի տայ թէ երկաթեայ շէնքի մը տոկունութիւնն ու տեւականութիւնը ի՛նչպէս են բաղդատմամբ քարաշէն շինուածքի մը: Գեղարուեստներու իմաստասիրութիւնը կը կոչուի գեղեցկագիտութիւն որու մասին հմուտ հեղինակութիւն մըն է մեր մէջ Թովմաս Թէրզեան որ այս նիւթին վրայ ընդարձակ ուսումնասիրութիւն մը ունի Բազմավէպի մէջ:



# 1. ԳԵՂԱՐՈՒԵՍՏՆԵՐ



*Հէրպէրդ Սբէնսըր կը հաստատէ թէ քաղաքակրթութեան շպարը, կամ լոկ զարդական մասը, բուն իսկ քաղաքակրթենէն առաջ կը թափանցէ եւ կը տարածուի նախնական ժողովուրդներու մէջ։ Ապացուցանելու համար, օրինակներ կը բերէ վայրենի եւ կիսավայրենի ժողովուրդներէն։ Ասոնք երբ առաջին անգամ յարաբերութեան մտան Եւրոպացիներուն հետ, անոնցմէ առին օղեր, մատանիներ, փետուրներ, թաշկինակներ, հագուստներ, զէնքեր, գունաւոր խաղալիքներ, աչքի զարնող բաներ, որոնք առնչութիւն չունին հանգստաւէտ կենցաղավարութեան պայմաններու հետ։ Աւելի ետքն է որ քաղաքակրթութեան ոչ այնքան փայլփլուն բայց աւելի օգտակար տարրերը ընդունեցին։*

*Ասոր հետ մէկտեղ, նոյն իսկ զարդական արուեստներու մէջ, ճաշակը ճշմարիտ քաղաքակրթութեան ծաղիկն է։ Զարգացեալ ժողովուրդներու մէջ միայն կրնայ գտնուիլ գեղեցկութեան, վայելչութեան, պատշաճութեան, հանգստաւէտութեան այն ամէն տարրերու բաղադրութիւնը զոր «Ճաշակ» անունով կը ճանչնանք։ Այն նուրբ հասկացողութիւնն համեմատութեանց որոնք պէտք է գտնուին մեր գործածած առարկաներուն, մեր ըմբռնումներուն եւ անոնց թանձրացումներուն, մեր կեանքի արտաքին արտայայտութեանց, եւ մեր զգացումներուն*

ու գաղափարներուն՝ զգալի, իմանալի կամ չօշափելի ներկայացումներու մէջ, գիտութեանց այն ամէնէն նուրբը՝ ճաշակի մշակութենէ եւ ազնուացումէ կախում ունի, եւ այս ալ առանց կրթութեան, առանց քաղաքակրթութեան չ՚ըլլար։ Այնպէս որ նոյն իսկ մարմարինի կտոր մը գաղափար կուտայ մեզի այսօր թէ զայն գործածող ժողովուրդները ո՛ր աստիճան քաղաքակրթուած էին։ Հին Հելլէններու քաղաքակրթութեան վրայ ունեցած բարձր գաղափարնիս մինչեւ մէկ աստիճան կը յենու անոնց չաստուածներուն եւ դիցաբանութեան չօշափելի արուեստական ձեւերուն վրայ։ Կը տեսնենք որ Յոյնե՛րը միայն գիտցեր են ճաշակաւոր, փափուկ կամ վայելուչ ձեւեր տալ իրենց չաստուածներուն եւ ուհիներուն, մինչ տարբեր պայմաններու մէջ ապրող ուրիշ հին ազգեր սոսկալի կոշտ ձեւեր տուած են իրենց չաստուածներուն։ Երբ դիցուհի մը ներկայացնել ուզեր են, Հելլէնները կիներու ամենէն գեղեցիկը տիպար ընտրեր են, կամ նոյն արձանին վրայ ամփոփեր են կիներու ամէն շնորհներն ու հրապոյրները։ Երբ առնական կորովը ներկայացնել ուզեր են, գիտցեր են գծել կամ կերտել այնպիսի ձեւ մը՝ որ ոյժ կը բուրէ, բայց առանց սոսկում ազդելու. զի արուեստագէտը ճշդիւ հետեւած է բնութեան, այրը թէ կինը ներկայած է ճշմարիտ գիտութեամբ մարդակազմութեան, եւ արուեստականին մէջ պահած է բնականին ճշմարիտ համեմատութիւնները։ Եթէ իրենց հին հեղինակներուն գրածները մեզ հասած ալ չըլլային, այս քա-

րի կտորուանք, հին չէնքերու այս բեկորները բաւական պիտի ըլլային համոզում գոյացնելու մեր մէջ թէ հին Յոյները շատ նրբաճաշակ ժողովուրդ մըն էին, որմէ նաեւ պիտի հետեւցնէինք թէ քաղաքակրթութիւնը կանուխէն տեղ ըրած էր իրենց մէջ։

Ճաշակը քանի որ քաղաքակրթութեան հետ կը զարգանայ, ժողովուրդներն ալ կրթութեան հետ կը սորվին գնահատել ճաշակաւոր գործերը, եւ մտքի արտայայտութեանց պաշտօն տանելու սկսելէն ետքն է որ գեղարուեստներուն յարգը կը ճանչնան։ Հեռաւորութիւնը մեծ է գիւղի արհեստէն մինչեւ գեղարուեստ։ Մեր. մէջ մինչեւ հիմա կրթութեան յառնելու վիճակը դիտելով, չէինք կրնար պահանջել որ գեղարուեստի շատ հետեւողներ ունենայինք, զի խնդրանքը չկար դեռ, եւ մատուցումն՝ եթէ երբեք ըլլար՝ անհատական զոհողութեան կամ մասնաւոր քմահաճոյքի արդիւնք պիտի ըլլար։ Քանի որ կրթուինք, բնական է որ՝ օրինակի համար՝ մեր տուներն աւելի ճաշակով շտկենք, մեր բնակարաններն աւելի ակնահաճոյ ձեւով շինել տանք, մեր սրահները ճշմարիտ պատկերներով զարդարենք։ Բնական է որ մեր աչքերը աւելի կը սիրեն հանգչիլ այնպիսի առարկաներու վրայ ուր մարդկային միտքն աւելի զբաղեր է, եւ մենք այն ատեն աւելի համ կ'առնենք իմացական արտայայտութիւններէն մեր կեանքի ամէնօրեայ զբաղումներուն մէջ իսկ։

# Զ. ՆԵՐՇՆՉՈՂ ՈԳԻՆ

Մ. ՄՆԱԿԵԱՆԻՆ

Յաճախ առիթ կ'ունենայի՝ բեմին առաջակողմը, գուլիսին ետեւ կայնած՝ դիտելու դերասաններուն ելեւմուտքը եւ դերակատարութիւնը։ Այդ երեւոյթը ինծի կ'ազդէր այն՝ ինչ որ պիտի զգայի, եթէ հնոցի մը մօտ գտնուէի։ Հեռուէն հանդիսատես եղողներուն նման, ես ալ կը տեսնէի բոցը խարոյկին որ բոլորտքելով՝ շող ու տաք կ'արձակէր։ Բայց նաեւ կ'զգայի, կը տեսնէի, կը լսէի հեւքը բոցերուն որ անընդհատ արագութեամբ մը մոխիրի կը վերածուէին։ Այդ խարոյկին յար եւ նըման, արուեստին հուրը տածող արուեստագէտը արագ սպառումի մը զոհն է։ Իր բարձրութեան, իր զգայնիկ արտայայտութեան մէջ յաջողելու համար, կիրքի՝ խանդի այդ խարոյկը անշէջ ու արծարծուն պահելու պէտք ունի։ Եռանդը որ իրմէ կը բղխի, իր հանճարին արտայայտութիւնն է, միանգամայն իր հատնումը, իր սպառումը, իր մահը։ Քանի՛ կատարելութեան ձգտի, այնքան բուռն է իր սպառումը. անո՛ր կը դիմէ անխուսափելի վազքով մը. դէպ ի հոն կը մղէ զինքը՝ ներքին, մոլեգին թափ մը։ Ճշմարիտ արուեստագէտին համար, հատցնող այդ կեանքը անկասելի՝ անխուսափելի է։ Արուեստին գաղափարականն է այդ թափը, մըտատիպարը, զոր արուեստագէտն անվրէպ կեր-

պով ունի իր վառ երեւակայութեան մէջ, զինքը կը մտրակէ անընդհատ. ինքնաբերաբար կը դիմէ այդ մտատիպարին՝ ինչպէս մագնիսը բեւեռին, ու ատ հատնումին մէջ կը գտնէ վայելքը։

Իտէալ սնուցանող տաղանդին համար այդ մըտատիպարը ո՛չ կեանքի պէտքերն են, ո՛չ ալ փառասիրութիւնը՝ կամ ծափաձայն դրուատիքները, որոնց մէջտեղ կ'իջնէ վարագոյրը։

Անոր արբշիռ աչուըները, այդ վարագոյրին թանձրութեան ընդմէջէն կը թափանցեն՝ շեշտակի ուղղուելու համար այն էակին որ իրեն ներշնչարանն է եղած։ Յաճախ Գեղուհի մ'է որ իր ներշընչող ազդեցութեան տակ կը պահէ Արուեստին Ներկայացուցիչը՝, բայց մարմնական գեղեցկութենէն աւելի՝ մանաւանդ սիրտի ու հոգիի շնորհն ու վայելչութիւնն է որ կը յանկուցանէ արուեստագէտին միտքը։ Անոր գնահատո՛ւմն է որ կը մտրակէ իր հանճարը։

Կեանքն ալ այդպէս չէ՞ միթէ։

Առանց այդ ներշնչումին, որ կայծ կուտայ հոգիին, ի՜նչ տափակ, ի՜նչ անշուք ու տխուր բան մը պիտի ըլլար կեանք ըսուած տուայտանքը. որքա՜ն անջիղ՝ անարիւն պիտի մնար մարդկային գործունէութիւնը՝ իր ամէն սեռերուն ու ձեւերուն մէջ։ Արուեստին հուրը չկրողին բաժինն է այդ անշունչ կեանքը որ անասնական բան մ'ունի իր մէջ. ո՛չ մէկ ազնիւ ձգտում չի ցնցեր, ո՛չ մէկ թրթռուն երգ չ'ոգեւորեր զայն, ո՛չ մէկ խանդ չի բորբոքեր անոր ներսիդին։ Այդ անաւիւն արարածներն են կեանքի մէջ լքուած՝ անյաջողութեան

դատակնիքը կրող անհատները. — մինչ խանդը կ'արծարծի ան միւսին մէջ։ Ո՛ր եւ է նկատում կամ պատրուակ չի կրնար կասեցնել այդ եռանդը՝ արուեստի, իտէալին ձգտող տաղանդը. եւ անոր հասնիլ ապրի՛լ է՝ ցորչափ աւիւնը բոցավառող սէր-էակը կը ներշնչէ՝ հեռուէն թէ մօտէն։

Յուշարարին խուլ ձայնը զինք կը հրաւիրէ բեմին վրայ։ Դուրս կուգայ կողմնակի դռնէ մը եւ կը լսէ իր շեշտերը. զգացումի հեղեղ մ'է որ կը յորդի. դէմքին ամէն մէկ գիծը, շարժումին ու ձեւերուն ամէն մէկ դիրքը, ձայնին ամէն մէկ շեշտը խօսուն ու արտայայտիչ բան մ'ունին. մերթ աղապատանք ու կարեկցութիւն կ'արտայայտէ, մերթ մեղմով կ'աղերսէ, մերթ ալ կը գոռայ, կ'որոտայ, կ'ամպրոպէ, կը յուզէ եւ կը ցնցէ՝ իր մագնիսացընող շունչով մթնոլորտը լեցնելով։

Դերասանին պէս, մարդկային յոյզերուն ու արուեստներուն միւս արտայայտիչներն ալ, զերծ չեն այդ մտատիպար ներշնչարանէն։ Քանդակագործը, երաժիշտը եւ քերթողը, այդ Մտատիպար-Դիցանուհէն կ'ազդուին։

Այդ Մուսան (muses) ուրիշ բան չէ բայց եթէ ստեղծագործ ոգին, ծննդական միտքը որ մերթ աննիւթ ու իտէական, մերթ ալ հրաշակերտ էակի մը մարմինին տակ՝ աղբիւրը կ'ըլլայ գեղեցիկ թելադրութիւններու։

Առանց այդ Ոգիին, արուեստը մեռած է, եւ Արուեստագէտը անհոգի էակ մը, խրտուիլակ մը որ կը կապկէ անզգած շարժումներ ու սառած՝ անյարիր շեշտեր։

*Բնութիւնը ամէն արուեստագէտի տուած է հաւասար չափով այդ օժիտը որ մեծ արուեստագէտներու քով «հանճարի հուր» կը կոչուի։ Անոր համա՛ր է որ հազուագիւտ են կատարելութեան բարձր աստիճանի ներկայացուցիչ Միտքեր, որոնք դարերու վրայ կ'ազդեն, եւ իրենց ետեւէն լայն ու լուսեղ արահետ մը կը ձգեն՝ սերունդները բարձրացնելու, վեհոգի ընելու համար։*

ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ

## 3. ԳԵՂԱՐՈՒԵՍՏԻ ԷՋԵՐ

### ԽԵՂՃ ՁԿՆՈՐՍԸ [1]

*Աւետարանին մէկ տառակը կարծես՝ ԺԵ. դարու բրիմիդիֆի մը աչքովը տեսնուած, բայց ՚ւր յղացման ու գիծերուն առերեւոյթ հանդարտութեանը տակ ԺԹ. դարու իմաստասիրական ու քիչ մը ցաւագին մտածումը կ'զգացուի թաքուն, ու ինչպէս Աւետարանին բոլոր տառակները, իր ձեւին մէջ պարզ ու միամիտ՝ յուզիչ ըլլալու աստիճան, եւ սակայն տարօրինապէս խորունկ՝ իր ներքին նշանակութեան մէջ։ Այդ տղու պատմութիւնը՝ մարդկային կեանքին ամէնէն ճշմարիտ եւ ամբողջական պատկերն է որ գիտեմ։*

*
* *

(1) Պիւվիս տը Շավանի մէկ նկարը՝ Փարիզ, Լիւքսանպուրկի Մուզէոնին մէջ։

Հանդարտ ու միապաղաղ ծով մը, տժգոյն, թափանցիկ գորշութեամբ մը, միաթոյր, ու անծայր, մինչեւ հորիզոնը երկարելով, ցոլացնելով լոյս մը որ սառած արեւէ մը կը թուի գալ։ Հեռուն, պզտիկ մութ հողի լեզու մը կ՚երկննայ, աւելի անդին, երկայն մուխի գոյն ցամաքի գիծ մը հորիզոնին վրայ կը պառկի։ Ասդին, անկանոն եզերքով ափունք մը իր զանգուածը կ՚երկնցնէ հողին վրայ, զայն կը կտրտէ իր բեկբեկ գիծով։ Բարակ ցօղուններու վրայ, մանր փափուկ ծաղիկներ, դեղին ու ճերմակ՝ առատ ու սիրուն խուրձերով բուսած հողէն՝ անոր մերկութիւնը երազի ուրախութեամբ մը կը հագուեցնեն։ Պարմանուհի մը ծունկի եկած, բուռ բուռ ծաղիկ կը ժողվէ գետնէն։ Ծաղիկներուն մէջ պառկած, վարդ երախայ մը, կիսամերկ կը քնանայ, բուսական միսի անգիտակից ընկողմանումով մը ուր քունին ու մանկութեան կրկին միամտութիւնները կան։

Ափունքին առջեւ, ցիցի մը կապուած, մակոյկ մը կը կենայ, պարզ ու մերկ մակոյկ մը, չեղակի երկնցնելով օդին մէջ իր միակ մեծ կայմը, որուն ծայրէն կը կախուի՝ չուանով մը՝ քառաճանկ կեռը ու ուռկանը ծովին մէջ կը բռնէ։ Ու նկարը լեցնող լոյսին տակ որ ցուրտ է բայց ջինջ, մակոյկին ստուերը ծովին մէջ յստակ կը նկարուի։ Մակոյկին մէջտեղը, խեղճուկ ու նախնական զգեստներով՝ ինչպէս կ՚երեւակայենք Աւետարանին ձկնորսները՝ կեցած է խեղճ ձկնորսը։ Կռնակը ափունքին ու ծաղիկներուն դարձուցած է, եւ իր նայուածքը, պիշ, կը յառի ուռկանին ու ծովին մէջ

կորսուած է։ Թանձր ու բրդոտ մազերու տակ, ծիւրած դէմք մըն է, փոսացած ու տժգոյն այտերով, աչքերը կիսափակ ու վայրահակ, լռիկ վհատութեամբ մը ներկուած։ Բայց մօրուքը որ դէմքը կը շրջանակէ՝ ճգնաւորի խիստ ու մաքուր արտայայտութիւն մը կուտայ անոր, եւ գլխուն հակումը, դիմագիծերուն հանդարտ ու տրտում ամփոփումը, եւ իր կեցուածքին սրտաչարժ խոնարհութիւնը աղօթքի ձեւ մը կուտան իրեն։ Ու անշարժ, թեւերը կուրծքին վրայ ծալլած, աչքը ուռկանին վրայ՝ ձկնորսը կ'սպասէ։

Իրերն ու անձերը՝ իրականութենէն ունին այնչափ բան ո՚չչափ պէտք է որպէս զի ցուրտ այլաբանութիւն մը չդառնան։ Այդ ափունքը բոլոր թարմութիւնն ունի ճշմարիտ ափունքի մը, եւ այդ մարդկային դէմքերը կեանք ունին։ Բայց հոս բանաստեղծին միտքը այնպէս չեշտած է իր գիծերուն ու գործերուն մէջ՝ գաղափարը զոր կ'ուզէ ներկայացնել, որ սահմանափակ ու հասարակ կեանքի պատկեր մը ըլլալու տեղ, կեանքի պատկերացում մը կ'ըլլայ, իմաստասիրութեամբ ստորագծուած եւ բանաստեղծութեամբ լուսաւորուած։ Անձերը էակներ են, որոնք կ'ապրին, բայց այն ընդհանուր գիծերուն մէջ ցուցուած, այն հեռաւորութենէն տեսնուած՝ տիպարներ կը դառնան, ու տեղը, բնութեան պատառ մը մնալով հանդերձ, բարոյական ընդարձակութիւն մը կ'ստանայ։

Եւ յուզուած, խոհուն՝ կը նայինք այդ մտածման ու գեղարուեստի վսեմ էջին, ուր աղքատի՛կ դատարկ մակոյկին մէջ մեզի մարդը կ'երեւայ՝ իր

…ին ամփոփումին եւ ուրախութեան մէջ, ծովե-
… պարապին վրայ կենալով ակնդէտ, մինչդեռ
…ոյն, երանութեան … ն վրայ, երազին
…ներուն մէջ, Սէ… ը կայ՝ եւ Ան-
…իւնը կը նկրն…

## ԱՐ… ՐՕՆ… ԻՆ ՄԷՋ

…ստայր եւ …րէն, իրենց առանձ-
… համադրեն կեան-
…ր։ Արուեստը իր-
… եւ գ… կին չլազան մարմ-
…կը ցոլացնէ …ադկային հոգիին
…ռական հոս…ները, որոնք ընդ-
հ… անրաբար կ…նթանան։ Արուես-
ա… …եկ բոյսը, վճիտ հայելին է, ուր
ի… …րոտէն, իր շրջավայրէն բ՛ւր ճառագայթ-
հ… …ան, զորս հարիւրապատիկ ուժգնութեամբ
կ… …դրադարձնէ։

Կրօնական զգացումը իբրեւ հոգիին մեծագոյն ոյժը միշտ արուեստ մը ծաղկեցուցած է իր չուրջը։ Նկարչութեան, երաժշտութեան, քանդակագործութեան եւ ճարտարապետութեան բարձրագոյն արտայայտութիւնը հաւատքին փթթումն է։ Կրօնական բուռն տենչանք մը կամ գաղափար մը մարմնաւորելու ճիգեր են Պուտտայական pagodեները, Յունական մեհեանները, ձիւնափառ Պարթենոնը

կորսուած է։ Թանձր ու բրդոտ մազերու տակ, ծիւրած դէմք մըն է, փոսացած ու տժգոյն այտերով, աչքերը կիսափակ ու վայրանակ, լուիկ վհատութեամբ մը ներկուած։ Բայց մօրուքը որ դէմքը կը շրջանակէ՝ ճգնաւորի խիստ ու մաքուր արտայայտութիւն մը կուտայ անոր, եւ գլխուն հակումը, դիմագիծներուն հանդարտ ու տրտում ամփոփումը, եւ իր կեցուածքին սրտաշարժ խոնարհութիւնը աղօթքի ձեւ մը կուտան իրեն։ Ու անշարժ, թեւերը կուրծքին վրայ ծալլած, աչքը ուռկանին վրայ՝ ձկնորսը կ՚սպասէ։

Իրերն ու անձերը՝ իրականութենէն ունին այնչափ բան որչափ պէտք է որպէս զի ցուրտ այլաբանութիւն մը չդառնան։ Այդ ափունքը բոլոր թարմութիւնն ունի ճշմարիտ ափունքի մը, եւ այդ մարդկային դէմքերը կեանք ունին։ Բայց հոս բանաստեղծին մասը այնպէս շեշտած է իր գիծերուն ու գործերուն մէջ՝ գաղափարը զոր կ՚ուզէ ներկայացնել, որ սահմանափակ ու հասարակ կեանքի պատկեր մը ըլլալու տեղ, կեանքի պատկերացում մը կ՚ըլլայ, իմաստասիրութեամբ ստորագծուած եւ բանաստեղծութեամբ լուսաւորուած։ Անձերը էակներ են, որոնք կ՚ապրին, բայց այն ընդհանուր գիծերուն մէջ ցուցուած, այն հեռաւորութենէն տեսնուած՝ տիպարներ կը դառնան, ու տեղը, բնութեան պատառ մը մնալով հանդերձ, բարոյական ընդարձակութիւն մը կ՚առնայ։

Եւ յուզուած, խոհուն՝ կը նայինք այդ մտածման ու գեղարուեստի վսեմ էջին, ուր աղքատիկ դատարկ մակոյկին մէջ մեզի մարդը կ՚երեւայ՝ իր

յոյսին ամփոփումին եւ տրտմութեան մէջ, ծովերուն պարապին վրայ կենալով ակնդէտ, մինչդեռ իր ետին, երանութեան ափունքին վրայ, երազին ծաղիկներուն մէջ, Սէրը փունջ կը կապէ եւ Անմեղութիւնը կը նիրհէ։

## Կ. ԱՐՈՒԵՍՏԸ ԿՐՕՆՔԻՆ ՄԷՋ

Գեղեցիկը, ճշմարիտը եւ բարին, իրենց առանձնական կալուածներուն մէջ կը համադրեն կեանքին բոլոր ոյժերն ու երեւոյթները։ Արուեստը իբրեւ ճշմարտին փայլը եւ գեղեցկին այլազան մարմնացումը՝ իր մէջ կը ցոլացնէ մարդկային հոգիին կրօնական եւ գիտական հոսանքները, որոնք ընդհանրապէս զուգահեռաբար կ՚ընթանան։ Արուեստագէտը՝ զգայնիկ բոյսը, վճիտ հայելին է, ուր իր մթնոլորտէն, իր շրջավայրէն բիւր ճառագայթներ կ՚իյնան, զորս հարիւրապատիկ ուժգնութեամբ կ՚անդրադարձնէ։

Կրօնական զգացումը իբրեւ հոգիին մեծագոյն ոյժը միշտ արուեստ մը ծաղկեցուցած է իր շուրջը։ Նկարչութեան, երաժշտութեան, քանդակագործութեան եւ ճարտարապետութեան բարձրագոյն արտայայտութիւնը հաւատքին փթթումն է։ Կրօնական բուռն տենչանք մը կամ գաղափար մը մարմնաւորելու ճիգեր են Գոթական տաճարները, Յունական մեհեանները, ձիւնափառ Պարթենոնը

որ կը պսակէ Ակրոպոլը, Բաալպէկի աւերակնե-
րուն վրայ բարձրացող հսկայ սիւները որ երբեմն
լուսոյ աստուածին մեհեանը կը յօրինէին. քրիստո-
նէական մայր տաճարները ( cathédrale ), բիւզան-
դական մայր եկեղեցիները ( basilique ): Նոյնքան
բանաստեղծական վսեմ թռիչքներ ի յայտ կը բերեն
Վետայի նուագները, Հնդիկ գիւցազներգութիւն-
ները, Բաբելոնի նուիրական քերթուածները, Որ-
փէոսի առածները, ուր երգիչը ոգեւորուած է ան-
հունին զգացումովը, զոր կը ներշնչէին իրեն՝ մայ-
րամուտ արեւին բոսոր շառայլները, ովկիանոսին
լայնածաւալ շրջանակը, չարժուն օդը եւ երկին-
քի լուսազարդ կապոյտը:

Որոշ շրջանի մը արուեստը՝ իր ժամանակին տի-
րապետող գաղափարը, զգացումները կամ մեծ
կիրքերը կ'արտայայտէ: Եբրայական Սաղմոսները
արուեստական գեղեցկութիւններով Աստուծոյ եւ
Օրէնքին սէրը կ'երգեն. յունական արուեստը՝ գե-
ղեցկութիւն եւ ոյժ. Հռոմէականը՝ երջանկութիւն:

Սակայն արուեստը որ իտէալին սպասարկուն
է, հաւասարապէս օժտած չէ ամէն ժողովուրդ իր
փափկաշնորհ օծութեամբը: Սեմականներուն կը
պակսէր արուեստական, գեղեցկագիտական թռիչ-
քը: Հրեաններուն մէջ՝ աստուածութիւնը պատկե-
րով ներկայացնելու բաղձանքին դէմ սաստիկ
պայքար մը կը մղուէր այլասէր քաղաքակրթու-
թեան ներկայացուցիչ տարրին եւ մարգարէա-
կան դպրոցին միջեւ: «Արծաթէ եւ ոսկեղէն պատ-
կերներ պիտի չշինէք» կը պատուիրէր Եհովան.
«Սեղան մը կանգնած տեղդ, պէտք չէ որ կոփա-

ծոյ քարերով չինես զայն. վասն զի ո՛ւր քու գործդ կը դպչի, կը պղծուի անի»։ Սեմական եւ յունական գեղեցկագիտութեան հիմնագիծերը ներհակ են իրարու։ Ը. եւ Թ. դարերուն պատկերամարտութիւնը յոյժ նշանակալից է անով որ սեմական՝ ժուժկալ, պարզասէր ոգին կը պայքարի պատկերի յարգութեան դէմ եւ անիմաստ կը գտնէ զօրութիւն փնտռել անկենդան քարին կամ փայտին մէջ։

Իսկ Յիսուսին գիրքը շատ որոշ է արուեստին հանդէպ. Նա անտարբեր է ամէն երկրաւոր գեղեցկագիտական արժէքի մասին։ Բայց դարձեալ քրիստոնէութիւնն է որ՝ բարձր արուեստով մը՝ իր տպաւորութիւնները, իր յափշտակութիւնները կ՚իրագործէ բոցանշոյլ գոթական (gothique flamboyant) ճարտարապետութեան մէջ, դէպի անհուն ձգտող այդ վսեմ սլացքը, որուն փափուկ բանաստեղծութիւնը կը յատկանշէ Միջին Դարը իր արտակարգ զգացումներովը, իր խռովայոյզ ներշնչումովը եւ իր մելամաղձիկ խորհրդապաշտութեամբը։ Եւ ասիկա իրերու բնական հետեւանքն էր։ Քրիստոնէութիւնը՝ իր քարոզութեան շրջանին մէջ՝ աննկար տախտակի մը (table rase) կամ անձեւ զանգուածի մը հանդէպ չպիտի գտնէր ինքզինք, որուն կարենար անմիջապէս իր դրոշմը տալ. այլ հասունութեան չքեղ պտուղներով ակաղձուն եւ միանգամայն անկումի սպառնիչներ իր վրայ ցուցընող բարձր քաղաքակրթութեան մը գետնին վրայ կ՚իյնան իր սերմերը։ Ուստի, եկեղեցին՝ արուեստէն՝ իբրեւ աշխարհականացման հզօր ազդակէ

մը՝ խորշելով հանդերձ, յետոյ պիտի ոտնակոխէր ա-
նոր բոլոր պերճութիւնները, եւ մահաչուք կրօնքը
կեանքին չքեղութիւնը պիտի զգենուր։

Բայց արուեստին մուտքը յոյժ յամրօրէն կա-
տարուած է։ Դ. դարու եկեղեցին պարզ է եւ ա-
նարուեստ. ո՛չ ապակեփեղկեր, ո՛չ որմանկար կը
գեղազարդեն զայն. ո՛չ վեհաչուք արարողութիւն-
ներ, ո՛չ պերճ զգեստներ, ո՛չ երկնային երաժըշ-
տութեան մը ներդաշնակութիւնը, զի «Մարդ-
կային ձայնը միայն արժանաւոր տուրքն է Աստու-
ծոյ խօսքին»։ Բարեպաշտիկ զրոյցներու անոյշ
մթնոլորտ մը կը ծաւալի եւ տաճարին դրան վե-
րեւ խաղաղութեան խոստում մը կը կարդաս —
Մուտք բարի, ելք յաւագոյն։ Կռապաշտութեան ան-
հետացումով, հետզհետէ քանդակներ, զարդա-
դրրուագներ կը ծածկեն սիւները, անօթները եւ
սպասները, ու գետնադամբաններու խորհրդապաշ-
տութիւնը իրապաշտական ամենաչքեղ տեսարաննե-
րու կը փոխուի։

Ուղիղ է թէ բոլոր գեղարուեստները հաւա-
սարապէս նպաստաւո՞ր են կրօնական զգացման
զարգացումին։ Նկարչութիւնը եւ քանդակագոր-
ծութիւնը չե՞ն նիւթականացներ եւ բաժներ զայն
բազմաթիւ առարկաներու մէջ, մինչդեռ ճարտա-
րապետութիւնը, երաժշտութիւնը եւ բանաստեղ-
ծութիւնը իրենց համադրական նկարագիրովը կը
նպաստեն հոգեկան պաշտամունքին։

Երաժշտութիւնը գերազանցապէս կրօնական
արուեստ մըն է որ կ'սկսի հոն՝ ուր կ'աւարտի
խօսքը, որ կը դղրդէ մեր էութիւնը այն խորու-

թեամբը, ուր ֆիզիքական եւ բարոյական կեանքը իրար կը խառնեն իրենց աղբիւրները, եւ ուսկից միամնաբար կը ցայտեն։ Երաժշտութիւնը ամենահին ժողովուրդներու մէջ պատուի տեղ մը կը գրաւէր։ Եգիպտոս իր երգիչ քրմուհիներն ունէր. Աղեքսանդրիոյ մէջ մեծ դպրոց մը կար ուր կ'ուսանէին երգիչներն ու երաժիշտները։ Երգը անբաժան եւ հրապուրիչ տարրն էր կռապաշտական եւ հրէական կրօնային արարողութիւններուն, դիցաբանական պաշտօնին, հասարակաց տօներուն, ընտանեկան կեանքի հանդիսաւոր պարագաներուն, թատրոններուն եւ forumներուն։ Քրիստոնէութիւնն ալ տեղի տուաւ այդ համաշխարհիկ հոսանքին առջեւ, եւ իր բանաստեղծ պաշտօնեաները, — Եփրեմ, Ոսկեբերան՝ արեւելքի մէջ, Ամբրոսիոս, Օգոստինոս՝ արեւմուտքի մէջ սկսան նըւագներ յօրինել եւ մեղեդիներ պատշաճեցնել քըրիստոնէական վարդապետութեան։

Արդեօք գեղեցիկին պաշտամունքը չի՞ հակասեր քրիստոնէութեան ոգիին եւ աշխարհահայեցողութեան, որ երբեմն կը չփոթուէր ճգնաւորական գրաւիչ յարացոյցին հետ։ Պատշա՞ճ է որ գեղարուեստները, որոնք հասարակաց վայրերու — թատրոն, զբօսավայր, սալօն — իրենց լիալիր պերճանքովը ի յայտ կուգան, նաեւ իրենց բովանդակ աշխարհիկ շքեղանքները ցուցադրեն սրբավայրերու մէջ։ Անշուշտ անտեղի է այդ մասին վճռական եւ անձկամիտ ըլլալ։

Արուեստը՝ սկզբունքով իր գոյութեան իրաւունքը պիտի պահէ կրօնական իրերու մէջ, Մար-

դիկ ինչպէս իրենց էութենէն բղխող ամէն ազնուագոյն բանը՝ արուեստին ալ բարձրագոյն հրաշալիքներն ի սպաս կը դնեն Աստուծոյ փառքին։ Ու մէկը եթէ սրբութեան ծարաւով մը եկեղեցին կը մտնէ, ինքնամփոփ՝ իր հոգիին խորը աստուածային երանութեան մը քաղցրութիւնը զգալու տենչով, անոր համար ինքնին անկարեւոր հարց մըն է թէ պէ՞տք է ծաղիկ կրել լամբակին կամ փեղոյրին վրայ։ Կրօնական զգացումը այլամերժ չէ. նա կրնայ՝ զարգացած մարդուն մէջ՝ կեանքին ամբողջը կազմող ոյժերուն հետ համերաշխ ըլլալ եւ իր ազնուացնող յատկութիւնը պահել։

ԶԱՐՄԱԿ

(ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ)



# Ե. ԸՆԿԵՐԱՅԻՆ ՆԻՒԹԵՐ

*Ընկերային նիւթերու* շարքին մէջ կը մտնեն այն ամէն գրական-լրագրական արտադրութիւնները որոնք կը շօշափեն ժողովուրդին տնտեսական, բարոյական, իմացական կեանքին վերաբերող ո՛ր եւ է խնդիր: Ընկերաբանութիւնը, կ'ըսէ Բալանդ ընկերաբանը, ուրիշ բան չէ, բայց եթէ ընկերային հոգեբանութիւնը, այսինքն գիտութիւն մը որ կ'ուսումնասիրէ ընկերային կեանքին միջոցաւ իրարու քով եկած միութիւններու մտաւորականութիւնը (mentalité): Կ'ընդգրկէ նաեւ պարկեշտ ու բանաւոր գաղափարներ, եւ անհատներու՝ որքան ընտանիքներու հանգիստ ու հաճելի ապրելու կերպին կը ձգտի՝ իր քննասիրած հարցերով. (Ամուսնական խնդիրներ, թաղային կամ ընտանեկան վէպեր, տեղական բարքերու եւ սովորութիւններու վրայ ուսումնասիրութիւններ=վէպի կամ պատկերի ձեւով, աղքատ հարուստի կեանքէն դրուագներ, վաշխառութեան՝ եւ անկէ ծագում առած գանգատներ, թաղականի զեղծումներ, բարոյական անկումներ, եւայլն:

Իր այս ընդարձակ եւ բազմակողմանի փուլերուն մէջ, անիկա իմաստասիրական չոր գիտութեան մը երեւոյթէն մերկանալով՝ հաճելի ու դիւրամատոյց ձեւ մը կ'ստանայ, ինչպէս ամէնօրեայ լրագրութեան մէջ երեւցող շատ մը յօդուածներ անոր շուրջը կը դառնան՝ նպատակ ունենալով՝ ամէն տեղ՝ մարդկային կեանքը աւելի բարեկեցիկ ու վայելուչ, աւելի ազնիւ, աւելի «մարդկային» վիճակի մէջ տեսնել:

# 1. ԱՌՏՆԻՆ ՀԱՐՑԵՐ



Դեռ բնաւ մեր մէջ չեն նշմարուիր այն ջանքերը՝ որոնք եւրոպական ժողովուրդներու մէջ միշտ ցոյց կը տրուին՝ ընտանեկան բարքերու բարեփոխութեան համար օր ըստ օրէ։ Արմատացած մօրացած թերութիւններ ի վեր հանել, ձաղկել ունակութիւններ որոնք ընտանիքի կազմակերպութեան հետ խմորուած զօդուած են սերտիւ, նոր՝ երանաքեր՝ լուսաւոր սովորոյթներու վարժեցնել, անոնցմով պատուաստել ընտանիքները. — ասիկա եղած է գլխաւոր հոգերէն ու մտադրութիւններէն մէկը այն մարդոց որոնք մտահոգութեամբ ու արգահատանքով կը դիտեն միշտ ընկերային բարքերու վնասակար յոռութիւնը, ու այլ եւ այլ միջոցներով կ'աշխատին օրէ օր թեթեւցնել զայն, մինչեւ որ բոլորովին անհետանայ։ Եւ այսօր անշուշտ քաղաքականացեալ աշխարհի ժողովուրդներու ընտանեկան կազմակերպութիւնը չէր գտնուեր այն վիճակին մէջ որով կը ներկայանար նոյն իսկ անկից մինչեւ քանի տարի առաջ. բարեշրջումը շարունակական է, անդուլ անդադրում, եւ բարքերու այս ազնուացումին, յոռի սովորութիւններու աստիճանական այս անհետացումին արդիւնք է որ անհատը նիւթական ու բարոյական զարգացում կ'ունենայ անզգալաբար, հետեւաբար եւ ընտանիքը՝ որ անհատներէ կը բաղկանայ, եւ հասարակութիւնը՝

որ ընտանիքներէ կը կազմուի, եւ ժողովուրդը՝ որ հասարակութիւններու ամբողջութիւնը կը ներկայացնէ։

Արդ մեր ընտանեկան կազմակերպութիւնը ա՛յնպէս է, — ու երկար ժամանակէ ի վեր — որ բընաւ չի համապատասխաներ այլուր տեսնուած բարեշրջութեան։ Խնկաւէտ ու նուիրական աւանդութեան մը նման մեր հաւերէն մնացած է մեզի՝ ու երկիւղած հոգածութեամբ մը կը պահենք։ Ժամանակներու փոփոխութիւնը բնաւ չ'ազդեր. այդ աւանդամոլ սովորոյթը բնաւ չի զգածուիր, անայլայլ կը մնայ, եւ զայն բարւոքելու համար եղած փորձերն այնքան թեթեւ են ու աննշան որ գրեթէ բնաւ ո՛ր եւ է բարեշրջում առաջ չէ եկած։

Եւրոպան պտըտած, ուսեալ եւ փորձ անձէ մը առաջին անգամ ըլլալով լսեցի հետեւեալ գաղափարը, զոր խորին համոզումով կը յայտնէր։ Խօսքը կը դառնար աղջիկներու դաստիարակութեան եւ այն դերին վրայ զոր անոնք կը խաղան ընտանեկան շրջանակին մէջ։

— «Երկու աղջիկ ունիմ, որոնք դեռ հինգ տարեկանը չեն լրացուցած։ Թերեւս շատերու զարմանք պիտի պատճառեմ, եւ բնաւ հաւանութեան չարժանանայ իմ ընթացքս, բայց հոգս չէ։ Աղջիկներս այնպէս պիտի մեծցնեմ՝ ինչպէս եւրոպական միջին եւ խոնարհ դասակարգի աղջիկները կը մեծնան։ Չափաւոր ուսում մը առնել պիտի տամ անոնց. յետոյ ո՛ր եւ է արհեստ մը պիտի սորվեցնեմ, բայց այնպիսի արհեստ մը զոր էրիկ մարդիկ ալ կը բանին, մէկ խօսքով առնական արհեստ մը.

*իրենց ապրուստն իրենք պիտի ճարեն. աչքերնին փողոցը չպիտի ըլլայ զիրենք սնուցանող մարդ մը փնտռելու համար. յետոյ, երբ ամուսնանան օր մը, ապահով եմ թէ ամէնէն երջանիկ, ամէնէն բարեկեցիկ ու խաղաղ ընտանիքներէն մէկը պիտի կազմեն, ապրուստ ճարելու կենսական հոգը բաժնելով իրենց ամուսիններուն միջեւ։ »*

*Տաք հաւատքը որով տոգորուած էին իր խօսքերը, աչքերուն մէջ վառող թափանցիկ ցոլքը այն համոզումը ներշնչեցին ինծի թէ այդ կորովամիտ հայրը փուճ աւելորդաբանութիւն մը չէր ըներ. ընդհակառակը, իր աղջիկներն այդպէս կրթելու ջանքը պիտի թափէր՝ զայն գործադրելու համար։ Պատի՛ւ այս հօր։*

*Եւ այս հայրը իր այդ ծրագիրով կը յուզէր ամէնէն կարեւոր, ամէնէն կենսական հարցերէն մէկը, որոնց լուծումը պիտի ապահովէ վերջնական կարգաւորութիւնն ու անդորրութիւնը մեր ընտանեկան շրջանակներուն։*

*Երբ մարդու մը պարտքը գծուած լմնցած է. յաւիտենական աշխատաւորն է ան, ինք պիտի մըտածէ իր զաւկներուն, իր ընտանիքին գոյութիւնն ապահովող միջոցները. իր ջանքերուն, իր տուայտանքներուն աստիճանէն կախում ունի իր թեւին տակ ապրող արարածներուն երջանկութիւնը կամ դժբախտութիւնը։ Երբ այրը բախտին մէկ ձախողուածովը չկարենայ հայթայթել կեանքի անհրաժեշտ պարէնը, խե՛րը տես այդ մարդէն կախում ունեցող ընտանիքին։ Ու միշտ այրն է որ պատասխանատու կը բռնուի այդ դժբախտութեանը.*

ա՛ն է միակ յանցաւորը. չէ աշխատեր, չէ ուզեր, իր առնական պարտաւորութիւնը լիովին չէ կատարեր։ Բնաւ հարցնող չըլլար թէ կինը ի՞նչ բաժին ունի այս պարագային մէջ. անիկա նիւթապէս գործող տարր մը չէ, հաց ճարելէ տարբե՛ր է անոր պաշտօնը։

Ահա այս սխալ ըմբռնումն է որ պատճառ եղած է ու կ'ըլլայ ընտանիքներու կազմալուծումին, թշուառութեան ծաւալելուն եւ աճելուն, ու բարոյականութեան անկումին ու վատթարացումին անզգալի կերպով։

Եթէ մինչեւ այսօր մեր ընտանիքի հայրերը գիտնային իրենց աղջիկներն այնպէս կրթել ինչպէս մտադրած է կրթել յիշեալ հայրը, մեր ընկերային դիրքը բոլորովին տարբեր պայմաններով պիտի ներկայանար այժմ։ Ընտանիքին բարօրութեանը համար կնոջ գործակցութիւնը իր էրիկին, մեծագոյն եւ գլխաւոր պայմանը կրնայ նկատուիլ ակնկալուած արդիւնքը ձեռք բերելու համար։ Աղջիկի մը առաջին ու վերջին իտէալն է էրիկի մը տիրանալ, տանտիկին ըլլալ ու բոլորովին ձեռք քաշել այն աշխատութիւններէն զորս իր աղջկնութեանը թերեւս ի գործ կը դնէր՝ իր կամ իրեններուն ապրուստը ճարելու համար, ամուսնութիւնը՝ կարծես՝ պայման է աշխատութեան պարտականութիւնը վերցնելու։

Բաւական հասուկ աղջիկ մը որ ձեռքի գործ բանելով այնքան դրամ կը շահէր որքան պէտք էր ընտանիքն ապրեցնելու համար, իրեն հետ ամուսնանալ փափաքողներուն միշտ մերժողական պա-

տասխան կուտար, երբ քննէր հասկնար թէ այդ թեկնածուներուն նիւթական վիճակը այն աստիճան գոհացուցիչ չէր որ ամուսնութենէ յետոյ ինք կարենար դադրեցնել իր աշխատանքը. իր սեւեռեալ գաղափարն էր՝ ամուսնանալէ յետոյ չ'աշխատիլ, եւ նստիլ տան կակուղ ու տաք անկիւնը՝ ձեռքը ձեռքին, անտանելի սպասող մը ըլլալու համար էրկանը վաստակովը եկած ամէն տեսակ բարիքներուն։ Ինչո՞ւ այս աղջիկին միտքին մէջ ամուսնութեան գաղափարը իր բուն, իսկական, ճշմարիտ իմաստովը տպաւորուած չըլլար. ինչո՞ւ չուզէր իր դասակարգէն պարկեշտ երիտասարդի մը հետ կարգուիլ եւ միաբան գործակցութեամբ կազմել խաղաղ ու բարեկեցիկ ընտանիք մը, որ երթալով պիտի բարգաւաճէր, եւ իր ծոցէն ելած էակներն ալ նոյն շաւիղին վրայ գտնուելով՝ բնաւ չպիտի շեղէին անկից։ Ահաւասիկ իտէալ ամուսնութիւնը։

Եւ մինչեւ ճարը չգտնուի ամուսնանալիք աղջիկներու միտքէն արմատաքի վանել այս սին, անօգուտ եւ վնասաբեր գաղափարը, երբեք չյուսանք թէ մեր ընտանեկան կազմաւորութիւնը պիտի ստանայ իր վերջնական ձեւը։

Ե.



# 2. ԾԱՂԻԿՆԵՐ ԵՒ ԱՂՋԻԿՆԵՐԸ



*Մայիսն եկաւ անցաւ, լեռներուն փապարնե-
րը՝ հեղեղատներն անգամ չափիւղայ ցցուածքնե-
րով եւ զմրուխտ գարգմանակներով զարդարուե-
ցան, անդունդին կողերուն վրայ՝ լօռը, հոծ ան-
մեռուկները, ցախը, իրենց թաւշային «պուրնուզը»
փաթթեցին, եւ ծառերը գանգուր ծամեր թափե-
ցին բլուրներուն ուսերն ի վար։ Բնութիւնը իր
վայրենի պերճանքը խառնեց պարտէզներուն շին-
ծու պչրանքին հետ, եւ անոնց ցանկերուն վրայ
հեստ պատուատակներ վազվզել սկսան անվերջ
աննահատնուած սողոսկումներով։ Ասոնք ամէնքը սա-
կայն կամաց կամաց կը դեղնին, կը փոշոտին, կը
մարմրին՝ գլուխնին կախելով յունիսի խանձող ա-
րեւուն տակ, հնազանդելով տիեզերական օրէն-
քին, որ ամէն բանի մէջ եւ ամէն տեղ փոփոխա-
կանութիւնը կը սիրէ, ինք միայն անփոփոխ, ան-
յեղլի մնալով իր յաւիտենական անսայթաք հոլո-
վումին մէջ։*

*Այս բոլոր երեւոյթներուն առջեւ, ի՞նչ ըրին
սակայն հայ աղջիկները։ Անշուշտ ինչ որ կ՚ընէին
ամէն օր եւ ամէն տարի։ Անոնք ալ զիրենք վա-
րող անփոփոխ օրէնքին՝ Բնութեան՝ մրցակիցներ
գոգցես, չեն սիրեր փոխել իրենց նիստ ու կացը։
Անոնց համար, գարունը որ կը փթթի. ամառը որ
կը բեղմնաւորի, աշունը որ կը դալկանայ եւ ձմե-*

ուը որ կը սառի, աւելի կամ պակաս մնալու կամ տաքնալու տպաւորութիւնները ունին, որովհետեւ զուրկ են ընդհանրապէս անոնց ընծայած հաճոյքներէն։

Մայիսին մարգրիտները, սրափուշները, որոնք փթթեցան ու թառամեցան, վաղանցուկ տեսարաններ եղան իրենց, մինչդեռ գեղարուեստի անհուն աղբիւրներ են անոնց համար, որ գիտեն ներշնչումներ փնտռել բնութեան սքանչելիքներուն մէջ, ու հրաշալիքներ արտադրել անոնցմէ։

Ոսկեթել թիթեռնիկը՝ որ կ'երթայ նշենիին վրայ թառիլ, եւ բիլ երկինքը որ կը ժպտի անոր սաղարթներուն մէջէն, լոյսի հեղեղը որ կ'ողողէ զանոնք, ամբողջութիւն մըն են բանաստեղծութեան որ հազար ու մէկ ձեւերու տակ կրնան արտայայտուիլ զանազան միջոցներով։

Ծաղիկները անհատնում գանձեր են գեղարուեստի, մանաւանդ աղջիկներուն համար, զորս իրարու նմանցուցած են բոլոր բանաստեղծները աշխարհի, իրենց թարմութեամբն ու անմեղութեամբը։

Ինչեր չի կրնար շինել աղջիկ մը ծաղիկներով։

Նախ կը զարդարէ անոնց փունջերով իր սենեակը, իր սեղանը եւ տանը բոլոր անկիւնները։

Յետոյ, անոնց թերթերը փետտելով, իր նախասիրած մէկ հատորին մէջ կը չորցնէ՝ սիրուն տաղի մը կամ սիրելի հատուածի մը մէջտեղը, զմայլելի փունջեր յօրինելու համար թուղթի վրայ, որոնք թարմերէն աւելի աղուոր կ'ըլլան շատ անգամ երբ ճաշակով ընդելուզուին։

Նկարիչ աղջիկը իր աշպօմին մէջ, իր դիպակէ բարձին, ճենապակիէ բաժակին, բուրապանիկին, հովահարին երեսը կը զարդարէ անոնց ընդօրինակութեամբը, եւ ծաղիկները, ծիլերը, շիւղերը, նորանոր գիրկընդխառնումներով կը յերիւրէ, գրեթէ ստեղծագործութիւն մը կատարելով գեղեցկութեան, որուն բուն իսկ դիւթութեան գաղտնիքը ընտրողութիւնն է։

Ասեղնագործ աղջիկը իր մետաքսի եթերային նուրբ թելովը այդ սարսուռ ամէն մէկ երանգին համար, անոնց ծիրանեծիր ցոլումներուն համար, բարակ բարա՛լ թելիկներ կ'ոլորէ իրարու հետ եւ թոյլերու խաղապատումը հոն ալ կ'երկնէ բանահիւսութիւնը արտմութեան կամ զուարթութեան, ինչպէս Վէռլէնի տաղերուն մէջ։

Ցետոյ ուրիշ արուեստ մըն ալ կայ որ ծաղիկները իրենց բնական ձեւին տակ կը պատկերացնէ մեղրամոմէն աւելի, գունաւոր թղթիկներէն աւելի, մնդուսներէն թաւիշներէն աւելի հաւատարմութեամբ ձեւացնելով զանոնք։ Հինաւուրց օյան է ան, զոր Ճափոնացիք [illegible] [illegible] կ'անուանեն, եւ ձեռագործներուն ամէնէն գեղեցիկը, ամէնէն աղնուապետականը, ամէնէն նրբակերտն է, եւ զոր սակայն մեր աղջիկները կ'արհամարհեն հիմայ։

Բայց սոսնյմէ ամէնէն աւելի եւ ամէնէն առաջ պիտի յանձնարարեմ ես մեր աղջիկներուն՝ ծաղիկներու մշակութիւնը. աշխատանք մը՝ որ իր զանազանութեամբը, փափկութեամբը եւ հազար ու մէկ հրապոյրներովը այնքան կը յարմարի ամէ-

նէն նրբասէրներուն եւ ամէնէն պարզասէրներուն, ամչնէն տկարներուն եւ ամենէն քաջառողջներուն։ Զբաղում մըն է ան, որուն մէջ միտքն ալ դեր ունի, ձեռքն ալ, եւ կարծեմ քիչ մը սիրտն ալ, վասն զի մարդ կրնայ ծաղիկները, բոյսերը սիրել եւ փարիլ անոնց։ Անոնց բողբոջումը, փըթթումը, փողփողումը յուզումնալից երեւոյթներ են զիրենք մշակողին համար՝ անմեղ եւ օգտակար։ Անոնց վրայ տարուած խնամքը քիչ մը մայրական հոգածութեան կը նմանի եւ այս պատճառաւ իսկ աւելի կը պատշաճի աղջիկներուն։

Բուսաբանութիւնը՝ անկարեւոր դատուած ուսում մըն է մեր դպրոցներուն մէջ, զոր սակայն Ամերիկացիք այնքան խնամքով կը սորվեցնեն իրենց աղջիկներուն՝ ո՛չ միայն տեսական այլ եւ գործնական կերպով, եւ ա՛յդ ուսումը ամբողջ կեանքին մէջ անվնաս եւ միանգամայն հաճելի ժամանց մը կը դառնայ իրենց։ Վասն զի տունկերը, հեղիքները, ծաղիկները ո՛չ միայն կը զըւարթացնեն տունը, ընտանիքը իրենց գեղազուարճ տեսքովը, այլեւ անխոնջ հաճոյքով կ՚զբաղեցնեն ժամերը, որոնք, աւա՜ղ, գիտեմ թէ ի՛նչ հալ ու մաշ մտածումներով, ի՛նչ անվերջանալի ձանձրոյթներով լեցուն են ընդհանրապէս մեր աղջիկներուն համար։

ՍԻՊԻԼ

# 3. ԲԱՐԻՆ ԱԼ ՓՈԽԱՆՑԻԿ Է



*Եթէ արդէն չէինք գիտեր, այս օրերս աղքատներու համար ամէն կողմէ ցոյց տրուած սէրը պիտի բաւէր մեզ համոզելու թէ մարդիկ իրարու կը նային, թէ՛ բարին․ եւ թէ չարը գործելու մէջ։ Սիրտը եւ միտքը այս օրէնքներուն կը հպատակին։ Երբ գաղափար մը ուղեղէ մը ծնելով կը մտնէ աշխարհի մէջ, ակնթարթի արագութեամբ ատիկա կ'որդեգրուի խել մը ուրիշ անձերէ որոնք անոր կը հաւատան, անոր կը հպատակին, անոր կը հետեւին աւելի եռանդով, աւելի յարատեւութեամբ քան նոյն իսկ այդ գաղափարին առաջին ծնողը։ Այնքան որ այս վերջինը երբեմն իր ծնունդին մասին միւսներէն աւելի քիչ յափշտակուած մարդը կը մնայ։*

*Զգացումն ալ նմանօրինակ կերպով իր որդեգրողները կը գտնէ՝ հիւանդանոցի, աղքատի, կարօտի համար. երբ կողմէ մը արդահատանք, գութ եւ սէր կ'արտայայտուի, ստոյգ գիտցէք որ այդ զգացումը անպատճառ ուրիշ տեղ մը իր արձագանգը պիտի հնչեցնէ։ Պէտք է փառք տալ բնութեան որ կրցեր է ստեղծել մեզ այսպիսի հանրային կերպով բարիք մը ցանկալու, բարիք մը գործադրելու ընդունակ եւ հակամէտ։ Ապա թէ ոչ, ի՛նչ սոսկալի վիճակ պիտի ըլլար չարերուն վիճակը, եթէ անոնց յանկարծական կամ անիրաւ ա-*

ղէտէ մը բռնուած միջոցին, անոնց բոլորտիքը բարեգործութեան ոգին կարող չըլլար ծնիլ՝ սփոփիչ լոյսի մը վէտ վէտ ալիքներուն պէս որ հետզհետէ կեդրոնէ մը տարածուելով կը հասնին մինչեւ հեռաւոր տեղեր՝ իրենց շաւղին վրայ հանդիպածները ջերմութեամբ տաքցնելով։ Մտացի մարդերուն կ՚իյնայ ճանչնալ այդ բնական ոյժը, արթնցնել այդ համերաշխական ոգին երբ որ հարկ է, եւ ծառայեցնել զայն՝ թշուառութիւններ թեթեւցնելու, հիւանդներ խնամելու ։

Բայց ի՞նչ է արդ՚ն զգացումը, եթէ ոչ գաղափար մը որ՝ մարդուս գլխէն սիրտը փոխադրուելով՝ հոն յառաջ կը բերէ եռ մը. ուստից պէտք է հետեւցնել որ մարդկային սրտին եռանդը բնական եւ ողջամիտ կրնայ ըլլալ այն չափով որ անոր գաղափարները բնական եւ ողջամիտ են ։ Սրտին ազնուութիւնը մտքին ազնուութիւնն է ։ Մենք չենք հաւատար՝ հետեւաբար՝ թէ մարդ մը որ խելացի չէ, որ մտքով բարձր ու զարգացած չէ, որ հեռատես չէ, որ նրբամիտ չէ՝ կրնայ խելացի, բարձր եւ նուրբ զգացումի տէր ըլլալ ։ Կոշտ մտքին քով չի կրնար ապրիլ փափուկ սիրտ մը, անկիրթ ուղեղը չի կրնար իրեն ընկեր ունենալ մշակուած սիրտ մը, եւ անհեռատես միտք մը միշտ պիտի ծնցնէ դատապարտելի զգացումներ ։

Բայց, պիտի ըսեն, միթէ չկա՞ն գիւղացիներ որոնք աւելի ազնիւ են քան կարգ մը քաղքի խըլէզներ, որոնք դպրոցներ յաճախած են ։ Իրաւ է թէ կան այդպիսի գեղջկականներ, որոնք լուսաւորեալ չըլլալով հանդերձ, բարի եւ ազնիւ են,

*բայց ատիկա կ'ապացուցանէ սա ճշմարտութիւնը թէ ատոնց գլխին մէջ դեռ վատ'ու ծուռ գաղափարներ չեն մտած՝ թէ իրենց սրտերնուն մէջ անայլայլակ եւ անաղարտ պահած են ինչ ազնուութիւն որ ի բնէ մարդս կ'ունենայ՝ աշխարհ եկած ատեն. թէ խեղճուկ իմաստակներ դեռ չեն յաջողած, լուսաւորելու պատրուակով, անոնց բնական ողջմտութիւնը ծամծկելու։ Մարդս, կ'ըսէ Ռուսօ, աշխարհ եկած ատեն բարի է, իսկ յետոյ կ'աւրուի հանդիպած անբնական կարգուսարքին ազդեցութեան տակ։ Եւ երբ որ, «Լո՛յս լո՛յս» կը պոռանք, ատիկա ուրիշ նպատակով չէ, բայց եթէ լոկ տեսնելու համար թէ ի՛նչ սխալմունքներ գործուած են մեզմէ առաջ, մեր օրով, եւ որոնցմէ զգուշանալու պարտաւոր ենք որպէս զի պահպանենք մեր մէջ ազնուութիւնը, ճշմարտութիւնը։ Ճանչնալ թէ մեր կարօտ նմանները պէտք է որ մեր զոհողութիւններով նպաստաւորուին, ատիկա ուղիղ մտքի եւ հետեւաբար ազնիւ սրտի պտուղ մըն է։*



# 4. ԱՂՋԻԿՆԵՐՈՒ ՖԻԶԻՔԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ

*Իրաւամբ ըսուած է թէ « Փորձառութեան դըպրոցը մարդուս վրայ շատ սուղի կը նստի, բայց ի՜նչ օգուտ, մարդս ա՛յնչափ անմիտ է որ ուրիշ դպրոցի մէջ չի սորվիր ։ » Ասիկա մանաւորապէս ճշմարիտ է առողջութեան մասին ։ Դեռահասները շատ անգամ անզգոյշ կ'ըլլան ֆիզիքական օրէնքներու եւ իրողութիւններու մասին, մինչեւ որ հիւանդութիւնը վրայ հասնի եւ ստիպէ զիրենք՝ որ զգոյշ ըլլան ։*

*Առնենք դպրոցական կամ ուսեալ կոչուած աղջիկները ։ Գրեթէ ամէնքն ալ կրնան տեղն ի տեղը եւ անունով ըսել թէ ձեռքին կամ ոտքին մէջ ի՜նչ ոսկորներ կան, բայց կ'անգիտանան թէ ինչպէս խնամք տանելու է անոնց ․ կրնան նկարագրել ըստամոքսին պաշտօնը եւ գործունէութիւնը, բայց բնաւ հոգերնին չէ թէ ի՜նչ բաներով կը խճողեն զայն, կրնան այնչափ բան պատմել թոքերուն դիրքին եւ կարեւոր պաշտօնին նկատմամբ որչափ կը գտնուի մարդակազմութեան դասագրքերուն մէջ, բայց տակաւին կը շարունակեն զրկել թոքերը մաքուր օդէն, սեղմել զանոնք նեղ վանդակի մը մէջ ․ կրնան բառ առ բառ կրկնել ինչ որ առողջաբանութեան դասագիրքը կը պարունակէ ի մասին մարմնամարզութեան եւ քունի, բայց նորէն առաջինը բոլորովին զանց կ'ընեն, երկրորդին*

համար ալ պէտք եղած ժամանակը տալու մտքին անհոգ են։ Իրենց գիտութիւնը գործնական ի՞նչ օգուտ ունեցաւ իրենց. ոչինչ կամ գրեթէ ոչինչ։

Աղջիկները ընդհանրապէս ոչ մեղք, ոչ ալ անպատշաճ կը սեպեն իրենց մարմիններուն առողջութեան դէմ մեղանչելը։ Այն աղջիկը որ պիտի չիկնէր ու ամօթէն կարմրէր եթէ խաբեբայութեան մը կամ ստախօսութեան մը մէջ բռնուէր, ամօթի ո՛ր եւ է զգացում չ՚ունենար երբ առողջութիւնը կործանելու յանցանքի մը մէջ բռնուի։ Է՛հ, այդ սովորութիւն է դարձեր, մեծ պզտիկ՝ ամէն մարդ կ՚ընէ ատ, ատ ալ յանցա՞նք է։ Այո՛, շատ մը աղջիկներ պէտք է ամչնան այն յաճախակի պատահող ջերմին եւ անմարսողութեան համար, որ կամ իրենք զիրենք մաքուր օդէն զրկելնուն եւ կամ խուցի մէջ անգթաբար սեղմուելնուն համար կը յարձակի իրենց վրայ՝ ճիշդ ինչպէս որ ստախօսութեան մը կամ անիրաւ քամբասանքի մը մէջ բռնուած ատեննին կ՚ամչնան։

Ընդհանրապէս տարածուած սխալ կարծիք մը կայ իբրեւ թէ մտաւորական ուսումը պատճառ կ՚ըլլայ որ աղջիկները ֆիզիքապէս վատառողջ ըլլան։ Բայց բնաւ հասկցող չկայ թէ աղջիկները ամէնէն առաջ ի՞նչ կ՚ուտեն, ի՞նչ կը հագնին, ի՞նչ կը չնչեն, ի՞նչ մարզանքներ կ՚ընեն։ Աղջիկ մը՝ որ իր ֆիզիքական կազմութեան յարմար եւ բաւականաչափ սնունդ չ՚առներ, որ ի սէր մօտայի, առողջապահական ըլլալէ շատ հեռու զգեստներով կը պաճուճէ ինքզինք, որ սեղմիրանի հեղձուցիչ ճանկին մէջ կը սեղմէ ու կը սեղմէ իր մէջքը, որ

բարձր կրունկով եւ շատ բարակ երեսով կօշիկներ կը հագնի, որ սենեակին ապականեալ օդը միայն ծծելու կը դատապարտէ ինքզինք, եւ եթէ դըպրոցական է՝ դասարանին տասնիցս շնչուած եւ արտաշնչուած մթնոլորտը միայն կը շնչէ օրն ի բուն, որ իբրեւ զբօսանք թղթախաղի գռեհիկ եւ գձուձ սեղանին վրայ կքելը միայն գիտէ, ինչպէ՞ս կ'ուզէք որ քաջառողջ ըլլայ, այտերուն վրայ վարդեր փթթին, շրթունքներուն վրայ կեռասներ հասուննան։

Աղջիկ՝ներու մեծ մասը այսպէս են. օդէ, մարզանքէ եւ արեգակէ զուրկ կը պահուին, մինչդեռ իրենց եղբայրները յաճախ ի ծնէ աւելի վատառողջ են քան իրենք, բացօդեայ զբօսանք կամ աշխատութիւն կատարելով՝ կ'ըլլան հուժկու, մարմնեղ եւ զուարթ։ Այս պայմաններուն մէջ ի՞նչպէս կ'ուզէք. որ աղջիկները գունատ, տկարակազմ, ջղային եւ հիւանդկախ չըլլա՞ն։ Թո՛ղ աղջիկներն ալ բացօդեայ պտոյտներ, մարմնամարզութիւն եւ աշխատութիւն կատարեն, առողջարար կերակուրներ միայն ուտեն, առանց մօտային սարուկն ըլլալու, իրենց մարմիններին համար հանգստաւէտ եւ բաւականաչափ հագուին, մէջքերնին forukի կամ պաշկեմաններու խեղաթիւրումին չենթարկեն, այն ատեն պիտի տեսնուի թէ անոնք ալ կրնան մանչերու չափ քաջառողջ ըլլալ եւ ֆիզիքական ու մտաւորական աշխատութեանց դիմանալ։

# 5. ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Սիրե՛նք գրականութիւնը, ո՛րն ալ ըլլայ։ Բայց որքան հոգ կը տանինք մեր մարմինին առողջութեան, նոյնքան ալ մեր հոգիին առողջութեան հոգածու ըլլանք, եւ ամէն ժամանակ սիրենք առողջ գրականութիւնը։*

*Ան է դարձեալ մեծագոյն բարիքը. գրականութիւնը։ Ան է ամէնէն տեւական վայելքը. գրականութիւնը։ Դրամը կը կորսուի, այնչափ շատ է անոր թշնամին։ Առողջութիւնը կը քայքայուի, այնչափ յաճախադէպ է անոր փորձութիւնը։ Յաջողութիւնը, դի՛րքը, փայլը կրնան ցնդիլ. այնքան յեղյեղուկ են։ Բարեկամները կը հեռանան, սիրելիները կը մեկնին կամ կը մեռնին. այնքան կեղակարծ է բաղդը, այնքան անկայուն է կեանքը։*

*Գրականութիւնը միայն կը մնայ մեզի մե՛ր առանձնութեան ու ցաւերուն ամոքիչ, մեր ուրախութիւններուն ալ ամէնէն զուարթարար ընկերակիցը։*

*Ա՛ն միայն կարող է վերացնել մեր հոգին, եւ մոռցնել մեզ ամենօրեայ կեանքին խեղճութիւնները, պզտիկութիւնները։ Բարեկամներուն լաւագոյնն է, որովհետեւ ան կու տայ մեզի ամենէն հասուն փորձառութեան իմաստութիւնը, եւ ա՛ն միայն կրնայ զբօսցնել մեզ առանց ձանձրացնելու, առանց մեղկացնելու։*

*Սիրե՛նք գրականութիւնը, մերինը թէ ուրիշինը, վասնզի գրականութիւնը լեզուէն եւ միջա-*

վայրէն անկախաբար, մարդկային է ամենէն առաջ՝ իր ամէնէն գեղեցիկ ամէնէն կատարեալ արտադրութիւններուն մէջ, ըլլան արեւմտեան թէ արեւելեան, հիւսիսային կամ հարաւային։

Մի հաւատաք անոնց, որոնք գիրքի սէրն անհաշտ կը նկատեն գործունեայ կեանքին կոչումներուն։ Ճշմարտապէս գործօն անհատականութիւնները, ամէնէն մեծ, ամէնէն պատուաւոր ասպարէզներու ամէնէն կորովի ներկայացուցիչները, գըրականութեան ալ ամէնէն ջերմեռանդ սիրահարներն եղած են ամէն դարու մէջ։

ԲԻՒԶԱՆԴ ՔԷՉԵԱՆ

## 6. ԽՈՀԱՆՈՑԸ

Տարօրինակ նիւթ մըն է ասիկա՝ տափակ միտքերու արժանի, որոնք աւելի բարձր բաներով չեն կրնար զբաղիլ. միջավայր մը, ուր անուս, աղքատ, գռեհիկ, տարիքոտ ու տգեղ կիները միայն կը մտնեն, ի հարկէ՝ ստիպեալ անոնք ալ, որովհետեւ խոհանոցը տունին ամէնէն աղտոտ, ամէնէն զզուելի եւ անհաճոյ զբաղումներուն կեդրոնը նկատուած է, ու իր անունը ճենճոտ մթնոլորտի մը գաղափարը կ՚արթնցնէ մեր մտքին մէջ, այնպէս որ բնազդումով կ՚ուզենք հեռու կենալ անկէ։

Ուստի, արդի պայմաններուն մէջ, խոհանոցին վրայ գրելու գաղափարը երկու կերպով կրնայ մեկնել եւս, Նախ տնտեսէր երեւալու փափաքով,

ինչ որ լաւ յանձնարարութիւն մըն է ամուսնանալիք աղջիկներուն համար, յետոյ սովորականէն տարբեր բան մը ըսած ըլլալու յաւակնութեամբ, որ նոյնպէս յանձնարարութիւն մըն է անոնց չինելու հետամուտ գրագէտներուն։ Երկուքէն ալ չեմ, ո՛չ ալ խոհանոցի մասնագէտ մը, եւ ո՛չ սիրող մը անոր վերաբերեալ գործերուն։ Ստացած պարզ դաստիարակութեանս եւ վարած կեանքիս հետեւանքով՝ խոհանոցէն խուսափող մը եղած եմ եւ ալ ժամանակով, քիչ մը գթալով անոր զբաղողներուն վրայ, եւ կը խոստովանիմ թէ՝ քիչ մըն ալ արհամարհելով զանոնք։

Բայց, իբրեւ հիացող մը ամէն գեղեցիկ բաներու, հաճոյքով տեսած եմ խոհանոցներ, որոնք ապարանքներու սրահներէն աւելի սքանչանք ազդած են ինծի, ու խորհրդածել տուած են . . . ։ Խորհրդածութեանս հետեւանքը եղած է դժգոհութիւն մը անձէս, հետեւանքը ապիկարութեանս գիտակցութեան, ըմբռնելով՝ համեստութեան, կանոնաւորութեան եւ մաքրութեան համար եռանդուն այն հրայրքը, որով միայն կրնայ կին մը այդ խուղոտ, մխոտ ու ածխոտ տարրերու թոհուբոհին մէջ՝ ստեղծել այն կեդրոնը, ուր աչքդ սիրէ յառիլ, սեւեռիլ մնալ անբաժան։ Եւ մտածել թէ այդ կինը դաստիարակուած չէ՛ ամենեւին, մտածել թէ բոլոր այդ խնամքը, այդ խոնջէնքը ուրիշին աչքը հրապուրելու համար չէ՛ վատնուած, ինչպէս մեր սրահներուն խնամքը, այլ անձնական գոհունակութեան մը համար, որ բուն՝ ճշմարիտ արուեստագէտին սէրն է, սէր մըն ալ տարիկա

մաքրութեան ու կանոնաւորութեան գեղեցիկ իտէալին համար։ Յետոյ բաղդատելով ինքզինքդ անոր հետ, երբ կը հետեւցնես թէ այդ խոշոր կինը քեզմէ աւելի կ'արժէ իր նպատակին անկեղծութեամբը եւ անսպառ յարատեւութեամբը. երբ կը խորհիս այն անգիտակից անձնուիրութեան վրայ, որ երբեք գնահատուած չէ, ու միտքդ կը բերես անդին այն յոխորտանքները չնչին բաներու համար, որոնք ընկերութեան մէջ կը ծափահարուին ամէն տեղ՝ կ'ապշիս կը մնաս մարդկային անիրաւ դատողութեան վրայ։

Ասիկա սիրտ սեղմող զգացում մըն է. մեզմէ վար նկատուած անձերու քով՝ մեր փոքրութեան զգացումը, ամէնէն ջլատիչը, ամէնէն նուաստացուցիչը. խորունկ զգացում մը որ հուն չունի, վասն զի ամէնէն գաղտնի է, եւ անթափանց ամէնուն։ Մեր բոլոր սնապարծութիւններուն չարքը վերիվար կը շրջէ, ու չէնքը մեր անձնայարգութեան, որով կ'ապրինք, որուն համար կ'ապրինք, հիմնայատակ կը կործանէ։ Ինչո՞ւ, ինչո՞ւ մենք ալ չկարենանք այդ մութ, այդ նսեմ, այդ անշուք գետնին վրայ, աննշան՝ բայց օգտակար աշխատաւոր մը ըլլալ։ Մենք՝ որ փառքին բոլոր պերճանքը կը սիրենք, մենք՝ որ աղէկ երեւալու համար հոգինիս կը հանենք։

Այս անգութ խորհրդածութեանց մէջ, սակայն, սփոփանքի կէտ մը կայ մեր վիրաւորուած անձնապատուութեանը համար. մեր դաստիարակութիւնը։ Եթէ անոնք՝ որ հոգիի նուրբ զարգացումը ունին, անոնք որ ամէն բանի լաւը կը փնտռեն, ա-

նոնք որ բան մը սիրելու եւ անոր առ յաւէտ յարելու, զոհուելու լայն զգացողութեամբ օժտուած են, եթէ տեսնէին օրինակը պզտիկ կարծուած բաները սիրելու, եւ թաքուն՝ անփառունակ աշխատութեանց հետեւելու, անոնք խոհանոց'ն ալ պիտի սիրէին, անոր աշխատութիւննե'րն ալ. միայն թէ նպատակնին ըլլար օգուտը ուրիշներուն եւ ո՛չ թէ փառքը իրենց անձին։

Ցեղոյ՝ դաստիարակուած, արուեստագէտ եւ հնարիմաց կինը միջոցներ պիտի գտնէր այնպէս գործելու խոհանոցին մէջ, որ չստիպուէր ձեռքը աղտոտ բաներու մէջ թաթխելու. Նրբութիւնները նրբութիւններ պիտի ստեղծէին, ճաշակը պզտիկ հրաշքներ պիտի գործէր, եւ նորոյթներու անվերջ յաջորդութիւնը պիտի բերէր դնէր ծխնելոյզին եւ սաներուն մէջտեղը բոլոր հմայքը գեղեցկին, զոր այսօր կինը իր արդուզարդին մէջ կը դնէ։ Այսպէս՝ տունը՝ որ կնոջ միակ անբռնաբարելի իշխանութեան տեղն է, չպիտի ունենար տեղ մը, որ անոր խելքին ու զգայումին դրոշմը չկրէր։ Իսկ կերակուրը, որ մեր կեանքին պայմանն է, փոխանակ վարձկան ձեռքերով ափ յափոյ հազար ու մէկ խառնակութիւններէ անցնելու, կնոջ ու պարիկի այդ արուեստագէտ ձեռքերէն ուղղակի դուրս պիտի ելլէր, եւ պիտի հրամցուէր նոյնպէս իր հրաշակերտը եղող սեղանին վրայ, ինչպէս նեկտար մը դիցանոյշներու ձեռքով պատրաստուած, իր ընտանիքին առողջութիւնը բարգաւաճ՝ եւ կեանքը անուշ ընելու համար։

ՍԻՊԻԼ

# 7. ԱՄԵՐԻԿԱՑԻ ԿԻՆԸ

*Ամերիկացի կինը անհուն ազդեցութիւն մը ունի այսօր։ Իր զօրութեան աղբիւրը ցոյց տալու համար, հեղինակ մը ուսումնասիրութեանց շարքի մը մէջ գացած է մինչեւ այն ժամանակը, յորում դիւցազնական տարագրուհիները «Մէյֆլաուըր» նաւով հասած՝ օգնեցին իրենց հայրերուն ու ամուսիններուն՝ շինելու նախնական հիւղակը՝ որ այժմեան հսկայ զանգուածին օրրանը պիտի ըլլար։ Այսպէսով, հաւասար մարդուն սկիզբէն ի վեր, դերազանցած են այժմ զայն իմացական մշակութեամբ եւ նրբանքով։ Մինչ այրը ինքզինք գործերու հոսանքին կը յանձնէ, անոնք կ՚անձնաւորեն իրենց մօր վայելչութիւնը, հաճոյքը, շքեղութիւնը, նըրբութիւնը։ Բայց այս դեռ միակ դասակարգն է համաշխարհային կոչուած, որ իր նիւթական առանձնաշնորհութեանց միջոցաւ ինքզինք հռչակած է աշխարհի ամէն կողմը, նոյն կարգը դարձեալ զոր այցելուն կը նշմարէ առաջին նայուածքով ամերիկեան հողին վրայ։ Բոլոր նորելապանծ կիները, որոնց անզբաղ ժամանակը կ՚սպառի ձմեռնային կայաններու եւ գերախորժ ծովափիններու վրայ, կը վերաբերին այս էապէս համաշխարհիկ ընկերութեան, ուր ինքնութիւնը գոյնէ զուրկ է եւ բնաւ որոշ հայրենիք մը չունի։ Գերազանցապէս արհեստական ու քմահաճ տիպար մըն է աս, որ իմ*

շրջագծէս դուրս է. այս տարրը կը կազմէ ճոխութեան ծայրայեղութիւնը։ Ասոր հակոտնեան՝ յետին թշուառութեան կուռքը, որ մանաւանդ մեծ ոստաններու մէջ իր միջավայրին մոլութեանց մէջ ընկղմած, անճանաչելի էակ մը, ընկերային մանր վէրք մը դարձած է՝ հաւասարապէս դիտմամբ կը հեռացնեմ նիւթէս։ Աս երկու ծայրերէն ո՛չ մէկը յատկանշանօրէն կը պատկերէ Ամերիկացի կինը, բայց աս երկուքին մէջտեղն, աս ծայրայեղ շքեղութեան ու թշուառութեան, աս շլացուցիչ ու գերյուզիչ ցուցադրութեան մէջտեղ կը գտնուի Ամերիկայի կինը, դասակարգ մը որուն վրայ բաղդատաբար քիչ գրուած է, ստուարաթիւ կարգ մը՝ գործօն, եռանդուն, ձեռներէց, ազնիւ, զոր իր գերազանցապէս օգտակար գոյութեան ինչ ինչ երեւոյթներուն մէջ ներկայել իմ ջերմ փափաքը պիտի ըլլայ։ Այս կարգը կը համապատասխանէ Եւրոպական բարձր ու միջին քաղքենի ընկերութեան։ Թերեւս մտածուի թէ դասակարգային բաժանումներ չկան կամ պէտք չէ ըլլան, բայց այս առաջին պատրանքն է զոր ցրուելու պարտաւոր եմ։ Ո՛չ միայն կան՝ նախ աւելի կամ պակաս տոլարներու՝ բիրտ, անսիրտ խտրութիւնները, այլ ծագումը, միջավայրը, դաստիարակութիւնը անվերջ մանրախտիրներ կ'ստեղծեն եւ նոյնքան սեռեր կ'որակեն ու կը դասաւորեն։

Ամերիկեան իգական սեռը կը վայելէ արդէն բազմաթիւ առանձնաշնորհումներ, որոնք իր Արեւելքի կամ նոյն իսկ Եւրոպայի քոյրերուն անծանօթ են։ Դպրոցական, կրթական խնդիրներու մէջ

այս հաւասարութիւնը գրէթէ ամենուրեք կը վայելէ արդէն, որուն ջանքերու նպատակն է այս իրաւունքը տարածել ամէն ճիւղերու մէջ, ինչպէս քաղաքային, վարչական, եւն. բայց ինչպէս յայտնի է, շատ փափուկ խնդիր մըն է աս, եւ այսօր նոյն իսկ կնոջական կարգերու մէջ այս մեծ շարժումին հակառակողներ կան։ Այս խնդիրին արժանիքին մասին ճշդիւ ոչինչ ըսել կարելի է. կար ատեն մը երբ Նոր աշխարհն իր սկզբունքներն հինէն կ՚առնէր. հիմա դրութիւնը փոխուած է, դերերը փոխանակուած են եւ ճիշդ այս խորհրդաւոր շրջանին իրաւացի է հետազօտել ամէն շարժում, ուր բարին ու չարը, օգտակարն ու վնասակարն այնքան տարօրինակապէս խառնուած են։

Նոր աշխարհի մէջ կնոջ դիրքը միշտ բաղդատաբար բարձր եղած է 25 տարիի չափ առաջ, կնոջական ակումբներու հաստատութեան հետ զուգընթացաբար։ Ասոնց առաջինն եւ գլխաւորը հիմնուած է Պոսթընի մէջ, «Նիւ-Ինկլէնտ-վումընս-քլըպ» անունով։ Երկրորդը հիմնուած է Նիւ-Եորքի մէջ, եւ այնուհետեւ այս երկու մեծ վառարաններու ներշնչումին ու պաշտպանութեան ներքեւ նմանօրինակ հաստատութիւններ հիմնուած են երկրին ամէն կողմը։ Այսօր ասոնց թիւը երեք հարիւրը կ՚անցնի եւ իւրաքանչիւրն արագ զարգացման շաւիղին վրայ կը գտնուի։ Այս ակումբներուն կրնան անդամակցիլ ամէն տարիքէ ու դասակարգէ կիներ եւ հոն այդ ակումբներու շքեղ սրահներուն մէջ բանախօսութիւններ ու վիճաբանութիւններ տեղի կ՚ունենան, որոնք մեծապէս կը

նպաստեն կիներու գաղափարային շրջանակին ընդլայնելու։ Անոնցմէ մէկը կը խօսի, օրինակի համար. «Կանանց դերին վրայ անցեալին ու ներկային մէջ։» Եւ այսպէս ամէն կարեւոր նիւթ իր պատշաճ ընդլայնումը կը գտնէ։ Այս գումարումները միայն կիներու յատուկ ըլլալուն, այրերը հոն մուտ չեն կրնար գտնել, բայց խառն հաւաքումներու մէջ յաճախ գերազանց հաճոյքով մտիկ ըրած եմ ամէն հասակէ կիներ, որոնք հաւասար յաջողութեամբ խօսած եւ ընդհանուր ու ներդաշնակ զարգացումի մը ախորժելի գաղափարն ընծայած են։ Հեշտ է երեւակայել թէ այդ կարգի գումարումներ, որ պարբերաբար տեղի կ'ունենան, զօրաւոր տպաւորութիւն մը կը գործեն կիներու միտքին վրայ, իրենց խօսակցական յատկութեանց վրայ՝ վանելով իրենց ոճէն ինչ որ սնոտի ու կարի անձնական է, ու վարժեցնելով զիրենք՝ մտիկ ընել ուշադրութեամբ եւ հերքելու տրամաբանութեամբ։ Բաց աստի կանխաւ նշանակուած աշխատութիւնները՝ այլազան նիւթերու վրայ՝ բարոյականի, իմաստասիրութեան, գիտութեան, պատմութեան մասին՝ երբեմն ճշմարիտ գրական տաղանդներու ծնունդ կ'ուտան։

Ինչպէս ըսի, Ամերիկայի մէջ կինը միշտ այր մարդուն հաւասարն եղած է, Եւրոպայի մէջ այսպէս չէ եղած. կինը հոն ստորնութիւնը ճանչցած եւ աստիճանաբար բարձրացած է։ Սկիզբէն ի վեր հաւասարութեան սկզբունքը հաստատուած ըլլալով կնոջ դիրքը, յառաջդիմութեան ընթացքին հետ շեշտուած է հոս. մանչերը՝ նախնական վար-

*ժամաններու սեմէն սկսեալ՝ կնոջ յարգանքին վարժուած՝ այդ զգացումը յետագայ տարիներու մէջ իր բարձրագոյն արտայայտութեան հասուցած են, այնպէս որ այսօր ընդհանուր ճշմարտութիւն մըն է թէ կինը Միացեալ Նահանգներու մէջ առաջնակարգ դիրք մը բռնած է. չկայ երկիր մը ուր այրերը կնոջ բնական տկարութեան ու հրապոյրներուն հանդէպ այնչափ ասպետական տկարութիւններ ցոյց տուած ըլլան, որչափ հոս։*

## 8. ՎԵՐԱԴԱՐՁ Ի ԲՆՈՒԹԻՒՆ

*Բարիզի գլխաւոր գեղեցկութիւններէն մէկն ալ ծառերն են, բնութեան այն մեծ շնորհը, զոր արուեստը այնքան աւելի շնորհալի կը հանդիսացընէ հոն։ Ծառերը՝ Բարիզի պէս խճողուած կեդրոնի մը մէջ աճելու համար խիստ քիչ հող եւ օդ ունին, բայց բարիզցիներուն լուսամիտ բնապաշտութիւնը կը լրացնէ բնութեան պակասը։ Բանաւոր արարածներուն պէս կը խնամուին Պուլվարներուն կամ ծառուղիներուն եւ հրապարակներուն ծառերը։ Երբ շինութեան մը կամ զետեղման մը առթիւ ծառ մը կոտրել կամ կտրել հարկ ըլլայ, կամ ծառի մը աղէկ չնայուելուն համար չորնալ սկսի, թաղեցիներ, քաղաքացիներ իրար կ՚անցնին թէ ինչո՛ւ թաղապետութիւնը կամ քաղաքապետութիւնն*

անփոյթ՝ կը կենայ այսպիսի վանդալութեան առջեւ։ Բարիզ քաղաքին պարտիզպաններն երբեք տապարով չեն մօտենար ծառի մը։ Ծառ մը երբ ծերանայ գոսանալ սկսի, տակաւին չեն կտրեր զայն։ Պատշաճ թաղում մը կ'ընեն։ Արմատէն կը հանեն, եւ քաղաքէն դուրս Պուլոնեի կամ Վէնսէնի անտառին մէկ կողմն արեգդեմ տեղ մը կը տնկեն նորէն, որպէս զի հոն կեանք առնէ եւ յետոյ քչիկ քչիկ չորնայ։

* * *

Քաղաքակրթութեան ամէնէն նրբացած ոստանին մէջ ծառերուն տարուած այս պաշտօնը ժամանակակից Քաղաքակրթութիւնը վարող մեծ օրէնքներէն մէկը չի՞ յիշեցներ։

Մարդիկ քանի՛ քաղաքակրթուեցան՝ այնքան հեռացան բնութենէն։ — Քաղաքակրթութիւնը շատ մը մարդիկ կը բերէ կը մղէ մէկտեղ ապրելու, մէկ քաղքի մէջ, յարաբերութեանց եւ գործառնութեանց դիւրութեան համար։ Արդ, բազմամբոխ քաղաքներու մէջ փայտաշէն տուները մշտակայ վտանգ են։ Քաղաքակրթութիւնը կը պարտաւորէ ուրեմն մարդիկը քարաշէններու մէջ բնակելու։ Բայց խիտ առ խիտ շինուած քարուկիր տուներ ո՛րքան վատառողջ են՝ բաղդատմամբ իրարմէ ընդարձակ անջրպետներով բաժնուած փայտաշէն գեղջուկ տուներուն։ Քաղաքակրթութիւնը, ուրեմն, իր մասնաւոր պահանջներն ունի։ Բայց ասոնք միշտ նպաստաւոր չեն մարդուս առողջութեան, բարօրութեան եւ երկարակեցութեան։

Զգեստներու մասին ալ միթէ ճիշդ չէ՞ նոյն դիտողութիւնը։ — Բնական վիճակի մէջ, մարդուն հագածները թոյլ բաներ են, որոնց մէջէն օդն յարաժամ ազատ շրջան կ'ընէ։ Քաղաքակրթութեան մէջ, հագուստները պէտք է սեղմեն, որով աւելի վայելուչ կ'երեւան, բայց կը նեղեն մարմինը, կ'արգիլեն անոր աճումը, եւ գրեթէ անհնար կ'ընեն օդի եւ արիւնի ազատ շրջանը։

Հապա ուտելիքնե՞րը։ Ի չգոյէ ազատ եւ մաքուր օդի, եւ նստուկ կեանքի բերմամբ, մարսողութիւնները դանդաղ են քաղաքներու մէջ։ Ստամոքսը գրգռել պէտք է ուրեմն։ Ասկէ՝ համեմաւոր կերակուրներ՝ յատուկ պատրաստութիւններով, կամ գրգռիչ ըմպելիներ՝ ախորժակ բանալու համար, մանաւանդ որ մեծ քաղաքներէն անբաժան ուրիշ չարիք մը՝ զով, մաքուր, լաւ ջուրի նուազութիւնը, արբեցութեան կը մղէ բնակիչները։ Ասով՝ ստամոքսի խանգարումներ։ Եւ ամէնէն յամառ, ամէնէն անբուժելի հիւանդութիւնները ծագում կ'առնեն ստամոքսի անկարգութիւններէն։

Հետեւապէս, մարդիկ քաղաքակրթուելով՝ հեռացան բնութենէն, եւ երբ իրենք երես դարձուցին բնութենէն, իր կարգին բնութիւնն ալ իրենցմէ երես դարձուց։

Այս յոռի շրջանը երկար չէր կրնար տեւել սակայն։ Սխալ ճամբայ մըն էր աս։ Գիտուններ, ընկերաբաններ մատնանիշ ըրին այսպէս ըմբռնուած Քաղաքակրթութեան մը աղէտալի ելքը՝ ինչպէս անհատին, անանկ ալ հանրութեան հա-

մար։ Եւ հիմա հանդիսատեսներն ենք հակառակ շարժումի մը։ Օրուան նշանաբանն է՝ վերադարձը դէպ ի Բնութիւն։

* * *

Հիմայ բժիշկը չի դադրիր խրատելէ. — «Կարելի եղածին չափ բաց օդի մէջ ապրեցէք։ Գիշեր ցորեկ բա՛ց թողէք պատուհանները։ Հոգ տարէք ծառերով շրջապատուած ըլլալու։ Ձեր սովորաբար նստած սենեակէն՝ կարելի եղածին չափ հեռաւոր հորիզոնի մը վրայ նային ձեր աչքերը։ Ա՛լ աւելի աղէկ՝ եթէ ձեր աչքերը շարունակ հանգչին ծառերու եւ մարգագետնի կանաչութեան վրայ, որովհետեւ ծառերուն եւ խոտերուն կանանչն ու ծովուն կապոյտը, աչքին ամենէն աւելի ախորժած երկու գոյներն են, երկինքի կապոյտին հետ։ Ձեր մարմինը յարաժամ հաղորդակցութեան մէջ դրէք օդին ու ջուրին հետ։ Դաշտին եւ լերան օդը եւ ծովուն ջուրը թո՛ղ գլխաւոր սնունդն ըլլան ձեր թոքերուն, ու ձեր մարմինին ծակտիքներուն։ Եւ քալեցէ՛ք, յետին գիւղացիին պէս, որ տրեխ միայն հագած է՝ հանգիստ եւ երկար քալելու համար. քալեցէ՛ք ամէն օր՝ մէկ, երկու, մինչեւ երեք ժամ քալեցէք օրը, եւ պարզ կերակուրներ միայն կերէք, քիչ՝ կամ բնաւ համեմաւոր, եւ ձեր լաւագոյն ըմպելին ձեր ճարել կրցած ամենէն մաքուր եւ ամենէն զով ջուրն ըլլայ։ Առողջութիւնը, երկարակեցութիւնը, բարօրութիւնը, հիւանդութենէ ազատութիւնը ա՛յս պայմաններով են միայն։ Ուրիշ դեղ դարման աւելորդ են կամ վնասակար կամ խաբուսիկ։»

*Ահա այն խորհուրդները զորս ժամանակին ամէնէն գիտնական եւ ամէնէն անկեղծ բժիշկներէն, առողջապահներէն եւ ընկերաբաններէն կը լսենք հիմա։ Բայց ի՞նչ է բոլոր այս պարզ եւ դիւրահասկնալի խրատներուն ամփոփումը։ Ու՞ր կը յանգին ամէնքն ալ առ հասարակ։ Ամէնքն ալ դէպի բնութիւն վերադարձին չե՞ն միտիր։*

*Փառաւոր վերադարձ մըն է աս՝ զոր կ՚ընենք դէպի Մայր-Բնութիւն։*

*Թո՛ղ քաղաքակրթութեան մէջ ապրի մարդ՝ որքան կ՚ուզէ, բայց եթէ իր առողջութիւնը, իր կեանքը, իր բարօրութիւնը վրայ տալ աչքը չէ առեր, թո՛ղ ա՛յնքան միայն յարմարի քաղաքակրթութեան կարգուսարքին, որքան կրնայ զայն հաշտեցնել բնութեան հետ։*

* * *

*«Վերադարձն ի Բնութիւն» շատ մը կերպերով կ՚ըլլայ, եւ կեանքի շատ մը հանգամանքներուն մէջ պէտք է։ Ծառերու համար սէրը մէկն է այդ կերպերէն։ Սիրեցէ՛ք ծառերը։ Անոր մէջ առողջութիւն կայ, որովհետեւ կազդուրիչ զբաղում մը կայ։ Անոր մէջ բարոյականութիւն ալ կայ, որովհետեւ ծառերը յոռի ունակութիւններու ժամանակ պիտի չթողուն, անօգուտ կամ վնասակար զբաղումներու ժամանակ բնաւ չպիտի տան ձեզի։ Եթէ ծառերը սիրէք, շատ մը բաներ կան զոր պիտի չը սիրէք, եւ շատ լաւ պիտի ընէք չսիրելով։ Ձեր պարապ ժամերն աւելի հաճութեամբ պիտի անցընէք՝ ձեր մեծ կամ փոքրիկ պարտէզին մէջ քան*

թուղթի սեղանին շուրջը, քան գինետունի կամ գարեջրատունի մէջ, քան թեթեւսոլիկ խաղերու թատրոնի մը մէջ, որ մնայուն բողոք մըն է թատրոնի անունին դէմ։ Ծառերը սիրեցէ՛ք՝ նաեւ գեղեցիկ ժամանց մը յարդարելու համար ձեր զաւակներուն, որովհետեւ ձեր ծնողական պարտաւորութեանց շրջանակին մէջ կը մտնէ նաեւ ձեր զաւակներուն ներկայ եւ ապագայ զուարճութիւններուն հոգը։ Կարեւորութիւն չունի սիրա հասցնել որ ձեր զաւակները գէշ բաներու ժամանակ չտան։ Կարեւորն ա՛յն է որ կանխահոգ մտածումով անոնց ժամանակն ուրի՛շ կերպով գրաւած ըլլաք արդէն։

Բայց «Վերադարձն ի բնութիւն» պէ՛տք է նոյն իսկ մեր ֆիզիքական առողջութեան համար։ Քաղաքակրթութեան բացարձակապէս վատառողջ մէկ բերումն է որ մեր՝ քաղաքացիներուս, մեծ քաղաքներու բնակիչներուս՝ ծառերու, կանաչներու, մարգագետիններու համար ընդածին սէրը մարեր է, եւ քիչ քիչ վարժուեր ենք ամիսներով, տարիներով անոնցմէ հեռու ապրելու։

Երբ Հայերը առաջին անգամ Փոքր Ասիայէն Կ. Պոլիս եկան, թէ՛ անոնք որ աղքատ էին եւ թէ՛ անոնք՝ որ ունեւոր էին, ծառաչատ տեղեր բնակեցան, որովհետեւ այն ատեն Պոլսոյ ամենամեծ մասը կանաչութեամբ զարդարուած էր, եւ ծառերուն ընկերակցութիւնը կը վայելէին թէ՛ անոնք որ քաղաքին մէջ պարտիզաւոր տուներ ունենալու բաղդը կը վայելէին եւ թէ՛ անոնք որ քաղաքին ծայրերը՝ պարտիզաչատ արուարձաննե-

րու մէջ բնակելու հարկին ներքեւ էին։ Մենք Կ. Պոլսոյ հին քարտէսը տեսած ենք՝ Ֆաթիհին Կ. Պոլիս մտած ժամանակ, եւ այն ատեն Պոլիսէն ամենամեծ մասը ծառերով ու կանաչներով պատած էր։ Ասիացի ժողովուրդի մը նոյն ճաշակը պահեցին Հայերը՝ երբ մայրաքաղաքը հետզհետէ շէննալով, պարտէզներ պակսեցան, եւ Բնութիւնը տեղի տուաւ Քաղաքակրթութեան առջեւ։ Հին ամիրաները իրենց բնակութեան համար ո՛րքան ալ ըստ երեւոյթին անշուք տուներ շինէին, պարտէզի մեծ սէր ունէին ամէնքն ալ անխտիր, եւ շատ ծախք կ՚ընէին ծառերու եւ ծաղիկներու համար։ Բայց Հայ հարուստները, ետքերը՝ Պոլսոյ աւելի սուղ տեղուանքը տուներ շինելով կամ նախնիքներու ճաշակը քիչ քիչ տկարանալով իրենց մէջ, 5000էն մինչեւ 20,000 ոսկի տունի մը շինութեան ծախք կ՚ընէին առանց պարտէզ մը ունենալու։ Միջակօրեար դասակարգն ալ անոնց օրինակին կը հետեւի։ Պարտէզի համար հող յատկացնել եւ դըրամ վատնել աւելորդ կը համարուի։ Աւելի հոգ կը տարուի լաւ կահ կարասի ունենալու, քան բարձր՝ պատկառելի ծառերով շրջապատուած աղուոր սիրուն պարտէզ մը։ Շատ շիտակ դիտողութիւն մը ըրաւ մեզի անգամ մը՝ գիտնական Եւրոպացի մը, երբ Վերին Վոսփոր մեծ պանդոկի մը մէջ կը տեսնուէինք։ Ցոյց տալով պանդոկին շքեղ սալօնին պատուհաններէն երեւցող պարտէզը, ուր վաղեմի խոշոր ծառերու հազուագիւտ շարք մը կայ՝ ըսաւ. — «Այս դարաւոր ծառերը շա՛տ աւելի գեղեցիկ եւ շատ աւելի արժէքաւոր դարդ-

մըն են այս պանդոկին համար, քան ամէնէն սուղ կաւ կարասին՝ որ կրնայ բերուած ըլլալ Լոնտոնէն կամ Վիեննայէն, որովհետեւ կաւ կարասի մասին, չկայ բան մը զոր դրամը չկարենայ ճարել Եւրոպայի մէջ, բայց այս ծառերը պարզապէս անգին են, դիւրաւ չեն գտնուիր. սակով ձեռք չեն բերուիր, ուղղուած առեն չեն հայթայթուիր, եւ հրամայուած տեղը չեն փոխադրուիր։» Ուշիմ ըզբօսաշրջիկ մըն ալ, Անգղիացի, որ հոն էր, խօսքի խառնուելով, զմայլանքով պատմելէ ետքը Աւստրիայի հանքային ջուրի կայաններուն առողջարար եւ զուարճալի կեանքը՝ բացատրեց թէ այսպիսի ջուրեր Թուրքիայի մէջ ալ պակաս չեն։ Բայց Թուրքիա չի կրնար մրցիլ անոնց հետ, որովհետեւ խնդիրը հանքային ջուրի վրայ չէ միայն։ Այն ջուրէն խմողները պէտք է նաեւ քալեն. այս պայման է որ՝ միանալով այն աղի ջուրին հետ՝ պիտի տայ փափաքուած օգուտն ու դարմանը։ Բայց ո՞ւր կը պտըտին. — Դարաւոր ծառերու երկար եւ կանոնաւոր գիծերու մէջտեղ, 1-2-3 ժամուան տեղ հարթ հաւասար գետնի վրայ, այն բարձր եւ հովասուն ծառերուն շուքովը պատսպարուած ճեմելավայրերու մէջ։ Արդ, Թուրքիա ունի հանքային ջուրերը։ Բայց ծառ չըլլալով, ճեմելավայր ալ չկայ, եւ ճեմելավայր չըլլալով, հանքային ջուրի կայան չի կազմուիր, զբօսաշրջիկ չի գար, դարմանի կարօտ ունեւորներ չեն գար որ դրամ ձգեն երկրին մէջ։ Հունգարիա եւ Աւստրիա ամէն տարի միլիոնաւոր ոսկի կը քաշեն օտարազգիներէն միմիայն շնորհիւ այն կանուխէն արթնցած հոգա-

ծութեան, որով այնպիսի ծառաշատ կեդրոններ կազմեր են իրենց երկրին ամէնէն նպաստաւոր կէտերուն վրայ։

Ինչպէս կը տեսնենք, ծառերը՝ նոյն իսկ վայրի ծառերը՝ անհատին համար առողջութեան էական պայման մըն են եւ երկրին համար ալ հարստութեան աղբիւր մը։ Կ՚արժէ որ ամէնքս ալ սիրենք ծառերը, եւ հոգ տանինք ծառերն ու ծառաստանները շատցնելու, իբրեւ ամէնէն հաճելի, ամէնէն զբօսալի պատուարը Քաղաքակրթութեան յոռի տարրերուն արշաւանքին դէմ։

* * *

## 10. ՇԱՐՄԱՂԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Անոնք որ գաւառները ճամբորդելու առիթ ունեցած են, տեսած են անշուշտ շատ անգամ սենեակի մը պատէն վար կախուած տախտակէ շրջանակ մը, որուն վրայ լարուած է բարակ, շատ բարակ ցանցի պէս մետաքսէ կերպաս մը։

Առաջին տեսնելուդ, կարկահ մը կը կարծես զայն, տան տիրուհիին ասեղնագործութեան համար պատրաստուած, եւ մենք՝ Պոլսեցիներս՝ որ տակաւին անպէտ կամ գոնէ աւելորդ բաներու ճաշակը ունինք, բնաւ չպիտի կարենայինք գուշակել անոր ինչ ըլլալը մինչեւ որ չբացատրէին մեզի։

Գէթ ինծի այնպէս պատահեցաւ, եւ մայրա-

քաղաքացիի յատուկ պարզմտութեամբ մը հարցուցի, ինչ որ գաւառացի կին մը չպիտի զիջանէր ընելու։ Որովհետեւ, անոնք ամէն բան գիտեն, ամէն բան տեսած, ամէն բան սորված են, եւ ատիկա բաւած տանտիկինին՝ կը ջանան խօսակցութեանց մէջէն գողնալ չգիտցածնին, ետքը քաղքի ծախելու համար՝ կարելի եղածին չափ աժան գինով, ատոր համար իրենց գիտցածը շատ սուղ կը ծախեն։ Եւ ամիսներ անցան ու ես մնացեր էի Նրբանիւս փայտածիր բոլորակը, երբ օր մը սեղանին վրայ բերուեցաւ գեղեցիկ թախտակա մը՝ ձիւնի պէս սպիտակ եւ բեհեզի պէս թափանցիկ խաւերէ կազմուած, եւ համեղ ու թեթեւ հովի պէս, ինչպէս իրենք սովորութիւն ունէին ըսելու բանաստեղծօրէն։

Ես՝ որ վարժուեր էի արդէն անոնց տունէն շինուած թարմ հացին եւ հոծ խմորեղէններուն՝ վայրկեան մը ինքզինքս Պոլիս կարծելու պատրանքը ունեցայ, ու եռանդով հարցուցի թէ ինչ տեսակ ցորենով պատրաստեր էին սոյն գեղեցիկ հատտենայ մը։ — «Մեր հացին ցորենն է» — ըսին եւ՝ զարմանքս տեսնելով՝ ժպտեցան։

Հիմայ, դասին կարգը եկեր էր, եւ բացատրեցին ինծի թէ այն մետաքսէ կլորիկ գործիքին շնորհիւ առաջ եկեր էր այս սքանչելիքը։ Ու հասկըցայ վերջապէս թէ չարմաղ մըն է եղեր, ուրկէ մաղուած ալիւրը՝ ճերմակ, բարակ եւ մաքուր կ՚ըլլար։ Յետոյ բերին ցոյց տուին ինծի ձարմաղ մը, ուրկէ հոսած ալիւրը հասարակ խմորեղէններու կը գործածուէր, ինչպէս նաեւ երրորդ խար-

բառ մըն ալ ուրիշ խախալուած ալիւրը հացի. կը յատկացնէին՝ Թեփերէն զատելով զայն։

Երեւակայեցէ՛ք, ես որ հագանքի ու շնորհքի գեղագիտական նպատակ մը յատկացուցեր էի անոր, խոհանոցի գործիք մըն է եղեր ուրեմն՝ այդ Մետաքսահիւս բեհեզէ պաստառը, սենեակին պատէն ի վար կախուած, նկարիչի մը վրձինին երանգները ընդունելու պատրաստ կտաւի մը նման։ Ու աղգիտութեանս վրայ կարմրելով, խօսք մը ըսած ըլլալու համար, վրայ բերի թէ կը զարմանայի որ միեւնոյն ցորենէն արտադրուած ալիւրը կրնար, միայն մաղի մը փոփոխութեամբ, այդքան նրբանալ, այդքան ազնուանալ։ Ուրեմն, ցորենին տեսակը ընտիր էր, քանի որ իր մէջը կը պարունակէր այդ գեղեցիկ տարրերը։

Անկից ի վեր տարիներ անցած են, եւ զարմանալի զուգադիպութեամբ մը յանկարծ միտքս կ'իյնայ շարմաղի պատմութիւնը, եւ այն ատենի իմ միամիտ տրամաբանութիւնս, երբ կը խօսուի ու կը գրուի մեր համայքին մէկ կամ միւս մասնաւոր դասակարգին վրայ քննադատօրէն։

Ո՛հ, շատ անողոք կերպով կը դատափետենք ինքզինքնիս, մեր եկեղեցականները, մեր ժողովականները, մեր դաստիարակները, մեր խմբագիրները, մեր բժիշկները, մեր փաստաբանները, մեր կիները։ Սակայն անոնց մէջէն չէ՞ որ ելած են սաէպ, այնքան լուրջ ժողովականներ, այնքան կղերականներ, հմուտ ուսուցիչներ, տաղանդաւոր գրագէտներ, գիտուն բժիշկներ, օրէնսգէտ իրաւաբաններ, առաքինի կիներ։ Եւ ասոնք չե՞ն ա-

պացուցանէր թէ մեր ցեղին բնական նկարագիրը չէ որ վատնմար է իր տեսակին մէջ, որովհետեւ դժնիկին թուփին վրայ վարդ չի բուսնիր։

Ինչ որ կը պակսի՝ մաղն է միայն։

Եթէ գաւառացի անպաչէն կնոջ նման, մենք ալ իմաստութիւն ունենայինք զանազան խարբալներ յառաջացնելու մեր հանրային կեանքին խմորը կազմող զանազան անհատներուն համար, եւ ինչպէս գիտէ տանտիրուհին հացին ալիւրը չօծի չգործածել, եթէ մենք ալ ուսուցչութիւն չյանձնէինք անոնց որ կօշիկ կարկատել գիտեն, եւ եկեղեցականութեան չբարձրացնէինք զանոնք որ նպարավաճառութեան միայն կը յարմարին, ամէն մարդ իր բուն տեղը պիտի գտնէր ապահովապէս, անկարողը կարողին տեղը անցնելով չպիտի ծաղրուէր, կարողն ալ անկարողին գործը կատարելով՝ չպիտի տառապէր։

Մե՛ղք որ չարմաղին դրութիւնը անծանօթ մնացած է մեր կեանքին մէջ։

ՍԻՊԻԼ



# Զ. ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ

Իմաստասիրութիւնը կամ փիլիսոփայութիւնը առանձին գիտութիւն մ'է այսօր. սակայն իր մէջ կը պարփակէ շատ մը գիտութիւններու ոգին: Նախապէս. փիլիսոփայութիւնը եղած է ամփոփոյքը բոլոր ծանօթութիւններուն, յետոյ՝ Սոկրատ Յոյն իմաստասէրին օրով՝ անիկա եղած է մարդը ուսումնասիրելու գիտութիւնը, ու անկէ ետքն է որ, շնորհիւ Տէքարդի, մտած է իր այսօրուան որոշ սահմաններուն մէջ: Իմաստասիրութիւնը հինգ մասեր կը բովանդակէ. — Հոգեբանութիւն, Տրամաբանութիւն, Բարոյագիտութիւն, Աստուածխօսութիւն եւ Բնազանցութիւն: Յետոյ, ասոնցմէ դուրս, կայ նաեւ իմաստասիրութեան պատմութիւնը, որ կը քննէ, կը խուզարկէ եւ կ'ուսումնասիրէ այն զանազան փուլերը որոնցմէ անցած է այդ տարածուն ու բազմակողմանի գիտութիւնը, ջարհներու շրջանին մէջ, իր ծնունդ առնելէն ի վեր:

Մատենագրութեան մէջ՝ իմաստասիրելու երկու կերպեր կան միշտ. Նախ՝ զուտ իմաստասիրութիւնը եւ, երկրորդ, այն տեսութիւնները, այն դրութիւնները՝ որոնք իմաստասիրութեան հետ անմիջական յարաբերութիւններ ունին: Եւրոպայի մէջ զուտ իմաստասիրութեամբ զբաղող տաղանդներ եղած են Սբինօզա, Տէքարդ, Օկիւստ Քոնք, Վիք-թոր Քուզէն, Քանդ, Հէկէլ եւ բազմաթիւ ուրիշներ. իսկ երկրորդ, աւելի դիւրամատչելի իմաստասիրութիւնը ըրած են Գյոթ, Պէռնար, Ժօֆրուա-

Սէնդ-Իլէռ, Արակօ, Շաթօպրիան, Ժ. Ժ. Ռուսօ, ևն, ևն.: Մեր մէջ, անշուշտ դժբաղդաբար, շատ հազուագիւտ տաղանդներ միայն կրցած են ինքզինքնին նուիրել ամբողջովին զուտ իմաստասիրական աշխատութիւններու. ատոնց մէջ, մասի վըրայ համրելով, կրնանք յիշել միայն Գալուստ Կոստանդեանը, Եղիա Տէմիրճիպաշեանը եւ Ռ. Պէրպէրեանը: Միւս ճիւղը, (սանկ ըսելու համար, գրական-իմաստասիրական, ընկերագրական-իմաստասիրական, խորհրդածական-իմաստասիրական ճիւղը) քիչ մը աւելի մշակուած է մեր մէջ: Ընկերագրական-իմաստասիրական են հոս դրուած կտորներուն մէջ, զոր օրինակ, Զիֆթէ Սարաֆի «Երկու շրջանակներ»ը. մեր ճաշակներուն եւ մեր միտքերուն համար այս ճիւղը աւելի յարմար ընկատուած է տակաւին: Խորհրդածական եւ գրական իմաստասիրութիւնը մշակած է մեր մէջ Յ. Մրմրեան:

Իմաստասիրական գրուածքի մը, մանաւանդ զուտ իմաստասիրական գրուածքի մը երկու ամենակենսական յատկութիւնները պէտք է ըլլան՝ *մէթոտ*, այսինքն կարգ՝ բացատրութեան մէջ, եւ *ոճի յստակութիւն*: Այս պայմանները բացարձակապէս անբռնաբարելի են, մանաւանդ անոր համար որ իմաստասիրական նիւթ մը, տեսութիւն մը, ինքնին ա՛րդէն կնճռոտ ըլլալով գրեթէ միշտ, բացատրութեան կարգն ու ոճի յստակութիւնը պէտք է անպայման ըլլան, գրուածքը անհասկնալի խառնակութեան մը չվերածելու համար:



# 1. ԳՈՐԾԸ ՊԱՏՃԱՌԻՆ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆ Է

(ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ)

*Երբ Բնական Պատմութիւնը մեր տեսութեան առջեւ կ'իյնայ, մեր՝ որ առանց շահու ոչինչի կը յարինք, մեր՝ որ եթէ ոչ այլ ինչ, գոնէ հաճոյք մը զգալու եւ հրճուողութեան մէջ վայելելու շահն ունինք, հարցում մի կուգայ միտքերնիս։*

*Ի՞նչ օգուտ զայն կարդալէ։*

*Իբր մարդ եւ իբր հաւատացեալ մարդ, կրկնակի տեսութեան մէջ կը տարածուինք եւ կը տեսնենք թէ, մարդի՛կ ուղղակի յարաբերութիւն ունին կենդանական աշխարհին հետ, կենդանիէն իրենց բերքն ու շահը եւ իրենց վնասն ու վտանգը ունին. բուրդը, մորթը, կաթն ու կարագը, եղն ու եղջիւրը, դեղն ու դարմանը ընդունելնուն պէս, թոյնի դեղթափին ու գիշատումին դիմադրութեանը հարկն ալ կայ։ Երբ աչքի առջեւ կ'ունենանք կենդանական աշխարհի սքանչելիքը, որ միտքին հիացումը կը վառէ, եւ մանաւանդ երբ մարդն ալ կենդանիներու կարգին վերաբերելով իր գտնուած սեռին վրայ ծանօթութիւնը անհրաժեշտ կ'ըլլայ՝ ա՛լ անկարելի կը դառնայ այս գիտութեան օգտակարութիւնը չճանչնալ։*

*Իսկ թէ ո՞վ է Աստուած, ո՞վ է այս վերացական գաղափարը, եթէ մօտէն գիտնալ ուզող կայ, Բնական Պատմութիւնը իր լաւագոյն առաջնորդը*

պէտք ըլլայ, վասն զի՝ ինչպէս հեղինակութեան մը եւ շինութեան մը անթերի եւ հիասքանչ հիւսքը հեղինակին ու ճարտարապետին կորովը ու մեծութիւնը կրնան հաստատել՝ նոյնպէս ճարտարահիւս ձեռագործ մը, որուն գործադիրը բացակայ է, անտեսանելի արարիչը ու իր անաղօտ հանճարը կը փայլեցնէ, վասն զի գործը պատճառին վկայութիւնն է։

Բնական պատմութիւնը Պիւֆոնին փառքն է. անո՛վ փայլեցաւ ան. հին եւ նոր փիլիսոփաներ շատ սիրեցին զայն եւ իրենց սիրովը հաստատեցին անոր օգտակարութիւնն ու հաճելիութիւնը։ Հումպոլտ, Պլիւմէնպախ, Կիւիէր, Ռիչառ երբեք ձանձրոյթ չզգացին իրենց կեանքին մեծ մասը անոր ուսմանը տալով. մանաւանդ Ռիչառ շատ նշանաւոր է։

Դառն ճշմարտութիւն մ'է որ մենք այս գիտութեան բոլոր հրաշալիքը պատմելու կամ լսելու ատեն, պէտք չկրնանք անկարօտ կերպով բացատրել զայն մեր լեզուով, այլ երբ բառ չգտած ժամանակնիս, բառ ալ չկրնանք շինել, օտարէն փոխառութիւն պէտք ընենք, որովհետեւ մեր նպատակը՝ հայերէն խօսելէ՛ն աւելի, գիտութիւնը կամ կենդանիներու անծայր աշխարհը նկարագրել է։

Բնական պատմութիւնը, զոր Histoire naturelle կը կոչեն Գաղղիացիները, բնութեան մէջ գտնուող մարմիններուն բունը, անոնց բնութիւնը, անոնց ներքին ու արտաքին կազմութեան գործն ու արտաքերութիւնը կ'ապացուցանէ։

Բնական պատմութիւնը գլխաւորապէս երկու մասի կը բաժնուի։

1. *Անգործարանաւոր մարմիններ.* — 2. *Գործարանաւոր մարմիններ։ Անգործարանաւոր մարմիններն՝ ընդհանրապէս կրային կամ հանքային բերքերն են, զոր օրինակ, երկաթ, պղինձ, կապար, պաղլեղ, կիր, քար, հող, եւն. եւն.։*

*Իսկ գործարանաւոր մարմինները կրկին երկուքի կը բաժնուին, 1. Բուսական, կամ անոնք որ միայն՝ սնուցի եւ աճման գործարաններ ունին, 2. Կենդանական կամ անոնք որ սնուցի եւ աճման նաեւ շարժման եւ զգացման գործարաններ ալ ունին։*

*Կենդանիները որ բնական պատմութեան բաժնին մէկ մասն են, մեր դասախօսելի կտորն է միայն։ Փիղն ու ուղտը գիտնալով՝ երբ մրջիւնէն խիստ փոքր՝ աչքով անտեսանելի լսեռնիկներ ու մեկնակներ կը ճանչնանք, կ՚ապշինք թէ անոնք ալ բերան ունին, գործարան ունին, կենդանի են անոնց պէս։ Այո՛, զի հեղինակը խիստ ճարտար է։*

ԹԱԹՈՒԼ

---

ԾԱՆ. — Այս հատուածին հեղինակն է Մկրտիչ Թօզլեան, կրտսեր եղբայր Առաքել էֆ. Թօզլեանի Թաթուլ, իբր յաջողակ բժշկական ուսանողի անուն ունենալէ զատ, իբր ուսուցիչ ալ դիրք ունէր Մայրաքաղաքիս մէջ. 1873—74ին Բնական Պատմութիւն եւ ուրիշ գիտական ճիւղերու ուսուցիչ էր Հիսար Տիպի Մէզպուրեան երկսեռ վարժարանին մէջ ուր իրեն աշակերտած է այս գիրքին հրատարակիչը։ Անցեալ օրերու յիշատակ մը եւ ոչ-բացեալ ուսուցիչին դասախօսութենէն նմոյշ մը տալու համար առաջ կը բերուի այս հատուածը։ . Ս. Գ.

# Զ. ԿԵԱՆՔԻ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

*Ի՞նչ է Կեանքը, ի՞նչ է Մահը, — ո՞վ կը խորհի այդ երկու ամենակարեւոր խնդիրներուն վրայ։ — Ո՛չ ոք, երբ կեանքն երջանիկ կը սահի. ամէն ոք՝ երբ մահը մօտալուտ է։ — Լոկ իմաստասէրն է որ թէ՛ մէկուն եւ թէ՛ միւսին վրայ անդուլ կը նայի այնպիսի ակնարկով՝ որուն մէջ կը կարդաս եթէ ոչ անտարբերութեան սառերը, գէթ արգահատութեան նշոյլը։ Մեր մէջ՝ Գրասէր Ատոմն է որ ո՛չ իր սրատես աչքը կը գոցէ առանց ողջոյն մը տալու հրաշալի բնութեան, եւ ո՛չ թափանցիկ գրիչը մէկդի կը թողու՝ առանց կոչում մ'ընելու մահուան։ Մէկը առանց միւսին չէ կարող ըմբռնել, մէկը միւսին լրումը, պսակը կը հռչակէ։ Եւ իրաւունք ունի վասն զի Կեանք ու Մահ այնպիսի յարակցութեամբ կապուած են, միեւնոյն երեւոյթին այնպիսի անբաժանելի բարեչրջումն են, որ՝ տարբեր տեսակէտով՝ ինչ որ ոմանց կենդանութիւն կը թուի՝ ուրիշներուն մեռելութիւն կը թուի եւ փոխադարձաբար։*

*Եւ քանի՜ քանի՜ մարդկային արարածներ այս պատրանքին ենթակայ գտնուելով՝ իրարու հակառակ եզրակացութեան կը հասնին, երբ վճռը Կեանքի եւ Մահուան վրայ է։ Երբ մէկը՝ Կեանքը երկնատուր շնորհ մը, անընդհատ վերակենդանութիւն մը կը նկատէ, ուրիշ մը՝ դէպ ի անմահու-*

թիւն՝ փչալից շաւիղ մը, իմաստունը խնդիրին գործնական կողմը շօշափելով կը հարցնէ. — Ե՞րբ Կեանքն երջանիկ եւ Մահն ապերջա՞նիկ է։

Այդ իմաստուններէն մէկն է Ս. Սմայլս, իմ սիրական հեղինակս, որուն նմանները եթէ չատնային, անտարակոյս մարդկային աղէտներու մեծ մասը կը նուազէր անհամեմատ։ Եւ ի՜նչ ուշագրաւ ոճով՝ մանաւանդ ի՜նչ ճշմարիտ մարդու սրտով կը նկարագրէ ան, իր մէկ գործին մէջ, Կեանքի՛ն եւ Մահուան բնութիւնը։ Սմայլս մարդկային պարտքին կատարման մէջ կը դնէ մարդկային կեանքի՛ն մեծութիւնն եւ մահուան անմահութիւնը, թո՛ղ ըլլայ այդ կեանքը մինչեւ իսկ սահմանափակ։ Սովորական կարծիքներու հակառակ՝ թշուառ կը նկատէ այն համարակ անհատն որ ձախորդութիւն չէ կրած, քանի որ, բարի կամ վատ, փորձութեանց բովէն չէ զտուած։
— Տեսա՞ր սա ունեւոր եւ յաջող անհատը, կը գոչէ. քանի՜ բարեբախտ է ան։ Սակայն ստէպ կեանքի մէջ նուազ յաջողը մեծագոյն բաժինն ունի կեանքի ներքին ուրախութեան մէջ։ Եւ կա՞յ մահկանացու մը որ Կէօթէէն աւելի շքեղ կեանք մը վայելած ըլլայ։ Առողջութիւն, պատիւ, հանճար, փառք եւ աշխարհային հարստութիւն կը վայելէր արդարեւ եւ սակայն ինք կը խոստովանէր որ իր կեանքի բոլոր շրջանին մէջ, կեանք մը որ ութսունն անցած էր, հազիւ հինգ շաբաթի չափ լիուլի ուրախութիւն վայելած է։ Եւ ուրիշ քանինե՜ր։ Եթէ մեր կեանքը միշտ արեւալի, անստուեր, անվիշտ անցնէր, բնաւ կեանք՝ գէթ մարդկային՝ չպիտի կոչուէր։ Ամէնէն երջանիկ անհատին կեան-

քը բազմակնճիռ հանգոյց մըն է՝ տրամութեան եւ ուրախութեան թելերով հիւսուած։ Մեր խնդագին օրերն աւելի անուշ կ'ըլլան, տրամագին օրերու պատճառաւ։ Ցաւ ու խինդ հետզհետէ կը պաշարեն կեանքը, մահուան շուքն իսկ աւելի հրապուրելի կը գործէ զայն, մեզ աւելի սերտիւ կը կապէ ցորչափ երկրի վրայ ենք։ Երբ մահը գայ մտնէ տան մը մէջ՝ այլեւս իմաստասիրելու ժամանակ չի թողուր։ Արտասուալից աչքերն այլեւս չեն տեսներ, այլ միայն կ'զգան, թէեւ աւելի պայծառ պլլտալ տեսնեն անոնք ժամանակի հոլովմամբ քան այն մարդիկն որ բնաւ վիշտ չեն տեսած։ Իմաստուն մարդը քի՛չ քի՛չ կը սորվի մեծ բան չյուսալ կեանքէն, այլ կը նկրտի ուղիղ եւ արդար միջոցներով յաջողութեան հասնիլ, միշտ ձախորդութեան պատրաստ ըլլալով։ Ի՞նչ օգուտ ունին տըրտունջ ու ողբ՝ կենաց վաղանցութեան եւ ապերջանկութեան դէմ, կեանքը՝ որ մարդուս կազմուածքի, բնաւորութեան, մտային եւ բարոյական հանգամանքին համեմատ, երջանկութեան տարբեր գոյնով ու ձեւով կը ներկայի։ Զուարթ մտաքը կեանքը խնդութեամբ կ'ընդունի, մելամաղձիկը՝ դժգոհութեամբ։ Եւ իրօք ստէպ անհատական յօժարութեանց հայելին է կեանքը։ Կարեւորն է մարդու համար կատարել իր պարտքն իր գըտնուած շրջանին մէջ՝ որքան անշուք ըլլայ ան, վասն զի պարտաւորութիւնն է միայն ճշմարիտը, որուն կատարման մէջ կը գտնուի նաեւ ճշմարիտ գործունէութիւն եւ մարդասիրութիւն։ Բարձրագոյն կեանքի նշանաբանն ու նպատակն է պարտա-

ւորութիւնը, որմէ կը ծագի ներքին երջանկութիւն. անոր գիտակցութիւնն ու լռումը, ինչպէս կ'ըսէ Ժ. Հէրպէրդ, կ'ընծայէ երաժշտական քաղցրութիւն՝ մինչեւ իսկ գիշերուան միջոցին: Հետեւապէս՝ երբ այս երկրի վրայ մարդ աւարտէ՜ հարկը, պարտաւորութեան, սիրոյ պաշտօնը, չերամին նման՝ որ կը հանէ իր բոժոժն ու ապա կը մեռնի հանգիստ, այն ժամանակ կրնայ ինք եւս անցնիլ մահուան գիրկն իբրեւ քուն եւ, իր գործունէութեան անշահ կամ օգտաշատ արդիւնքին համեմատ, իր գլուխը դնել փոքրիկ կամ լուսեղէն բարձի վրայ:

## 3. ԱՆՀՈՒՆԸ

(ԽՈՀԱՆՔ)

Ցրտի՛ն՝ հողմակոծ գիշերն ընդմիջած է:

Սակայն մտքիս ատեանին մէջ՝ չգիտեմ ո՛ր արեւէն՝ չքնաղ տիւ մը յանկարծ կը փայլատակէ: չօշափելով հին գաղափարներս, որ հոն կը հսկեն յանդուգն լռութեամբ:

Անթրթիռ անորակ ձայն մը՝ ելեկտրաբար ցընցելով պտուտկող այդ գաղափարներուս առանցքին՝ հոգիիս խարիսխը, «Եկո՛ւր, կը գոչէ, քեզի ցո՛յց պիտի տամ Անհունը:»

Կ'զգամ որ ազդում մըն է այն՝ սուր, նուր ու բարձր՝ որով նաեւ շատ բուռն:

Կ'հաւատամ որ խորհրդաւոր հրապարակ մը ինծի պիտի կարապետէ այն, վասն զի գիտակից եմ որ այս շրջմոլ հողեղէն հրապարակին առնելու պատճառներս շատ հզօր են, գիտակից եմ որ մարդիկ քանի՛ ինէ խորշին, Ամբաւ գութին այնքան աւելի գուրգուրանքով ասպարէզ կը բանայ ինծի։

Եւ ինք գիտէ ալ որ ես տարփաւոր մ'եմ անհունին։

Այս անգամ հզօր, շատ հզօր կը թուին ինծի՝ այն թեւերը, որ ինք կ'ընձեռէ ինծի։

Ու ձայնին ետեւէն կը սուրամ մրրկոտ՝ արեւէն թեթեւ, ամպէն մաքուր, լոյսէն արագ։

Րոպէ մը՝ ահա գիշերին սահմանէն վեր անցած եմ, րոպէ մըն ալ՝ արդէն գլած եմ արե՛ւը, եւ միւս պահ մը՝ ահա իբրեւ անդունդներու կը նայիմ աստղերուն լեգէոնին։

Հոնկէ՝ մեր գունտը չքացած է, արեւն հիւլէ մը կ'երեւի, ու ես՝ թէպէտ մտքով անհաքրտնած, նայուածքով հոսած ու հոգիով դանդաղօտ՝ կեցած տեղէս կրնամ ափացի չափել արփային պարունակը։

Երանական սօսաւիւն մը աշխարհա'լալած է բովանդակ էութեանս մէջ։ Յաջողած եմ մտքիս պատուհանէն դուրս թռիլ։

«Ելի՛ր, անգամ մըն ալ ելի՛ր, կ'որոտայ ձայնը, եւ ա՛ւր ելի՛ր։»

Հոգի ա՛յլ, էութիւն ա՛յլ. կ'ելլեմ գրեթէ խոնջած։ Հասած եմ արդէն անգոյն վայրը, որ ժամանակին հետ տարրախառնուած կը բիւրեղացընէ թաքուն լռութիւն մը. ա՛լ ո՛չ աջ կայ հոն ո՛չ ձախ.

*հոգիս՝ խորհուրդներս՝ բոլորն ալ շոգիացեալ խու-ճապներ դարձած՝ կը սուրան ետեւէս. — ա՛լ լոկ ես մը մնացած եմ, մշտնջեան բովանդակին մէջ հեւացող ես մը միայն։*

*« Անգամ մըն ալ զօրացի՛ր ու փորձէ վարգել, թերեւս ճանչնաս Անհունը, անգամ մըն ալ, մա՛րդ-նկուն։ »*

*Յետին ճիգ մը կը բռնկցնէ զիս, ճիգ մը՝ աւելի դուրսէն քան ներսէն՝ ինէ։ Հասած վայրս ո՛չ զէնիթ ունի ո՛չ նատիր. հոն ա՛լ անմուտ է ադամանդի լոյսն՝ աննիւթական եւ հսկայ ճակատէ մը բղխող, որ քանի՛ սուրամ՝ ետ կը փախչի։*

*Ներսի դուրսի կորովներս սպառած են ա՛լ, եւ միայն կէտ եսս կը դողդոջէ զահանդած՝ ընդհուպ չքանալու ահով։*

*Վերջին հագագովս կը գոչեմ.*

*« Ո՞ւր է ծայրն այս անարձագանգ դարպասին եւ ո՞վ անոր Տանուտէրը։ »*

*Սպիտակ շաչիւն մը՝ ահե՛ղ, հրաթե՛ւ՝ համակ նոր՝ համակ կամք հնչուն՝ կը դղորդայ անկողմ կողմերէն։*

*« Լսէ՛, մեկնած տեղէդ մինչեւ հոդ որչափ հանգրուան առիր՝ ծայրեր են անոնք անհունին. տեղդ՝ ուր կեցած ես՝ ծայրն է անհունին. յաւիտեա՛ն մըն ալ ընթանաս՝ դարձեալ սկզբնական ծայրը կ՚ըլլաս անհունին. միւսն անծանօթ է. անոր անհունութիւնը միայն ճանչնալը նեղուած է մարդուն։ Լա՛յն է վայրը, լա՛յն ժամանակը, լայնատարր յաւիտեանը, այլ ամենալայն է անհունը, — Գոյութեան ամէնէն խրոխտ պատճառն եռեղակալ*

զոր համբոյրս՝ յաւիտեանը՝ կը չափէ, եւ որուն մէջ մեղքի չիթ մըն էիր դուն, որուն ծայրն ես միշտ հոս եւ վարը՝ հոն, ուր հարկ է քեզի դառնալ։ Ես միշտ Նոյնն եմ։»

Եւ կը դառնամ ուժգնագոյն անկումով։ Եւ հոս նորէն՝ վարը, անվայրափայլ շրջանակին մէջ ես զիս կը գտնեմ քառակուսի չափով մը, մահուան զարդ մը, չքոտի պուպրիկ մը, խաղալիկ՝ վայելլի անձնիշխանութեանս, յոգնած օրհասին դէմ ես զիս կ'զգամ ունայն ճիգ մը՝ տխո՛ւր այլայլակ։

Եւ զուր կը փնտռեմ մեղքիս կոծումներէն ազատ հանգրուան մը՝ խոկալու համար անոր, որ միշտ մեծ նոյնն է։

Այո՛, խոկալու համար Անոր, որ միշտ Մեծ Նոյնն է։

ԱԿՈՒՄԻՏ

(Յ. Գ. Մրմրեան)

# 4. ՇՐՋԱՆԱԿՆԵՐԸ

Ունեւորի զաւակ, երկու եղբայրներ, իրիկուան դպրոցէն արձակուած՝ եկեր են մեծ պողոտային վրայ, փայտէ շրջանակ դարձնելու։ Marin Վէսթօն, թաւիշ տաբատ, մետաքսով ծաղկաւէտուած երկայն սեւ գուլպաներ, դեղին կօշիկ։ Սիրուն, առոյգ տղաք, կը դարձնեն, կը վազեն, կը սուրան հովի պէս՝ իրենց նուրբ, լայնծիր, թեթեւուկ շրջանակներուն քովէն՝ խնդալով, ճճուելով,

կատակելով եւ լայն ու հարթ ուղիին ամբողջ երկայնքին ու դարձքին վրայ, անհագին շրջանակ մըն ալ իրենք կազմելով այդպէս՝ կը դառնան, կը վերադառնան, կը հասնին, սաստիկ մրցումի մը մէջ խօլացած, փրփրած, հեւ ի հեւ:

Իրենց տարեկից տղայ մը, ա՛ն ալ դպրոցական, հաւանօրէն իրենց դասակից, ու թերեւս անոնցմէ ալ յաջող դասերուն մէջ, բայց աղքատ՝ շա՜տ աղքատ: Վրայ գլուխ չկայ, տաբատը մասով կարկըտած, մասով նորէն պատռտած, կօշիկներուն ճեղքերէն երեւցող կոշտ թելերով հիւսուած գուլպաներով, հինկէկ շապիկ մը՝ բաճկոնին տակը. մազերը՝ խառն ի խուռն: Տակառի մը վրայէն, երկաթ պզտիկ շրջանակ մը բրցուցած բերած՝ ա՛ն ալ կը զարնէ, կը վազէ, կը դառնայ՝ քրտնոտ, փրփրած, կասկարմիր: Ձեռքը հաստ փայտի կտոր մը՝ կը զարնէ ու կը զարնէ, երկաթէ ծուռումուռ շրջանակին՝ որ սաստիկ շաչիւնով մը կը դիմադրէ, ծոյլ ու դանդաղ, թապլ ի թապալ գալով, ամէն վայրկեան իյնալու հակամէտ, միշտ ցնցուելով հարուածներու տակ, ու քարերուն առջեւ, միշտ անկանոն ցատքռտուքներով ու երերումներով թաւալգլոր:

Աս ալ իր շրջանը կ՚ընէ, բայց պզտիկ: Աս ալ կը մրցի իր հասկցած կերպովը ու իր սեպհական միջոցովը:

Անոնց հետ, միեւնոյն վայրկեանին, ճամբայ կ՚իյնայ, միեւնոյն ուրախութեան աղաղակներով. բայց, անոնք կը սահին, կը սուրան, կը թռին, մինչ ան՝ իր մանր ու ծոյլ երկաթ շրջանակին հետ իյ-

նալով, ելլելով՝ կը բացուի, կը հեռանայ մեկնակէտէն՝ այնչափ միայն, որչափ աչքը կը կարէ, անոնց վերադարձին հետ հասնելու համար միեւնոյն տեղը, միեւնոյն վայրկեանին, միեւնոյն յաղթական խօլ պոչերուն մէջտեղը։

Վաղը կեանքի մէջ ալ նոյն բանը պիտի ըլլայ։ Տարեկից իրարու՝ միեւնոյն ասպարէզին մէջը պիտի իյնան թերեւս, ու աղքատ տղան՝ աւելի յաջողակ հաւանօրէն իր նախկին ընկերներէն, որոնք իր պետերը հիմա՝ պիտի մրցին, պիտի սուրան, պիտի թռչին, աւելի մեծ շրջանակներով, աւելի լաւ շրջաններ ընելու համար. մինչ ինք՝ միշտ կարճ, իր ծուռիկ մուռիկ, ծանր ու կախկախ երկաթէ շրջանակովը՝ իր ապրուստի անձուկ շըրջանակին մէջը պրկուած, պիտի վազվռտէ անոնց քամին ի վեր, միեւնոյն աղաղակներուն մէջ, միեւնոյն վայելքին խաբկանքը տալ ուզելով ինքզինքին։

Բայց ի՞նչ պիտի ընես, ա՛տ է կեանքը։ Ամէնքն ալ պիտի վազեն, ո՛րը քիչ, ո՛րը շատ. ամէնքն ալ պիտի վազեն ո՛րը աղէկ, ո՛րը գէշ. բայց ամէնքն ալ պիտի վազեն վերջապէս՝ անխտիր, ու հասնիլ անվրէպ, — իրենց վախճանին։ — Ի՞նչ ընել, կեանքն է ատ։

Օ. ԶԻՖԹԷ-ՍԱՐԱՖ

# Ե. ՄԻՍՏԻՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԿԵԱՆՔԻ ՄԷՋ

## ՍՈՒՐԲԵՐԸ

*Ի՛նչ անբաղդատելի շարք, այս շարքը անշահախնդիր կեանքի անհամար հերոսներու, ի՛նչ երեւոյթ բարձր բարեշնորհութեան, ի՛նչ ազնուականութիւն, ի՛նչ բանաստեղծութիւն։ Կան որ խոնարհ են ու կան որ մեծ. գիտնականները կան ու պարզամիտները, աննշաններն ու նշանաւորները, բայց չեմ գիտեր մէկ հատը որ սովորական երեւոյթ ունենայ։ Ամէնքն ալ ինծի կ'երեւան ինչպէս որ կը ցուցնէ զանոնք Ճիոտտօ, վեհաշուք, յանդուգն, երկրաւոր կապերէ անջատուած, եւ արդէն այլակերպուած։ Քիչ հաճելի են անոնք դրական մտքին. բայց վերջապէս, ո՛րչափ անոնք կեանքը աւելի լաւ հասկցան, քան անոնք՝ որ զայն չափի անձուկ հաշիւ մը, փառասիրութեան եւ սնապարծութեան ողորմելի պայքար մը կը նկատեն։*

*Ամէնքն ալ, սքանչելի բանաստեղծներ եղան. բայց սովորաբար ծայրայեղութեան կ'երթան ու մեզ կը սարսափեցնեն իրենց հոգեկան բորբոքումով։ Ասոր համար է որ իրենց հոգին այնչափ յաճախ տխուր ու ցաւագին է։ Անոնցմէ շատերը շատ տառապած են՝ որովհետեւ ինչ որ մեծ է եւ բարձր՝ իր մէջ իսկ ունի իր տանջանքը, եւ մարդկութեան սովորական ճամբաներէն ելլելուն համար իր մեծութեամբն իսկ կը պատժուի։ Սուրբե-*

րուն յաղթանակի վայրկեանը իրենց մահուան վայրկեանն է անշուշտ։ Իրենց կեանքին չեմ բաղձար, բայց իրենց մահուան կը նախանձիմ։ Այդ փառաւոր ու հանդարտ վախճանները տեսնելով՝ հոգին կը բարձրանայ եւ կը զօրանայ, մարդ աւելի համարում կ'ունենայ մարդկային բնութեան համար, կը համոզուի որ այդ բնութիւնը ազնիւ է եւ թէ կարելի է անով հպարտանալ։

. . . Մտածում մը որուն վրայ մարդ չի կրնար կանգ առնել առանց արտմութեան, ան է որ՝ ա՛լ սուրբ չպիտի ըլլայ։ Աստուծոյ զաւակներուն ցեղը յաւիտենական է, եւ մեր դարը, մեծ բաներով այնչափ աղքատ, ուրիշ դարէ մը աւելի զուրկ չէ բարի ու գեղեցիկ հոգիներէ։ Բայց այդ հին ձեւով սուրբերը, այնչափ խորոտ կերպով կանգուն այդ մեծ արձանները, մարդկային բնութեան տեսալական ու աստուածային կողմին այդ բարձր ներկայացումները, ահաւասիկ ինչ որ ալ պիտի չտեսնուի։ Բանաստեղծութեան սեռ մըն է որ ա՛լ լըմընցած է, ինչպէս այնչափ ուրիշներ։

Է. Ռ.



# Զ. ՄԻՍՏԻՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱՐԴԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ ՄԷՋ

## ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

*Ո՛վ իմ Աստուածս, դուն զիս սիրով խոցեցիր, — Եւ դեռ խոցը կը կոտտայ կոր, — Ո՛վ իմ Աստուածս, դուն զիս սիրով խոցեցիր։*

*Ո՛վ իմ Աստուածս, քու վախդ զիս զարկաւ, — Եւ այրուցքը դեռ հոս կը վառի կոր, — Ո՛վ իմ Աստուածս, քու վախդ զիս զարկաւ։*

*Ո՛վ իմ Աստուածս, հասկցայ որ ամէն բան անարգ է, — Եւ քու փառքդ իմ մէջս հաստատուեցաւ, — Ո՛վ իմ Աստուածս, հասկցայ որ ամէն բան անարգ է։*

*Խեղդէ՛ հոգիս քու Գինիիդ ալիքներուն մէջ, — Հալեցո՛ւր կեանքս քու սեղանիդ հացին մէջ, — Խեղդէ՛ հոգիս քու Գինիիդ ալիքներուն մէջ։*

*Ահաւասիկ արիւնս զոր չթափեցի, — Ահաւասիկ մարմինս՝ տանջանքի անարժան, — Ահաւասիկ արիւնս զոր չթափեցի։*

*Ահաւասիկ ճակատս որ կարմրիլ միայն գիտցաւ, — Քու պաշտելի ոտքերուդ իբրեւ պատուանդան, — Ահաւասիկ ճակատս որ կարմրիլ միայն գիտցաւ։*

*Ահաւասիկ ձեռքերս որոնք չաշխատեցան, — Կրակ ըլլալու համար չքնաղ խունկին, — Ահաւասիկ ձեռքերս որոնք չաշխատեցան։*

*Ահաւասիկ սիրտս որ ի զուր միայն բաբախեց, —*

Որպէս զի դողդղայ Գողգոթային փուշերուն վըրայ, — Ահաւասիկ սիրտս որ ի զուր միայն բաբախեց։

Ահաւասիկ ոտքերս՝ սնոտի ուղեւորներ, — Որպէս զի վազեն քու շնորհիդ աղաղակին, — Ահաւասիկ ոտքերս՝ սնոտի ուղեւորներ։

Ահաւասիկ իմ ձայնս, անհամբոյր ու ստախօս աղմուկ, — Ապաշխարութեան կշտամբանքներուն համար, — Ահաւասիկ իմ ձայնս, անհամբոյր ու ստախօս աղմուկ։

Ահաւասիկ աչքերս՝ սխալմունքի լուսանցքներ, — Որպէս զի մարին աղօթքին արցունքովը, — Ահաւասիկ աչքերս՝ սխալմունքի լուսանցքներ։

Ահ, դո՛ւն՝ Նուիրման ու Ներման Աստուած, — Ի՞նչ է այս հո՛րը իմ ապերախտութեանս, — Ահ, դո՛ւն՝ Նուիրման ու Ներման Աստուած։

Սարսափի՛ Աստուած, Աստուա՛ծ սրբութեան, — Ահ, իմ մեղքերուս այս սե՛ւ անդունդը, . . . — Սարսափի՛ Աստուած, Աստուա՛ծ սրբութեան։

Դո՛ւն, խաղաղութեան, ուրախութեան եւ երջանկութեան Աստուած, — Իմ բոլոր վախերս, բոլոր իմ տգիտութիւններս, — Դո՛ւն, խաղաղութեան, ուրախութեան եւ երջանկութեան Աստուած։

Դուն ատոնք ամէնքը, ատոնք ամէ՛նքը գիտես, — Եւ թէ ո՛չ մէկը ինծի չափ խե՛ղճ է, — Դուն ատոնք ամէնքը, ատոնք ամէ՛նքը գիտես։

Բայց ինչ որ ունիմ, Աստուա՛ծ, քեզի՛ կուտամ։

ՓՕԼ ՎԷՌԼԷՆ

# 7. ԿԵԱՆՔԻՆ «ՏԱՐԵԳԼՈՒԽ»Ը



*Հակայ ու ծերունի ժամացոյցը, որ սա տեղ, դէմս, կախուած, իր մշտնջենական ժամանակը կը հոլովէ, տեւականօրէն ու անսայթաք, հիմա պիտի թեւակոխէ իր տարիքին գագաթնակէտին, տասներկուքի սահմանները, — անխռով հանգրուանը՝ իր կեանքին շրջանին մէկ հատուածին, — ուրկէ ետքը պիտի սկսի դառնալ հետ ի հետ վազվզել բոլորտիքը իր շրջանակին, տեւա՛կանօրէն, միօրինակ, անխոնջ՝ հասնելու համար դարձեալ, կանոնաւոր ու համբերատար հոլովումներէ ետքը, նոյն վերջակէտին, նո՛յն հանգրուանին, նոր կեանքի մ'ալ սկսելու համար, դարձեալ, շարունակաբար, տատանկ, յաւիտենապէս։*

*Ու ո՛րչափ ժամացոյցներ, Երկրագունտին ամէն կէտերուն վրայ, ամէն մութ անկիւններու մէջը, երկնամերձ աշտանակներէ մինչեւ ամենախոր հանքարաններու խորը, ուր անոնք, իրենց վիճակին համեմատ, — հսկայական կամ տխեղծ գոյութիւններ։ — մի՛եւնոյն գործը կը կատարեն, ժամանակին ընթացքը կը հոլովեն, համրելով կանոնաւորաբար անոր տողանցքները, միօրինակ, համաչափօրէն, անդադար՝ ճամբայ ելնալով մեկնակէտէ մը, եւ հետ ի հետ սուրալով դարձեալ հոն, դառնալով բոլորտիքը իրե՛նց շրջանակին, ուր անոնցմէ ոմանք, — ճոխ սարքուածքով աղմկա-*

մէր գոյութիւններ. — Հանդիսաւոր կերպով տօնախմբութիւնը կը կատարեն իրենց ժամանակին աւարտումին, հնչելով համրանքը իրենց Կեանքին Թիւերուն։

* * *

Օրացոյցները աւետեցին Երկրագունտին տարի մ'ալ ծերանալը, չափ մ'ալ առաջխաղացումը դէպ ի իր վախճանը, եւ անոր բնակիչները, անա·ո՛ման խնծիղով մը, հրճուեցան, քայլ մըն առաջացած ըլլալնուն համար, անոր հետ, իրենց վախճանին, մի·ամիտ ու զուարճալի պատրուակի մը տակ, որ «Նոր Տարի» մտնելու անունովը կը ներկայանայ, աշխարհի ամէն կողմերը. առհասարակ։

Ասոնք, հանդիսաւոր խրախճանութիւններով, տօնեցին չուն, անդարձ մահացումը, իրենց Կեանքին մէկ հատուածին, դէպ ի անէութեան խորը՝ հրճուելով որ կ'սկսին հոլովումին Նոր հատուածի մը, որուն մէջ արդիւնալից քայլեր ունենալու մաղթանքներ ըրին իրարու, փայլուն առաջադրութիւններով զարդարելով իրենց միտքը։

Անոնք չուտով պիտի հասնին Նոր տարեկիցի մ'ալ՝, երբ ո՛չ մէկ բան փոխուած պիտի տեսնեն իրենց վրայ, անկասկած՝ ո՛չ մէկ առաջադրութիւն պահուած իրագործումով, եւ, ո՛չ մէկ բա՛ն ձեւափոխուած դէպ ի ետ թաւալող իրենց Կեանքէն։

Ու տարեկիցները չարունակ պիտի յաջորդեն իրարու, անսայթաք ու կանոնաւոր, ու մարդիկ չա՛րունակ պիտի կատարեն տօնախմբութիւնը ի-

րենց կեանքին հատուածներուն մահուան, բոլորովին անգիտակ, ունակութեան մը պէս, թէ ինչու ատանկ կ'ընեն ։

Ժամացոյցի մեքենական հոլովումն է ասիկա, որ շրջանը կ'ընէ ժամանակին, յարատեւաբար, մէկ կէտէն միւսը, մշտնջենապէս, միօրինակ կերպով, հասնելէ ետքը հոն, դարձեալ կրկնելու համար նոյն մեքենականութիւնը, դրդուած՝ լարուած ջիղէ մը, զսպանակէն, որ ժամացոյց-մեքենային մէջ, անզգայ ու անշունչ մետաղն է, իսկ մարդուն մէջ, Կեանքը, Կեանքին ջիղը, մարմինով ու հոգիով լարուած գործարանաւորութիւնը ։

Տարեգլուխը պիտի ըլլայ, մարդոց համար, տարիքի հոլովման ճշդուած թուականը, մեկնակէտը նոր Կեանքի մը մտնելու սահմանագլուխին, ինչպէս ժամացոյցին համար, տասներկուքը, օրուան հոլովումին լրութեանը համար ։

Անոնք չպիտի գիտնան թէ, տեւական ու միօրինակ հոլովում մը չէ՞ նշանակութիւնը Կեանքին, մեքենական ու ճշդապահ թաւալումին պէս ժամացոյցին ։

Չպիտի գիտնան թէ, երեւութական ու խաբող թուական մըն է, Կեանքին նշանակութեանը համար, Տարեգլուխը որուն ա՛յնչափ անձնատուր ըլլալ սորված են, իբր վերածնութեան՝ Կեանքի նոր շրջանի մը թուականը ։

Չպիտի գիտնան, թէ, ծագող ամէն նոր օր, նոր Տարեգլուխ մըն է, Կեանքին համար, որ պէտք է արդիւնալից ու բեղմնաւոր արգանդի մը մէջ մշակուի, չդառնալու համար այն մեքենական ու

անպտուղ գործունէութիւնը, որ ժամացոյցինն է, եւ որ կը կայանայ հանգրուանէ մը հանգրուան՝ միօրինակ ու անվերընձիւղ թաւալումի մը մէջ, ինչպէս կեանքը՝ մարդոցմէ շատերուն, որոնց համար ծնող նոր օրերը իմաստ չունին, ու մի՛ միայն տարեգլուխն է որ կը ներկայանայ իբր նոր թուական մը, գործունէութեան ու վերծաղկումի, — խաբէական թուականը սակայն։

ԵՆՈՎՔ ԱՐՄԷՆ



# 8. ԱՐԵՒԱԳԱԼԻ ՎԵՐԼՈՒԾՈՒՄԸ



Եթէ բանաստեղծութիւնը բուն ներշնչումն է եւ արտայայտութիւնը այդ ներշնչումին, եւ ո՛չ թէ արուեստ մը կամ դեղարուեստ պարզապէս, Արեւագալի երգերը՝ բովանդակ ճշմարտութեամբ կ'արդարացնեն բանաստեղծութիւնը, կրօնական իմացումներու եւ զգացումներու ջիղեր ալ դնելով անոր մէջ։ Ամբողջ Արեւագալը՝ ԼՈՅՍԻ նուագ մըն է։ Երգ մը լուսեղէն, որ պարզ ու խաղաղ խօսքերու, կտրուկ նախադասութիւններու մէջէն դուրս կու գայ՝ օծանուտ, գգուո՛ղ, պարարո՛ղ, հոսանքով մը։ Եւ անոնք չե՛ն միթէ բուն յատկութիւնները բանաստեղծութեան։

Լոյս մըն է երգուածը, բայց ի՛նչ լոյս։ Խորունկ ազդեցութեան մը, վճիտ եւ բեղմնաւոր ներշնչումի համայնական աղբիւր մըն է լոյսը, որ

արեւու, լուսնի, մոլորակներու եւ դեռ բիւրաւոր լուսաւորներու մէջ, իրեն կը քաշէ, կը հրապուրէ, կը պարարէ մարդուն ալ միտքը։ Եւ միտքը դարեր առաջ աստուածացուց լոյսը ու կրօնական պաշտամունքի առարկայ ըրաւ զայն։ Արեւը, լուսինը կը պաշտուէին կրօններու հեթանոսական շրջաններուն մէջ։ Միտքը, սակայն, իր լուսաւորութեամբ, հետզհետէ աւելի լաւ պիտի հասկնար լոյսը եւ, առանց այլեւս պաշտելու զայն, աւելի գիտակցութեամբ, աւելի զգայութեամբ եւ հետեւաբար՝ աւելի գեղեցիկ բանաստեղծութեամբ պիտի երգէր «Լո՜յս»։ Քրիստոնէական շրջանի մէջ լոյսի իմացումը աւելի ճշգրիտ եղած է եւ հիանալի։ Իր աչքերու լոյսէն զրկուած, լուսատես Միլթընի երգը ո՜րքան սուր, ո՜րքան սուրբ է «Կորսուած Դրախտին» մէջ։ Այդ քիչ մը հինցած էջերը քանի՜ նոր խայտանքով կ'ոգեւորին լոյսին երգովը։

Իրենց աչքերուն լոյսը վայելողներ միեւնոյն թափով չպիտի՞ երգէին լոյսը, որ արեւածագին հետ կը ցանուի համասփիւռ վայելչութեամբ մը։ Հայ Սրբազան բանաստեղծը ունի այդ թափը։

Խանդարուած, կրքոտած, տուայտած ջղային դրութեան մը չի խօսիր ո՛չ լոյսը, ո՛չ ալ ներշնչող ո՛ր եւ է պատճառ։ Հանդարտ, անքիծ, կրօնականացած վայրկեաններ, օրեր եւ նոյն իսկ կեանքեր ունին մարդիկ, ուր կ'ըլլան ներքնատես, հոգետես։ Իրենց սրտին ու մտքին այն ատեն աւելի դիւր կուգան կնճռոտ կարծուած հոգեխօսական երեւոյթներ եւ իրողութիւններ։ Մարդուն բնա-

խօսապէս եւ հոգեխօսապէս ամէնէն կատարեալ, ամէնէն զարգացած վիճակն է այդ։ Ներշնչումն ալ այդ կատարեալ վիճակին, լաւ եւս՝ կատարելութեան մէջ է որ կը գտնէ իր տաճարը։

Երեւակայեցէ՛ք Սրբազան բանաստեղծը իր այդ վիճակին մէջ, դիտեցէ՛ք զայն որ զուարթ է, եւ շատ վաղայարոյց՝ երբ դեռ մութը՝ գիշերը՝ խորին լռութեան մ. մէջ՝ տիրած է տիեզերքին, երբ լուսաւորները երկնքի կամարէն կամաց կամաց կը նուազին ու կը նուաղին Բուն-Լուսաւորին ծագումը աւետելու համար, երեւակայեցէ՛ք այդ բանաստեղծը՝ աղօթող ու հոգեզմայլ, ակնապիշ դէպի ծիրանի վառ հորիզոնը, կենդանի հորիզոնը ուսկէց Արեւը կուգայ. ԱՐԵՒԱԳԱԼ, դուք ալ պիտի զգաք բանաստեղծին զգացածը, ներշնչումը եւ մանաւանդ նոյն ինքն բանաստեղծը։

Զգալի լոյսը ամէնէն ապահով միջոցն է հասկըցնելու համար իմանալի լոյսը, որ կրնայ մտածուիլ կրօնական զգացումներու խօսուն նմանութիւնը ստեղծելու եւ արտայայտելու համար։ Բանաստեղծի համար բախտաւորութիւն մըն է ունենալ վերը բացատրուած կատարեալ վիճակը, վայելած ըլլալ ա՛յն տեսարանը, որ ներշնչած է իրեն, բանաստեղծելու համար Արեւագալը։

Քրիստոս լոյս մըն է արդէն իր գործերով։ Անոր Սուրբ անունը տիրած է ամէն կողմ, ինչպէս կը տիրէ լոյսը իր Վեհափառ գահոյքէն։ Արեւելք, Արեւմուտք, Հիւսիս, Հարաւ լեզու կտրած են այդ լոյսին ազդեցութեան տակ, օրհնութիւն, երգ կը թրթռացնեն դէպի Լոյս-Գահը։

Արդարները, զգացողները եկեղեցիները՝ կը փառաբանեն՝ կը բարեբանեն լուսացած առաւօտին մէջ, խաղաղութեան առաւօտը՝ Քրիստոսը, կ'որհնուի «Ծագողն լուսոյ», կը բարեբանուի Ան որ տուաւ «զիմաստս լուսոյ»: Անսահման ծաւալում մը կայ Արեւելքէն Արեւմուտք, Հիւսիսէն Հարաւ ծաւալում մը Լոյս-Քրիստոսի հմայութիւններուն, որոնք զիրար կը խաչատեն, զիրար կը դիմաւորեն, կը միանան, կը գրկեն ու կը համբուրեն Սրբազան բանաստեղծի զգածուած գրչին տակ:

Քրիստոսի այդ լուսեղէն դիտողութեան ներքեւ կը խմբէ բանաստեղծը զանոնք, որ «պանծալիք»ին, «ցանկալիք»ին, եւ «բաղձալիք»ին եւ որ՝ կաթի փոխան խմեցին զմայլեցուցիչ գինին: Սքանչացումով չե՞ք զգար բանաստեղծին սուր խոյանքը դէպ ի «Լոյս, արարիչ լուսոյ, առաջին լոյս», առատուան լոյսի ծագած վայրկեանին, եւ այնքան սուր է այդ խոյանքը, որ արեւէն ալ առաջ Լոյս-Քրիստոսը կը տեսնէ: Երբ դեռ մութ է ամէն կողմ ու մարդիկ կը ննջեն դեռ իրենց աչքերը փակած, Անոր անունը «գովեալ» է արդէն:

Երկինքի գութը, կարեկցութիւնը ցաւերու մէջ տրորուած սրտի համար լոյսի հեղեղ մըն է: Ընկճած հոգիներու համար ակնկալութեան, յոյսի նշոյլ մը, պէտք մը, կազդուրում մըն է: Մարդը միշտ կ'զգայ այդ պէտքը իր մէջ: Եւ Սրբազան բանաստեղծը այնքան կարօտ է, այնքան պէտք ունի այդ կարեկցութեան, որ լոյսի արդարութեան հանիլը կ'ուզէ «ողորմութեան լոյս»ին:

Մարդու բարոյական կամ հոգեկան բոլոր կա-

րողութիւնները լոյս են կամ կրնան լուսաւորուիլ։ Նիւթերը խաւարի պէս կուգան եւ կը մթնցնեն ինչ որ լոյս է մարդուն մէջ։ Ողորմութեան լոյսն է որ կը փարատէ աղջամուղջը, ինչպէս որ առաւօտեան արեւը կը ճեղքէ, կը վտարէ գիշերուան մթութիւնը երկրի վրայէն։

Սրբազան բանաստեղծին բոլոր երգը աղաչանք մըն է լոյսի. կ'ուզէ լուսաւոր, ցօղաթուրմ, զըւարթ, թարմ եւ բերկրանայշ Առաւօտի պէս նորոգուիլ։ Անըմբռնելի տխրութիւն մը կայ աղաչանքին մէջ, որուն առջեւ կը խոնարհի լոյսը, կը ծագի, կ'ողողէ մարդիկ՝ սրբացած, կրօնականացած մարդիկը, որպէս զի ասոնք ըլլան «որդիս լուսոյ եւ որդիս տուընջեան»։

Մարդկային կարողութիւններու նրբութիւնները, ազնուացումները, հոգեկան աշխարհի լուսապայծառ զարգացումը՝ անվրիճելի պէտք մըն են ապրելու համար մարդու կեանքը։ Որչափ բազմերանգ ըլլայ ա՛յդ պէտքերէն իւրաքանչիւրին յատկութիւնը, այնչափ աւելի կը յարմարի ան՝ լոյսի յատկութիւններուն։

Հրաշալի չէ՞ Սրբազան բանաստեղծին ներշնչումին պատճառը։ Երգի մը՝ աղաչաւոր երգի մը քանի մը տուներուն մէջ կրնա՞ր մտածուիլ մեծ ներդաշնակութեան մը, բնական լոյսի, իմանալի լոյսի, եւ մարդկային ներքին լոյսերուն ներդաշնակութեան մը ճշմարիտ բանաստեղծութիւնը։ Այո՛, դժուար կը մտածուի։ Բայց եկեղեցին Մեծ Պահքի սա՛ անցնող օրերուն, ու անցեալ չա՛տ մը Մեծ Պահքի օրերուն, մեզի այդ երգը կրկնեց ու երգեց։

ՎԵՐԾԱՆՈՂ

# Գ. ՈՒԽՏԻ ՃԱՄԲԱՆ

Երբ ձեր սիրուն աչուկներով գգուէք այս խորագիրը, պիտի հարցնէք ինքնին. ո՞րն է այդ ուխտի ճամբան, Խասգիւղի Ս. Ստեփաննոսի ճամբա՞ն է ան. Իւսկիւտարի Ս. Կարապետի ճամբա՞ն է ան. Թէ Արմաշի Չարխափան Ս. Աստուածածնի ճամբան։

Որն է այդ ուխտի ճամբան. մտածեցէք ու պիտի գտնէք,

Ճամբաներ կան ընտանեկան եւ բարոյական կեանքին մէջ. ճամբաներ նեղ, ճամբաներ լայն, ճամբաներ դիւր, ճամբաներ խորտ ու բորտ, ճամբաներ սողապաճեմ։ Այդ ճամբաներուն նկարը գծուած է բարոյականի առաջին վարպետներէն, Ցիսուսէն, Պղատոնէն ու Արիստոտէլէն։

Այդ ճամբաներուն համեմատ մարդոց դասակարգերն ալ կ՚որոշուին։

Կեանքի անել բաւիղին մէջ ամէնէն ապահով ճամբան դերբուկ ճամբան է։

Այս ճամբան վերելք մըն է մարդուն համար, վերելք մը բարոյականի բարձունքներուն վրայ։

Այդ վերելքը կատարեցի դարձեալ, ինչպէս արդէն սովոր եմ կատարել ամիսը մէկ երկու ան-
[illegible]ամ. ա՛յնքան հոգեկան պէտք մը դարձած է

խնծի այդ վերելքը. եւ ինչո՞ւ ուրիշներուն համար ալ նոյն բանը չըլլայ. . . ։

Ցաւի Տունը մատյ եւ ցաւի իրական պատկերները գիտեցի ականատեսիչ ։ Այվազովսքիի ծովանկարները ա՛յսքան հետաքրքրութեամբ պիտի չը դիտէի ։

« Խելագարներ չէին անոնք, այլ համբերող հոգիներ ։ Տանջանքին մէջ ատոյիկեան համակերպութիւնը խորունկ փիլիսոփայութիւն մըն է ։

Նայուածքնուն մէջ բողոք չկար, այլ աղօթք. աղօթքը լոյս կուտար վառած դէմքերու, ժպիտ գունատ այտերու, ցոլք՝ փոս կոպերու մէջ թաղուած մառախ աչքերու. երկար յառեցայ այդ նայուածքներուն, որքան պիտի չնայէի արեւուն ցոլքին, լուսինի շողին ։

Հո՛ս աւելի խորհուրդ գտայ, քան հմայք ։

Այն ատեն չատ երջանիկ կ'զգայի ինքզինքս հիւանդներու անարին հսկելուս, մարած աչքերու համբոյր տալուս եւ դալուկ այտերէ ժպիտ քաղելուս համար ։ Հիւանդին խցիկը ինծի լայն կուգայ ընդարձակ սրահէ մը աւելի. իրաւցնէ, հոն [illegible]աներ պատերէն կախուած ծաղկահիւս սրա[illegible], գետինը տարածուած նախշուն գորգեր, [illegible]ներ, քանդակներ ու դրաասնգներ, սակայն հոն կը կրեմ այն տեսակ հոգեկան հրճուանքներ՝ որոնց ճաշակը ուրիշ ո՛չ մէկ տեղ կրնամ առնել ։

Մօտեցէ՛ք, վշտի խորշակէն չմրկած փափո՛ւկ հոգիներ, մի՛ վախնաք, դո՛ւք ալ մօտեցէք սա՛ ծաղկատի հիւանդին, ձեր հոգիի եղբայրն է ան, տեսէք չար ցաւը ի՛նչպէս կը պրկէ անոր բազուկ-

ները, կը պալարէ աղիքները, քիչ մը վերջը հանդարտ վայրկեան մը պիտի ունենայ, եւ ինչ անճառ բերկրանքով պիտի համակուի, երբ իր հանդէպ գտնէ գթոտ եղբայրներ. արդեօք անոնց ժպտուն դիմագծութիւններէն սպեղանի պիտի չի՞ հոսի իր երակներուն մէջ, ամոքանք պիտի չընդունի՞։ Յաճախ զգայուն եւ անուշակ հիւանդապահ քոյր մը երկինքէն իջած հրեշտակի կը նմանի, իրեն յանձնուած հիւանդը կը դարմանէ՝ մխիթարիչ խօսքեր շրթունքին վրայ միշտ պատրաստ, ու այսպէս բարերար ազդեցութիւն մը կը գործէ։

Անցէ՛ք միւս մահճակալը առանց դժգոհանքի ծամածռութիւն մը փոխելու դէմքերնուդ վրայ, վասն զի հիւանդները հոգեբաններ են, որ մարդոց ներքին տրամադրութիւններն իսկ կը գուշակեն, եւ սուր հոտառութեամբ մը կը հասկնան յայտնուած զգացումներու անկեղծ կամ սուտ ըլլալը։ Տա՛ հալումաշ հայրիկը ո՛րքան կը տքայ. արդեօք բաղդէ խնկա՞ծ մըն է որ մեր այցին կը կ'սպասէ անհուշուշտ, եւ երբ ողբերգէ «Զաւակնե՛րս...» ինչո՞ւ սրտագին չպատասխանենք. «Մե՛նք ալ քու զաւակներդ ենք, անոնց պատիկը մեզի՛ տուր»։ Այդ յայտարարութիւնը պիտի հովահրէ իր այրող կուրծքը։

Ամէն հիւանդի վիճակ պիտի չներկայացնեմ, ատիկա դժուարին գործ է ինծի համար. միայն պիտի փափաքիմ որ սիրէք հիւանդները։

Անոնց տունը վիշտի տունն է. անոնց ճամբան խաչի ճամբան է։

Իսկ մենք, ազնի՛ւ մարդիկ, կը դրդանու-

չենք բառերը. վերջը տունին կ'ըսենք Ազգին (Ա-մէնուն) Տունը. Խաչի ճամբուն կ'ըսենք Ուխտի Ճամբան։

Այս ճամբուն վրայ կը տեսնենք տառապանքի զաւակներու տողանցումը, զորս մեր եղբայրներն ու քոյրերը կը կոչենք. կը ճանչնա՞նք ալ զանոնք, վստահ զի սիրելը ճանչնալ է. կը համակրինք, կը խօսինք անոնց հետ ու կը մխիթարենք. հապա ա-նո՞նք. — անոնք ալ բիր սեւեռումով կ'աղօթեն մեզի համար։

Ուխտի ճամբէն անցա՞ծ էք, քաղցրիկ հոգի-ներ, մենաւոր ճամբաներու բանաստեղծութիւնը չ'իշխեր հոն՝, այլ հեւքի, հառաչի համերգը կը լսուի, ու Գութի համերգը կը դառնայ։

Ուխտի ճամբան՝ մեր ամէնէ՛ն սուրբ իղձերուն ճամբան է։

ՏԻՐԱՅՐ Վ.



# Է. ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ



Կենսագրութիւնը պատմական սեռին կը վերաբերի գրականութեան մէջ: Ինքն ալ պատմութիւն մըն է, միայն թէ՝ մասնական անհատական պատմութիւն մը: Հետեւաբար կենսագրական գրութիւններն ալ պէտք է ունենան այն բոլոր յատկութիւնները՝ որոնք պատմական ոճին էական պայմանները կը կազմեն (1)։ Կենսագրականի մը հեղինակն ալ ճիշդ պատմագիրին պէս պէտք է ունենայ բարոյական եւ գրական կրկնակ յատկութիւններ: Պէտք է ըլլայ հաւատարիմ եւ կատարեալ եւ մանաւանդ չէզոք. իր հերոսին կեանքը նկարագրած ատեն, պէտք չէ երբեք մոռնայ թէ անկողմնակալութեան աչքով միայն դիտելու է բոլոր անցքերը, անոր կեանքին բոլոր պատահարները: Յետոյ, իբր գրական յատկութիւն, կենսագիրն ալ պատմագիրին պէս, պէտք է գիտնայ դէպքերը համախմբել կանոնաւոր յաջորդութեամբ մը, յիշատակելի դէպքերուն մէջ յար ընտրութիւն մը ընել, գործածել պարզ ոճ մը եւ ամէն բանէ առաջ ուսումնասիրել:

Երկու տեսակ է կենսագրութիւնը. առաջինը՝ երբ հեղինակ մը ուրիշ անձի մը կեանքը կը պատկերացնէ. եւ, երկրորդ՝ երբ մէկը իր գրիչով կը ներկայացնէ իր իսկ կեանքը: Այս երկրորդ պարագային, կենսագրութիւնը կը կոչուի ինքնակենսա-

(1) Տե՛ս Պատմական Տեսութիւն՝ իր կարգին.

գրութիւն՝ կամ, նաեւ, յիշատակագիր։ Ինքնակենսագրութիւնը գրագիտութեան շատ մը վարպետներէ կը նկատուի իբր գերագանցապէս ֆրանսական գըրական սեռ մը։ Ասոր պատճառն ա՛յն է թերեւս որ, ընդհանուր ազգերու գրականութիւններու պատմութեան մէջ մեծագոյն ու կարեւորագոյն ինքնակենսագիրները ֆրանսացիներ եղած են, թէեւ Ֆրանսա շատ մեծ կենսագիրներ ալ ունեցած է։ Յիշատակութեան արժանի ինքնակենսագրութիւններ թողած են Լա Ռօշֆուքօ, Տիկին-Լաֆայէթ, Սէն-Սիմոն, եւայլն։ Տաղանդաւոր կենսագիրներ են Պլուտարքոս, Տակիտոս՝ իր համբաւաւոր «Ագրիկոլայի կեանք»ով, Վոլդեռ եւն.։ Հայերուս մէջ ինքնակենսագրութիւնը գրեթէ բոլորովին անծանօթ մնացած ճիւղ մըն է, հակառակ իր այնքա՛ն գեղեցկութեան ու կարեւորութեան։ Կենսագիրներ բաւական ունեցած ենք. ասոնց մէջ իբր ամէնէն անուանին կը յիշատակուի Աբրահամ Այվազեան՝ որուն, սակայն, ուղղամիտ քննադատներ, կենսագիրի գրական յատկութիւններով շատ օժտըւած չըլլալը յայտարարած են։ Յաջողակ եւ հաւատարիմ կենսագիր մըն է նաեւ Սոփ. Վ. Թորգոմեան, որ տարիներէ ի վեր հայ բժիշկներու կենսագրութիւնը կը հրատարակէ։ Այս ճիւղը մշակել սկսած են նաեւ Արշակ Ալպօյաճեան եւ ուրիշներ, որոնք հետզհետէ կազմուելու վրայ են։ Յ. Պարոնեան իր *Ջոջեր*ով ցոյց տուած է թէ մեծ երգիծաբանը տաղանդաւոր երգիծական կենսագիր էր նաեւ։

# 1. ՄԱՏԹԷՈՍ ՄԱՄՈՒՐԵԱՆ

( ՅԻՇԱՏԱԿՆԵՐԷՍ )

*Տասներչորս տարի կայ երբ առաջին անգամ տեսայ Մամուրեանը, Իզմիրի վարժարանին մէջ։ Նախակրթարանի առաջին տարիս էր։ Ու յիշողութեանս մէջ անջնջելի կերպով դրոշմուած կը մնայ իր պատկառելի գեղեցկութեամբ գլուխը։ Առաջին տպաւորութիւնս՝ վախի, հիացումի, զմայլանքի ու գողտր ու վախկոտ սէրի խառնուրդ մը եղաւ։ Որովհետեւ այդ եղական արտայայտութիւնով մարդուն առջեւ, առաջին անգամ սիրտիս մէջ արթնցաւ միամիտ ու խօլ խանդաղատանք մը։ Ու ապահով եմ որ զիս աշխատութեան մղող միակ ու տիրական ոյժը, անոր հաճելի ըլլալու հրապոյրը եղաւ այն ատեն։ Իր ժպիտը, իր թափանցող աչքերուն ժպիտը, տարօրինապէս հպարտացընող բան մը ունէր, բոլոր նիւթական վարձատրութիւններէն ու բարենիշի գումարներէն աւելի հպարտացնող ու աւելի խրախուսող։ Տարօրինակ արտայայտութիւններու կը հանէր իր ձայնին շեշտը, մերթ հզօր ու ահազդեցիկ, մերթ անդիմադրելի կերպով գրաւիչ, մերթ ամբողջ փաղաքշանք ու մերթ ամբողջ սարսափ։ Աշակերտի մը անունը միայն արտասանելով կը պատժէր կամ երջանիկ կ'ընէր զանիկա՝ շեշտին համեմատ, որով*

այդ անունը կ'արտասանուէր։ Երբեք մարդ մը զիս անոր չափ հմայած չէ. մանկութեանս ամէնէն երջանիկ օրերը անոր կը պարտիմ, ինչպէս բոլոր հպարտութիւններս ու հպարտութեան բոլոր իրաւունքներս։ Ատոր համար զինքը սիրողները անչափօրէն սիրած են, թողուած անով, անոր նայուածքովը, ժպիտովը, ձայնովը, բոլոր այն անսեթեւեթ դիւթութիւններովը, որոնց գաղտնիքը ունին միայն ազնուական հոգիները։ Ու բարձրագոյն կարգէն սկսեալ, մինչեւ նախակրթարանի վերջին աշակերտը, ամէնքն ալ, մանուկը, ինչպէս պատանին ու երիտասարդը, ինքնայօժար ակնածանքով մը միշտ կը շրջապատէին զինքը։ Երբեք Տնօրէն մը այնչափ չէ յարգուած, ու այնչափ հպարտութեամբ չէ սիրուած։

Գալով իր դասերուն, գերագոյն մէթոտը ունէր ան՝ դասաւանդութեան. պարզ, վճիտ, լուսաւոր ու տաք ոճ մըն էր իրենը, խօսակցութեան մը պէս համով, յանկուցիչ ու տիրական։ Տնտեսագիտութեան ու լեզուի իր դասերը, պարզապէս խնճոյքներ էին, — ու ամէն անգամուն դասարանէն դուրս կ'ելլէի գինովցած լուսաւոր աղուորութիւնովը նոր հորիզոններուն, որոնք մտքիս առջեւ կը պարզուէին անսահմանլի քաղցրութիւններով։ Ամէն դասէ ետք ինքզինքս աւելի հարուստ, աւելի մեծցած, աւելի երջանիկ կ'զգայի։ Ու երբ անձեռնհաս Հոգաբարձութեան մը վաղանցուկ շրջանին, Մամուրեան հեռացաւ դպրոցէն, ու դիմացս տեսայ օր մը, իբրեւ Տնօրէն՝ ողորմելի ու չնորհալի ապիկար մը, զզուանքի ու ըմբոստացումի մէկ

վայրկեանին, գիրքերս առի ու մէյ մըն ալ չվերադարձայ այն՝ տեղը, որ քանի մը տարի փողփողուն իմաստութեան տաճարը եղաւ։

*
* *

Իբրեւ գրագէտ, Մամուրեան եզական դիրք մը կը գրաւէ 19րդ. դարու վերջին քառորդին հայ գրականութեան մէջ, ձգելով լեզուական անհուն կարեւորութիւնը իր գործունէութեան, — որովհետեւ աշխարհաբարի ամէնէն հոյակապ մըշակներէն մէկը եղած է, — ու ձգելով բոլոր այն թարգմանածոյ գործերը, զորս սերունդներ կարդացած են, իր ինքնագիր երկասիրութիւններուն մէջ Մամուրեան անվիճելի ու շատ իսկատիպ տաղանդով վարպետ մըն է։

Նոր դպրոցի զաւակ՝ չեմ կրնար հոս, — բոլոր երախտագէտ խանդաղատանքովս հանդերձ, որ ունիմ պատկառելի վարպետիս համար — արգիլել ինքզինքս պզտիկ փակագիծ մը բանալէ։ Մամուրեանի միակ — օ՜, շատ աննշան, ու հազիւ թէ — թերութիւնը եղած է չշահագրգռուիլը գրականութեան այն գեղեցկութիւններովը, որոնք éliteի մը միայն մատչելի՝ անմիջական օգտակարութիւն մը չունին ամբոխին համար։ Ինքը, լայն ու խորունկ համակրութիւններով սիրտ մը՝ անհատական ու ենթակայական՝ նուրբ, կնճռոտ երբեմն հիւանդագին, յաճախ պաշտելի գեղեցկութիւններու ու շնորհալի, ու մեղամաղձոտ անօգուտութիւններու առջեւ կանգ չէ կրցած առնել։ Ու ատիկա զգալի է նոյն իսկ իր ոճին մէջ, որ միշտ պարզ, չափաւոր, անսեթեւեթ ու տրամաբանա-

կան եղած է։ Մամուրեանի մէջ մի՛ փնտռէք ոճի ու ձեւի անօրինակ ու հրաշալի գունագեղութիւնները, ու զգայնութեան հիւանդ նրբութիւններուն խռովիչ ու թելադրական բանաստեղծութիւնը, որուն կը պատահինք «նոր»երուն քով։ Ու չատեր, գիտեմ, պիտի ժպտին թերութիւն բառին զոր վերը գործածեցի, եւ զոր իրենք խանդավառօրէն պիտի փոխէին արժանիքի։ Երբեք չը պիտի զարմանայի։ Այնչափ ամէն բան կախում ունի անհատական խառնուածքէ ու նախասիրութենէ։

* * *

Չեմ կրնար այս համառօտ գնահատական փորձս վերջացնել, առանց քանի մը բառ ըսելու Մամուրեանի ներքին կեանքին վրայ։ — Երեւակայեցէ՛ք կանաչներու մէջ կորսուած՝ պատշգամաւոր կոկիկ տուն մը, — գոհար մը — ներդաշնակութեան, շնորհի, սիրոյ ու մտածկոտ լռութեան անկիւն մը։ Ներս կը մտնէք, — թուղթեր, գիրքեր, հանդէսներ, օրագիրներ, մեծ մասը ֆրանսական ու անգլիական՝ ու գաւիթին տիրող, հսկայ թանգարանը, որ ինքն՝ ալ իր տիրոջը ալեւոր վեհութիւնը ունի։ Վեր կ'ելլէք իր գրասենեակը. իր պարզ ու սըրտաբաց ընդունելութեանը առջեւ անմիջապէս կը մոռնաք ձեր շուարումը։ Ու իր քաղցր մտերմութեանը մէջ ժամերը կը սահին խօսակցութիւններուն ամէնէն համեղովը, մինչեւ որ յաճախ Զիլինկիրեանին ձայնը՝ չսթափեցնէ ձեզ անուշ ու մըտերիմ թովչութենէն որուն անձնատուր եղած էիք։

Ա. ՇԱՔԼԵԱՆ

# Զ. ՊԱՏ. ՍԻՄՈՆ ԴԱՒԻԹԵԱՆ

Հոս Պատ. Սիմէոնի կեանքին մէկ ուրուագիծը պիտի ներկայացնենք՝ գրուած այնպիսիէ մը որ անոր ոտքը նստաւ, ինչպէս Տիմոթէոս նստաւ Պօղոսի ոտքը եւ ինչպէս Պողիկարպոս՝ Յովհաննէս աւետարանիչին ոտքը։

Եթէ մէկը ելլէ Մուշի դաշտէն Հաւատորիկ գիւղը եւ տեսնէ թէ ո՛րքան պարզ է գիւղացիներուն կեանքը, եւ ապա՝ կաղնիի մացառուտով ծածկուած լեռներէն անցնի Սինամէրկ գիւղը, — ուր Պատ. Սիմէոն ծնաւ, եթէ սխալ չենք յիշեր, եւ ուր, թէեւ մենք չենք երբեք գտնուած, կեանքը աւելի պարզ կը կարծենք եւ աւելի հեռու արտաքին աշխարհէն, որուն հետ քիչ կապակցութիւն ունի, գործերուն ազդեցութենէն, — պիտի զարմանայ որ հոն ծնած մէկը կրցաւ իր բարի ազդեցութիւնը այսքան ընդարձակօրէն զգալի ընել։

Սիմոն պատանին արթուն միտք եւ գիտութեան ծարաւ ունեցած ըլլալու է։ Ասոր բերմամբ իր երիտասարդ հասակին մէջ եռանդուն ընթերցող մը եղաւ, ի մասնաւորի կրօնական գրականութեան։ Կը բաւէր պահ մը նստիլ եւ խօսակցիլ անոր հետ՝ հասկնալու համար թէ ո՛րքան խորապէս հմուտ էր պատմութեանը մայր եկեղեցիին, որուն մէջ ծնած էր, եւ թէ ո՛րքան կը յարգէր անոր ազնիւ պաշտօնեաներուն յիշատակն ու գըր-

ուածները։ Բայց անոր ամէնէն նշանաւոր յատկանիշն էր սէր ճշմարտութեան եւ իղձ՝ իր կեանքը անոր համաձայնեցնելու։ Անոր մէջ հոգեւոր բնութիւնն էր տիրող, եւ թէեւ անոր գաղափարներէն ոմանց վրայ խիստ քննադատութիւն լսած ենք անցեալ տարիներու մէջ, երբեք չենք լսած որ ամբաստանուած՝ ըլլայ թէ ստորին, անիրաւ կամ անձնասիրական բան մը ըրաւ։ Անոր նկարագիրին հիմնաքարն էր Քրիստոսի հաւատարմութիւն եւ եկեղեցիի սէր։ Եւ անոր համար միակ եւ բարձրագոյն հեղինակութիւնն էր Աստուծոյ ներշնչեալ խօսքը, որ կը բովանդակուի Հին եւ Նոր Կտակարաններուն մէջ։

Իր մեծադիր պատկերը կախած եմ մեր տան մէջ՝ զինքը աչքի տակ պահելու համար միշտ։ Բըլբային ցցուն ճակատը՝ որուն վրայէն անցուդարձ ընող հոգերը նեղ ճամբայ մը չեն գծեր, անկեղծ ու մաքուր խորհուրդներու տաճար մը կը ներկայացնէ։ Երկու թաւուտ կամարներուն ներքեւ վառուող ածուխ աչուըներուն մէջ սիրտը ինքզինքը կը յայտնէ։

Անհնար է որ նայիմ այդ անծփանք, խաղաղիկ դէմքին ու ներշնչում մը չընդունիմ։ Արդեօք Քրիստոս այս մարդուն երեւո՞յթը ունէր։ Ամէն անգամ որ Յիսուս մարմինով երեւակայեմ, Պատ. Սիմոնի կերպարանքով կը ներկայանայ ան։ Անոր պարզութիւնը, անոր տիրապետող շարժումները, անոր անդիմադրելի նայուածքը, անոր ինքնախօսիկ արտայայտութիւնները, անոր ակնածելի շուքը, անոր բռնադատող, տիրական հմայքները՝ ո-

րոնցմով իմ երկիւղներուս, դեղեւկոտ վարանքներուս մէջ կը քաշէր, կը տանէր զիս իր ետեւէն ո՛ր կողմ որ ուզէր, ինք, վերջապէս Պատ. Սիմոն Դաւիթեանը միտքս կուգայ։ Ինքզինքը խորունկները ծածկող, աննշան տարօրինակ մարդ մը, որուն վրայ ժամանակին հնարած ձեւերն ու գոյները չկան, բայց իրեն կը քաշէ ուշադրութիւնը ամէնուն։ Երբ դիմացդ կ'ելլէ, կը հասկընաս՝ թէ գերազանց հոգի մը կայ ներսիդէն։ Զինքը տեսածիդ պէս Յիսուս միտքդ կուգայ։ Յիսուսի հոտը կ'առնես վրայէն։ Զինքը տեսնելով անպատճառ առաքելական դարը, նախնի քրիստոնեաներու օրերը կը յիշես՝ պարզ, վստահ, անկեղծ, անպաճոյճ եւ անսեթեւեթ, ամէն բանի զիջանող, ամէն բանի հաւատացող, ամէն բանի յուսացող, ամէն բանի համբերող։

Պատ. Սիմոնի կենսագրութիւնը ընելու ոչ մըտադրութիւն ունիմ, ոչ բաւական պաշար — այդ լեցուն, արդիւնաւոր կեանքին, որ ճշմարիտ մարդարէի մը ու ճշմարիտ առաքեալի մը կեանքն էր, «Աստուծոյ մարդուն» կեանքը։ Հատոր մը պէտք է անոր — այդ լուիկ, հեզ ու անմռունչ, գլուխը կախած՝ խուսափուկ, հալածական ստուերի մը պէս պտըտող հովիւին, որուն ներքին աշխարհը ոչ ոք տեսաւ, ուր հրեշտակ-մարդը կը պտըտէր, փառք ու մեծութիւն հագած՝ կատարած անմահ գործերը թուելու, արձանագրելու համար։ Գացէ՛ք, հարցուցէ՛ք, այն ամէն վայրերուն՝ ուր ինք պտըտեցաւ։ Հարցուցէք իր ժամանակի մարդոց, որոնց դպաւ, որոնց հետ աղօթեց, որոնց հետ խօ-

անցաւ, ու ամէնն ալ պատմութիւն մը ունին, յիշատակութիւն մը ունին, զոր սրբութեան մը պէս կը պահեն իրենց ներսիդին։

Պատ. Սիմոն աղմուկ յարուցանող, անուն հանող մարդ չէր։ Ոմանց համար սանկ պատուելի մըն էր։ Աւետաբերի մէջ ալ Ս. Դ. ստորագրութեամբ՝ պարզ, խեղճուկ, անզարդ ու անփայլ գրիչ մը, որ յաւակնոտութիւն մը ցոյց չէր տար. կրցածին չափ կը ծածկէր ինքզինք՝ նոյն իսկ հին, հեշտին, հասարակ ոճի մը տակ։ Այլ ո՛վ որ ճանչցած է Պատ. Սիմոնը — զինք, քանզի դժուար էր զինք ճանչնալ — ո՛վ որ, կ'ըսեմ, թափանցեր է անոր կեանքին, անոր ոգիին, ինծի հետ պիտի միաբանի ըսել թէ՝ իր բոլոր յատկութիւններով մեր պաշտօնէութեան «հայրն» էր ան։ Բարձրագոյն տեղը պէտք է տալ իրեն հոգեւորական կարգին մէջ։ Ան Էմըրսընի նշանաւոր խօսքը մարմնացուցած էր իր վրայ — «Այնքան բարձր կը խօսի ի՛նչ որ դո՛ւն ես, որ չեմ կրնար լսել ինչ որ դուն կ'ըսես։» Այո՛, ան շատ կամաց կը խօսէր, հազիւ կը լսուէր իր ձայնը, բայց իր կեանքը բարձր կը խօսէր այնքան, որ խուլերը կրնային լսել իրեն։ Տէրոջը ձայնն էր ան։ Իմ տեսածներուս մէջ ամէնէն մեծ հոգիներէն մէկն էր։

Պատ. Սիմոն՝ հեռաւոր, աննշան գիւղի մը մէջ բուսած, հովերով ու զովերով սնած, արեւով եփած թրծուած, ծառին ու թուփին հետ մեծցած, արտին տաքուկ հողերուն վրայ՝ գիւղի կոյս կեանքով ու միայն «եզան վաստակ»ով հասակ առած, կեանքի արեւածագին մէջ իսկ հաւատաւոր տղայ

մը՝ աշխարհէն դուրս ապրելու բնազդներէն վարուած՝ պզտիկ ճգնաւորի անմեղ փորձերէն անցնելէ ետք, Երուսաղէմ երթալ եւ կրօնաւոր մը ըլլալ միտքը կը դնէ, եւ վերջապէս «չար Սիմոնիկը» իր մայրը կը լացընէ, տարիներով իր կոխած անցած ճամբուն հողը կը պագնէ ու կ՚երթայ Ս. Քաղաքը։ Հոն իր ուսանողական ընթացքին մէջ մէկ քանի աւետարանական ճշմարտութեանց յայտնութեամբը իր հանգիստը կը վրդովի, եւ հուսկ ապա, տիրացու Սիմոնը վանքէն կ՚աներեւութանայ եւ քալելով Պոլիս կուգայ, չիտակ Պէպէքի ճամբան ձեռք կ՚առնէ։ Տր. Համլին — մեծ միսիոնարը — որ աչքին մէջէն մարդը կրնայ տեսնել եղեր, մեր Պարոն Սիմոնին վրայ իր ձեռքը կը դնէ։ Պարոն Սիմոն Պէպէքի «ճեմարանէն» ելածին պէս Նիկոմիդիա կ՚անցնի։ — Այս երանելի քաղաքը թէ՛ անոր երախայրին վայլեց թէ՛ վերջին պտուղը՝ հուսկ յետոյ իր գերեզմանոցին մէջ հիւրընկալելով անոր յետին մնացորդը։ — Հոն վարժապետական համառօտ՝ բայց անմոռանալի շրջան մը բոլորելէ վերջ՝ իր ետեւէն թողլով աշակերտներ, որոնք այսօր երեսունին խաչակնքելո՛վ կը յիշեն իր անունը, Նիկոմիդիացիներուն սիրելի վարժապետը ու իրենց փեսան Մարիով մը ջխթուած թռաւ գնաց իր ծլած բուսած երկիրը՝ յուսախաբ ընելով իր երկրացիները, որոնք զինք վարդապետ մը տեսնելու հպարտութիւնը ունենալ կը ցանկային. այլ ինք աւետարանիչ-վարդապետ մը, իրօք, հովիւ մը պէս կ՚անցնի Խնուսը, Վանը, Մուշը, գիւղերն ու գաւառները վարելէն ցանելէն, ամէն

կողմ Աստուծոյ խօսքով լեցնելէն վերջ՝ կուգայ իր գութանը կը մխէ Գիթլիգի հողին մէջ։ Հո՛ն՝ Տէրը իր աշխատութիւնը օրհնեց ու իրմով ծնաւ մեր ամէնէն ծաղկած եկեղեցականներէն մէկը, որուն «Հրեշտակը» եղաւ ու հովուական ճոկանը կրեց արժանապէս երկար տարիներ։ Ա՛լ աս ժամանակամիջոցը ո՞վ պիտի քրքրէ, ո՞վ պիտի պրպտէ։

Նախախնամութեան ձեռքը զինք վերցուց նետեց Նորէն Նիկոմիդիա, այս անգամ ծաղկած ճերմկած ու իր «Անթառամ»ը արդէն թառամած ու պառուած։ Նիկոմիդիացիները այս հեղ իրենց մէջ ունէին «Սիմէոն ծերունին», որ սակայն, իր թիթեռնիկի թեթեւընթացութիւնը, միտքի աշխոյժը, հոգիի կորովը լիովին կը պահէր։ Հոնկէ կանոնաւորապէս կը թղթակցէր իր հօտին հետ։ Ի՜նչ լայն սիրտ, կ'ըսէի մտքէս, այս մարդը յոգնիլ, ձանձրանալ չի գիտեր. կ'ամչնայի իմ երիտասարդութենէս, կը կարծէի թէ գիտէի աշխատիլ, բայց առաջին բանը՝ զոր ուսայ իրմէ՝ աշխատութիւնն էր։ Քանի՛ անգամ որ կ'երթայի, իր գիրքերուն ու թուղթերուն մէջ ընկղմած կը գտնէի զինք։ Ո՜րքան կանոնաւոր օրագրութիւն մը կը պահէր. դէզ մը գիրքեր եղած էին անոնք։ Ա՜խ, այս գանձերը ո՞ւր մնացին արդեօք։ Երանի՜ անոնց որ այդ հատորները, որոնց վրայ, ի՜նչ պահեմ, աչքս տնկած էի, ու քարոզներու դէզ դէզ խուրձերը կը պահեն իրենց մօտ։ Հսկեցէ՛ք այդ անգին գոհարներուն, այդ նուիրական նշխարներուն վրայ, Պատ. Սիմոնի բարեյիշատակ զաւակները, նշանախեց մը չկորսուի անոնցմէ։ — Չերկարենք, սակայն, չե-

ղումնիս։ — Հոս՝ Նիկոմիդիա՝ Պատ. Սիմոն իբր չրջիկ հովիւ կ'այցելէր գիւղերը, հոս հոն, ժամանակ ժամանակ թափթփող անձրեւի պէս մխիթարութեամբ ոռոգելով զանոնք։ Ճշմարիտ բարիք մը, օրհնութիւն մըն էր դաշտին, մանաւորի, քաղաքին — Նիկոմիդիոյ, ուր իր բնակութիւնը հաստատած էր։ Հոն տեսայ առաջին անգամ Պատ. Սիմոնը, որ զիս գողցաւ դրաւ սրտին մէջ։ Ինք էր որ գիւղի մը — Քարցիի — քարոզիչ-վարժապետը համոզեց տարաւ Նիկոմիդիա։ Ինչ, իմ սիրական Քարցիէս բաժնուի՜լ. բայց ողբացեալ Միսիոնար Մր. Բիրսը ունինք։ Վերջապէս տարին զիս՝ անփորձ երիտասարդ մը։ Պատ. Սիմոն հետս էր, սակայն, վախ չունէի։ Ա՜խ, անոր հետ ապրիլ. այնպիսի քաղցր վայելք պիտի ունենամ, կարծեմ, երբ Յիսուսի հետ ըլլամ հոն՝ վերը։

Բաժնուեցայ իրմէն, ու քիչ վերջը ինք ալ ինձմէ, ու ամէնէս բաժնուեցաւ։ Անկողին ինկաւ, Նիկոմիդիացի եղբայրներուն ու քոյրերուն համակրութիւնը, ու հարուստ սրտի, հարուստ հոգիի տէր քրոջ մը խնամքը վայելեց, եւ, ո՞վ պիտի չըսէ թէ՝ Տր. Ր. Ջէմպըրսի գաղտնի ձեռնտուութիւններն անոր անկողինը թեթեւցուցին։ Քանի մը ամիս իր ցաւերուն մէջ ճիկ չի հանած, «վա՜խ» մը չըսած, հեռի բոլոր իրեններէն՝ փակեց աչուըները; եւ ո՞ւր ինք գնաց՝ սիրտս հետը տարաւ։ Այն օրէն ի վեր երկինքը աւելի ցանկալի եղած է ինծի, կարծես թէ հրապոյր մը աւելցուց անոր վրայ։

Ահա ասոնք են քանի մը գիծերը կամ գլուխ-

նները միայն իր կեանքի մեծածաւալ պատմութեան։

Պատ. Սիմոն, իբր քարոզիչ, թերեւս ամէն նշանակութենէ զուրկ նկատուի։ Այլ կարծեմ թէ, շատ մը առաւելակշիռ հանգամանքներ ունէր ան, որոնցմէ մենք՝ այսօրուան քարոզիչներս՝ կամ գէթ շատերս զուրկ ենք։ Իրաւ է, Պատ. Սիմոն հռետորական տաղանդ մը չփայլեցուց, բեմին վըրայ աղմուկ չէր հաներ, բայց անհամ, տափակ, սառերու կտորներ թափթփող, քուն բերող տեսակէն չէր, — ան ամէն տեղ նոյնն էր, նոյն հեզ, կակուղ, մեղմ մարդը թէ՛ բեմին վրայ, թէ՛ բեմէն դուրս։ Անոր խօսքերն հեզասահ վտակի մը նման կուգային կը լսուէին ունկնդիրներու սրտին մէջ. արեւին ճառագայթներուն պէս՝ որ անշշուկ, անձայն՝ կեանքը կը շինեն, որո՛ւ վրայ որ կաթին, ճիգ չէր ըներ որ իրեն մտիկ ընէին, սակայն անոնք որ բաւական ապուշ չէին, կրնային մտիկ ընել եւ բան հասկնալ. կը կերակրուէին, կը կըշտանային ու կ'ազդուէին աւելի քան որչափ պոռացող գոռացող քարոզիչէ մը պիտի չինուէին։ Ա՛ս եղած է իմ անձնական փորձառութիւնս։ Պատ. Սիմոն ամէն բանէ աւելի ինքնատիպ, խոկատիպ քարոզիչ էր։ Եւրոպական լեզու չէր գիտեր, ուստի աղբիւր մը չունէր, գէթ թելադրուելու, լոյս մը ընդունելու իր աշխատութիւնը դիւրացնելու համար։ Ո՛չ, երբե՛ք, ամէն դուռ գոց էր իրեն դէմ։ Տեղէ մը չէր կրնար օգտուիլ, մինակ էր իր մտածութեան ու վերացումներուն մէջ։ Բայց ան՝ մէկ աղբիւր ունէր, Ս. Գիրքն էր, մէկ Ուսուցիչ-օգնական ունէր, Ս. Հոգին էր, մինակ Ս. Հոգին,

եւ յետոյ ինք էր իր աղբիւրը։ Ինք իր մէջ կը թաղուէր, կ՚ամփոփուէր, եւ իր սիրտի կրօնքէն, իր ներսի հանքերու երակներէն կը հանէր ազնիւ ու ճոխ գանձեր։ Անոր քերթողներուն մէջ պարապ նախադասութիւն չէիր տեսներ, ճոխ ու լեցուն էր իմաստներով, այնպէս որ ուսուցիչ մը սովոր էր ըսել «Եւը անգամ նշանակութիւն ունի անոր։» Եւ ո՛չ միայն իմաստալից, այլ անոր քերթողներուն մէջ յաճախ յայտնութիւններու պէս նոր խորհուրդներ ու զարմանալի տեսութիւններ կը պարզուէին։ Միշտ պատգամ մը ունէր ան, երբ բեմ կ՚ելլէր։ Քրիստոնէական կեանք, կեանք կ՚ըսէր, կեանք կը լսէր։ Քրիստոնէութիւնը «ապրիլ» է, ո՛չ սոսկ պաշտամունք, սոսկ համոզում կամ հայեացք — ահա իր քերթողութեանց ամփոփումը։

Հովիւ էր, սակայն, Պատ. Սիմոն մանաւանդ քան քերթող։ Առանձին շինուած է մարդիկը որքան հրապարակաւ։ Գիտէր յանդիմանել, խրատել։ Երբ ծունկ ծունկի գար մէկուն հետ, կը խօսէր անկեղծութեամբ, խստութեամբ, մեղմով, կը խօսէր մինչեւ կուլար ու կը լացնէր զայն եւ յետոյ թող կուտար։ Իր հօտին ոչխարները գիտե՛ն միայն թէ ինչպէ՛ս քշուած են, ինչպէ՛ս հովուուած են։

Ըսինք թէ օտար լեզու չէր գիտեր. բայց իր լեզուն գիտէր, ու իրեն պէս հայերէն գիտցող հազիւ ունեցեր ենք, նոյն իսկ մեր շատ մը գովուած պաշտօնէութեան մէջ։ Վենետիկէն, Վիեննայէն լոյս տեսած ստուար հատորները մէկիկ մէկիկ թղթատած, սերտած էր։ Կը սիրէր գրաբարը

վար մեղրի պէս կը ճաշակէր։ Նարեկացին իր սիրական գիրքն էր, գրեթէ գոց ըրած էր, ա՛յնքան շատ կարդացեր էր զայն։ Միայն լեզուին հմուտ չէր. հայերէնագէտ էր ան ու հայագէտ։ Տօնմային եկեղեցին ու բոլոր հնութիւնները ուսումնասիրեր է։ Հին արժէքաւոր մատեաններու հաւաքածոյ մը ունէր, զոր՝ իրեն հետ տեղէ տեղ կը պտտցընէր, ու հիմա չեմ գիտեր ո՛ւր տարաւ, ո՛ւր ձգեց իրեն հետ՝ այդ աչքի լոյսերը իրեն։

Պատ. Սիմոն իր ձիրքերէն վեր էր։ Անոր հոգին էր մեծը՝ մանաւանդ։ Իր կեանքին հետ կըցուած մէկ երկու դէպքեր՝ նկարուած սրտաշարժ տեսարաններու պէս միտքիս մէջ կը մնան։ Մէկն է անոր արցունքը, որ Հերմոնի վրայ իջնող շաղին պէս շատ հեղ այլեհեր մօրուքէն վար կը հոսէին, վասն զի «մարդիկ Տէրոջը օրէնքը չեն պահեր։» Անգամ մը, մասնաւորաբար, իր լալը տեսայ հրապարակաւ զինք նախատող մարդու մը հոգիին վրայ։ Ո՜հ, չեմ մոռնար երբ լալագին կ'ըսէր ինձ, «Ե՛կ, Պատ. Առաքել, աղօթենք այդ եղբօր հոգիին համար, մե՛ղք է խեղճը», ու յետոյ զիս քաշեց տարաւ հետը նոյն անձին. հոն տեսնել պէտք էր անոր թախանձագին պաղատանքը, անոր յորդումը աղի արտասուքին։

Ուրիշ անգամ մը, երկու Պատ. միսիոնարներ Նիկոմիդիա եկած էին Գաւառական Ժողովի մը առթիւ, ու պաշտօն ունէին, նաեւ, իմացնել իրեն՝ Պատ. Սիմոնի՝ թէ Պորտը ստիպուած էր դադրեցնել օգնութիւնը աւետարանչական գործին համար, զոր ինք կը կատարէր։ Հարուած մըն էր

ատիկա՝ Աստուծոյ ծառային համար։ Այն նոյն պարագային, ամպին տակէն դուրս ելող արծաթ լուսնին պէս երեւցաւ անոր բարձր հոգին։ Ի՞նչ կուզէք որ պատասխանած ըլլայ — «բայց,» ըսած է անոնց, «այս որոշումը այնպիսի եղանակով մը գործադրեցէք, կը խնդրեմ, որ չըլլայ թէ եղբայրութիւնը իմանալով գայթակղի ձեր վրայ եւ Աւետարանին վրայ։» Դուք տեսէք խորունկութիւնը այս նկատումին։ Այս չէ ամէնը, սակայն. ես սաստիկ վշտացած՝ երեսս պահած էի. ալ չէի ուզեր զինք տեսնել, որուն երեսը չտեսնել արեւուն լոյսը չտեսնել էր ինձ համար։ Կռահած էր. տուտու մը գաւազանը գետինը ծեծելով՝ մեզի եկաւ, վար կանչեց զիս, «Թալէ՛ չուկան երթանք քեզի հետ» ըսաւ։ Դուրս ելանք, լռիկ կը քալէինք, ես գետինը կը նայէի միշտ։ Յանկարծ կանգ առաւ, երկու ձեռքերը դրաւ գաւազանին վրայ, ու աչքերը տնկեց վրաս — Օ՜հ, միշտ աչքիս առջեւ է այդ տեսարանը — «Պատ. Առաքել,» ըսաւ՝ իր սովորական կոչականովը, «չե՞ս հաւատար որ Աստուած իր բարի կամքը կը յայտնէ իր ծառաներուն միջոցով, եւ Անիկա այս եղբայրները ղրկեց ըսելու համար որ ա՛լ հոս աշխատելու չեմ։» Ա՛լ չեմ գիտեր ես ի՞նչ եղայ հոն։

Ջանց կ'ընեմ ներկայացնել զանիկա Պոլսոյ խաներուն մէջ, ուր կ'աներեւութանար ծակերու ծուկերու մէջ կորսուած մը, ղարիպ եղբայր մը փնտռելու, քանի՛ անգամ որ հոս այցելէր։ Տեսած եմ զինք շրջապատուած նոյն դասակարգի խեղճուկ ու գեղջուկ արարածներէ, որոնց ամէնուն

հետ կը խօսի անուններին տալով, տուներնին տե-ղերնին հարցնելով. կը խրատէ, կը յորդորէ զա-նոնք, եւ անոնք կը փարին իրեն՝ կը լիզեն ձեռ-քը «Սիմոն պատուելի»ին։

Ո՛վ պատուելի, հա՛յր իմ հոգեւոր, աշխարհ քեզի յարմար պսակ չունէր ու չդրաւ գլխուդ։ Քեզ Աստուած պատուեց, վասն զի դուն մարդոցմէ չառիր փառք։ — «Արդարը կը կորսուի եւ ու-շադրութիւն ընող մը չկայ։»

Ա. Կ. ՊԵՏԻԿԵԱՆ

---

## Յ. ԼՃԵՑԻՆ

Վոսփորի մէկ ծայրէն մինչեւ Քեաղըտհանէ եւ Մաքրի գիւղէն մինչեւ Զամլըճա՝ ո՛ւր որ կայ բեմ մը, Թատրոնի պէս բան մը, հո՛ն անհրաժեշտա-բար տեսնուած է իր պարթեւ հասակով, խարտեաշ եւ Թիկնեղ, ոսկրուտ, ջղուտ, կովկասեան կեր-պարանքով ու դիմագիծերով, աղեբէկ մօրուքով, մանրիկ, պլպլուն ու Թափանցող աչքերով, գրե-թէ միշտ մոխրագոյն վերարկուով, ծերամոյն՝ այլ մեր էն աւիւնալից երիտասարդներուն անգամ նախանձը շարժելու չափ կայտառ, միշտ կայտառ՝ եւ, ինչպէս իր սկզբունքներուն, նոյնպէս ալ ծե-րանալու մասին յամառ՝ գրեթէ պատմական անձը որ կը յիշեցնէ առակին Հինաւուրց Կաղնին։ Անո՛ր պէս անյողդողդ եւ անճկուն՝ ինքն ալ՝ իր շուրջը տեղի ունեցող Թատերական յարափոփոխ դէպքե-

րուն, աւերումներուն եւ քայքայումներուն մէջ-տեղ կայ ու կը մնայ կանգուն եւ միշտ համբերատար ոգիով մը դէմ դնելով սաստկաշունչ հողմերուն։ Ութսուն ձմեռներու բեռը չէ կրցած կքել, ընկճել իր գաւառացիի կազմը։ Ճակատամարտներու մասնակցած, վէրքերով ծածկուած, կրակէ խանձած, վառօդէն մրոտած, սպիներով նշանուած՝ բայց կենդանի մնացած քաջարի զինուորի մը պէս որ միշտ կապուած է իր դրօշին, ան ալ անբաժան մնացած է Թատրոնէն եւ՝ հաւատարիմ սիրահար՝ անդադար ընծայած է իր գորովին գրաւականները՝ հոմանիին՝ զոր կը պաշտէ անկեղծ, կաթոգին սիրտով, տեսակ մը աղապատանքով։

* * *

Քսան տարիէն աւելի է ճանչցած եմ զինքը, բայց ան ատենէն շատ առաջ սկսած է մասնակցիլ թատերական գործերու։ Յաճախ կը տեսնէք զինքը, թատրոնին ներքին դրան սեմին վրայ, բռունցքին մէջ զօնղուլմարֆի տրցակ մը։ Իր այս վիճակը չէ ուզած փոխել նոյն իսկ շատ լաւ եւ շահաւոր դիրքերու եւ պաշտօններու որոնց կոչուած է։ Նաումի թատրոնէն կ՚սկսի իր թատերական գործունէութիւնը, երբեմն իսկ երեւալով բեմին վրայ, իր պատկառելի կերպարանքին վայելուչ Ռօպըր բէռի դերերով, եւ այս տարիքն առնելուն հետ, պաշտօններ փոխելով, թատերական-վարչական գործեր անստգիւտ հաւատարմութեամբ ու խղճմտութեամբ կատարելով միշտ։ Ի՛նքն է կենդանի պատմութիւն հայ թատրոնին,

տրուն ամէն շրջաններուն մէջ գործօն դեր մը ունեցած է։ Երբ հարկ ըլլայ Թատրոնի պատմութիւնը գրի առնել, կարծեմ ոչ ոք պիտի կրնայ իրմէ աւելի ստուգապատում մանրամասնութիւններով եւ ժամանակագրական ճշդութեամբ տալ կարեւոր տեղեկութիւններ։ Նո՛յն իսկ դերասաններու անհատական կեանքը, վարքն ու բարքը կրնայ ձեզ նկարագրել ճշգրիտ երանգներով ու թուականներով։

*
* *

Ո՛վ որ տեւական թէ ժամանակաւոր կերպով երեւցած է բեմի վրայ, շատ բան կը պարտի իրեն։ Ամէն ինչ կարելի եղած է անոր վստահիլ. իր եւ իր դերասաններուն պատիւին նախանձախնդիր եղած է միշտ. իր կարծիքը, խորհուրդը, խրատը, խրախոյսը, նիւթական թէ բարոյական աջակցութիւնը անվրէպ ընծայած է ամէն դերասանի կամ ուհիի։ Վարդովեան, Մնակեան եւ ուրիշներ՝ իր խորհուրդներէն ներշնչուած ու օգտուած են միշտ եւ ամէնուն ալ ճշմարիտ հայր մը, բարեկամ մը, պաշտպան մը եղած է ան։ Անյաջողութիւններ, դերասանի աստանդական կեանքը, զրկումը եւայլն՝ չեն կրցած վհատեցնել զինք. ո՛ւր որ գտած է քանի մը դերասան, պարագլուխ կանգնած է անոնց, ի մի հաւաքած, սիրաշահած, համոզած եւ խումբ ձեւացուցած է։ Տեսակ մը հաշտարար դատաւորի պաշտօն վարած է թատերապետներու եւ դերասաններու մէջ, ամէն գժտութիւն եւ անհամաձայնութիւն վերջ գտած են իր վճիռով. իր ուղղամիտ դատողութեամբ եւ ան-

չահախնդիր նկարագիրով վստահութիւն եւ տեսակ մը պատկառանք ներշնչած է Թատրոնէն ներս ու Թատրոնէն դուրս, նոյն իսկ պաշտօնական շրջանակներու մէջ։

Սուր միտքը, զօրեղ կամքն ու բարոյական նկարագիրն անաղարտ մնացած են այնքան ապերախտ ասպարէզի մը մէջ ուր աւեր ու կործանում տեսած է՝ քան կանգնում, տառապանք ու անշահութիւն՝ քան վայելք։

Նախնի փիլիսոփայի մը խստամբերութեան հասնող ժուժկալ սովորութիւններով, ընտանեզուրկ ապրած է քառասուն տարիներ. իր տունն եղած է Թատրոնը, իր ընտանիքը՝ դերասաններու Թափառիկ խումբը։ Ամէն չափ ու հասակէ, սեռէ, դասակարգէ մարդոց հետ շփուած ու տեսնուած՝ բառին ընդարձակագոյն իմաստով հանրային՝ միջազգային կեանք մը վարած ըլլալով հանդերձ, միշտ մնացած է անծանօթ եւ անշուք։ Մինչ ամենայետին դերասանին անունը ծանօթ է հրապարակի վրայ, Թատրոնի այս հինաւուրց աշխատաւորը կը մնայ մթութեան մէջ։

*
* *

Իրեն չափ անծանօթ, հեռաւոր գիւղի մը՝ Ակնայ Լիճք գիւղի զաւակն է այդ մարդը։ Ընտանեկան դժբաղդութիւնը մղած է զինքը Պոլիս, մէկ մըն ալ չդառնալ չնայելու համար այն կողմը ուսկից եկած է։ Հայրն էր քահանայ մը (*), համբաւեալ հմտութեամբ եւ պէս պէս ձիրքերով, եւ

(*) Տէր Պօղոս Քահ. Շարպետեան։

արժանացած երջանկայիշատակ Ներսէս Ե. Կաթուղիկոսի բարեկամութեան ։

Իր հօր նման, ինքն ալ ունի հմտութիւն հայ լեզուի եւ ընդհանուր ու տոհմային պատմութեան ։ Ուսումնասիրած է կովկասեան կեանքը, բարքերը, եւայլն ։ Բերնուց գիտէ մանրամասն պարագաները ժամանակագրական, աշխարհագրական, ցեղագրական եւ այլ ծանօթութիւններով — բան մը, որով հիմակուաններս պարծելու վիճակին մէջ չենք ։

Ունի յատկութիւններ, թափանցող, ուսումնասիրող եւ քննադատող միտք մը որ զինք հազուագիւտ կ'ընծայէ իր հասակակիցներուն մէջ ։ Խօսակցութիւնը միշտ համեմուած է պատմական դէպքերու եւ մանրավէպերու յիշատակութեամբ եւ տոհմային կեանքին՝ հեռուէն, բայց տաք՝ վա՛ռ սրտով ու հետաքրքրութեամբ մասնակցած՝ ունեցած է, նոյն իսկ Ռուսինեանի հետ, լեզուի եւ ուղղախօսութեան խնդիրներու մէջ աշխատակցութիւն ։ Գրական մարդ մը չըլլալով հանդերձ, իր գրիչէն ելած կտորները զուրկ չեն գրական արժանիքէ ։

Նոր գաղափարներու իր միտքն անընդունակ չէ. ժամանակին հետ կ'ընթանայ, թէեւ հեռուէն. բայց մասնաւորապէս լեզուի մասին յամառ է եւ անհաշտ. մաքուր ու գեղեցիկ աշխարհաբար մը գրելով հանդերձ, չի հաւատար թէ աշխարհաբարն ապագայ եւ ինքնուրոյն գոյութիւն կարենայ ունենալ ։ Իր արձակ թէ յանգաւոր գրուածները որոնք մեծկակ պարութայ մը կը կազմեն՝ միշտ իր ծո-

ցէն անքաժան՝ գրաբարով շաղուած ու խմորուած են։ Հատընտիր նիւթերու, ձօներու, ընծայականներու, ներբողականներու հետ խառն կը գտնէք Ոսիցի մը ձօնեալ ոտանաւոր մը, իր սիրական Նարկիշէին վրայ հոգեբանական կտոր մը, ինչպէս եւ 25 տարի առաջուան Պոլսոյ բժիշկներուն վրայ քննադատական մը, եւայլն՝ մէկ քանին ժամանակաւ Թատրոն լրագիրին մէջ հրատարակուած։ Ունի Մխիթար եւ ուրիշ ողբերգութիւններ որոնցմէ ոմանք Իզմիր եւ Տփղիս ներկայացուած։ — 24 ժամուան մէջ գրած է (1862 թուականին) գիրք մը «Դուռ կորստեան եւ դուռ կենաց բացեալ» անուն որ 24 ժամուան մէջ սպառած է։

«Տիար» մակդիրը որով կը յորջորջեն զինք, իր նուիրագործեալ անունն է եւ միակ փառքի տիտղոսը։

Բուն անունն է Դալուստ Լճեցի Տէր Պօղոսեան Շարպետանց. տուն տեղ չունի. իր պէս անծանօթ եւ անորոշ է նաեւ բնակարանը, եթէ այսպէս կարելի է անուանել Պոլսոյ մէկ անկիւնը խղիկ մը ուր կը թառի գիշերէ գիշեր, հանգոյն մենակեաց ու տարագիր բուի մը։

1893 ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ

ԾԱՆ. — Տիար Լճեցին իր հայրենի գիւղին մէջ մեռաւ այս տարուան սկիզբները։



# 4. ՄԱՔՍ ՄԻՒԼԼԷՐ



*Շանթի մը պէս, որ անկարծական ու ջլատող բան մը ունի իր մէջ, Եւրոպական թերթերը առաջին առիթով իսկ գուժեցին մահը անոր՝ որ մեր օրերուն հանճարեղ եւ արտադրող գրագէտներէն մէկը եղաւ՝ որուն ձայնը դիւթած էր բովանդակ Եւրոպան ու վերջապէս որուն մահովը Օքսֆորտ իր է՛ն կարեւոր գոհարներէն մէկը կը կորսնցընէ ու բովանդակ գրագիտական աշխարհը կ'աղքատանայ, կարծես, անհետացումովը մեծ իմացականութեան մը, որուն մէջ կը ցոլանային շատ մը ճիւղերը գիտութեան։*

*Անգղիայի ու Ֆրանսայի գրական հանդէսները բազմաթիւ էջերու մէջ գովասանքն ու կենսագրականը ըրին Մաքս Միւլլէրի որ շատ մը նկատումներով սիրելի դարձած էր իրենց, ու միանգամայն Գերմանիային ալ որ անոր հայրենի երկիրը ըլլալու միակ սփոփանքը ունի իր մէջ։*

*Թոքերու հիւանդութիւնը վերջին օրերուն շատ ընկճած էր զինքը, ու կիսատ թողելու հարկադրուեցաւ այն ինքնակենսագրականը զոր Մաքս Միւլլէր ուզած էր ընել։ Ու մահը վրայ հասաւ ճիշտ այնատեն երբ լեզուաբանական կամ բանասիրական հետազօտութիւններու մէջ շատ նոր երեւոյթներու ելքը կը սպասուէին իրմէ. քանի որ ինք եղած էր մեծ հայրը բաղդատական լեզուաբանութեան։*

Մաքս Միւլլեր ծնաւ Dessauի մէջ 7 Դեկտ. 1823ին։ Գերման մեծ բանաստեղծ Willem Mülleւի զաւակը։ Նախկին տարիներու մէջ ունեցած է անկուշտ սէր մը երաժշտութեան հանդէպ։ Սիրած վարպետներն եղած են Պէթովէն, Վակնէր ու Մոցարթ։ Տակաւին Գիմնազիոնին մէջ՝ յիշողութեան առաջին կարողութիւն կը ցուցնէր։ Անցաւ Լայբցիկ ու Պեռլին՝ համալսարանին մէջ ուսանելու համար։ Անկէ ի վեր սակայն Մաքս Միւլլեր Արեւելեան ազգերու ուսումնասիրութեան տուաւ ինքզինքը որուն շատ յաջողուած արդիւնքները երեւան եկան։

Պօփի աշակերտներէն մէկն եղաւ ինքն ալ՝ որուն քով ուսաւ Սանսկրիտ, Պարսկերէն ու կարգ մը արեւելեան լեզուներ։ Հնդիկ փիլիսոփայութեան վրայ իր ըրած ուսումնասիրութիւնները պարզապէս յուսահատեցնող են։ Տակաւին ուսանող մը՝ համալսարանին մէջ արդէն իսկ իր բանասիրական ուսումնասիրութիւններովը — որոնք այն ատեն հատակտոր բաներ մ'էին — բաւական հռչակ հանեց։

Պեռլինէն անցաւ Բարիզ ու անկից Լոնտոն ուր սակայն պիտի կրնար կատարելագործել ինչ որ չէր կրցած Պեռլինի մէջ։ Հոն, Լոնտոնի մէջ, Մաքս Միւլլեր հանդիպեցաւ իր հայրենակցին՝ Պրնսընի որուն օժանդակութիւնովը իրեն կը յանձնուէր Ռիկ-Վէտայի Թարգմանութեան առաջին գործը, որ նուիրական գիրքն է Բրահմինականութեան եւ հիմը Հնդիկ գրականութեան եւ զոր 1849—1874 հազիւ աւարտեց վեց հատորներով։

1849ին ատեններն ընդունուեցաւ Օքսֆորտի մէջ իբր ուսուցիչ արդի լեզուներու եւ գրականութեան, իսկ 1868ին, փոխուեցաւ իր դիրքը համալսարանին մէջ ուր ճանչցուեցաւ իբր Բրոֆէսէօր բաղդատական լեզուաբանութեան որուն մէջ անզուգական չարադրողը եղաւ։

Ռիկ-Վէտայի թարգմանութիւններն ընելու ատեն, Մաքս Միւլլէր պատեհութիւն ունեցած էր հին Սանսկրիտ լեզուին պատմութիւնը գրելու։ Ու ա՛լ մինչեւ իր մահը Մաքս Միւլլէր անխոնջ աշխատողը եղած է լեզուաբանական այս խրթին դաշտին վրայ. ու շարունակ իրարու ետեւէ երեւան եկած են իր «Կրօնքի գիտութիւնը», «Խորհուրդի գիտութիւնը», «Հնդիկ փիլիսոփայութեան վեց դրութիւնները», «Նուիրական գիրքերը Արեւելքի ազգերուն», ու տասնեակ մը ուրիշ գիրքեր որոնց ամէն մէկին մէջ Մաքս Միւլլէր արդար բաղդատողն ու քննադատողը եղած է. — Իր ժամանակին ո՛չ մէկ գրողը կրցած է հաւասարիլ անոր։ Ո՛ր եւ է բանի ձեռք չզարկաւ անիկա, առանց լուսաւորելու ու զարդարելու։ Անգնահատելի ծառայութիւններ մատուց «Արեւելքի Նուիրական գիրքերը» անուն երկերովը։

Հնդիկ փիլիսոփայութիւնը իրմով ճանչցաւ աշխարհ ու ամէնէն աւելի ինքն էր որ բաղդատութեան նման եզրեր գտաւ Պուտտայի ու Քրիստոսի միջեւ։ Իր վճիռներուն մէջ շատ ցուրտ ու անողոք եղաւ։ Ու հակառակ իր աշխատութիւններուն ու ձեռք բերուած համբաւին, շատ քիչ պարագաներու մէջ հակառակորդներու հանդիպած է.

ընկերական կեանքի մէջ բարեկամն էր անիկա ամէնուն։ Ու, հակառակ իր գերմանական ծագումին, քանի որ իր բովանդակ գործունէութիւնը Անգլիայի մէջ եղած է, ու Անգլիացիներուն մօտ, այսօր այդ մահը աւելի ծանր կ'ազդէ բոլոր Անգլիացիներուն սիրտին որոնք քիչ շատ հետեւած կրնան ըլլալ բանասէր-լեզուագէտին շարժումներուն։

Ու կը մտածեմ որ, երբ անիկա ձեռնարկը ունեցած է Արեւելքի բովանդակ կրօնքն ու փիլիսոփայութիւնը Արեւմուտքի ներկայացնելու, երբ յաջողած է այդ անհունապէս դժուարին եզրերու պարզ բաղդատութիւններն ընել, պիտի կրնա՞մ կամ կրցի՞ արդեօք գոնէ թեթեւակի պատկերել այն բովանդակ վիշտը զոր իր մահովը ունեցան այսօր գիտութեան ու փիլիսոփայութեան բոլոր յայտնի հետեւողներն ու amateurները։

Իմս փորձ մըն է պարզապէս՝ այն ընթերցողներուն որոնք առիթը ունեցած չեն Եւրոպական անցուդարձերէն տեղեկանալու։ Մաքս Միւլլէրի վրայ ներկուռ ուսումնասիրութիւն մը ընելու համար հարկաւորապէս կարդալ պէտք էր անոր բոլոր գործերը ու միանգամայն լեզուագէտ մը, աւելի ճիշդը՝ բանասէր մը ըլլալ պէտք էր։

Խ. Ք.

# 5. ՕՄԱԼԻ ԴՈՒՔՍԸ



Օմալի դուքսին վրայ պէտք եղած կենսագրական տեղեկութիւնները տուեցան արդէն։ Ֆրանսական, յետոյ իտալական, անգլիական, Պելճիքայի, Բորթուկալի եւ ուրիշ երկիրներու թերթերը շատ զբաղեցան Լուի Ֆիլիբի այս զաւակով։ Ամէնքը համաձայն են հաստատելու թէ Լուի Ֆիլիբի այս զաւակը եզական դէմք մըն է այն Ֆրանսացի դասակարգին մէջ որուն կը պատկանի։ Հանրի տ'Օրլէանը, Օմալի դուքսը, ամէն բանէ առաջ իր հօրը արժանի զաւակն է։ Լուի Ֆիլիբ այն դէմքերէն է, որ՝ հակառակ ժողովուրդին իր ընտանիքին դէմ տածած խուլ հակակրութեան՝ կը մնայ սիրելի անուն մը ֆրանսական թագաւորութեան վերջընթաց պատմութեան մէջ, բան մը ունի իր անձին ու դիմագծութեան մէջ որ համակրանք կ'ազդէ, որ իրեն առանձին տեղ մը կուտայ Պուրպոններու մէջ, եւ որ թերեւս իր սրտի զգացումներուն ճառագայթումն է զոր ժողովուրդը կրցած է նշմարել եւ հասկնալ։

Լուի Ֆիլիբ խիստ դաստիարակութիւն մը տըւաւ իր զաւակներուն. բնաւ ուրիշներու պէս չը մտածեց անոնց «տարիքին ու հասակին խնայել։» Պզտիկ Հանրին, Օմալի դուքսը, Հանրի Դ.ի Լիսէին մէջ ա'յնպէս էր իր դպրոցակիցներու հետ, ինչպէս պարզ քաղքենիի մը զաւակը. այդպէս

մնաց բանակին մէջ ալ իր պաշտօնակից զօրավարներուն հետ։ 17 տարեկան հասակին մէջ, մտաւ զինուորական ասպարէզը որ իր իտէալն էր. Հոն ցուցուց կորով ու զօրապետի տաղանդ։ Իր աքսորներուն մէջ, իր մշտատեւ ցաւը սա եղաւ որ չէր կրնար բանակին մէջ ծառայել, ու անգամ մը բողոքեց կառավարութեան՝ ըսելով թէ «Ինքը ամէն բանէ առաջ Ֆրանսացի զինուոր մըն է, կ՚ուզէ զինուոր մնալ եւ բանակին մէջ իր դերը ունենալ հայրենիքի պաշտպանութեան համար։»

Մինչեւ Ակադեմիի անդամ ընտրուիլը, եթէ հետեւինք Օմալի դուքսին ամբողջ կեանքին, կը տեսնենք թէ ի՛նչ ազնիւ կիրքեր ու առաջդիմական գաղափարներ կը բղխին իրմէ։ Իր հօր դէմ, իր ընտանիքին դէմ, իր անձին դէմ եղած այնքան զրկանքներու փոխարէն, վրէժխնդրութեան գաղափարի նշոյլն անգամ չ՚երեւար իր հոգիին խորը։

Ամէն բանէ առաջ, ամէն բանէ վեր, իրեն համար Ֆրանսան կար։ Աշխատիլ անոր վերակենդանութեան, անոր զօրաւորութեան, անոր բարձրացման. իբրեւ Ֆրանսացի անհատ, անպատճառ իր բաժինը եւ, իբրեւ Ֆրանսացի ամենաբարձր ազնուականութեան անդամ, իր մեծագոյն բաժինն ունենալ երկրին առաջդիմութեան մէջ, ահա՛ առանցքը որուն շուրջը կը դառնար Օմալի դուքսին բոլոր մտածումները, զգացումներն ու կարողութիւնները։

Կը զարմանայ մարդ պահ մը՝ երբ կը տեսնէ թէ գրեթէ զինուոր ծնած, զինուոր մեծցած, իշխանական բարձր խորհուրդներու տէր այս անձը, ա-

ռանց սուրը մէջքէն քա՛կելու, առանց իր ամենաբարձր գերդաստանի զինանշաններուն վրայ խորհրդածելու եւ ամբողջ կեանքը ասպետական երեւակայութեան մը զոհելու, գրիչը ձեռք կ'առնէ ու սիրով, հոգիով լեցուն երկասիրութիւններ կ'արտադրէ, Գոնտէի իշխաններու պատմութիւնը գրելով։

Թագաւորի զաւակ մը՝ որ իրեն մեծ փառք կը համարի Ակադեմիին անդամ ըլլալ եւ նստիլ հո՛ն, այն աթոռներուն վրայ, ուր յաճախ աննշան ծագումով մեծ մարդիկ կը նստին, որ իրեն մեծ պարծանք կը սեպէ իմաստասէրներու եւ գիտուններու գնահատումը։

Ու երբեք ազնուական մը Օմալի դուքսին պէս գործնականօրէն չէ ապացուցած թէ ի՛նչ ուժով կը սիրէ գրականութիւնը։ Իր Շանթիյիի դղեակը զոր Ակադեմիին նուիրեց, հրաշալիքներ կը պարունակէ. մինակ ասիկա բաւական էր ապացուցանելու իր ուժգին հակումը դէպ ի գրականութիւնն ու գիտութիւնը։

Այո՛, Օմալի դուքսը իր ժամանակին մարդը եղաւ, ըմբռնեց թէ շողշողուն սուրին հետ եւ թերեւս անկէ աւելի՝ գրիչն է որ երկրին մեծ ծառայութիւն կրնայ մատուցանել։ Ինքը զինուոր մը ու գրագէտ մը եղաւ, իմաստասէր մը եւ զօրավար մը, պարզ քաղքցի մը ու իշխան մը։ Իր անձն ու գերդաստանը մէկ կողմ դրաւ ու իր բոլոր կարողութիւնները երկրին նուիրեց։ Միօրինակ կեանք մը, ինչ աստիճանի ու դիրքի վրայ գտնուէր ան, զզուելի էր Օմալի դուքսին։ Իր այ-

*լաղան ու բնդմնաւոր կեանքը կրնայ շատերու օրինակ ըլլալ ։*

*Շատեր կրնան ըմբռնել թէ Ինչպէ՛ս ամենաբարձր ազնուական մը ամէն բանէ առաջ քաղաքացի է ու կը ջանայ կատարել իր մարդկային ու քաղաքացիական պարտականութիւնները ։*

*Օմալի դուքսը արիւնի ազնուականութենէ աւելի բան մը ունէր ։ Սիրտի եւ միտքի ազնուականութիւնը․ իր յիշատակը Ֆրանսացիները պէտք է պահեն գուրգուրանքով ։*

Գ. Ա.



# 6. ԹՈՎՄԱՍ ՖԱՍՈՒԼԵԱՃԵԱՆ



*Թովմաս Ֆասուլեաճեանը շատոնց արդէն մեռած կը համարուէր բեմին համար, — նոյն իսկ Պոլիս անցուցած վերջին տարիներուն մէջ՝ ուր հատկտոր ներկայացումներ կը կազմակերպէր իր հաշուոյն, պատահական դերասաններու հետ ։ Դըրեանցը իրմէ աւելի բաղդաւոր եղաւ, բեմական փայլուն շրջանի մը միջոցին հրաժեշտ տալով կեանքին ու թատրոնին որ իր կեանքն էր արդէն ։*

*Բանաստեղծներուն եւ արուեստագէտներուն համար համբաւի աստիճանը կայ ուրկէ անդին՝ երբ կ՚զգան թէ պիտի տկարանան՝ լաւագոյն է լռել ու մեկուսանալը, — չըսելու համար մեռնիլը, ինչ որ շատ անողոք գաղափար մը պիտի*

տար զայն յայտնողին վրայ։ Տարիքը նշանակութիւն չունի անոնց համար, սպիտակ մազերով քերթողներ ու խորշոմած դէմքով առողխողներ գիտցած են իրենց բարձրութեան ու ժողովրդականութեան մէջ մնալ։ Ասոնք բացառութիւններ են սակայն. մեծ մասը, դերասաններուն մանաւանդ, նիւթական պէտքերէ մղուած՝ կը քաշկռտուին քաղքէ քաղաք, բեմէ բեմ, անճարակներու՝ սկսնակներու հետ խաղալու հարկին տակ, — սնանկ սեղանաւորներու պէս որոնք Սակարանին ղեկը պահ մը իրենց ձեռքը ունենալէ ետքը, սալայատակներու վրայ կը սլքտան։ Եւ մեր վաղեմի դերասանապետը, որչափ որ գիտենք, աստիճանական անկումի մը մէջ փորձեց իր անունին ու անցեալին հմայքը պահել, մաքառումով մը որ արուեստին պայքարը ըլլալէ աւելի կեանքի պայքարն էր, — հացի կռիւը։ Սին փորձ մը չէր, սակայն, իր ըրածը, ոչ ալ յաւակնոտութիւն մը. Ֆասուլեաճեանի բեմական երկար ու յիշատակելի գործունէութիւնը լիովին կու տար իրեն այդ իրաւունքը։ Աղեքսանդրիոյ մէջ պատահած է իր մահը ուր արուեստագէտի մը վայել հանդիսաւորութեամբ կատարուեր է յուղարկաւորութիւնը, — մանրամասնութիւն չկայ իր հիւանդութեան կամ բեմէ քաշուած ըլլալու մասին։ Ի՞նչ հարկ արդէն, չէ մի որ տխուր պատկերներու շարք մը եղած պիտի ըլլար իր թափառացած դերասանութեան ու տառապագին հիւանդութեան նկարագրութիւնը։ Իմ մասիս, չը պիտի ծանրանամ անոր ընտանիքի հօր առաքինութիւններուն կամ թերութիւններուն, զեղխ կամ

տանկաւապէտ ըլլալուն վրայ, ու պրպտելու ելլեմ թէ՝ իրա՞ւ դրամ կամ գոյք կտակած է Ազգին, իբր թէ մեծատուն մը ըլլար մեռնողը։ Ես աւելի կը հաւատամ, հեռուէն՝ թէ պարտք միայն թողած է. այդ չեղա՞ւ ճակատագիրն ալ Ադամեանին, ամէնէն նպաստաւորը հայ դերասաններուն։



Տարիներու լայն անջրպետէ մը ետքը, երբ վերըստին գրիչիս տակը կուգայ Թովմաս Ֆասուլեաճեանին անունը, իր մահուան առթիւ, կը սիրեմ վերյիշել ու ներկայացնել, — գէթ անոնց որոնք չտեսան զինքը իր արուեստին կատարելութիւններուն մէջ, — հին Ֆասուլեաճեանը, ա՛ն որ ցնցած էր մեր պատանեկութիւնը ու հիացուցած՝ մեր երիտասարդութիւնը։ Բերա, Օրթագիւղ, Կէտիկ-Փաշա գլխաւոր կեդրոնները եղած են իր բեմական յաջողութիւններուն։ Ֆասուլեաճեան, ամէն բանէ առաջ, վարպետ մըն էր դիմագիծութեան ու միմիքի մէջ. յետոյ, իր ձայնին ելեւէջներովը, խրոխտ կամ մեղմ, գոռացող կամ լացող, որոնք անդիմադրելի, հեւ ի հեւ ազդեցութեան մը տակ կը պահէին ամբողջ սրահը, զայրացկոտ կամ կարեկից, — կատարած դերին համեմատ։ Անձնական հեռաւոր յիշատակներէս սա տպաւորութիւնը կը պահեմ կենդանի՝ թէ Ֆասուլեաճեանը՝ որ եւ է տռամի կամ ողբերգութեան մէջ — բեմի վրայ երեւնալուն, դող մը կ'զգայինք ու սարսուռի մը կը նախապատրաստուէինք անգիտակցաբար. մինչ Ադամեանը, այդ թուական-

ներուն՝ դեռ երիտասարդ սիրահարի դերին մէջ, համակ սէր, քաղցրութիւն ու նազանք կը սփռէր իր շուրջը։ Բեմին վրայ՝ Ֆասուլեաճեանը ատելութիւն կը հրաւիրէր իր վրայ եւ Ադամեան համակրանք։ Դուրսը, իրական կեանքի մէջ, տարիքի թեթեւ տարբերութեամբ, երկուքն ալ երիտասարդ, հաւասար համակրանք ու հետաքրքրութիւն կ'առթէին, երկուքն ալ ընկերական, խօսուն, զուարթ։ Ու Տիկին Հրաչեան, որ — հիմակ թոռնիկներու մեծ-մայր եղած է, բեմէն քաշուած՝ իր ամէնէն թարմ երիտասարդութեանը մէջ, ճշմարիտ հովուուհին էր հովուերգութեան մէջ, լերան աղջիկ, սեւ խոշոր աչքերով, վարդ այտերով, կարմիր ժապաւէն մը ձգած մազերուն վրայ, ու ճշմարիտ կոմսուհին՝ տուամի մը մէջ, գունատ, շնորհալի, յանկուցիչ։

Կովկասէ վերադարձին. — ուր կենդանութեան շունչ մը, անծանօթ հրապոյր մը սփռած էին թատրոնի վրայ Պոլսեցի դերասաններն ու դերասանուհիները, որոնցմէ միայն Տիկին Սիրանոյշը կը յարատեւէ մինչեւ այսօր, մի՛շտ գնահատուած, մի՛շտ ծափահարուած, — Ֆասուլեաճեան իր բեմական յաջողութեան գագաթնակէտը հասած էր, նիւթական առաւելութիւններ, արուեստագէտի վայելքներ գինովցուցած, յափրացուցած էին զինքը։ Պահ մը այստեղ, իր ընկերներուն հետ ներկայացումներ տալէ ետքը, tournée մը կազմակերպեց դէպ ի գաւառային քաղաքներ, իրեն վերջին կայան ընտրելով Սամսոնը ուրկէ հասած արձագանգներ կ'իմացնէին թէ իր կեանքն ալ տուամ

մը դարձած է զոր ողբերգութեան վերածեց մահը ծաղկատի ու սիրուն դերասանուհիի մը զոր ինք առաջնորդած էր դէպ ի բեմը, մարզած՝ արուեստին նրբութիւններուն ընտելացուցած։ Այս վաղահաս մահը քայքայեց իր կազմած խումբը եւ զինքն ալ քայքայեց...։

*
* *

Վերադարձին, հին Ֆասուլեաճեանը չգտանք այլեւս մեր դէմ. աննկուն դերասանին յաջորդած էր ընկճուած մարդը. ինքն ալ, փոխադարձաբար, թափուր, ամայի կ'զգար իր շուրջը. անհատական կեանքի մէջ՝ շատեր երես կը դարձնէին իրեն ու բեմին վրայ՝ առջի ոգեւորութեամբ չէին ծափահարէր զինքը, ու այս ամէնուն վրայ կը ծանրանային ընտանեկան դժբաղդութիւններ, զաւկին մէկը Հիւանդանոցն էր, միւսը՝ սկսնակ դերասան՝ անողոք ախտի մը զոհ կ'երթար՝ օր օրի ծիւրելով. կինը՝ իր ճակատագրին թողուած՝ հազիւ կը հասնէր մայրական դերեր կատարելու, զոր ողորմութեան մը պէս կուտային իրեն։ Դերասանական ընտանիքի քայքայումն կեանքն էր, անկայուն, ցրուած, յուսահատ։ Ֆասուլեաճեան ինքն ալ մասնակի ներկայացումներ կազմակերպեց, հոս հոն, պզտիկ բեմերու վրայ, ամէնէն վերջինը Թագսիմի պարտէզին մանրանկար թատրոնը «ուր Բարիզի Աղքատները» ներկայացուց, ամառ գիշեր մը, քանի մը աղքատ տղաքներով, զորս աճապարանօք մարզած էր, մէկ օրուան մէջ։ Այդ երեկոյթը վերջին խլեակն էր որուն կը փարէր հին վարպետը՝

կանգուն մնալու գերագոյն ճիգով մը. բեմին առջեւ չարուած հարիւրի չափ աթոռներուն հազիւ կէսը գրաւուած էր՝ կարեկցութեան համար եկող հանդիսականներէն որոնց մեծ մասը ձգեցին գացին ներկայացման աւարտումէն շատ առաջ: Ֆասուլեաճեան օրհասականի ջանքեր կ'ընէր իր վրայ կեդրոնացնելու համար բովանդակ խաղը: Բացօդեայ բեմը տակաւ տակաւ մութի մէջ կը թաղուէր ճրագներու պլպլուն լոյսերուն պակսելովը, որոնք կը մարէին հովէն, եւ որոնց ազդեցութեան տակ Ֆասուլեաճեանին ձայնն ալ խուպոտ ու նուաղուն կը դառնար:

Իր վերջին ներկայացումն եղաւ ատիկա, կարծեմ, Պոլսոյ մէջ: Ու օր մըն ալ ըսին թէ մեկներ է: Տարիներ անցան ու յանկարծ իր մահը կ'իմանանք:

Ես չեմ քննադատեր Ֆասուլեաճեանը, կ'արդահատիմ իրեն: Ինչ որ ալ եղած ըլլան իր անհատական կեանքին արկածները, ճարտար դերասանապետի մը յիշատակը կը թողու անիկա մեզի ու իր անունը, — անբաժան կերպով կապուած Ադամեանի, Սիսակի, Դրեանցի անուններուն, — պիտի յիշեցընէ միշտ՝ բեմական յաջող շրջանի մը յաջող հեռանկարը որուն վարպետներէն մէկն եղաւ ինքն ալ:

S. Ա.

# 7. ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ ԶԻՄԱՌԱՑԻ



18րդ դարու կէսերը, Կ. Պոլիսի այս գիտուն եւ երեւելի Պատրիարքը՝ ծնած էր Ակնայ Զիմառայ գիւղը։ Կը թուի թէ մինչեւ չորեքտասանամեան հոն անցուցած է աղքատիկ ու զրկուած կեանք մը։ Ապա՝ ուսանելու, ուխտաւորելու, քաղաք ու մանաւանդ քաղաքներու քաղաք՝ Կ. Պոլիսը տեսնելու եռանդ մը թելադրած է իրեն անցնիլ Սեբաստիա եւ անկէ՝ ոստայնանկի մը թեւարկութեամբ՝ Կ. Պոլիս։

Նոյն տարիները (18րդ դարու առաջին քառորդին) հին Պոլսահայերը առած էին անդորր զարգացումի գնացք մը։ Աւետիք Պատրիարքի, Մխիթարի, եւ այլ ներքին վէճերը դադրած էին, ու բանասիրական եւ եկեղեցասիրական խաղաղ զբաղումներ սկսած էին տոհմային առաջնորդներուն միտքն ու սիրտը գրաւել։ Այսպիսի վիճակի մը մէջ՝ երիտասարդ Նալեան Պոլիս հասնելուն, թուի շատ յառաջ գացած է թեւարկութեամբ իր հայրենակիցներուն, որոնց մէջ կային ամիրաներ ալ։ Ի սկզբան, բաւական աշակերտած է՝ Պաղտասար Ա. Դպիրին հետ՝ Թահրապատցի Աբրահամ վարդապետին, որ բարձր ուսումներ Պոլսահայերուն մէջ մուծանողներուն առաջիններէն է։

Ապա՝ մտնելով Ամրտոլու վանքին հռչակաւոր ,առաւիղ Յովհաննէս վարդապետ Կոլոտի քով՝

հետզհետէ առաջ գնաց լեզուագիտութեան, մատենագրութեան եւ պաշտօնական գործառնութեանց մէջ։ Երբ Կարապետ Կաթուղիկոս Եպիսկոպոս ձեռնադրեց Կոլոտը, ինք ալ անկէ վարդապետ ձեռնադրուեցաւ։

Շինող եւ ուսանող Կոլոտ հետզհետէ կը զարգացընէր Պոլիսի եկեղեցիներն ու դպրոցները. ինք բացաւ, ուրիշներէ զատ, մասնաւոր տպարան մը Իսկիւտարի մէջ, եւ իր դպիրներուն ու Յակոբ Նալեանի միջոցով ծաղկեցուց հոն նորանոր ուսումներ եւ թարգմանել տուաւ շատ գիրք։

Մանաւանդ միշտ աշխատեցաւ՝ մերթ ընդ մերթ գրգռուող վէճերուն ատեն՝ իրաւախոհ խաղաղութեամբ հանդարտ պահել իր հօտը. այս ամէնուն մէջ, իրեն աջ բազուկ ունենալով Յակոբ Նալեանն ու Սարգիս վարդապետ Սարաֆեանը, որ ապա Հռոմէական եղաւ։

Նալեան առանձինն պաշտօնավարել սկսաւ՝ նախ ընտրուելով առաջնորդ Գաղատիայի, եւ երբ 1740ին, Յուն. Կոլոտ Պատրիարք հանգչիլ ուզեց իր հոգերէն, իրեն տեղակալ կարգեց զայն։ 1741 Փետր. ամսուն Կոլոտ վախճանեցաւ. նոյն օրը Պատրիարք եղաւ Յակոբ Նալեան, եւ իր չուրջը ժողվեց բանիբուն՝ ուսեալ մարդիկ, որոնց մէջ էր նաեւ Շուէտական թարգման Ճամճուզատէ Յակոբ։

Իբրեւ իմաստուն՝ Նալեան կրցաւ միտքերը դարձնել կրթական, բարեսիրական նիւթերու։ Տպագրութիւնը, որ Պոլիսի մէջ մինչեւ այն ատեն կարի աննշան կը գործէր, իր օրերն առաւ նոր բեղմնաւորութիւն. իրմէ առաջ ոչ ոք Թուրքահայ

Պատրիարքներէն՝ կը յիշուի իրեն հաւասար հմտութեամբ եւ արդիւնքով։ Սիրելին ու մտերիմն էր իրեն ժամանակակից նշանաւոր անձնաւորութեանց՝ ինչպէս Ակնցի Եաղուպ աղա մեծատունին եւ ուրիշներու։ Իբրեւ զգաստ եւ բանասէր-կրօնաւոր՝ իր բարձր պաշտօնին մէջ ժամանակ կը գտնէր գրելու եւ հրատարակելու մեծ գործեր, որոնց մէկ մասը տպագրուած է իր իսկ ծախքովը եւ հսկողութեամբ։ Թարգմանել կուտար՝ նաեւ Ղուկաս լեզուագէտ վարդապետին ձեռքով իտալերէնէ եւ լատիներենէ կարեւոր գործեր, որոնց մեծ մասը ձեռագիր կը գտնուին Ղալաթիայի մատենադարանին ու Երուսաղեմի ձեռագիրներու թանգարանին մէջ։ 1764ին, ծանր հիւանդութեան մը բռնուելով՝ ինքնակամ հրաժարեցաւ Պատրիարքութենէ եւ իր իսկ ձեռքովը ընտրելով իր յաջորդը՝ Գրիգոր վարդապետ Պասմաճեան՝ վգեցուց անոր Պատրիարքական վերարկուն՝ մինչ Գրիգոր վարդապետ լալով կուգար Ս. Աստուածածնի եկեղեցին իր ոտքն իյնալու։ Քաջալերեց զայն եւ օրհնութեամբ անոր յանձնելով պատրիարքական բոլոր գործերը՝ քաշուեցաւ Իւսկիւտար եւ վախճանեցաւ հոն Յուլիս 18ին. հետեւեալ օրը թաղուեցաւ Պէյօղլուի գերեզմանատունը մեծ փառքով՝ Յակոբ Կաթուղիկոսի տապանին քով։

Անշուք վիճակէ եւ գեղջուկ յարկէ այսպէս Պատրիարքութեան բարձրացած՝ Յակոբ Նալեանի գլխաւոր արժանիքներէն մէկը եղած էր ժամանակին բոլոր խնդիրները, բարքերն ու միտքերը աղէկ իմաստասիրած ըլլալ, որոնց վրայ է մա-

նուանող իր Գանձարան Ծանուցմանց անուն գիրքը, ուր բարոյագիտութիւն, փիլիսոփայութիւն, հնախօսութիւն, բժշկութիւն եւ աշխարհագրութիւն անգամ հասարակաց հասկնալի կուռ ոճով մը ամփոփուած են եւ զոր ցարդ Գաւառացի եւ Պոլսեցի ծեր իմաստուններ ախորժով կը կարդան բուխուրիկներու եւ թոնիրներու քովիկն ու փռան թեզկեահներու վրայ։

Քառորդ դար մը իմաստութեամբ վարեց իր գործը՝ եւ թողուց 15—20 հատորի չափ պատկառելի գործեր, որոնց գլուխը կրնանք դնել Նարեկի ընդարձակ մեկնութիւնը եւ ձեռագիր մեծ Աստուածաբանութիւնը, որոնց մէջ Արիստոտելէն, Թաղեսէն մինչեւ Նեւտոն եւ Պիւթագոր վկայութեան կոչուած են։ Այդ գործերուն մէջ առհասարակ կը փայլի՝ ժողովուրդին հասկնալի ըլլալու յորդ ճիգի մը հետ՝ աստուածաբանական ու փիլիսոփայական խոր հմտութիւն եւ պարզ եփուն գրաբար մը, որ դուն ուրեք կը գործածէ Ոսկանի եւ Նմաններու սովորական դարձած օտարաբանութիւնները, եւ գրեթէ բնաւ չի տարբերիր ժամանակակից Մխիթարեաններու՝ մանաւանդ Ջամչեանի՝ վարժ գրաբարէն։

Իբրեւ իմաստասէր մատենագիր՝ իր ժամանակակիցներուն գրեթէ միակն է Յակոբ Նալեան, որ գիտէր քաջ հայերէն, Թուրքերէն, Իտալերէն, թերեւս նաեւ Լատիներէն ու Եբրայեցերէն։ Եւ այս ամէնը թուի առած էր ժիր ինքնօգնութեամբ եւ արթուն հանճարովը, որ չուրջի ամայութեան մէջ աւելի աչքի կը զարնէր։ Պատրաստաբան եւ ճար-

տարախօս, որուն վկայ են իր վրայ պատմուած շատ անէքդոտներ, եւ կրօնաւոր ժուժկալ, որ գլխաւոր պատճառն եղած է իր բազմավաստակ արդիւնքներուն։

Իր շնորհիւը հասած են իրեն յաջորդ քանի մը բազմահմուտ եպիսկոպոսներ ու աշխարհականներ, որոնց մէջ են Գէորգ Դպիր Յովհաննէսեան Պալաթցի եւ Թագւոր վարժապետ։

Դեռ քանի երեսուն տարի առաջ հայ աստուածաբաններ եւ ծերունի բարեպաշտներ իր անունովը կ'երդնուին եւ իր առածներովը կը մագնիսանային։ Նահապետ Պատրիարքը՝ Զիմառայի, Իւսկիւտարի, Կ. Պոլսոյ, Բերայի եւ Երուսաղէմի մէջ ձգած է մէկէ աւելի խանդաղատելի յիշատակներ եւ հայ մատենագրութեան մէջ՝ Զամչեանի, Մըխլէյիմ օղլույի եւ Յովհաննէս Տէրոյենցի հաւասար բազմակողմանի անուն մը։

Յ. Գ. ՄՐՄՐԵԱՆ

## Յ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄՐՄՐԵԱՆ

Լայն ու ընդարձակ ճակատ մը, որ կարծես, բոլոր գլուխը կը գրաւէ եւ գլուխ մը որ՝ նիհար իրանին վրայ՝ զարտուղութեան մը պէս, կը բարձրանայ յանկարծ, կը կանգնի, հուժկու՝ անկիւնաւոր գիծերով կը ցցուի։

Կապոյտ եւ մանր աչքեր, տրտում նայուած-

քով մը, որ դիմացինին չեն ուղղուիր, այլ խոյս կուտան անկէ, անդին, հեռուն սեւեռելու համար։ Բոլոր արտաքինը, ինքնամփոփ երեւոյթովը, վարժապետի տարտամ նմանութիւն մը կը բերէ կամ ծպտուած Անգլու յարատեւ ջանքը ընող մարդու մը։

Գրագէտը՝ բոլորովին տարբեր չէ այս արտաքին մարդէն. կեանքի վրդովանքէն խուսափուկ մէկը, այն բոլոր վեհերոտներու դասակարգէն, որոնք Աստուծոյ մը փէշին, Նախախնամութեան մը հովանիին ապաստանած կ'ապրին. հոն կուչուած կ'ընեն շարունակ, ճիշդ այն երախային նման, որ դպրոցին մէջ իր դասընկերներէն կերած ծեծին դէմ ինքզինքը կը պաշտպանէ լալով. — Իրիկունը հայրիկիս խապար կուտամ։

Հայրիկը սակայն, եթէ հայրիկ մը ունի, իրիկուան տուն դառնալուն, միայն դասերը սորված ըլլալը կը հարցնէ իրմէ՝ առանց մտիկ ընելու իր գանգատներուն, ինչ որ չ'արգիլեր մանուկը դպրոցին մէջ միեւնոյն պաշտպանութեանը ապաստանելու յաջորդ օրը։

* * *

Սրմրեան նորեկ մըն է, դէթ իբրեւ աշխարհաբար գրող, հայ հրապարակագիրներու մէջ, թէեւ չասուոնց ի վեր իր քաջ ու հմուտ գրագէտի համբաւը չինուած է մեր հին լեզուի քուրմերու անձուկ շրջանակին մէջ։

Հիւրմիւզի, Հայր Արսէնի ախոյեան մը ըլլալու չափ գրաբարագէտ՝ որ Հուկոնի Փոսկոլեայն

դրաբար թարգմանելով՝ Ս. Ղազարու վանականներուն ասպարէզ կարդացած է տաժանով:

Ինչ որ իր արժանիքը կը կազմէ, այն է որ ժամանակին հասկցած է թէ մեր մէջ հիմայ հին լեզուով մատենագրելը՝ որքան սերտ նմանութիւն ունի այս դարուս մէջ լատիներէն ոտանաւոր մը հրատարակելուն հետ:

Գրաբարին, այդ պաշտուած ցնծուհիին սէրովը կորսուած հոգիներու մէջէն՝ առաջին դարձի եկող մը՛ է ինքը, որ մեր՝ հին աշխարհաբարեաններու՝ վերջի կողմը նստելու տրամադրութիւնը կը վայելէ. վասն զի իր աշխարհաբարը ստուգիւ հինալի աշխարհաբար մըն է: Կարդացէ՛ք իր Արխաշը, Միսաքեանի կենսագրութիւնը:

Քանդակուած պարբերութիւններ՝ որոնց ցրցուածքը ու կարկառները նիւթը կամ գաղափարը իսկոյն կը յօրինեն, կը պատկերացնեն աչքիդ առջեւ, ոսկեզօծ արձակ մը՝ ոչ կեղծ ու խարդախ փայլով, այլ զուտ ու հարազատ ոսկիի շողիւնով: Ադամանդի յղկումներով յղկուած բառեր եւ բիւրեղէ ածականներ, որոնց բոլոր ցոլացող ճառագայթներուն մէջ, այս արձակը կը նշուլէ՝ ամառուան արեւին տակ տարածուող ծովի մը ջինջ կապոյտին պէս: Իր շարադասութիւնը տարբեր է մերինէն, բայց շնորհազուրկ չէ. ուշադիր դիտողին համար՝ ինքնուրոյն տարազը, զոր վերջ ի վերջոյ կը ճանչնաս բուն հայերէնի բեհեզներով, մետաքսաւէջ ծոպերովը պարեգօտած ոճն է զոր իրմէ առաջ եւ մինչեւ ցարդ ոչ ոք, որչափ կը գիտեմ, ըղձեցուցած է իր գրուածքներուն:

Հարկաւ, պզտիկ զննութեամբ մը, դիւրաւ գրաբարագէտը կը նշմարուի հոն. բայց ո՛չ այն գրաբարագէտը որ ճամբան կորսնցուցած է հին լեզուի մը մայրութիւններուն մէջ. այլ իր մեծ վարպետին, Միսաքեանին պէս, օգտուող մը այդ հին լեզուէն, ճաշակաւոր ընտրութիւններ ընելով, անոր նրբարուեստ գանձերը եւ յօրինուածքը զանազանելով յառի շաղփաղփուկներէն, եւ բերելով զետեղելով իր գրուածքներուն մէջ, մօզայիկներու, կամ կարմիր, կապոյտ, կանաչ, փոքրիկ լուսամուտ ապակիներու պէս, որոնք իր կառուցուածներուն՝ հին մեհեանի մը հանդիսաւոր, լուրջ ու աղօտ շքեղութիւնը կ'ընծայեն։

* * *

Հասարակ ընթերցողին մատչելի գրողը չէ անիկա. նախնական աշխատութիւն մը պէտք է, վերլուծումի պզտիկ ջանք մը անհրաժեշտ է իր դարձուածքները ըմբռնելու ու ճաշակելու համար։ Ճիշդ ինչպէս բնութեան ծոցին մէջ գեղեցիկ տեսարան մը վայելելու համար շատ անգամ հարկաւոր է պզտիկ վերելքի մը յոգնութեան յանձնառու ըլլալ։

Ըսի արդէն որ հանապազօրեայ կեանքի ռամիկ բայց անխուսափելի պայքարներուն մէջ կըտրիճ մը չէ այս գրողը. աղմուկի ու ընդդիմութեան մարդ չէ անիկա. քաղքէն աւելի գեղը եւ գեղէն աւելի վանքը կարծես կը հրապուրէ զինքը։ Հո՛ն, այդ անդորրութեան եւ միայնութեան ծոցը, ուր բնութիւնը իր անսեթեւեթ պչրանքո-

մը, ձայներու հեղութեամբը եւ գոյներու մեղմութիւններովը, անպատիր վայելքներու եւ երազանքի դուռը կը բանայ, հո՛ն, այդ հովուական կենցաղին առջեւ՝ այնքան հեռու մարդկայինէն եւ այնքան մօտ աստուածայինին՝ գրագէտը երեւան կ'ելլէ. իր նկարիչի վրձինը երանգներու գոյներու չտեսնուած ճոխութիւնով մը զմեզ կը զմայլեցնէ եւ ամէնուս սիրտին մէջ՝ գեղը երթալ ապրելու, աշխարհիս ունայնութիւններէն հրաժարելու փափաքներ կ'արթնցնէ։

Մրմրեան ամուրի մըն է, թէեւ քառասունին մօտ հիմայ՝ եթէ ոչ մաս մը աւելի. պէտք եղածէն աւելի ամուրի մը, եթէ հաւատանք, իր վըրայ եւ իր շուրջը պատմուածներուն, կնատեաց մարդն է ինքը եւ այդ պատճառով գուցէ ինքը մինակ, էապէս ոգեպաշտ (spiritualiste) եւ աստուածապաշտ գրողն է, խորհրդաւոր գրող մը մեր մէջ՝ ուր շուկայ ու աղկաղկ գրականութիւն մը կը տիրէ միշտ։ Ո՛չ այն գրականութիւնը որ գիտութեան կը յենու. ոչ մեր կեանքին՝ եթէ ոչ մեր մահուան վերլուծութեամբը կը լուսաւորուի. որ փիլիսոփայական դաւանութիւն մըն է վերջապէս։ Այլ եսականութեանը համար, շահու համար, ամէն կեղծիքը, ամէն սառնացումը ընդունող գրականութիւնը, ամէնէն զզուելին։

Չեմ ըսեր որ իրմէ զատ ո՛չ ոք մաքուր ու վերին գաղափարէ մը, խոհալէ մը չ'առաջնորդուիր, բայց կը պնդեմ որ ո՛չ ոք անոր չափ ամէն վայրկեան աչքը կը սեւեռէ հոն, գլուխ գլխի կ'առնի, կը սիրաբանէ անոր հետ, անոր լուսէն կամ

հաճոյքէն չլանալու աստիճան, եթէ դուրս թողունք Եղիան, ափսո՜ս բոլորովին չլացած մը։ Աչքէ անցուցէք անգամ մը Մրմրեանի Աշկէրտեան եւ ըսէ՛ք թէ կարո՞ղ էք բան մը հասկնալ այս ակնախտիղ պարբերութիւններէն։

Հաւատացողներու համար իտէալը՝ Աստուած կը կոչուի, կ՚ըսէ Սթէրֆէր։ Չեմ ծիծաղիր իր վըրան՝ երբ որ Մրմրեան ամէն բան վերադարձնելով տանելով այս Գերագոյն Գաղափարին, ամէն առթիւ կոչում ընելով իր գրուածքներուն մէջ, վերջ ի վերջոյ աղօթքի մը պէս բաներ կը թոթովէ. եզական դէմքն է ան ինծի համար, նոյն իսկ երբ ներշնչեալի մը վերացումը կը բերէ մեր գրականութեան մէջ, ուր ամէն բան այնքան տափակ եւ շատ հեղ ստորին է։

* * *

Եւ սակայն տառուտուրի աշխարհէն եկող մըն է ինքը հրապարակագրութեան մէջ, պատմայի եւ ամերիկանի վաճառականէն ծագած է գրագէտը։ Այս հակասութեան առջեւ՝ միտքս կը վարանի, կը կասի քիչ մը, եւ իր ապագան մարգարէանալը կը դժուարանայ։

Իր գեղեցիկ կրծկալ մօրուքը, զոր վերջերս այնքան մեծցուց, իր կնախոյս ու մաքուր կենցաղը՝ մօտ օրէն եկեղեցական ասպարէզը մտնելուն նշան մը չեմ նկատեր ես. — հակասութեանց մարդն է միշտ անիկա։ Ամէն ինչ ունէր առենով իբրեւ գրագէտ երեւան գալու համար եւ խանութպան եղաւ այդ միջոցին. հիմայ վեղարէն ու

վերարկուէն զատ բան մը չի պահեր իրեն՝ հազուագիւտ եպիսկոպոս մը ըլլալու, եւ ճիշդ ատոր համար կ'սպասեմ որ վաղը՝ զգալով ունայնութիւնը իր երկնասուէր կենցաղին՝ ինչպէս մենք՝ մեր աշխարհիկ զբօսանքներուն եւ դայթակղութիւններուն ունայնութիւնը կ'զգանք երբեմն, վերադարձ մը ընէ դէպ ի մեզի, ատեն մը վերջին պահուն ծերութեանը մօտ, նոր Յովսէփ՝ նոր Մարկարիթով մը սկսելու համար կեանքը զոր չէ ապրած դեռ, այն վայրկեանին՝ երբ որ ամէնքը իր անբասիր վարքին արժանի պսակումը տեսնելու միայն կը պատրաստուին։

Գ. ԶՕՀՐԱՊ



# Ը. ԿՐՕՆԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ



Կրօնական գրականութիւնը, ընդհանրապէս, գրականօրէն ժողովրդականացումն է աստուածաբանական եւ կրօնական բարձր գաղափարներու եւ յղացումներու: Երբ հեղինակը իր կրօնական-գրական արտադրութեան մէջ շատ նկարալից ոճ մը ու ներդաշնակ լեզու մը գործածէ՝ առաջ բերած գրութիւնը կրօնական կամ հոգեւոր բանաստեղծութիւն կը կոչուի: Նարեկը, Գրիգոր Նարեկացիին գլուխ գործոցը, ծայրէ ծայր կրօնական հրաշալի բանաստեղծութիւն մ'է: Կրօնական բանաստեղծութիւնը կրնայ նաեւ տաղաչափուած ըլլալ: Այսպէս են Ներսէս Շնորհալիի շարականները: Կրօնքը, շատ մը տեսակէտներով, անսպառ աղբիւր է գրական նիւթերու եւ յղացումներու, մանաւանդ, զանազան կրօնքներու մէջ, հայ. եկեղեցիին կրօնքը՝ որ իր պարզութեանը, իր անպաճոյճ հանգամանքին հակառակ՝ ամէնէն խորհրդաւորն է: Ա՛յս իսկ պատճառով է որ կրօնական գրականութիւնն ալ մեր մէջ զարգացած է. ա՛լ ամէն քննադատ պատրաստ է հաստատելու թէ հայ շարականներուն նման կրօնական բանաստեղծութիւններ չունին ուրիշ ո՛ր եւ է եկեղեցի: Ցեոյ, մեր մէջ, կրօնական գրականութեան այս յառաջդիմութեան նպաստած է նաեւ այն պարագան ր, հինուց ի վեր եւ մանաւանդ հին ատենը, կը-

րօնականներն էին հայերուն մէջ ամենէն ուսեալ մարդիկը ու իրենց գրագէտները: Խնդիր չէ թէ ներկային մէջ այս վիճակը չէ՛ որ կը տիրէ այլեւս. կրօնականները կորսուած են իրենց դիրքը եւ բաց ի քանի մը բացառիկ դէմքերէ, աշխարհականները գերազանցօրէն, շատ հմուտ կերպով կը մշակեն գրականութիւնը մեր մէջ:

Ֆրանսացիներուն մէջ, իբր կրօնական գրականութեան տաղանդ, Պօսիւէն ու անոր հետ բոլոր ճարտասան քարոզողները կը յիշատակուին: Ու, կրօնական գրականութեան ամենէն կարեւոր թեւն է կրօնական ճարտասանութիւնը, քարոզութիւնը, բեմբասացութիւնը: Կրօնական քարոզիչ մը կը պահանջուին ճարտասանէ մը սպասուած բոլոր յատկութիւնները (1), որոնց վրայ պէտք է աւելցնել նաեւ, սակայն, կարգ մը բարոյական յատկութիւններ ալ, — սրբութիւն, լրջութիւն, օծութիւն: Գրական-ճարտասանական այս սեռը կը կոչուի նաեւ սրբազան բեմբախօսութիւն կամ սրբազան ճարտասանութիւն: Ճարտասան հայ վարդապետներ ունեցած ենք, թէ՛ հիներու թէ՛ նորերու մէջ:

(1) *Տե՛ս ճարտասանական բաժինը.*



# 1. «Ո՞ՒՐ Է ՈՐ ԾՆԱՒ...»

Աւետարանի մոգերը արեւելքէն երկար ճամբորդութենէ մը յոգնած՝ անհատնում ապարէզներու փոշիներով թաթաղուն՝ հազիւ Հրէաստանի հողերուն վրայ կը դնեն իրենց ոտքերը, եւ ահա՛ կը կորսնցնեն երկնային անծանօթ լոյսին երեսը՝ որ առաջնորդ մը եղած էր, հեռաւոր սահմաններէ բերելով զիրենք դէպի ուրիշ անծանօթ մը՝ զոր կը փնտռէին։ «Ո՞ւր է...» կը հարցնեն հիմա իրենց հանդիպողներուն. — «Խաւարի մէջ նստող ժողովուրդի մը» գիշերուան ճրագներուն կ'ուղղուէր այդ սրտատուչ հարցը։

Լոյսին վայրկենական անհետացումէն շուարած պահ մը մոգերը պէտք կ'զգան անոնց օգնութեանը՝ որոնք հաւատք մ'ունենալ կը կարծէին Գիրքերու գիտութեան բանալին իրենց ափին մէջ շփելով. «Գրուած է կ'ըսէին, Մարգարէին ձեռքով. Բեթղեհէմի մէջ պիտի ծնի։» Սակայն Գըրքին ճշմարտութիւնը վկայելու եռանդով՝ ո՛չ մէկ քահանայապետ կամ դպիր չշարժեցաւ իր տեղէն երթալ տեսնելու համար «Իսրայէլի ժողովուրդը հովուելու սահմանուած մանուկը.» ու մոգերն էին դարձեալ որ իրենց ճամբան շարունակեցին՝ վերստին հանդիպելով իրենց լոյսին։

Ա՜հ, որչափ աւելի կենդանի է ճառագայթի մը շինուած հաւատքը քան մագաղաթի մը շինածը. ա-

ռաջինն իր առկայծումին մէջ անգամ մ՚ չի մարիր, ու կրնայ Գիրքին շնորհիւ նորէն գտնալ իր ուրախարար լոյսին, եր՚լորդն իր ամբարտաւան գիտութեամբ դալկացած՝ մութ վարանումներու մէջ կը թաղուի։

Թո՛ղ մանկն ուրեմն երջանիկները՝ իրենց երկրպագութիւնը մատուցանելու, իրենց գանձերը բանալու, ու անոնք որ ապաժաման հետեւողները են նոյն ճամբուն՝ ու չունին իրենց գլխուն վերեւ նշուլող լոյսի մը աւետական առաջնորդութիւնը՝ ստիպուած են հարցնելու «Ո՞ւր է Նա։»

«Հո՛ս է» պիտի պատասխանէ մեզի եկեղեցիին պաշտօնեան՝ որ Գիրքերը կարդացած ըլլալու մեծ վստահութիւնը ունի, ու ցոյց պիտի տայ մեզի՝ լուսութենէն ու մութէն անդին՝ տեղ մը, երկինքի նմանութեամբ գեղազարդուած կամարի մը տակ, ուր լոյսեր կը պաղպաղան ու նուագներ կը հնչեն. — Չէ՞ք տեսներ. այս ջահերը չե՞ն յիշեցներ ձեզի մոգերուն առաջնորդող լոյսը. չէ՞ք լսեր, հրեշտակային ձայներ կը թրթռան «Բարձունքի փառքը» գեղգեղելու համար. չէ՞ք զգար անուշակ հոտը այրող կնդրուկներուն։ —Միթէ ասոնք բաւակա՞ն են մօտ տանելու զմեզ Յիսուսին, պիտի մրմնջէին հաւատքի խորութեանը մէջ յառող հոգիները. եթէ մեր ծխացող լոյսերուն մէջ դիւրին ըլլայ գտնել զինքը՝ ա՛լ ինչո՞ւ նայէինք երկինքի լոյսերուն. եթէ մեր կերկերացող ձայներուն մէջ դիւրին ըլլար լսել զինքը՝ ալ ինչո՞ւ ականջ դնէինք խղճին լռութիւնը ներդաշնակող զմայլումներուն. ու եթէ մեր կնդրուկներով դիւրին ըլլար խնկել զինքը՝ ալ

ինչու ցանկայինք երկնաւոր բուրումներու ։

«Ո՞ւր է նա» ։ — Բայց ահաւասիկ, հո՛ս, ձեր աչքին առջեւ կը պատկերանայ մատուռն ու խանձարուրը․ չէ՞ք նշմարեր անոր մէջ հանգչող հրաշալի Մանո՛ւկը, Կոյս Մա՛յրը․ ․ ․ ։

Դպրոցներն ու գեղջուկին մարդը մինչեւ հոս կրնան տանիլ զմեզ․ ․ ․ ։ Աւելի՛ հեռուն երթալու եւ այս տեսարանէն անդին փայլատակող ճշմարտութիւնը ողջունելու համար՝ պէ՛տք ունինք Հաւատքին՝ Մոգերէն ժառանգուած նոյն լոյսին որ գիտէ՛ թէ ու՛ր վերջապէս պիտի արձակէ իր մաքուր ճաճանչը ։

Դիւրին է մտածել թէ ո՛րքան մեծ եղաւ պատրանքը Մոգերուն՝ երբ կանգ առին աղտեղի իջեւանէ մը աւելի անշուք յարկի մը առջեւ՝ անշուշտ իրենց երեւակայածէն շա՛տ տարբեր իրողութեան մը դիմաց գտնուելով ։ Իրենք ազնուականներ էին, ու կը մտնէին տեղ մը՝ ուր ո՛չ մէկ նշան կար պերճանքի․ — անպատսպար ու աղքատ ընտանիքի մը մօտն էին եւ ո՛չ թէ «փափուկ հանդերձներ հագնողներու» շրջանակի մէջ ։ Բայց ի՛նչ փոյթ․ հո՛ն կը տանէր լոյսը զիրենք․ հա՛րկ էր ուրեմն երկրպագել այդ անլոյս յատակին վրայ․ ու միթէ այս չէ՞ ճշմարիտ երկրպագութիւնը՝ երբ հոգին վերէն շողացող լոյսին ու վարը տողացող մութին մէջտեղ կը շարժագրէ իր պաշտամունքի խորհըրդաւոր վայրկեանը ։ Մոգերու այդ պաշտամունքին մէջ Էմմանուէլի մերկութիւնը ամէնէն վեհաշուք ծածկոյթն ունէր իր վրայ, սրբութեան մերկութիւնն էր այն․ մնայլ այն խորշը՝ որուն մէջ կը հանգչէր

ան՝ խաւարին երկունքը չունէր, վասն զի մեծ խորհուրդին խորշն էր այն. ու կարկառուն այն խանձարուրը՝ որուն պլլուած էին իր անդամները՝ օրրանն էր նոր մարդկութեան մը որ պիտի վերանէր։ —Իսկ ի՞նչ պիտի խորհէր արդեօք Մարգարէներուն հաւատարիմ թարգման հանդիսացող դպիրը՝ թէ իր Գիրքերուն հետ հոն եկած ըլլար այդ ամէնը դիտելու։ Ապահովաբար պիտի զննէր Մանուկ Յիսուսին երկու ուսերը՝ տեսնելու համար թէ կա՞ր անոնց վրայ երկնային իշխանութեան մը կնիքը. պիտի չօշափէր անոր աղածրի բազուկները՝ Եսայիի նկարագրած զօրութեան բազուկին հետ համեմատելու համար զանոնք, ու յետոյ ծաղրանքով մը պիտի մրթմրթար «Հզօ՛ր մանուկ, հա՜յր հանդերձելոյ աշխարհին։» Իրեն համար Յեսսէի արմատէ՜ն բողբոջած այդ տժգոյն ծաղիկը չէր կրնար զարդն ըլլալ Դաւիթի բնակարանին։ — Մէկդի՛, հնար չէ՛ քեզի՝ միայն Գիրքով իմանալ՝ թէ Աստուծոյ հոգին օծած է զանի, իմաստութեան եւ զօրութեան հոգին, հանճարի եւ գիտութեան հոգին (Եսայի, ԺԱ. 4)։ Ո՛չ մէկը՝ որ կը մօտենայ Յիսուսին եւ չունի իր Հաւատքին պայծառութեանը մէջ փայլող լոյս մը, պիտի չկրնայ հասկնալ «այն մեծ եւ սքանչելի խորհուրդը որ Յայս Աւուր Յայտնեցաւ։» Եւ եթէ նոյն այն լոյսը՝ իր բացխփիկ խաղերուն քմայքը՝ այս անգամ ալ ցոյց տայ քեզի մուտքը՝ ո՛չ թէ ջահաւորեալ տաճարի մը, այլ խարխուլ տնակի մը՝ որ գետնի չափ ցած ըլլայ, ուր ճրագը մարած ըլլայ, ուր մանուկը մայր չունենայ, պիտի չխռովիս երբեք,

*վա՛ն զի պիտի զգաս թէ ճշմարիտ երկրպագութեան մասուրքին հեռի չես, թէ մօտն ես ընծաներուվեհ մատուցարանին, բարձրեալն Աստուծոյ փառքին, ու խնկած մարդուն հաճութեան գրկախառնումին մէջ. ու ալ չպիտի հարցնես թէ «Ո՞ւր է նա։»*

ԵՂԻՇԷ ԵՊԻՍԿ. ԴՈՒՐԵԱՆ

# Զ. ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ

Հոտ մը կ'առնէր ծերունին խո՛լ հեշտանքի,
Խանձարուրին տաքուկ ճերմակ խորշերէն,
Հիւքէ ցամքած մարմնին համար ուղխօրէն
Արբում մ'էր այն զգայութեան ու կեանքի:

Գիշ ակնարկի թափ մը տուաւ կրկնակի՝
Մօտ երթալու նոր նայուածքին բիբերուն,
Լոյսէ մըթնած աչքին համար ի՛նչ սիրուն
Բուրում մ'էր այն կայծկըլտացող խըտղանքի:

Յետոյ սեղմեց պինդ խառնումով ուժգնակի
Աստուածակիր զանգուածին կաւը բոսոր,
Կրակէ մարած կուրծքին համար անսովոր
Վառում մ'էր այն թունդ ճարճատուն խայտանքի:

Ու երբ շուրթերն ալ դողահար ու տըմոյն՝
Համբուրեցին մաքուր կայծակը՝ բերնին
Շունչէ կըտրած ծոցին համար ի՛նչ ջերմին՝
Կաթում մ'էր այն՝ որ շարժեց լարը հոգւոյն:

Պատրանքներու՝ տրքնումներու ժամերուն
Ա՛լ ցրուեցան իրմէ երազն ու տաժանք.
Վերջին վայրկեանն որ ապրեցաւ՝ վերջի՛ն կեանք
Բովքն իր ոսկին կուտար, ու ցոլքն էր այգուն ։

* * *

«Ա՛լ արձակէ զիս, Տէ՛ր, այս բիրտ կապերէն
Որ ոսկորներս խաղաղին,
Ի՛նչ որ ըլլայ Քու Զօրութիւնդ՝ մենք նորէն
Հարկատուներն ենք հողին:
«Տեսան աչերս փրկութեանդ լոյսն աննըման
Ա՛լ թող փակուին դարերով,
Ի՛նչ որ ըլլայ Քու Յայտնութիւնդ՝ մենք միայն
Կը սիրենք մութն անխռով:
«Պահ մը ահա գրկեցի զքեզ, ու դարձեալ
Թափուր թեւերս կը թմրին.
«Ի՛նչ որ ըլլայ Քու Փառքդ, ո՛վ Տէ՛ր, մենք թաւալ
Անարգութիւնն ենք տիղմին:
«Ի՛նչ անզգոյշ ոտքեր կուգան կը գլորին
Անդրդուելի Քարիդ քով,
«Ի՛նչ շինուածներ, որոնց դու հիմն ես խորին
Քեզ կը ծածկեն փլատակով:
«Ի՛նչ խորհուրդներ խոց կուտան պէս սուրերու
Մեծ սիրտերու հաւատքին,
«Ի՛նչ մրրիկներ կը վտարեն ա՛լ հեռո՛ւն,
Յոյսերն ու Սէրը նախկին»
«Ա՛լ արձակէ զիս, Տէ՛ր, եկաւ ժամանակ
Որ ոսկորներս խաղաղին,
Բայց մէյ մ'ալ Դուն զիս գրկէ՛ր՝ որ համակ
Որսը չըլլամ դագաղին»

ԵՂԻՇԷ ԵՊԻՍԿ. ԴՈՒՐԵԱՆ

# 3. ԱՆԱՌԱԿԸ

Անէծքը՛դ, Հա՛յր, փոխեց ոսկիս մութ պղընձի,
Բայց քանի որ շամբուշ կուռք մը պէտք էր ինծի՝
Ես պղինձո՛վ ալ պատրանքներըս ձուլեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, դարձուց նաշիհըս սեւ հացի,
Բայց քանի որ սեղան մը շուայտ պէտք էր ինծի՝
Ես սեւ հացովն ալ հեշտ պաշարըս ծամեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, փոխեց կընդրուկս անարգ գուղձի,
Բայց քանի որ ըզգըլխանք մը պէտք էր ինծի՝
Ես այդ գուղձովն ալ երազներըս ծխեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, պերճ պատմուճանս դարձուց քուրձի,
Բայց քանի որ կուշտ վայելք մը պէտք էր ինծի
Ես այդ քուրձովն ալ կուրծքիս հեւքը ծածկեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, ճրագս դարձուց նայրոտ բոցի
Բայց քանի որ հըրայրք մը տենդ պէտք էր ինծի
Ես այդ բոցովն ալ պիշ աչքերըս վառեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, զոհար քարերս դարձուց խեցի,
Բայց քանի որ գիրկ մը զըրգանք պէտք էր ինծի՝
Թամարներու կուրծքէն զանոնք ես կախեցի:
 Անէծքըդ, Հա՛յր, ցուպս ալ դարձուց բարկ խայթոցի,
Որ արհունեց զիս խածուածքով պատիժ օձի,
Բայց քանի որ ապրիլ մը կար, ա՜հ, վա՜յ ինծի,
Աղտոտ խոզի երամակներ արածեցի...:

*
* *

Օրհնութի՛ւնդ, Հա՛յր, փշրած եմ կուռքս անհանճար,
Որ զիս պաշտեց չարաչար,
Ա՛լ չեմ մօտիր այն սեղանին ես երբե՛ք,
Որ զիս լքեց սովաբեկ:
Օրհնութի՛ւնդ, Հայր, ըզգըլխանքիս անդունդին
Չափած եմ խորքը մըթին,
Ա՛լ կը սոսկամ այն վայելքէն՝ որ կիրքի
Ամպրոպներով կը մըրրկի:
Օրհնութի՛ւնդ, Հա՛յր, բոցը մարած է հրայրքիս՝
Որ մոխրակոյտ մ՚ըրաւ զիս,
Ա՛լ գիրկէդ զատ տեղ մը չունիմ ապահով
Ուր թաղուիմ պինդ գորովով:
Օրհնութի՛ւնդ, Հա՛յր, խօզի լըպիրշ ախտերէն
Ա՛լ սրբուած է հոգիս,
Վարձկա՛նդ ըլլամ, ըզքեզ պաշտե՛մ, Դու նորէն
Իբրեւ Աստուած օրհնէ՛ զիս:

ԵՂԻՇԷ ԵՊԻՍԿ. ԴՈՒՐԵԱՆ

## 4. ԾԱՂԿԱԶԱՐԴ

*Ծաղկազարդ...*

*Ի՜նչ աղուոր անուն՝ ծաղիկներու փթթումի այս ամսուն յարմար, ու ի՜նչ զուարթ կիրակէ՝ Զատկուան տօնի նախակարապետ: Ո՛չ կարմիր վարդն է սակայն, անոր խորհրդանշանը, ո՛չ ալ ճերմակ շուշանը. վտիտ ոստ մը միայն ձիթենիի, գօս, անգոյն տերեւներով, զոր խատուտիկ ու ա-*

նուշաբոյր ծաղիկներէն աւելի անձկութեամբ կը փնտռենք ու կը պահենք գուրգուրանքով։ Ինչո՞ւ այս նախընտրութիւնը՝ քարոտ բլրակներու կամ խոպան հողի վրայ հասնող գլխահակ ու ցածուկ ծառաստաններու ճիւղին համար, երբ բնութեան հրաշագեղ պէսպիսութիւնները սփռուած են չուրջերնիս։ Որովհետեւ օրհնուած է ան ու կ'օրհնուի ամէն տարի այդ տօնին. եկեղեցիէն տուն տարուելով, պատուական մամիկին թամթռկած մատներուն մէջ ու մանկամարդ տիկնոջ հոգմահարին ծալքերուն տակ պահուըտած միեւնոյն հոգածութեամբ, մինչ հայրիկը իր զաւկին ձեռքէն բռնած՝ ինքն ալ ափին մէջ կը պահէ ձիթենիին ոստը, ջերմեռանդ հաւատքով։

Եւ երբ ամիսներու ընթացքին հետ, գարնան դալար տերեւները կամաց կամաց տեղի տան աշնան թոշնած տերեւներուն, երբ անզգալաբար հանենք ջերմանոցին եղանակը, արհեստական խընամքով հազիւ կարելի ըլլալով պահպանել քանի մը գունատ, խամրած վարդեր, ձիթենին՝ միշտ անփոփոխ՝ իր տեղն է, ընտանեկան դարակին անկիւնը, Ծաղկազարդի յիշատակ. իր սմքած ու չորուկ երեւոյթը հակապատկերն է Ապրիլի զուարթ օրերուն զորս կը կենդանացնէ պահ մը, — լուռ հեգնութեամբ մը կարծես, — կրակարանին անկիւնը, ամպոտ երկինքին տակ ու սարսուռ ցուրտին դէմ։ Մանիշակի խամրած ու լքուած փունջի մը, մոռցուած նամակներու, անպէտ ժանեակներու դէզի մը հետ խառն կամ գիրքի մը էջերուն մէջ կը հանդիպինք անոր յանկարծ, ու վայրկեանի

մը համար կ'ընդհատի մեր մտածման թելը, կը դադրի իրականութիւնը՝ երեւակայութիւնը յաջորդելով անոր։ Պատրանք մըն է զոր կուտանք մենք մեզի, այդ օրհնուած ու մեզի հետ ապրած տատին ի տես՝ վերադառնալով դէպ ի գարունը տարուան, ու երբեմն ալ դէպ ի կեանքին գարունը որ անցած ըլլայ։

Աչքի առջեւ կը բերենք Ապրիլի առջի կիրակին, իր այլազան հրապոյրներովը, երբ այդ կանաչ ոստը առինք խորանին առջեւէն, խունկերու բոյրին ու մոմերու լոյսին մէջէն, եկեղեցիէն դուրս մեր թեթեւոտն գնացքը կապոյտ երկինքին տակ. ու ընտանեկան յարկին մէջ՝ մեր աւանդական նախապատրաստութիւնները Զատկուան։

Մեծ Պահքը իր Արեւագալի շարքը ունի, հոգեցունց ու թաղծալից։ Աւագ շաբաթը՝ իր տըխուր ժամերգութիւնները, Լացի գիշերուան շարականներովը ու Թաղումի ողբաձայն երգերովը։ Ծաղկազարդը օրուան մը ժպիտն է այդ կրօնային եղերերգութեանց մէջէն, հոգեկան զգացումներու պէսպիսութիւն մը, բերկրալի ու կազդուրիչ, նախաշաւիղը Զատկին պայծառութեան։

Քաղքենի միջավայրերէն մինչեւ գիւղական անկիւնները, գրեթէ միեւնոյն տպաւորութիւնն է զոր կ'ունենայ բարեպաշտ Հայը, մինչեւ իսկ անոնք որ հեռաւոր օտար տեղեր սփռուած, եկեղեցիէ ու ժամերգութենէ զուրկ՝ կը փնտռեն գոնէ ոստ մը ձիթենիի, փոյթ չէ թէ օրհնուած չըլլար ան, որ պիտի պատկերացնէր իրենց՝ նուիրականութիւնն ու ոգին Ծաղկազարդին։ Որքա՜ն յի-

չատատակներ այդ տօնին վրայ ամէն մէկուս համար՝ մանկութեան օրերու, վաղանցիկ երջանկութեանց, որոնց վերյուշումը կուտայ վաղուան տօնը զգայնոտ հոգիներուն ։

Անշուշտ մեծ անջրպետ մը կայ խորհելու եւ զգալու եղանակին մէջ անոնց՝ որոնք իրենց լամբակին վրայ մեխակի կամ մանուշակի փունջիկ մը միայն կրելու սովորութիւնը ունին եւ անոնց, որ ձիթենիին ոստը միայն կը ճանչնան ու «Ծաղկազարդը եկաւ» կ՚ըսեն ժողովրդային լեզուով. բայց որքան ալ աշխարհիկ ու դարավերջիկ երեւալ ուզեն առաջինները, ու որքան ալ հինաւուրց ու ռամիկ նկատուին վերջինները, խո՛րը, շա՛տ խորը ամէնուն ալ սիրտին՝ հաւատքի ու բարեպաշտութեան զգացումը պահուած է, թէեւ տարբեր չափով, որ կ՚արթննայ սանկ տօնական օրերու մէջ ։ Ինքզինքնիս խաբել է՝ զայն ծածկել ուզելը. հաւատքը, բարեպաշտութիւնը բան մը չեն պակսեցներ քաղաքակիրթ մարդուն արժանիքէն, ընդհակառակը ։ Եւ յետոյ, Ծաղկազարդի ու Զատկի տօներուն մէջ, չէ՞ մի որ ամբողջ բանաստեղծութիւն մը կայ, հոգեկան ու կրօնային բանաստեղծութիւն մը, զուարթ ու տխուր միանգամայն, զոր կը ներշնչեն մեզի՝ տաճարին կամարներուն տակ երգուող աղօթքները ու տարածուող խնկաբոյր ծուխերը ։ Այդ տպաւորութիւնը, որուն ենթակայ կ՚ըլլանք գրեթէ անզգալաբար, գոնէ մտովի կը հեռացնէ զմեզ կեանքի առօրեայ տաղտուկներէն, ընկճող աշխատանքներէն, անհրապոյր մտածումներէն ։

*Ծաղկազարդը գարնան առաջին տօնն է որ այդ հաճոյքը կուտայ մեզի, իր ձիթենիի անհրապոյր ու վտիտ ոստերովը, որոնք օրուան մը համար կը մրցին անուշաբոյր ու գիրգ վարդերուն հետ, — ինչպէս անշուք ու պարկեշտ կին մը վայրկեանի մը յաղթանակը պիտի տանէր աշխարհիկ ու փայփայուած կնոջ մը դէմ։*

ՏԻԳՐԱՆ ԱՐՓԻԱՐԵԱՆ



# 5. ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ՄԱՆՈՒԿ-ՔԱՐԸ



(ԱՒԱՆԴԱՎԷՊ)

*Ծաղկազարդի օրը, — ո՞վ չէ լսեր մեր պապերէն ու մամերէն այս սիրուն վէպիկը, — երբ Յիսուս առօք-փառօք Երուսաղէմ կը մտնէր, կին մը տրտում-տխուր կը հեկեկար եւ կ՚արտասուէր։ Հակապատկե՜ր տեսարան, զի այն օր բովանդակ ժողովուրդը ցնծութեան մէջ էր՝ շնորհաւորելով Յիսուսի այս փառահեղ ու շնորհաբեր գալուստն ու մուտքը Երուսաղէմ։*

*Ի՞նչու կուլար այս կինը. — վասն զի ամուլ էր, եւ օրէնքը արգիլած էր ամուլներու մասնակցութիւնը այսօրինակ հանդէսներու։*

*«Ահ, կը հեծեծէր այս կինը, ի՞նչու ես ալ Իսրայէլի այս կիներուն պէս մանկիկ մը չունենայի գիրկս եւ անոնց մէջ չխառնուէի, եւ այս օրուան*

աստուածային օրհնութեան արժանի չըլլայի :» Կ'երեւայ թէ այս կինը կը հաւատար թէ Մեսիան է Յիսուսը, խոստացուած Փրկիչը :

Տէր Յիսուս «Որ նստեալ յէջ եւ յաւանակի իջոյ մտանէր ի Քաղաքն Սուրբ», տեսաւ այս կինը եւ արգահատելով ակնարկեց Թադէի, մեր առաքեալին, որ իսկոյն այդ կնոջ քով վազելով՝ բարեկացայտ դէմքով հարցուց թէ ի՞նչու կուլայ եւ օրուան ուրախութեան մէջ տրտմութիւն կը խառնէ :

Կինը՝ անհամբեր եւ ամօթահար՝ հեկեկաց. «Տէ՛ր, ամուլ եմ ես. . . .» :

Թադէոս կ'ընդհատէ անոր խօսքը. «Լալէդ չճաթեցա՞ր եա՛, խելք չե՞ս ըներ, քար մը առնել, քուրջով պլլել եւ զայն գրկած՝ փութալ ընդ առաջ» :

Կինը առանց ամչնալու ուրիշներու ծիծաղներէն՝ որոնք Թադէի այս խօսքն ու խրատը լսած էին, գրկեց իսկոյն քար մը, պլլեց ծրարեց լաթով եւ խառնուեցաւ բազմութեան մէջ :

Այլ ո՛րքան մեծ եղաւ զարմանքն անոր ու անոնց՝ որոնք այս կնկան այս մանկիկին քարէ պէպէք մը ըլլալը գիտէին, երբ տեսան որ այդ մանկիկը լեզու ելեր եւ կը ճուար անդադար. «Ովսաննա», երբ Յիսուս իր հակառակորդներուն պատասխանած էր. «Եթէ դոքա —Իսրայելացի մանկիկներդ— լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն :«

Այլ Տէրը նայեցաւ Թադէին, որ այս քարէ պէպէքին հեղինակն ու հայրը եղած էր եւ ըսաւ. «Թադէ՛, այդ քարէ ծնուած չօճուխը, քարէ պիտի մեռնի. քարկոծ պիտի ըլլայ, եւ քու ժողովուրդդ

քարէ ծնուած ժողովուրդ, պիտի ըլլայ՝ քարի պէս հաստատուն իր հաւատքին մէջ»:

Բոլոր հին աւանդութիւնները, որոնց մէջ են հին Ցայսմաւուրքն ու Ժողովածուն, միաձայն են թէ այդ պէպէք-քարն էր Սուրբ Ստեփաննոս, որուն կնքահայրն եղաւ Թադէ առաքեալ:

ՎԱՀԱՆ ՎՐ. ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ

*Անգիր Դպրութիւն, Հատոր Բ.*

---

# 6. ՈՏՆԼՈՒԱՅԻ ԱՌԹԻՒ

---

Ամէն անգամ որ այդ արարողութեան ներկայ գտնուիմ, խորապէս կը յուզուիմ. այնքան վսեմ բան մը կայ այդ պարզ գործողութեան մէջ որ մարդ սարսուռ մը կ՚զգայ իր մազերուն տակ ու մտամփոփ կը կենայ, կ՚արձանանայ, կը մնայ ակնապիշ:

Ահեղ, խորազգեցիկ դաս մըն է որ կը տրուի մարդկութեան. — խոնարհութեան դասը, բարեյականի ամէնէն բարձր դասը:

Երբ կը տեսնեմ այն շողշողուն, փառաւորազարդ եպիսկոպոսը, ակնածանօք զգեստներով զարդարուած, ակնախտիղ խոյր ի գլուխ, հովուի գաւազան ի ձեռին, խորանին առջեւ, իր բովանդակ փառքին մէջ, որ կը մերկանայ իր զարդերէն, կը ծալլէ մէկդի կը դնէ իր մեծութիւնը, ու պարզ շապիկով մը գենջակը կը փաթաթէ եւ կ՚երթայ

ժամկոչին առջեւ կը ծնրադրէ ու անոր ոտքերը կը լուայ . . . կը համակուիմ խորհուրդին վեհութեամբը եւ աչքերս արցունքով կը լեցուին ։

Կարելի չէ երեւակայել խրատ մը աւելի ներգործող, դաս մը այնքան ազդու, այնքան ախրող հրամայող, դաս մը վերջապէս Երկնաւոր Վարդապետի արժանի ։

Մարդ հո՞ն է որ գաղափար կ'ունենայ թէ որքա՜ն քաղցր բան է խոնարհութիւնը, որքան պաշտելի է խոնարհ մարդը, մանաւանդ երբ մեծ մարդ մըն է անիկա, մեծ՝ դիրքով կամ տաղանդով ։ Խոնարհութիւնը կուգայ ան առեն ուրիշ մեծութիւն մըն ալ կը դրոշմէ անոր վրայ, հոգիի մեծութիւնը որ բուն մեծութիւնն է, ու պատկառանքը ան ատեն միայն կ'ըլլայ ճշմարիտ պատկառանք ։

Երբ կը տեսնեմ մեր մեծատուններուն մէջ ամբարտաւաններ, հայ ընկերական շրջանակներուն մէջ գոռոզ ու խրոխտ գլուխներ, որ կը փքանան, կը յոխորտան, ու պաշտօն եւ երկրպագութիւն կը պահանջեն ամէն տեղ, Երկնաւոր Վարդապետը կը յիշեմ, խեղճ ձկնորսներուն առջեւ խոնարհած, ու կը մտածեմ թէ, եթէ իրօք մեծ են այդ մարդիկ, ի՞նչ պէտք ունին ամբարտաւան ըլլալու՝ քանի որ խոնարհութիւնը այնքան սիրուն է, այնքան աղէկ կը վայլէ մեծութեան ։

Իսկ երբ կը տեսնեմ parvenuներ որ՝ անոնք ալ ինքզինքնին մեծ մարդ կը նկատեն, որովհետեւ պաշտօնեայ են Ընկերութեան մը մէջ, տուն մը ունին սիւնազարդ քարաշէն, կամ՝ եթէ կ'ուզէք, սեզանաւոր են, վաճառական, կամ պարզ

արհեստաւոր կամ ոչինչ, բայց անպատճառ ուրիշներէն տարբեր խմորէ շինուած ըլլալ կը կարծեն, գիւղին «մեծ»ն են, Թաղին աւագը, եւ կամ մեծ մարդ են պարզապէս. որովհետեւ այսպէս կ'ըսէ տէրտէրը կամ ժամկոչը, չիտակը, բոլորովին ափ ի բերան կը մնամ, եւ բնաւ չեմ կըրնար բացատրել այդ մարդոց ամբարտաւանութիւնը։

Պզտիկներուն քով եթէ ամբարտաւանութիւնը ծաղրելի է, մեծերուն քով անտանելի է, եւ առաջադրուած նպատակին ճիշդ հակառակին կը տանի։

Եթէ մեծերը ամբարտաւան ըլլալով կը կարծեն թէ աւելի յարգանք կը ներշնչեն, կամ աւելի բարձր մակարդակի մը վրայ տեղաւորած կ'ըլլան ինքզինքնին, թող հաւատացած ըլլան թէ չարաչար կը սխալին. ընդհակառակը, շատ կը պզտիկնան, խոտելի միայն կը դառնան ու վերջապէս չեն սիրուիր։

Մեր հարուստներուն կամ մեծերուն մէջ ոմանք կան որոնց եթէ տունը երթալու ըլլաք, անմիջապէս կ'զգաք թէ ինչ ամբարտաւան մարդու մը հետ է գործերնիդ. հանդիսաւորութիւնը, ծանր շուքը իրենց հաւատալիքն է. դաւանանքի մը խորարմատ համեմատութիւններուն տարուած կը տեսնէք կը նշմարէք այդ ծանր շուքը, դրան զանգակէն սկսելով մինչեւ ընդունելութեան սրահը, ու որքան ալ պատուեն մեծարեն զձեզ, չէք կրնար սիրել, չէք կրնար հաշտուիլ այդ ծանր շուքին հետ որ կը ճնշէ ձեր վրայ, եւ զոր դուք բոլորովին անելորդ կը նկատէք։ Ձեզի այնպէս կ'երեւայ որ

աւելի պիտի սիրէիք այդ մարդիկը եթէ չուքը, ծանր կամ թեթեւ, ազնիւ կամ ո՛չ, վերնար մէջտեղէն բոլորովին, ու պարզ անսեթեւեթ երես մը տեսնէիք ձեր առջեւը։ Կը նեղուիք, կը զայրանաք վերջապէս ու չէք ուզեր յարաբերութիւն ունենալ այդ մարդոց հետ։

Մինչդեռ անդին ուրիշներ կան, պետական, առեւտրական եւ այլ ասպարէզներու պատկանող անձնաւորութիւններ կամ անձեր, որոնց հետ ընտանեբար կը նստիք, կ'ելլէք, կը խօսիք, ու միշտ անկեղծ գոհունակութեամբ մըն է որ կը զատուիք քովերնէն. կը սիրէք զիրենք ու կը կապուիք հետերնին. ատոնք այն կարգէն են որ համոզուած են թէ նկարագիրը, յատկութիւնն է որ կը սիրուի մարդուն քով՝ պարզ, անփառաւունակ, ու ո՛չ թէ չուքը կամ հանդիսաւորութիւնը. եւ եթէ յարգուիլ կը փափագին, ինչ որ ամէն մարդու իրաւունքն է, ամէն բանէ առաջ կը մտածեն արժանի ըլլալ յարգանքի. բայց միւսները խունկ ու մոմ կ'ուզեն, այո՛, խունկ ու մոմ՝ որ պէտք է անպատճառ իբրեւ բանի հարկ մը մատուցուի իրենց։

Ամէնէն զարմանալին ո՞ր տեղ է, գիտէ՞ք. երբ այդ տեսակ մարդոց դէմ, արժանապատուութեան խորունկ ըմբոստութեամբ մը կռնակ կը դարձնէք, երես չէք տար, կարեւորութիւն չէք ընծայեր, ան ատեն ալ իրենք ձեզի կ'ամբաստանեն իբրեւ . . . ամբարտաւան, իրենք կ'սկսին խոնարհութեան քարոզ կարդալ ձեր գլխուն։

Խոնարհութիւն չէ անոնց պահանջածը այլ ըստորնութիւն, որ ամէն մարդու գործ չէ։

Եւ երբ իրենք «ամբարտաւա՜ն» կ'ըսեն, «հըպարտ» ըսել կ'ուզեն։

Բայց հպարտութիւնը բոլորովին տարբեր բան է ամբարտաւանութենէն։ Հպարտութիւնը առաքինութիւն մըն է որ նուաստութենէն կը խորշի, ըստորնութեան չի զիջանիր։ Իսկ ամբարտաւանութիւնը մոլութիւն մըն է որուն ուղղակի հակառակն է հեզութիւնը, համեստութիւնը։ Հպարտը կը խոնարհի, բայց չի ստորնանար. իսկ ամբարտաւանը չի սիրեր խոնարհիլ, բայց ի պահանջել հարկին գիտէ ստորնանալ։

Ո՜հ, ատելի են այդ մարդիկը, եւ անտանելի, մանաւանդ երբ կեղծ համեստութեան ձեւերն ալ առնեն երբեմն, վիզերնին կքելով, ձայներնին ցածցնելով կամ քամակնին ծռելով. — համոզմամբ ամբարտաւան հոգիներ որոնց էութիւնը միշտ կը մնայ ամբարտաւան։

Ինծի համար՝ բոլոր այդ մարդիկը կը հաւաքէի սա Ռոմլուայի առթիւ, եւ . . . մէյմէկ զենջակ կը կապէի մէջքերնին ու կ'ըսէի. Լուացէ՛ք նայիմ սա ժամկոչին ոտքերը։

ՅԱԿՈԲ ՍԻՓԱՄԱՃՈՒԼԵԱՆ



# 7. ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ԳԻՇԵՐԸ



*Եկեղեցիէն նոր դարձած՝ դեռ վրաս կրելով խունկի քաղցր բուրումը, ու հոգիիս մէջ՝ հաւատքի նորակաթ անուշահոտութիւնը՝ անցեալ Զատիկներու վրայ կ'երազեմ, թողլով միտքս թափառական՝ յիշատակներուս այս քաղցր երկնքին մէջ։ Այս տարի ճրագալոյցի գիշերը կ'անցընեմ բոլորովին տարբեր մթնոլորտի մը տակ, սենեակիս մէջ կղզիացած, անձայն, եւ մենութեան ամբողջ տխրութեամբ, կաղին նուաղկոտ լոյսին մէջ, ուր երազներ կարծես կը հալին դողդղալով։*



*Ու կը յիշեմ մանկութեան Զատիկը, այն վարդագոյն, ոսկեզօծ օրը, ուր առտուն կանուխ ելած, զմայլումով լի նայուածքս հագուստիս վըրայ, եւ գլուխս ալ լեցուն՝ քաղած սաղմոսներովս զորս չէի հասկնար, ուրախ զուարթ կ'երթայի գաւառիս ընտանի մատուռը, կարմիր հաւկիթը գըրպանս։ Հոն, Տէր Պապան, աղուոր մետաքսներու մէջ, փողփողուն արեւու մը պէս, ոսկի ամանին մէջէն բերնիս մէջ կը դնէր լուսանիւթ վարդ փըշուրը, որուն անհուն ճառագայթումը կը կրէի ներսս ամբողջ օրը՝ միամիտ հրճուանքով մը լեցուած։ Ու այն օրը կատարեալ սուրբ մը կը կարծէի ինքզինքս, հաւասար ձիւնի պէս ճերմակ ու լոյսի պէս մա-*

քուր հրեշտակներուն, որոնք կապոյտ անուշ երկինքէն քիչ մը վերսրբազան երաժշտութիւնը կ'օրհներգեն՝ Աստուծոյ առջեւ ծնրադիր։ Եւ սուրբ կ'ըլլար այն օրը ինչ որ կ'իյնար մատներուս տակ, կամ կը դպչէր բերնիս։ Գաւաթս չէր լուացուեր։ Մայրս՝ երկիւղած՝ կը թափէր ջուրիս կամ գինիիս մնացորդը, տեղ մը զոր մարդկային ոտքը չի կրնար պղծել։ Այդ օրը յանդիմանութիւնները կը դադրէին այլեւս, աւելի կը սիրէին զիս, աւելի գուրգուրանքով, ու կերպով մը յարգանքով ալ կը վարուէին հետս։ Օհ, սուրբ ու անբիծ ըլլալու երանութիւնը, որուն գործնական վարձատրութիւնն ալ կը վայելէի։ Եւ կը մտածեմ թէ մինչեւ այսօր, այդ թարմ տպաւորութիւնը չէ՞ որ ուշաճանալով սիրտիս մէջ՝ հիւսած է առաքինութեանց միակ փունջը, թէեւ տժգոյն, զոր կը կարծեմ միշտ անթառամ պահել, եւ որ այս տարի իմ պանդուխտ եկեղեցիիս մէջ քանի մը նոր ծիլ արձակեց, երբ օտար երկինքի մը տակ, քաղաքակրթութեան ամէնէն դըրական, վերջնական արտայայտութեանց մէջ, լսեցի քաղցր ու խանդոտ շարականները իմ նախահայրերուս՝ կարծելով տեսնել հին քրիստոնեայ դարերու խորհրդաւոր վերզարթնումը։ Տարօրինապէս քաղցր հրապոյր մը ունի ժամերգութիւնը պանդխտութեան մէջ։ Եկեղեցին՝ պանդուխտ ինծի պէս ու իրեն եկած քառասուն ազգակիցներու պէս, շատ անշուք է եւ անզարդ. քանի մը ծաղկամաններ, ու ատոնց քով նշանձեւ դեղին բոծերը աշտանակներուն, որոնք իրենց մելամաղձոտ
ները կը կաթեն հանդարտ ու անշարժ։ Զկայ

գմբէթ մը, բարձր ու խուսափող։ Բայց այս աղքատութեան, պարզութեան ու ստուերին մէջ, քրիստոնէութեան գետնափոր եկեղեցիներուն զգայութիւնը կ'ունենամ, ու միեւնոյն տաք հաւատքը հոն խմբուող երկնատենչիկ հոգիներուն։ Դպիրներու դասը ժողովուրդն է հոս։ Չկայ մանկութեան ձայնը, որ միշտ զուարթ թրթռում մը ունի։ Այլ ամբողջ բամբ ձայներու այս համերգութեան մէջ, որ կը թուայի ծանրոլոր ու դանդաղ, աւելի պաղատագին կը բարձրանայ հաւատացեալներուն աղօթքը, անհուն հառաչանքի մը պէս որ խունկի լայն ծածանումներ ունի։

Վեցուկէսին կ'աւարտի ժամերգութիւնը, ժողովուրդի պարզ ու սրտաբուղխ ժամերգութիւնը, զոր հոս անհատնում պնակները չեն վրդովեր այլ եւս։ Դրամի ձայնը չկայ։ Կատարեալ խզում է աշխարհային կեանքին ու խանդոտ, տարփագին սլացքը մարդկային հոգիին դէպ ի աննիւթական իրերը։ Մետաքսներ, ոսկի աշտանակներ, փողփողումներ, պայծառութիւններ ալ չկան։ Մթնոլորտն իսկ տարբեր աշխարհէ մը կարծես կ'իջնէ, աղօտ ու թաղծագին, հալեցնելով իր մէջ իրերն ու չրջագիծերը ու անուրջի գոյն մը տալով ամենուն, անհունապէս քաղցր ու սփոփող անուրջի մը, որ հետզհետէ հոգին ալ կ'ողողէ։ Խորանը վարագուրուած է կապոյտ, թափանցիկ կտաւով մը, զոր կը ծակծկեն դեղին կէտերը, ետին վառուած աշտանակներուն՝ գիշերուան լուսազարդ երկինքի մը տպաւորութիւնը թողլով։ Իսկ խորանին վերեւ, եռանկիւնաձեւ սաւառնող ճառագայթումին վրայ

*կ'իջնէ հանդարտ սպիտակ լոյս մը, մաքո՛ւր՝ որ երկինքին գուժի ժպիտը ըլլալ կը թուի։*

*Երբ դուրս կ'ելլենք, կապոյտ մառախուղը որ տարածուած է ամէն տեղ այս յաւիտենապէս արցունքոտ երկինքին տակ, եկեղեցիի խունկի ամպն է կարծես, աղօթքներով սարսուռն՝ որ կը տաւանի դէպ ի վեր։ Ու կ'երթամ սեննակս, հոգիս լեցուած այդ խունկին անուշութեամբը, ու հաւատքին ճառագայթած քաղցր սփոփանքովը. եւ կը կարծեմ դեռ լսել նուագաւոր արձագանգը սուրբ ու միամիտ օրհներգութիւններուն, որոնք դարերու մէջէն կուգան տաք ու բաբախուն։*

Ա. ՇԱՔԼԵԱՆ

# 8. ԽԹՈՒՄԻ ԻՐԻԿՈՒՆԸ ԳԻՒՂԻՆ ՄԷՋ

*Մեծ Պահքի խորհրդաւոր ու Աւագ շաբթուան տխրաբոյր օրերէն վերջը, ի՜նչ ցնծալիր իրիկուն է սա՝ Զատկի մեծ վաղորդայնին դուարթաբեր երկունքովը բռնած։*

*Մաքուր՝ անքիծ հորիզոնին վրայէն, արեւը իր վերջին շաղերը կը կոխէ ու կը ցանցնէ սա դէմի բլրակի դալարիքին վրայ, ուր երիցուկները՝ կակաչներու հետ կը գորգեն կուշտը լերան եւ օդը կը բուրումնաւէտէ հոտը եղրեւանիին որ երէկ Յիսուսի թաղումը պսակեց եւ հէգ յուղայենիին՝ որ կարմիրներուն մէջ շղարշուած է, խորհրդանշելով*

դարերն ի վեր զղջումը ապերախտ աշակերտին՝ առանց յաւիտենական դատապարտութեան մը դատակնիքը կարենալ սրբելու եւ կամ դարաւոր ապաշխարանքով մը իր մեծ վարդապետին գթած սիրտը ցնցելու ։

* * *

Գեղջուկ հաւատացեալը, ամբողջ եօթը շաբաթ, ժամուն փակ խորաններուն առջեւ, խաչելութեան վսեմ տեսարանը պարզող պատկերին դէմ իր ապաշխարանքին, զղջումի աղօթքներովը միացած՝ անոր առջեւ վառուած կանթեղին պէս ։ Մեղքի ռամիկ՝ այլ խորունկ գիտակցութեամբ, եւ հաւատքի տաք շունչովը խնկաւէտուած զղջումի ինքնաբեր մարմաջով մը, մտիկ ըրաւ չա՛տ օրեր, մինչ գիւղական տէրտէրը կ'երգէր Աւետարանը, ձայնի արտասանական սեթեւեթներէ ու ոլորումներէ զուրկ եղանակով մը, եւ իր համրիչին իրարու ետեւէ թափթփող հատերուն նման՝ ներքին հաւատքէ մը լարուած մեքենականութեամբ մրթմրթաց իր զղջման մաղթանքները ու «Տէր Ամենակալ»ը ։

Զղջումի ու ինքնաչարչարումի մասին իրեն ներշնչուած կամ իր ունեցած ըմբռնումով ապաշխարեց, աղօթեց ու պահեց . . . ։ Մերժեց ուտել ինչ որ պիտի կրնար ապաշխարանքի արգելումներուն մէջէն անարատ վերածնող հոգիին փետրաւորումները մեղքի աղտով ձիւթել-կապտել ։ Օրը օրին, ժամին մէջ կամ իր անկողինին մօտ ծնրադիր՝ լացաւ իր մարդկային մեղքերը ։ Վերջին շաբթուն, հաւատացեալի մը համակ տենդոտ յոյզերով ու ձըգ-

տուած հետաքրքրութեամբ հետեւեցաւ իր Տէրոջը՝ Յիսուսի վսեմ վայրկեաններուն, Բեթանիայի արմաւենիներով ցանցնուած ճամբայէն մինչեւ Գողգոթայի բարձունքը։

Կնիկ մարդիկ իրենց գերանուրբ զգայնութեամբ եւ անսահման հաւատքին եւ պաշտելութեան մէջ, Լացի Գիշերը, կտակի ժամուն, Աստուածամօր ու Մագդաղինացիին հետ իրենց աչքին ամէնէն աղի արցունքը քամեցին եւ այդ չցամքած արցունքով եկան համբուրելու ծաղիկներով ու զմուռսով խնկուած Թաղումը Յիսուսին՝ որ իր կեանքին մէջ անուշ համակրանք մը, սուրբ ու կղկաթ համակրանք մը ցոյց տուաւ միշտ Եւայի թոռներուն։

Ապաշաւանքի խորհրդաւոր քօղով մը ծածկըւած Մեծ Պահքի, ու վսեմ՝ երկնային ողբերգութեան մը յիշատակներով անմահացած Աւագ Շաբթուան օրերէն վերջը, ի՜նչ անուշ պահ, ի՜նչ բերկրալիր իրիկուն մըն է աս, Զատկի մեծ վաղորդայնին զուարթաբեր երկունքովը ուռած։

Մաքուր, անաբաւ հորիզոնին վրայ, արեւը իր յետին նշոյլներով կ'ոսկեզօծէ սա հանդիպակաց բլրակին մարմանդները, ուր մոյդ կանաչութեամբ մը, փնջուած կնձնիին վրայ թխկուկ Թռչունը կ'արձակէ իր հեծեծագին աւաչները եւ ուր եղրեւանին իր վայրահակ ծաղկեփունջերով ու յուդայենին իր կարմիր չղարշներուն մէջ կը ծաղկանչեն ամբիծ Հաւատքն ու տարաժամ, դառնապարտ Զըղջումը, երիցուկներուն ու կակաչներուն միջեւ, որոնց վրայ կը ճարակին գառնուկները, մերթ ար-

*ձակելով մայրուն մը, մայրական կարօտով առլի։ Գիւղական մանկտին անոնց մօտ, դալարիքին վըրայ հեշտօրէն կը փռուին, երջանկութեան անհուն ճառագայթի մը մէջ թաթխուած, ու անհագին պոռչտուքներով չէքին կը հանեն իրենց կարմրուկ հաւկիթները։*

*Իսկ գիւղին մէջ գեղջուկը իր ընտանեկան սեղանին շուրջն է, իր հոգին ալ անհուն սփոփանքի ու անբծութեան մը մէջ ծրարուած՝ փետուրէ մը թեթեւ կ'զգայ զինքը, որովհետեւ հաղորդուա՛ծ է ու ազատուած՝ զինքը ճնշող մեղքի բեռէն։*

*- Հիւծած՝ ներգևուած ստամոքսը տակաւ կ'սկսի յափրանալ՝ երբ կը խքէ աւանդական կարմիր հաւկիթն ու կաթնապուրը, եւ կը պատրաստուի վաղուան խնճոյքներուն, մոռնալու համար՝ գինիի բաժակներուն մօտ՝ եօթը շաբաթուան զղջումի օրերը, մեղքերու առատ մթերքով մը հանելու Մեծ Պահքի առջի օրուան ու սկսելու ապաշխարանքի նոյն հեծեծանքն ու ծնրադրութիւնը։*

Գ. ՇԱՀԻՆԵԱՆ



# Ց. ԶԱՏԻԿԸ

Ի՞նչ արժէք պիտի ունենար ուրախութիւնը մարդուն համար, եթէ ճանչցած չըլլար տրտմութիւնը. ի՞նչ աղդեցութիւն պիտի ունենար երջանկութիւնը անոր վրայ, եթէ տառապանքին դառնութիւնը զգացած չըլլար. եւ ի՞նչ նշանակութիւն պիտի ունենար մեզի համար Զատկի տօնը, եթէ Քրիստոսի չարչարանքին, մահուան ու թաղման տխուր արարողութիւնները մեր հոգիին մէջ դրած չըլլային տարտամ ըղձանքը ցնծութեան պէտքի մը, զոր իր յարութիւնը կ'աղդէ համակ քրիստոնեայ աշխարհին: Նոր եւ մեծ բաներու համար մեր ունեցած բնական հակումը, զոր այնքան լաւ հասկցած էր Քրիստոս, լաւագոյն եղանակաւ մը չէր կրնար գոհացնել: Մարդկութեան համար մեռնող ու յարութիւն առնող Քրիստոս մը պէտք էր որպէս զի պաշտուէր, բաւական չէր պատժող Աստուած մը, չանթ ու բոց տեղացող Աստուած մը ունենալ. ներող Աստուած մը պէտք էր, գթած, սիրող, մշտակցող Աստուած մը, որ գերեզմանին աղջամուղջէն անցնէր ու անոր վէմը թաւալէր, որ լոյս սփռէր, կեանք սփռէր, որ ամէն բան ոդեւորէր, եւ մոռցնէր մարդոց տառապանքը, սուգը, արցունքը, իր հրաշքի ու գթութեան բոցափայլումին մէջ: Ու յետոյ հասկնար կեանքի չարչարանքն ալ, նիւթական ու ֆիզիքական տառա-

պանքն ալ՝ հոգեկանին չափ՝ ու հասկնար թէ հացը բաւական չէր ապրելու համար, թէ հաւկիթն ալ պէտք էր, եւ պէտք էր հաւկիթը կարմիր ըլլար որ ուրախանային մեր տղաքը։ Ու գիտնար թէ աղքատը ձմեռէն չ'ախորժիր, ու իր յարութեամբը վերջ տար դժնդակ եղանակին, ու նշենիները ճերմկցնէր, ու տանձենիները, կեռասենիները կանաչներով զարդարէր՝ անուշ պտուղներու խոստումներովը լեցուն. եւ արեւու ճառագայթներ կախէր աղքատին ճեղքռտուած երդիքէն վար, որպէս զի ան ալ հարուստին պէս ցընծար ու հրճուէր եւ աղաղակէր. «Օրհնեալ է Յարութիւն Քրիստոսի։»

Ու պէտք էր Քրիստոսի տօնը ճշմարտապէս համապատասխան ըլլար իր քարոզներուն, պէտք էր որ իր աղքատիկ մանուկները ցնցոտիներով եկեղեցի չերթային այդ բերկրութեան օրը, ու փարթամ աղոց նայելով չնախանձէին. պէտք էր նոր նոր հագուէին, ճերմակներ, կարմիրներ, կապոյտներ կապէին գլուխնին՝ տաճարին մէջ, ինչպէս ծառերը դաշտին մէջ, եւ դառնուկները արօտներուն մէջ նարօտներով պնճնուէին ծիրանի գօտիի պէս։ Ու նորատի աղջիկներն ալ, երբ Անոր մարմինն ու արիւնը ճաշակելու կը ներկայանան, սուրբ սեղանին առջեւ, իրենց սեռին ու հասակին ու սիրտին պէս մաքուր եւ աղուոր հագուած չքուած երթային, որպէս զի մայրերն ալ հրճուէին անոնց վրայ նայելով եւ որպէս զի ամէն մարդ ուրախ ըլլար, եւ ամէն մարդ երջանիկ, քանի որ Մարդ-Աստուծոյ տօնն է։

Եւ ճիշդ ա՛յսպէս զուարթ ու ա՛յսպէս գեղեցիկ յօրինուած է Զատիկը. իր անունը միայն լոյսի շլացուցիչ գաղափար մը կ'արթնցնէ մեր միտքին մէջ, զոր մենք մանկութեան ատեն ստացած ու պահած ենք գուրգուրանքով։ Մեզի համար Զատիկը գերազանցօրէն բարի տօնն է, օրհնող ու օրհնեալ տօնը, ուր ճոխին եւ աղքատին, հիւանդին ու առողջին, սառէն փախցող թշուառներուն, ջերմոցներու բոցին առջեւ յղփացող մեծատուններուն տխուր հակադրութիւնները չեն ներկայանար, ինչպէս Կաղանդի տօնին առթիւ։ Զատկին՝ հիւանդն ալ, չքաւորն ալ, ծերունին ալ, մանկիկն ալ, իրենց ուրախութեան բաժինը ունին բնութեան, սէրի, ողորմածութեան նուէրներուն մէջ. ամէնքն ալ կը ժպտին, ամէնքն ալ կը հագուին, ամէնքն ալ իրենց սեղանը ունին, եւ զիրար կը փնտռեն, ողջագուրելու համար՝ օգնելու, ողորմելու համար իրարու, մոռնալու համար իրենց անցեալ քէնը, ոխը՝ Մարմինի եւ Արիւնի մեծ խորհուրդին առջեւ, յիշելու համար թէ ամէնքն ալ քոյր եղբայր են, մէկ հօր զաւակներ, հաւասար՝ կրօնքի առջեւ, ու սեղմելու համար իրարու ձեռք ու աւետելու համար «Քրիստոս Յարեաւ»ը։

Այն ատեն ի՜նչ սիրտի ջերմեռանդ զեղումով, ի՜նչ խանդոտ եւ սուրբ զգացումով կու տանք մեր ձեռքը մեր բարեկամին, կրկնելով սա սրտաբուղխ ողջոյնը. «Օրհնեա՜լ է Յարութիւն Քրիստոսի», որ երախտագիտութեամբ բաբախուն սիրտերու յաւիտենական արձագանգն է։

ՔՐԻՍՏՈՆԵԱՅ

# 10. ՄԵՌԵԼՈՑԻ ՏՕՆԸ



Մեռելոցի յիշատակը այն սխրալի սովորութիւններէն մէկն է, զոր հաստատած է եկեղեցին քրիստոնէական դարերէն սկսեալ։ Իւղաբեր կիներ որոնց երէցուհին է Մարիամ Աստուածածին, յետոյ Մարիամ Մագդաղենացի, Մարիամ Կղէոպայ, Սողոմէ եւ ուրիշ կիներ, Քրիստոսի թաղման ատեն անուշահոտ խունկերով եւ ազնիւ իւղերով գացին Փրկիչին գերեզմանը, ուստի եւ Իւղաբեր կիներու օրինակին պէս, նոր Սիոնի կիներ եւ աղջիկներ խումբ խումբ գերեզմանատուն կը դիմեն Մեռելոցի օրերուն, խունկով մոմով օրհնելու իրենց մեռելները, եւ անոնց յիշատակը նորոգելու։

Թաղման երկրորդ կամ երրորդ օրը Այգուց կատարելու բարեպաշտ սովորութիւնը կայ գաւառներու մէջ, ինչպէս եւ Քառասնօրէքը, ուր տանեցը կը դիմէ դէպ ի գերեզման, ննջեցեալին ազգականներուն հետ, — հին ատեններ աւելի մեծահանդէս՝ դպիրներն ալ քահանային հետ միասին մեռելական թափօր կազմելով, — ուր հոգեւոր կարգ կը կատարեն։ Իսկ մեռելոցի օրերը սահմանուած են տարելից յիշատակներով, իւրաքանչիւր տաղաւարի երկրորդ օրը, օրհնելու ննջեցեալները։ — Գերեզմանօրհնէքի նշանակութիւնն է աւետել մեռելոց՝ ընդհանրական յարութեան յոյսը, եւ այդ առթիւ ննջեցեալին համար սեղան կը

տրուի, որ հեթանոսական դարերու սովորութիւնը կը յիշեցնէ։

Գերեզմանները ընդհանրապէս ժխորէ հեռու վայրեր են։ Հրեաներու գերեզմանները գետնի տակ եղած կը յիշուին, բայց յաճախ ապառաժի մը քով։ Իսկ քրիստոնէական դարերուն՝ դաշտերու կամ պարտէզներու մէջ են հաստատուած, եւ սիրելիներու շիրիմին գլուխի կողմը ծառեր կը տնկուէին։ Ընտանեկան գերեզմանները հինուց ի վեր մեծ խընամքով պահուած են, քով քովի թաղուած հայր եւ մայր, քոյր եւ եղբայր։ Ս. Գիրքն ալ կ'ապացուցանէ թէ ի՛նչ կարեւորութիւն ունի թաղուիլը «ի գերեզմանի հօր եւ մօր իւրոյ» (Բ. Թագ. ԺԹ. 37)։ Մեռելոցի առթիւ գաւառական գերեզմաններէ կը լսուի «Գերեզմանիս քարին վրայ թափէ' արցունք» ողբին աղաղակը, բայց քրիստոնէական կրօնքը մեղմացուցած է արդէն այդպիսի ողբերը. նոյն իսկ Մաշտոցին մեռելոց ողբերը գործածութենէ բոլորովին դադրած են հիմա, եւ մեռելոցի տօնական օրերուն՝ ննջեցեալներուն համար խունկն ու աղօթքը ամէնէն մեծ նուէրները համարուած են։ Հայ եկեղեցին յօրինած ունի հանգստեան սրտառուչ Շարականներ, Թողունք Մաշտոցի երգերը, որ ինչպէս յիշեցինք գործածութենէ դուրս մնացած են։ Մեր շարականի երգերէն իբր նմոյշ կըրնայ փայլիլ Աստուածածնի ուղղուած մաղթանքը մեր ննջեցեալներուն համար։ — «Լեառն վիմածին, աղբիւր յորդառատ, բարունակ ծաղկեալ, այգի վայելուչ, Սրովբէ հողեղէն, բարունեոյ բանին, տուն տնօրէնութեան տաղաւար հոգւոյն,

տու ծնեալն ի քէն՝ մինչ բարեխօսեա՛ անդադար հայցմամբ շնորհել զթողութիւն մեր ննջեցելոց։»

Մեր ննջեցելոց համար ամէնէն գործածական բարեմաղթութիւնն է «Աստուած հոգին լուսաւորէ», «Լոյս իջնէ գերեզմանին վրայ» կամ «Լոյսը գրկէ» եւ շարականն ալ ատոր նման կ՚երգէ «Լոյս ի լուսոյ մեզ լուսաւորեա՛». այս իմաստով Լոյս բառը շատ տեղ մեր շարականներուն մէջ իբրեւ Աստուծոյ անուն առնուած է։ Հանգըստեան երգերը, կարծես, մեր հին կրօնքի հետեւողութեամբ շարահիւսուած են, եւ կը յիշեցնեն հին կրօնքի հետքեր. — Լոյսն ու Խաւարը, հրեշտակներն ու դեւերը, կեանքն ու մահը։ Հեթանոսութեան դարերու տիպ կը կրէ նաեւ Շնորհալիին «Հաւատով խոստովանիմ» աղօթքէն «Հրեշտակի բարւոյ» հատուածը եւ տակաւին ժողովրդական գաղափարներէն չէ վերցած ամէն մարդու պահապան հրեշտակը, կամ թէ «հացի հրեշտակ» «քունի հրեշտակ», որոնք անշուշտ հեթանոսութեան հետքեր պէտք է ըլլան։ Իսկ լոյսը գերազանց թուիչ մը առած է մեր եկեղեցական երգերուն մէջ, որովհետեւ լոյսէն աւելի պատշաճ բան չկայ ցուցնելու համար ինչ որ սուրբ, փառաւոր, ուրախալի եւ բարերար է։ Հին հեթանոսական կրօնքն ալ այնպէս ընդունած էր լոյս ու խաւար, բարի եւ չար աստուածներու յատկութիւնները։ Պարսիկներու կրօնքը կը վարդապետէր բարիի արարիչը Որմիզդ, որ է լոյս եւ կեանք, չարին՝ Անհրիմանը, որ է մահ եւ խաւար. եւ այս գաղափարը ընդունած էին Հայերն ալ, եւ այժմ հը-

նութեան հետքերէն իսկ կ'երեւան այս համոզումները, ինչպէս է այն հաւատքը թէ Աստուծոյ աթոռը միայն լոյսի մէջ կարող է գտնուիլ՝ այնպէս՝ մեռելներուն կը տրուի լուսահոգի ածականը։

Ա. Տ. Մ.

## 11. ՎԱՐԴԱՎԱՌ

Այն ամէն տօներուն մէջ զորս մեր եկեղեցին կը տօնէ, բո՛ւն տոհմայինը եւ մեր սրտին ամէնէն մօտիկն է Վարդավառը։ Այս տօնը քրիստոնէութիւնը իրեն հետ չբերաւ Հրէաստանէն, ո՛չ ալ յիշատակ մըն է ո՛ր եւ է սուրբի մը ոսկորներուն ձօնուած. օտար ձեռք մը զայն չէ պատուաստած մեր կրօնական զգացումին վրայ։ Գրիգոր Լուսաւորիչ՝ երբ հեթանոսական հաւատքը քանդելով ուզեց քրիստոնէութիւնը կանգնեցնել՝ անոր տեղ՝ հանդիպեցաւ այս անկիւնաքարին որ դիմադրեց ամէն տապարի հարուածներուն. այն ատեն պարտաւորուեցաւ իր նոր շէնքին համար գործածել հինէն մնացած այդ բեկորը. այնպէս որ այսօր բոլոր այդ միստիքական շինուածքին մէջ, հինէն մնացած այդ Վարդավառն է որ իր պայծառ ու առոյգ կենդանութեամբ աչքի կը զարնէ ու հակապատկեր մը կը ձեւացնէ Մկրտութեան, Խաչելութեան, Ծա.ութեան նման խորհրդական տօներուն մէջ։

Եկեղեցին կը կատարէ այս հանդէսը իբրեւ յիշատակ Թաբօր լերան վրայ Քրիստոսի Այլակերպութեան։ Բայց մեզի համար, ժողովուրդին համար, Վարդավառը միշտ տօնն է ամառուան, կեանքի, պարարտութեան. տօնն է այն գեղեցիկ ու միակ Աստուածուհիին՝ որուն մենք Անահիտ կ'ըսէինք, Յոյները՝ Արտեմիս, Լատինները Տիանա եւ որ ամէնուս համար առոյգութիւնը եւ աղուորութիւնը կ'անձնաւորէր։

Քրիստոնէութիւնը ընդհանրապէս լաւ վկայութիւն չէ տուած հին աստուածուհիներուն մասին. ամէնքն ալ, իրեն համար անառակ, լկտի ու խենէշ էին։ Ասիկա ճշմարիտ չէ եւ պարզապէս ուրիշը անուանարկելով՝ բոլոր համակրութիւնները իր վրայ հրաւիրելու դրութիւնն է։ Անահիտ անառակ չէր «Մայր ամենայն զգաստութեան» կը համարուէր իրաւամբ։

Անառակ կին մը չի կրնար տիրել ամբողջ ժողովուրդի մը սիրտին եւ այնչափ հզօրապէս որ անկարելի ըլլայ անոր յիշատակը ջնջել ո՛ր եւ է միջոցով։ Նոյնը կրնանք ըսել միւս ազգերու աստուածուհիներուն համար ալ։

Ս. Աստուածածին իր ընդունած պաշտամունքը պարտական է արիական ցեղերուն հին աստուածներու համար ունեցած խորին յարգութեան։ Եթէ քրիստոնէութիւնը միայն սեմական ցեղին պարգեւ մը մնար, շատ պիտի կորսնցնէր իր բանաստեղծութիւնը։ Տխրադէմ մարտիրոսներ ու դաժան սուրբեր միայն պիտի լեցնէին իր Բանթէոնը։ Ս. Աստուածածին, Մարիամ Մագդաղենացին, Իւ-

դարեր կեանքը՝ արիական ցեղերու շնորհի՛ւն է որ մռայլութենէ ազատեցան ու հեզհեալէ բարձրանալով՝ այդ Բանթէոնին ճակատը գեղազարդեցին կենդանական անուշ դէմքերով։

Այդ անուշ դէմքերն են որ մանաւորապէս մեզի կը սիրցնեն քրիստոնէութիւնը՝ որոնք գորով, գուրգուրանք, փափկութիւն կը խառնեն անոր մէջ, եւ տեսակ մը բանաստեղծական դրոշմ կուտան անոր։

Կրօնքի հիմնադիրները կրնան հրաժարիլ անկէ, որովհետեւ իրենց հաստատել ուզած հաւատքին ճշմարտութեան բացարձակ կը հաւատան. սակայն ժողովուրդը պէտք կ'զգայ հրապուրուելու, յափշտակուելու, ժողովուրդը բոցաթեւ հրեշտակներ, լուսապսակ սրբուհիներ, վարդ ու ճերմակ աղաւնի կ'ուզէ իր կրօնքին մէջ։

Մեր եկեղեցին Վարդավառի տօնին աւթիւ, պիտի երգէ շարականներ Տիրամայր. Ս. Աստուածածնի ուղղուած, Քրիստոսի այլակերպութիւնը պիտի պատմէ։ Մովսէսն ու Եղիան պիտի յիշէ ու հաւատացեալները երկիւղածութեամբ պիտի մօտիկ ընեն, առանց կասկածելու որ բոլոր այդ օտար դէմքերը իրենց սիրտին մէջ տեղ գրաւած են, վանելով անկէ ուրիշ աւելի հին հեթանոսական դէմքեր՝ որոնք նուազ պաշտելի չէին։

Ամէն ժողովուրդ իր տօներուն մէջ ունի այնպիսիներ որոնք հակառակ իրենց կրած կերպարանափոխութիւններուն, միշտ կը պահեն հին դրոշմնին, եւ զարմանալի՛ բան, ժողովուրդը ամէնէն աւելի կը սիրէ իր այդ տօները։

*Մեր մէջ ալ Ցայտնութենէն աւելի, Զատիկէն աւելի, Համբարձումէն աւելի, Հոգեգալուստէն աւելի, Վարդավա՛ռն է որ բուն ժողովրդական հանդէսը մնացած է եւ ամէնէն շատ երգուած ու յարգուած ։*

## 12. ՀԱՅ. ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

*Մեր Եկեղեցիին հակառակորդները զայն Կեսարիայի կամ Եգեսիայի Աթոռներուն հետեւակ կը նկատեն ։ Բացարձակ սխա՛լ է այդ տեսութիւնը ։ Ի՛նչպէս եւ ի՛նչքան որ Արեւմտեան Եկեղեցին հաստատուած է Պօղոս եւ Պետրոս Առաքեալներուն յաջորդութեամբ, եւ Յոյն-Օրթոտոքս Արեւելեան Եկեղեցին՝ Անդրէաս եւ Յովհաննէս Առաքեալներուն յաջորդութեամբ, նո՛յնքան եւ նո՛յնպէս ալ Հայ. Եկեղեցին հաստատուած է Թադէոս եւ Բարթուղիմէոս Առաքեալներուն յաջորդութեամբ ։ Ի՛նչքան պատմութիւն եւ ի՛նչքան աւանդութիւն որ Արեւմտեաններն ու Օրթոտոքսները կարող են մէջ բերել իրենց եկեղեցիներուն Առաքելականութիւնը պաշտպանելու համար, նոյնքան պատմութիւն եւ նոյնքան ալ աւանդութիւն Հայ. Եկեղեցին կարող է մէջ բերել ապացուցանելու համար թէ ինք Առաքելահիմն է ։ Թադէոս եւ Բարթուղիմէոս Առաքեալներն եկած են Արեւելք եւ հայաբնակ վայրերու մէջ քարոզելով՝ քրիստոնէութեան առաջին*

սերմերը հոն իրենք դրած են։ Թադէոս Առաքեալէն հիմնուած է Հայերուն Հայրապետական առաջին Աթոռը՝ Արտազի մէջ, ուր անոր յաջորդած է Բարթուղիմէոս Առաքեալ, յետոյ Ս. Զաքարիա, Ս. Զեմենտոս, Ատրներսեհ, Մուշեղ, Շահէն, Շաւարշ, Ս. Ղեւոնդիոս, Ս. Մեհրուժան, որ ննջեց 260 թուականին, եւ անկէ 41 տարի ետքն է որ Հայերուն Հայրապետ եղաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ, որ չէ՛ թէ Քրիստոնէութիւնն առաջին անգամ բերաւ Հայերուն մէջ, այլ աւելի՛ յարդարեց, տարածեց եւ զօրացուց արդէն գոյութիւն ունեցող Քրիստոնէութիւնը, եւ վերակազմեց Հայ. Եկեղեցին։ Առասպել է Ս. Գրիգոր Լուսաւորիչին Սեղբեստրոս Պապին երթալը։ Իրաւ է որ Արեւմտեան եկեղեցին ալ, Պետրոս Առաքեալէն ետքը, Պապերու անխափան յաջորդութիւն մը ցոյց կուտայ, բայց Պապերու այդ ցուցակը Թ. դարուն կազմուած է, եւ բազմաթիւ մթնելի կէտեր կան այդ ցուցակին մէջ, կրկնումներ, պարապներ, անուան շփոթութիւններ, որոնց լուծում մը տրուած չէ ցարդ։ Եթէ հիմակուան քննադատական ոգին հազար տարի առաջ ի գործ դրուած ըլլար, կարելի չէր ըլլար առաքելական յաջորդութիւնն այնքան անխափան ցոյց տալ Արեւմտեան եկեղեցիին մէջ։ Հետեւապէս, հոն ալ աւանդութիւնը մեծագոյն տեղը կը բռնէ եւ Արեւմտեանները իրաւունք չունին Հայ. եկեղեցիին առաքելականութեան քննութեան մէջ կիրարկելու ա՛յնպիսի մէթոտներ որոնցմով իրենց եկեղեցիին ալ առաքելականութիւնը կասկածի տակ կը մնար։ Այսպէս, Արեւմտեան

եկեղեցին ալ, Արեւելեան Յոյն եկեղեցին ալ, Հայ. Եկեղեցին ալ Առաքելականութեան հաւասար հիման, հաւասար աստիճանի վրայ կեցած են որով մէկը միւսին վրայ գերադասութեան, գերիշխանութեան իրաւունք ամենեւին չի կրնար ունենալ, եւ Հայ. առաքելահիմն եկեղեցին իր ամէն էական վարդապետութիւններն Առաքեալներուն ժամանակէն ժառանգած է եւ իր հիմնական կարգ ու սարքը առաքելադիր են, ինչպէս կը հաստատէ գիտական եւ անկողմնակալ քննութիւնը։

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ

# 13. Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Ինչպէս Քրիստոնէութեան ծագումը աշխարհի ամենամեծ դէպքն է, որ այնքան ազդեցութիւն ըրած է մարդկութեան ճակատագիրին վրայ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ ալ ամենամեծ դէմքն է որ երեւցած է մեր մէջ, քանի որ ինքն է որ Հայերը դարձի բերած է մեծագոյն մասով։ Բաց ի Մովսէսէ, չկայ անհատ մը որ այնքան ազդած ըլլայ ժողովուրդին վրայ, որքան այս Հայրապետը՝ Հայերուն վրայ։ Ատոր համար թէ՛ իբրեւ մեծ նահատակ ու անձնկուն խոստովանող, եւ թէ՛ իբրեւ եկեղեցիի Գլուխ ու Կաթողիկոս, ա՛յնչափ յարգ ու պատիւ վայելած է մեր եկեղեցիին մէջ, որքան հնար էր մարդկային կարողութեան սահմանին մէջ։

Բայց եթէ պատմական քննադատութիւնը չի կրնար ամբողջովին վաւերական ընդունիլ ամէն ինչ որ կ՚աւանդուի Լուսաւորիչին եւ Հայերուն Քրիստոնէութեան դարձին վրայ, այլ ոչինչ բնաւ կը պակսեցնէ անոր արժանիքը, մանաւանդ որ դեռ կարող չէ եղած անվիճելի կերպով զննել ու իրարմէ զատել իրականն ու վիպականը, դրականն ու բնազանցականը, աշխարհայինն ու հրաշալին։ Ուստի, մենք՝ կրօնական աւանդութիւնն ընդունելով այնպէս ինչպէս գիտենք դասական-եկեղեցական ուսման շնորհիւ՝ ըստ այնմ կը խօսինք եւ կ՚ընենք մեր տեսութիւնները։

Ժողովուրդներու միահաղոյն դարձերու ուրիշ օրինակներ ալ կան, բայց, զոր օրինակ Կոստանդիանոս Կայսեր դերը չի կրնար համեմատուիլ Ս. Լուսաւորչի դերին հետ, որովհետեւ թէպէտ ան ալ Քրիստոնեայ դարձաւ եւ Քրիստոնէութիւնը պետական կրօնք ըրաւ 313ին՝ Միլանի հրովարտակով, բայց միեւնոյն ժամանակ, վտանգաւոր պատերազմի մը մէջ խոստացաւ Քրիստոնեայ ըլլալ, եթէ յաղթէր իր հեթանոս թշնամիին (Մաքսենտիոսի)։ Եւ իրօք բռնեց իր խօսքը, վասն զի յաղթեց։ Իսկ Լուսաւորիչ երբեք աշխարհային տեսակէտ չունէր, երբ անհուելի տանջանքներ յանձն կ՚առնէր ի սէր Քրիստոնէութեան, այլ անոր յաղթանակին կը ցանկար միայն հոգեւոր նկատումով։ Նոյնպէս, բոլորովին կը տարբերի Ֆրանքներու Կլովիս թագաւորին եւ իր ժողովուրդին դարձը Քրիստոնէութեան՝ Հայոց դարձէն՝ Լուսաւորչի ձեռքով։ Կլովիս՝ առաջին Քրիստոնեայ կայսրին նման՝ պա-

տերազմ ունէր հեթանոս թշնամիներու դէմ։ Նեղը ինկած մէկ պարագային՝ խոստացաւ ուրանալ մինչեւ այն ատեն իրեն յաղթութիւն տալ չկրցող աստուածները, ու Քրիստոսը դաւանիլ, եթէ Անիկա յաղթական ընէր զինքը։ Իր խնդիրը կատարուեցաւ, ինքն ալ իր խոստումը կատարեց եւ մկրտուեցաւ 496ին։

Բայց Քրիստոնէութեան զօրութիւնն աշխարհական նպատակներու յատկացնել ո՛չ միայն Լուսաւորիչի միտքէն չէ անցած, այլ ընդհակառակը՝ աշխարհ, մարմնաւոր կեանք ու ամէն երկրաւոր բարիք անոր հայեցողական ու վերացական օգուտին զոհել կէտ նպատակի ունեցած են թէ՛ ինքը եւ թէ՛ իր ժողովուրդը։ Այդ պատճառով, երբ Քրիստոնէութեան երեսէն խզում՝ առաջ կուգայ իրենց դրացի ժողովուրդներուն հետ, նոյն իսկ Լուսաւորչի կենդանութեան ատենը, ինչպէս եւ անկէ վերջ ամէն ժամանակ, Հայերը՝ ուրիշ բան չեն մտածեր բայց եթէ փրկել իրենց կրօնքն ու հաւատքը, մոռնալով մինչեւ անգամ Դաւթի նշանաւոր վճիռը՝ «Կեցցէ անձն իմ եւ օրհնեսցէ զՏէր», եւ իբր թէ առանց կեանք ունենալու կարելի ըլլար պաշտել կրօնքն ու հաւատքը։

Այդ միեւնոյն տեսութեամբ էր անշուշտ որ Լուսաւորիչ անխտիր փճացուց ամէն ինչ որ հակառակ էր Քրիստոնէութեան։ Ատոնց ամէնուն տեղ Լուսաւորիչ թողած է մեզի «Յաճախապատում»ը, որ անդրաշխարհային, հոգեւոր կեանքի հիանալի առաջնորդ մըն է ապաքէն, բայց աշխարհային կեանքի ու նիւթական աշխարհի համար բնաւ հրա-

հանդ չի պարունակեր, բայց եթէ զայն ուրանալ, անգոսնել, անտեսել՝ հանդերձեալ կեանքին սիրով։ Եւ Լուսաւորչի ունեցած մեծագոյն դերն այն է՝ որ գրեթէ լիուլի յաջողած է իր նպատակին մէջ, որպէս կը ցուցնէ անցեալ պատմութեան բոլոր ընթացքը։ Վասն զի 1500 տարիէ ի վեր Հայը շրջապատուած ըլլալով տարբեր կրօններէ, միայն մէկ կէտ նպատակի ունեցեր է, այն է պահել իր կրօնքն ու եկեղեցին, բայց եթէ ինչպիսի՛ զոհողութիւններու գինով, Լուսաւորչի մտքէն իսկ չէր անցներ զայդ քննել։ Սակայն չենք կրնար ըսել թէ Լուսաւորիչ ինքն ստեղծեց ու արմատացուց Հայերու սիրտին մէջ այդքան կրօնասիրութիւն, այլ շատ պարագաներէ ստուգուած է թէ նախնի Հայերը՝ ո՛վ դիտէ որքան դարերէ ի վեր՝ եղած են բնականէն շատ կրօնասէր։ Ս. Գրիգոր ուրիշ բան ըրած չէ բայց եթէ պատուաստո՛ղ այդ հնաւանդ կրօնասիրութիւնը Քրիստոնէութեամբ, որուն խորհրդաւոր եւ հրաշալի վարդապետութիւնը շատ յարմար եկած կ՚երեւայ մեր նախնիքներուն, որոնց ազնուական կամ բարձրագոյն դասակարգը, նախ սիրով չընդունեց անմիջապէս համակերպիլ նոր կրօնի աշխարհուրաց ոգիին ու սկզբունքներուն, բայց հետզհետէ ընտելացաւ, վասն զի Ս. Գրիգորի մէկ ճարտար հնարքն ամէն դժուարութիւն հարթեց։ Ս. Գրիգոր ամենամեծ մասամբ նախնի կրօնին Քուրմերը կամ անոնց զաւակները ընտրեց նոր կրօնին պաշտօնեայ, եւ հին տօներն ալ Քրիստոնէական նոր տօներով այլափոխեց կամ անուանափոխեց։ Մինչեւ անգամ գլխաւորապէս այն տեղերը եկեղեցի

ու տաճար կանգնեց ուր որ արդէն վաղեմի մեհեաններ կամ բագիններ կային։ Այնպէս որ հին կրօնէն նորին փոխանցումը՝ անունով միայն կ՚եղեւար, մինչեւ որ հետզհետէ տպաւորուէր։ Բայց ընդդիմութիւն տեսած պարագային ալ չվարանեցաւ Քրիստոսի այս Մեծ Խոստովանողը բռնութիւն բանեցնել, ինչպէս պատահեցաւ գլխաւորապէս երբ ձեռնարկեց Ս. Կարապետի վանքին տեղ եղած կուռքերը կործանել, մեհեանները քանդել եւ անոնց տեղը Յովհաննէս Մկրտիչի մասունքը զետեղելով նոր սրբավայր կանգնել։ Այլ ամէնէն զարմանալին զինքը երբեմն խորվիրապ նետել տուողին վրայ Ս. Լուսաւորչի ունեցած ազդեցութիւնն էր. — իբրեւ հլու հետեւող բռնած էր զայն եւ ինչ որ ըսէր կամ ուզէր, ընել կու տար անոր։ Ահա թէ ինչպէս ամբողջ ազգ մը մէկէն նոր կրօնին կը հետեւի եւ մէկ օրուան մէջ քանի մը միլիոն մարդիկ մէկէն կը մկրտուին։ Այն դարերու մէջ մանաւանդ՝ ինչ որ ուզէին գլխաւորները, նո՛յնը կ՚ուզէին եւ կ՚ընէին նաեւ ժողովուրդները։

Իսկ թէ ահռելի տանջանքներ կրեց մինչեւ այդ արդիւնքն ունեցաւ, չենք ենթադրեր չգիտցող հայ մը, որպէս զի պատմենք։ Միայն կը բաւականանանք ըսել թէ երբեք անձ մը չէր կրցած իր պաշտօնը այնչափ արժանաւորութեամբ, անձնուիրութեամբ ու առաքինութեամբ կատարել՝ որքան իր Լուսաւորիչը, որմէ աւելի քաղցր ու պանծալի տիտղոս չէր կրնար հնարուիլ եւ շնորհուիլ աւելի արժանաւորագոյնի մը։ Իր ամէն մէկ տօնին առ-

թիւ, կ'արժէ որ ամէն Հայ անգամ մը անդրադառնայ թէ ի՛նչ մեծ գործ կատարեց Լուսաւորիչ մեր մէջ։ Մենք մէկ ընդհանուր ստուերագիծն ըրինք միայն։

Մ. ՆԱԹԱՆԵԱՆ

# 14. ՍԵՊՈՒՀ ԼԵՌԸ ԵՒ ԳԻՇԻ ԾԱՌԸ

## Ս. ԳՐՈԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉԻ ՆՇԽԱՐՆԵՐՈՒՆ ԳԻՒՏԸ

*Սեպո՛ւհ, «Գերագանց» լեռին մաքուր եւ ջինջ բարձունքներուն վրայ ամփոփուած, առանձնացած էր ան։ Հսկայ գործունէութիւնը, ամուր եւ խորունկ հետք մը ձգող քայլերով յաջողցուած ու արդիւնաւորուած գործունէութիւնը, փոխանակ աշխարհի փառքերու մէջ մղելու զԱյն, վարած տարած էր լեռներու մենութեան։ Ցողնած մարմինի մէջ խայտացող լո՛յս, սո՛ւրբ եւ սեպուհ հոգիի մը արտայայտիչն է մենաւոր կեանքը։ Ա՛լ հոն հասած էր Լուսաւորչի կեանքին վերջալոյսը։ Ատեն ատեն կ'առանձնանար։ Իր ցանցառ այցելութիւնը իրմով լուսաւորուած Հօտին ու Եկեղեցիներուն, կենդանի միջօրէին մէջ խաւարումէն նոր ելած արեւին ազդեցութիւնը կ'ընէր։ Ա՛յնքան ցանկալի էր Անոր տեսքը. ա՛յնքան պաշտում կար Իրեն համար։*

*Կրօններու պատմութեան մէջ չեմ յիշեր դէմք մը, տիպար մը, որ անոր չափ յամառած ու յաջողած ըլլայ իր սկզբունքին վրայ, իր հաւատքին*

մէջ ։ Բովանդակ քրիստոնէութեան ՄԱՐԴՆ է Լուսաւորիչ, որովհետեւ իր գործունէութիւնը վիթխարի է . իր առաքելութիւնը դժպհի անհարթութիւններու մէջ յաջողցուած է կատարելապէս . եւ Աւետարանը, Քրիստոսի խօսքը, կրցած է արմատացնել իր իսկ միջոցներով ։ Այս է պատճառը որ իր գործունէութիւնը շեշտեցի հսկայ, վիթխարի իմացումներով եւ ո՛չ թէ բառերով ։

Իրեն պէս սեպուհ՝ լեռը՝ միանձնութեան տենչալի վայրը եղած էր ։ Այրերը, ծերպերը, սորերը ու քարանձաւները կարծես շատ նեղ էին Լուսաւորչի լուսաւոր էութեան ։ Բազօղեայ, ծառերու շուքին տակ շնչուած կեանքը անուշ կուգար իրեն ։ Ծիշդ Յիսուսի պէս, Ջիթենիներու Լեռը, ձիթենիի ծառերը կը հրապուրէին անոր անպարոյր հոգին ։ Բայց Սեպուհ Լեռը ձիթենիներով ողողուած չէր ։ Ցորեկուան հովը, գիշերուան զովը, երկինքին բիւրալոյս կազմուածքը, լուսնակին նազանքը՝ ներշնչող, մխիթարող զօրութիւններ են իրապէս պարտասած մարմիններու համար ։ Մեծ գործերու մէջ յաջողած մարդը ուրիշ կերպով չի կրնար մխիթարուիլ ։

Լուսաւորիչ այդ մարդն էր Սեպուհ լեռին միանձնութեան մէջ ։ Շա՛տ տարօրինակ կ՝երեւայ այդ կեանքը անոնց, որոնք մեծ մարդիկը տարբեր վախճանի մը մէջ տեսնել կ՛ուզեն ։ Այդ կեանքը, սակայն, տարօրինակ չէ՛ . իր յաջողցուցած գործին պէս աննման է ։ Եւ արդէն ո՛չ միայն իբր ԼՈՒՍԱՒՈՐԻՉ, այլ մա՛նաւանդ իբր ՄԱՐԴ ալ՝ Ս. Գրիգորին բոլոր կեանքը աննմանութիւններու հա-

մայրիք մըն է։ Այս խրողութիւնն է որ Լուսաւո-րիչը կը զատէ հասարակ մահկանացուներէն։

Հեռո՜ւ առտնին տաղտուկներէ, հեռո՜ւ քաղ-քենի աղմուկներէն, Լոյսի Սիւնը կ'առկայծէր Սեպուհի լոյսերուն եւ բոյրերուն մէջ։ Աղօթքնե-րու ծուխրուած՝ կ'զգար իր մարմինին մահացումը։ Անոնք՝ որ ոլորտած են Սեպուհի պէս սարերու վը-րայ, մայիսի մէջ, կ'ըմբռնեն լեռներուն հմայքը։ Բնութիւնը սիրելու համար ամենակարեւոր պէտք մըն է լեռներու կեանքը։ Վայրի բուսականու-թիւն՝ իր բոլոր կողմերով կենդանացած՝ կը տիրէ լանջքին խորերը։ Չես ուզեր իջնել այդ բար-ձունքներէն։ Վարի կեանքը տափակ, երկրաքարշ կու գայ մարդուն։ Տերեւախիտ-թեղօշ մը, բարձ-րաբերձ կաղնի-մը, շնորհագեղ գիհի մը՝ սարաւոյ-թէ մը աւելի կենսաւէտ, հանդարտիկ բնակարան մը կ'ընծայէ իր հովանիով։

Լուսաւորիչ իր հանգիստը, ըստ աւանդութեան, գիհիի մը շուքին տակ կը գտնէր․ Իր յաւիտենա-կան հանգիստն ալ գիհիի փորոգին մէջ գտած էր Ան։

Ո՞վ կրնայ երեւակայել ա՛յդ խաղաղիկ նինջը Մեծագործին՝ ծաղկեալ ծերութեան մը պատկա-ռելի եւ վեհաշուք կերպարանքին վրայ եւ այս ամէնքը ծառի մը շուքին տակ։

Հարստութիւն, կալուածք, տուն տեղ, ա-պարանք, ագարակ, ամէն բան ունէր Ան դաշ-տահայեաց բլուրին վրայ։ Այս շքեղութիւնը, այս ճոխութիւնը՝ Լուսաւորչի համար չէին։ Ամէն բան ունէր Լուսաւորիչ, բայց բան մը չունէր՝ Մեծ Ա-

*ուրախալին բացատրութեամբ ։ Թռչունները ունէին իրենց բոյները , աղուէսները՝ իրենց որջերը · բայց Լուսաւորիչ իր գլուխը դնելու համար որոշ տեղ մը չունէր Յիսուսի պէս ։ Գիհի ծառին փորոտը վերջին տեղը եղած էր Անոր եղծանելի մարմինին , երբ իր ունեցածներէն դուրս՝ աշխարհ մը կար , որ պատրաստ էր ասպնջական ըլլալու իր Լուսաւորիչին ։*

*Ոչ ոք տեսաւ անոր վերջին վայրկեանը , ո՛չ ոք լսեց անոր կտակը , ո՛չ ոք փակեց Անոր աչքերը ։ Սարի մարդիկ , հովիւները , լաւ եւս հովիւ մը միայն տեսաւ անշնչացած մարմինը Անոր՝ գիհիին ներքեւ · չյանդգնեցաւ մօտենալ · քարերով պատուար շինեց ծառին շուրջը , որ գիշակեր թռչուններ եւ կենդանիներ ա՛լ չմօտենան Անոր ։*

*Հովիւնե՛ր · այո՛ , միշտ հովիւներ են որ կը վայելեն ամէնէն տենչալի տեսարանը · ըլլայ Բեթղեհէմին գիշերուանը , ըլլայ Սեպուհին ցորեկուանը , ըլլայ նոյն իսկ՝ աւելի հին անցեալի մը մէջ՝ Հովիւ-Մարգարէին տեսածները Սինայի վրայ ։ Հովուական կենցաղի պարզութեան մէջ խորհրդաւո՛ր հանդիպումներ ։*

*Սեպուհի շինական հովիւը՝ Քաջ Հովուապետը գտած էր ։ Վազեց , լուր տուաւ քաղաքին · գըտնուած էին Լուսաւորչին նշխարքը ։*

*Ա՛յն ատենէն ի վեր գիհի ծառը մասնաւոր պատկառանքով մը օժտուեցաւ ։*

*Համշէնցիք կը պահեն Arsը̀ ( = Գիհի )ին պատկառանքը ։ Հասարակ ծառի կամ փայտի պէս չեն գործածեր զայն ամէն տեղ ։ Կը գործածեն պոցիչ ( = Ջուրի տակառիկ ) եւ սիւն եւլն · շինելու , ո-*

*բովանդակ Լուսաւորիչը ա՛յդ ծառին փորոգին մէջ վախճանած է։ Սիրո՛ւն աւանդութիւն, իմաստալի՜ց զրոյց, ի՛նչ ալ ըլլայ՝ Լուսաւորիչը յիշեցնող պարագայ մը՝ չինական խաւերու մէջ։*

*Իսկ Սեպուհը, Լուսաւորիչի ամբողջ պատմութիւնը կը մարմնացնէ։*

*Պլուզ Վարդապետը, Յովհաննէս Երզնկացին, սրբազան թափով մը Ս. Գրոց ամէնէն նշանաւոր լեռներուն վրայ կ՚ոստոստէ. քով քովի կը բերէ զանոնք Սեպուհին հետ համեմատելու։*

«Լերինք ամենայն այսօր ցնծացէ՛ք
Ընդ մեծապայծառ փառսըն Սեպուհոյ,
Քանզի ի նմա բնակեցաւ
Սուրբըն Գրիգորիոս, Սիւն Լուսոյ...:»

*Դուն լոյս ես, ո՛վ «վարդ Կարմրերփեան», թէեւ «ի փշաբեր» արմատէն ծաղկեցար. բայց՝ ո՛չ Գիհիին փորոգը, ո՛չ ալ Մանեայ այրը, ատոնք չեն Քու շիրիմդ. սիրտերու մէջ կը հանգչիս դուն ու չե՛ս մեռած։ Աննման կեանքդ, աննման գործունէութիւնդ անմահ են Ամենամեծ Լուսաւորչին՝ Քրիստոսի անունով հիմնած Եկեղեցիիդ մէջ։*

*Տիպար Հովիւն ես, անվկանդ Քարոզիչը, անխոնջ Վարդապետը, արթուն Հայրապետը. Ծնունդըդ ու Սնունդդ համակ լոյս, եւ ԼՈՒՍԱՒՈՐԻՉԸ մեր Եկեղեցիին։*

*Օրհնեա՜լ ըլլայ գործդ. օրհնեա՜լ յիշատակդ ալ։*

ԲԱԲԳԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ



# 15. ՆՈՒԻՐԱԿԱՆ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐ



Քրիստոսի 995 թուականին (տոմարի ՆԽԴ. ին) Հոգեգալստեան տօնի շաբթուն Մուշի Ս. Աղբերիկ վանքը հեռուհեռէ կը լեցուէր հաւատաւոր ուխտաւորներու բազմութեամբ, որ երթալով կը խռնուէր։ Արդէն շէնքը անբաւական էր զանոնք ընդունելու։ Վանքին մէջ կը պատսպարուէին հեռաւոր քաղաքներէ ու գաւառներէ հասած ազնուական ընտանիքներ միայն, իսկ ջերմեռանդ ժողովուրդը՝ ինչպէս ամէն տեղ, հոն ալ բացօթեայ կը մնար. բակերուն մէջ՝ քարերուն վրայ, պուրակներուն մէջ՝ կանաչներուն վրայ։ Ուխտաւորներ կային հեռու եւ մօտիկ գիւղերէ, դաշտէն ու սարէն։ Վանքին վանահայրն էր Տ. Եղիշէ Արքեպիսկոպոս։ Ինքն ալ ունէր իր ուխտաւոր հիւրերը, որոնց մէջ ամէնէն աչքառու դէմքն էր՝ մօտիկ թեմի մը Աւագերէցը՝ Տ. Բարիկ քահանան, որ ընտանիքով մէկտեղ ուխտի եկած էր։ Արժանայարգ Աւագերէցը հինգ զաւակներ ունեցեր՝ հինգն ալ մեռեր էին։ Անպտուղ կը մնար ամոլը։ Ժողովուրդը՝ գիտուն թէ անգէտ՝ ամէն այս տեսակ պարագաներուն՝ հոգեկան զգացումներու միջոցաւ՝ սրբութեանց կ'ապաւինի։ Սուրբ Աղբերկայ կեանքի փայտին հրաշագործ համբաւը գեղէ գեղ իրենց հասեր էր։ Երէցն երեցկինը ուխտեր էին, եթէ զաւակ մը ծնանի իրենց Աղբերիկ երթան՝ ու

որդեծնութիւնը հոն տեղի ունենայ, որպէս զի անոր ծնունդը օրհնուի, նուիրագործուի։ Անոր համար եկած էին։ Երէցկինը ծունգ գետին զարկած եւ արու զաւակ մը աշխարհ բերելով նուիրեր էր Կեանքի Փայտ Ս. Նշանին։ Այս ծննդաբերութիւնը ուրախութեամբ ողջունուած էր Տ. Բարեկ երէցի ամէն բարեկամներէն։ Տղան հոն մկրտուած էր կնքահայրութեամբ Տէր Եղիշէ եպիսկոպոսին, որ անուանադրեր էր զայն Եղիշէ։ Մանուկն ու ծնողք դարձեր էին իրենց տեղը։

Գիւղացիներէն ոմանք իրենց հիւանդները, ցաւագարները կը շարէին Ս. Խաչի անցնելիք ճամբուն վրայ, ոմանք ցորենի օրանները, այգիի բերքերը, ուրիշները՝ տաւարներու, ոչխարներու հօտեր, նախիրներ կը բերէին, որ օրհնուին, որ զերծ մնան պատահարէ, ցաւէ-չարէ։ Կ'օրհնուէին ամէնքն ալ։ Ամէնէն ջերմագին դիմումները տեղի կ'ունենային՝ անպտուղ ամուլներէ եւ ճամբ-եղուկ անդամալոյծներէ, առաջինները՝ արհամարհուած կիներու դասէն, եւ երկրորդները՝ մերժուած ընկերակցութենէ՝ իբրեւ անբուժելի ախտավարակներ։ Վերջինները՝ հին ժամանակներ՝ չէին պահուիր ժողովրդեան մէջ եւ կ'ուղարկուէին անդամալոյծներու յատուկ վանքերը, որոնցմէ ծանօթ է այժմ Վանի, Տիրամէր Սուրբ Աստուածածնի վանքը։ Եւ կնիկները՝ մէկը անիծելու ատեն՝ կ'ըսեն. «Տիրամէ՜ր երթա՛ս, Տիրամէ՛ր քշուիս»։ Վաղեմի ի՜նչ գեղեցիկ կարգադրութիւններ եղեր են՝ մանաւանդ կաղերը, կոյրերը, անդամալոյծները, ուրուկները եւայլն, պատսպարելու համար։ Մուշի

դաշտին մէջ կայ մինչեւ հիմայ գիւղ մը Ուռուկճող անուն, որ ապաստանարան եղած է ուրուկներու։

Տէր Եղիշէ Սրբազան գեղէ գեղ Մանազկերտ պտոյտ երթար, նուէր հաւաքելու անոր բարեպաշտ ու փարթամ բնակչութենէն։ Հոն էր նաեւ իր սանահայր Տ. Բարիկ քահանան, որ արդէն կանխած ու խնդրած էր անոր այցելութիւնը։ Տ. Բարիկը եպիսկոպոսէ մը աւելի պատկառելի էր։ Իր սերունդէն շատ մը եպիսկոպոսներ առաջ եկեր էին։ Կարծողներ կան թէ Նշանաւոր եպիսկոպոսի մը սերունդէն ըլլար ինքն ալ։ Սրբազանը շարունակեց ճամբան, ամէն տեղ ժողովուրդի հոգեւոր զգացումներուն առարկայ ըլլալով։ Հացեաց Լ. գիւղին մնաս բարով ըսեր էր, է՛լ մօտիկ էր Մանազկերտն ալ։ Սրբազանը կ'աճապարէր քիչ մը՝ երբ նոյն գիւղացի ծերունի համբայ մը, իր աւեխառ մօրուքով ու 13 մշակներու հետ՝ չոգաւ իր առջեւ։ Ինչ որ ըրին, ոտքի չէր ելնար։ — «Սուրբ մասունքն ու Սրբազանը խնդիրքս կատարեն» — յետոյ, «40 օրավար արտս երկու տարի է որ պտուղ չի տար, 85 անդամէ բաղկացեալ ընտանիքս ողբալահիկկի կարօտցած է, թո՛ղ օրհնէ արտըս որ պտուղ բերէ»։ Եպիսկոպոսը շուարեցաւ, ի՞նչ ըսել, ի՞նչ ընել։ — Ծերունին կրկնեց խնդիրը — «Օրհնութեան ջուր կ'ուզեմ»։ Եպիսկոպոսը վար իջաւ, անհապին տաշտ մը ջուր բերին, կարդաց եւ Ս. Նշանի պզտիկ խաչով խառնեց եւ օրհնեց ջուրը, որ յետոյ սրսկուեցաւ անոնց արտին մէջ։ — Ծերունին արտին արդիւնքին 1/3ը

Ս. Նշանին նուիրեց: Եպիսկոպոսին կարաւանը վերսկսաւ իր օրհնատարած գնացքը:

Մանազկերտի մայր եկեղեցիին համդիպակաց՝ հարաւային կողմը կը գտնուէր երկյարկանի, քարուկիր ու ընդարձակ շէնք մը, որ արեւելքէն ու արեւմուտքէն շրջանակուած էր երկու քառակուսի բակերով, որոնցմէ մէկը բանջարանոցի յատկացուած էր: Կազմածները համակ՝ բաղկացած էին կոփածոյ սրբատաշ քարերէ: Գեղեցիկ էր մանաւանդ նրբաքանդակ քարերէ շինուած պատշգամը, որուն առջեւ կը պարզուէր այլազան տունկերու շղթայ մը եւ անդին, քիչ մը հեռուէն՝ դալարի ուռիներով եզերուած պատանի Արածանին, որ կամկար կը հոսէր բեղմնաւոր դաշտերու մէջէն:

Այս տունը ծանօթ Տ. Թարիկ Ա. քահանայի բնակարանն էր: Առտուընէ ի վեր, շա՛տ կանուխէն, ոգեւորութիւն մը կը տիրէր տան մէջ: Սպասուհիները, մշակները զբաղուած էին՝ ընդարձակ շէնքին ներսը լուալու, մաքրելու, յարդարելու ու զարդարելու: Ամէնէն շատ զբաղումը խոհանոց-թոնրատունին կողմն էր: Հինգ-վեց օճախներ կը մխային տաքցնելով իրենց վրայ շարուած պղնձէ եւ հողէ պուտուկները, ծափկլիկները, եղանները: Տունն էին Տ. Թարիկը եւ երէցկինը որոնք կը հսկէին, մէկը՝ յարդարման, միւսը՝ կերակուրներու պատրաստութեան. — «Երէցկին, ա՛յնպէս մը ըներ, որ ամօթով չելնանք Սրբազան կնքահօր առջեւ»: — Տ. Եղիշէ եպիսկոպոսը հացկերոյթի հրաւիրուած էր հոն, առաւօտեան ճաշը ընելու, ուրիշ հրաւիրեալներու հետ. որովհետեւ Տ. Թա-

րիկը նուիրապէս ալ հարուստ քահանայ էր։ Մէկ հատիկ զաւակ մը ծներ էր — մանկիկն Եղիշէ, որ ծանօթ է մեզի, եւ որ կ'ապրէր ու կը թրթռէր։ Թէեւ դեռ օրօրոցին մէջ, սակայն կրնար ոտքի վրայ տոտլտալ, երերալ։ Օրուան զբաղումի շատութեան պատճառով երէցկինը օրօրոցն ալ փոխադրած էր թոնրատունը, մօտէն հսկելու իր մէկ ու ճար զաւկին, զոր ամենեւին նեղացնել չէին ուզեր։ Բայց տղան հանգիստ չէր քնարանին մէջ, ուրկէ լուս-աշխարհ ելլելու իր ամէն օրուան ժամը հասեր էր։ Գարապ տեղ մայրը աշխատեցաւ խաբըռտել, չքնացաւ. ուստի քակեց անոր պինտբարձը եւ տղան տախտին վրայ սկսաւ խաղալ։ Նոր ոտնագնաց մանուկներու համար դընէլ անուն եռանիւ սայլակ մը հնարուած է, որով տղան ինքնիրեն կրնայ զբօսնուլ։ Մայրը տարած էր զայն խոհանոցին մէկ անկիւնը՝ դնամնիկ-դընելին մօտ։ Մանկիկը կը խաղար։ Մայրը մօտիկցաւ թոնիրին՝ անկէ հանելու խորոված մը, որ սկսեր էր ճենճերիլ։ Նոյն միջոցին տան բոլոր սպասուհիները, մշակները՝ աստին անդին զանազան ծառայութեամբ զբաղած էին, ոչ ոք կար թոնրատունը, բաց ի երէցկինէն, որ յանկարծ վեր կանչուեցաւ, մինակուկ թողլով իր խուժիկը որ առխաղ կեցած էր սայլակին մօտ։ Յանկարծ տղան շարժեց դընելը, որ սկսաւ արագաբար դառնալ ու կլոր շրջան մը ընելով հասաւ թոնիրին մօտ։ Դժբախտաբար՝ տղան քեթրելով՝ ցօփնաւ, ու հաւասարակշռութիւնը կորսնցնելով՝ սայլով ինկաւ թոնիրը։ Երէցկինը խելըռթափ ետ եկաւ, կարծես բնազդաբար գու-

*չանկելով աղէտը։ Սիրտը պայթելու առտիճան կը տրոփէր. «Թոնիրը բաց, արեւս մինակ թողուցի, Աստուածն է՞ր առեր արդեօք...» կը մտմտար։ Ներս մտնելով, երբ տղան ու սայլակը չերեւցան՝ աչքախաւար գետին ինկաւ։ Թոնիրէն ճերճեր հոտը կը բուրէր։ Ոտքի ելաւ եւ դէպ ի թոնիր մէկ վազեց. ու ի՜նչ տեսաւ, սրտապատառ՝ մանկիկը կ՚այրէր։ Երէցկինը նորէն ուշաթափ եղաւ։ Նոյն պահուն էր որ վրայ կը հասնէր ծեր սպասուհին Դուխտիկը եւ անմիջապէս կռահելով աղէտը՝ թոնիրէն կը հանէր գործելի (ածխացած) մանկիկը։ Զարթաւ մայրը, ինքզինքը կրակը ձգելու վրայ էր՝ երբ Դուխտի՛կը կեցուց զինք։ «Տիկին, Աստուածը կանչէ, նշում օր է, Սրբազանն ու Ս. Նշանը հիւր կուգան, խնայէ՛ այս վանք տանը, մի վրդովիր»։ — «Ի՜նչ ընեմ հապա, սա միամօրիս դիակին առջեւը»։ —«Համբերել, Աստուծոյ ապաւինիլ։»— Երէցկինը գիրկն առաւ անշնչացած մանկիկը մինչ Դուխտիկը վայրկենաբար ծաղկնոցէն կը հասցնէր փունջը մամուռ Նարդոսի թփեր, որոնցմով պատատեց երախան եւ փաթթեց օրօրոցին մէջ։ Կա՞ր, չկար, Աստուած գիտէր. որովհետեւ ամենեւին ձէն ու ձիւն չէր լսուեր անկէ։ Իմաստուն սպասուհին՝ օրօրոցը մեծ սրահը փոխադրեց ուր պիտի ընդունուէին հրաւիրեալները։ — Ս. Նշանին յանձնենք, է՛լ դեղ-դեղրօնք չհասնիր անոր, — սրտապնդեց խելայեղ մայրը. ղայն ոտքի հանեց, ճիշտ այն պահուն երբ Սրբազանը իր հետեւորդներով կը հասնէր։ Խեղճ Տէր Բարիկը բոլորովին անկուման էր անցուդարձէն։ Սպասուհին*

վեր հանեց տխրամած ու թառամած տիկինը, եւ Սրբազանի աջը համբուրելէ վերջ Ս. Նշանը առին եւ տարին հանգչեցուցին օրօրոցին մէջ անշունչ պառկած մանուկին վրայ։

Տիկինը՝ հիմայ մոռցած էր տղուն ցաւը, զինքը կ'այրէր աւելի Տ. Բարիկին կրելիք վիշտը, երբ իմանար այս ահռելի արկածը։ Մարելիք կուգար վրան, երբ սպասուհին հարկ տեսաւ հեռացընել զայն սրահէն։ Երէցկինը գնաց, առանձնացաւ՝ աննկարագրելի յուզումներու մէջ, իսկ Դուխտիկը ծունկի չոգաւ ճղօրին մօտ. հազար «տիլակ»-ներով Աստուածային այցելութիւն մը կը խնդրէր «գործելի» մանկան բժշկութեան համար։

Այս տեսակ հացկերոյթներու մէջ՝ գինեխումը սովորական էր։ Ուրախ էին տէրտէրը եւ հրաւիրեալները։ Սրբազանն ալ երբ քիչ մը զուարթացաւ, յիշեց իր սանիկը եւ ուզեց տեսնել։ Ծեր Դուխտիկը չլսելու զարկաւ. չուզելով խռովել տուն ու տեղը։ Սրբազանը կրկնեց, երեքնեց, բայց ապարդի՜ւն։ Տէր Բարիկը վազեց ու երբ ձեռք պիտի երկնցնէր օրօրոցին, սպասուհին էլ զինք չի կրնալով զսպել՝ բարձրաձայն սկսաւ լալ. իրար անցան ամէնքն ալ։ Տէրտէրը գրէթէ սառած էր։ — Ի՞նչ կայ, ի՞նչ կայ, պոռացին չորեք դիմաց. — Ի՞նչ կայ, տղան թոնիր ինկեր, գործելի դարձեր է . . . ըսաւ ձայն մը, խեղդուկ ու հեծկլտեալ։ Երէցկինն էր։ Եպիսկոպոսը անձամբ վազեց օրօրոցին վրայ, կապերը քակած չքակած՝ երախային ճչոցը լսուեցաւ յանկարծ։ Մայր ու սպասուհի վըրայ վազեցին եւ հիացմամբ տեսան, որ բժշկեալ

եւ կենագործեալ էր . . . ածխացած ըմալու քանի մը նշաններ միայն կը մնային փափուկ մարմինին վրայ։ — «Ս. Նշանի հրաշքն է» գոչեցին մայրն ու սանտուն։

— Ս. Խաչի հրաշքն է — կրկնեցին Սրբազանն ու հրաւիրեալները։ Է՛լ ամէնքն էլ լցուած հոգեւոր անպատում ուրախութեամբ՝ սկսեցին գիրար շնորհաւորել. հրաշքին աւետիքը՝ բոլոր տուները օրօրք եղաւ քանի մը վայրկեանի մէջ։ Ամէն մարդ հոն կը խուժէր, հոն հասան նաեւ ուրիշ եկեղեցականներ, որոնք նոյնպէս հոգեւոր այցելութեան եկած էին հոն։ Յաւերժացնելու համար Ս. Նշանին հրաշալիքը, մագաղաթ առին, արձանագիր կազմեցին, ստորագրելով ու կնքելով, եւ այն օրէն Մանազկերտը Ս. Աղբերիկին հոգեւոր թեմն եղաւ։ Ս. Խաչին անունն ալ «Գործել-Յարոյց»։ Անբաւ նուէրներ տրուեցան։ Երէցկինը իր բոլոր զարդերը նուիրեց։ Ազնուական տիկին մը իր ոսկի մանեակը կախեց խաչէն։ Տ. Բարիկը իր ունեցածին կէսը։ Նուիրող նուիրողի եղաւ, ու փառապանծ հռչակուեցաւ Ս. Աղբերիկ-փայտ պատուականն։

Տ. Եղիշէ եպիսկոպոսը վերադարձաւ իր վանքը սիրունիկ՝ առօք փառօք, բեռօք ու կառօք ու Ս. Նշան նուիրագործն ալ «խաչերուն խաչը» տիտղոսը ստացաւ։

ԳԵՂԱՄ

# 16. ԻՄ ԱՂՕԹՔՍ



*Տիեզերքիդ հոյակապ ապարանքին մէջ, — քաղաքներ, աշխարհնե՛ր Անոր սրահ, Անոր պարտէզ՝ անոտնակոխ անտառները վայրենապէ՛ս գեղեցիկ, ովկէանը Անոր աւազան, ու երկինք իր ամպերուն դարգմանակով Անոր երդիք՝ ուսկից կը կախուին արծաթ կանթեղները բիւր բիւր լուսաւորներուդ եւ հսկայ ջահը ոսկի արեւիդ, — ես, կորսուած մը, մոռցուած մը, չնչին հիւլէ մը՝ կաթած միլիոններու խաժամուժին մէջ, պզտիկ, շա՛տ պզտիկ հանգրուա՛ն մը կը փնտռեմ, մարդկային ժըխորէն անջատ խորշ մը կ'ուզեմ, Տէ՛ր, որպէս զի խորանս կանգնեմ հոն, իմ խորանս զղջումի եւ փառաբանութեան, փռուի՛մ առջիդ գետնամած ու Քեզի խօսելու երանութենէս գինովնամ:*

*Քեզի խօսելու համար պէտք էր սակայն որ որոտումը գողնայի ամպ'րուդ չփումին, առնէի լեզուն անտառի զուարթ թեւաւորներուդ, հովերուդ սպառնալիքէն խլէի այն մրմունջը հոգեթով զոր գարնան՝ ցօղենի զմրուխտ հասկերը իրարու կը փսփսան, ու աս բոլորը խառնէի իրար, յօրինելու աղերսի նուագս՝ որ համակ սարսափ ըլլար եւ սարսուռ:*

*Բայց՛, հիւանդ է հոգիս, ու ձայնս՝ կերկերուն: Ինչպէս որ տաճարներու անխնամ գործածումին մէջ երգեհոնը կը յոգնի ու անոր ստեղնաշա-*

րէն բղխող ներդաշնակ ալիքներու հոսանքին հետ՝ ներսէն՝ ցաւագին հռնդիւններ կը թռին մաշուկ, աւրուկ թեւերու, անանկ ալ՝ տկար, անանկ ալ՝ ցաւոտ պիտի ըլլայ ձայնս հիմա։

Ցուցո՛ւր ինծի, Աստուած, ապարանքիդ անեզրութեանը մէջ կանգուն մը տեղ. յատկացո՛ւր ինծի, թո՛ղ մութ ըլլայ հոն, ո՜րքան մութ որ խաւարին հետ չփոթուիմ։ Հերիք է որ պատառ մը երկինք կայ հոն, եւ ահա սեւի կեանքս ես կը մոռնամ։

Աչքերս կ՚ուզեմ վեր առնել, կամարիդ վճիտ կապոյտին եւ Յարդգողիդ կաթին մէջ կ՚ուզեմ լուալ զանոնք, բայց չեմ համարձակիր. աս հզօր լոգանքը չը՛ պիտի տանին բիբերս, բիբերս կիրքոտ, բիբերս մեղքոտ։ Հրաման ըրէ՛ որ լուսագունտիդ պլպլանքը չող ըլլայ, չէ՛ թէ բոց, ու ըսէ՛ ինծի, ի՞նչ կ՚ըլլայ, ըսէ՛ ինծի թէ ե՛ս ալ կրնամ ձայն ունենալ՝ ինծի պարգեւած կեանքիդ վրայօք համար մը տալու Քեզի։ Ո՛հ, կեանքիս այդ համարը, ողորմուկ՝ ինծի լացնելու չափ, ու գթութեամբդ սրբագրուելու չափ անճոռնի։

Ինչ բան որ մինչեւ հիմա չուզեցի ըսել ինծի պէտներուն, — գլխարկ դրած ըլլային անոնք թէ վեղար, — ու ինչ բան որ չկրցայ լսել դեռ ինծի պէտներէն. — Մե՞ղք. է՛հ ուրիշ բառ չունիմ։

Չեմ ցաւիր Դաւիթ մը չծնելուս, անիկա շատ մութ խօսեցաւ իր յանցանքները. ու Նարեկացին, այդ գերազանցապէս միստիկ հոգին, շատ տարտամ ու շատ ալ խրթին գտայ իր ապաշխարի քերթուածներուն մէջ՝ անծայր, անհասանում, անիմանի։

Դիտակով ի՞նչ հարկ նայիլ մեղքերուս, կը հաւատամ թէ փոքրերը ծնունդ են միշտ անհունապէս մեծերուն, ու մեծերուն քով չկայ պզտիկ մը որ իրեն հանդէպ նկատուի անկարեւոր, աննշան։

Կը բաւէ՞ միայն, որ Քու անո՛ւնովդ լեցուած հատորներ ընեմ բարձ. զանոնք գիշեր ցորեկ քաղելուն մէ՞ջ է արդեօք թողութիւնս։ «Հակառակ կողմը դարձուր աղօթագիրքդ ու թող դէպ ի Անմահութիւն» կը պոռայ ինծի՝ ելլող Դարուն մեծ միտքերէն մէկը։ Կը ցնցուիմ այս խոստովանութենէն, ինչպէս ամէն բանէ որ ճշմարիտ է։

Տեսա՛յ վրանին սքեմ նետողները, տա վանք քաշուողները տեսա՛յ ես։ Կեանքէն կանուխ յափրացածներ, բախտէն ապտակուածներ ու լքուածներ սէրէն՝ կը վխտային անոնց մէջ։ Սեւ հագան անոնք՝ հոգինին ճերմկցնելու համար, զանկերնին մարմարիոնին ու փխրաթին քսելէն ցաւցուցին ճակատնին, ինքզինքնին անտա՛նկ հաստ պատերու մէջ բանտեցին ուրկէ աշխարհային ո՛չ մէկ բան կրնայ ներս մտնել. — պատեր, որոնց լուսամուտէն միամիտ զանգակատունը կ'երեւար միայն եւ հեռուներու դաշտանկարն ամայի։

Պէտք է կուրծքը բա՛ց նետուիլ կեանքի կըրկէսին մէջ՝ ուր մրրիկներ անխուսափելի են. զգա՛լ երակներէդ ներս Փորձութեան եռեւեփը եւ անուշ գինովութիւնը Ցանցանքին, ու նո՛յն պահուն «ճը՛գ» գոչել անյողդողդ եւ յետս ընկրկիլ։ Աս ալ յորդորն է, խելօքիկ յորդորը՝ մեղքը գործելէն վերջ դարձի եկող մարդերուն։

«Ցանկութիւնն անցանէ եւ որդն ոչ մեռանի»։

*Հանելո՛ւկ. — երբե՛ք։ Ըսէ՛, Աստուած իմ, թէ սպրդած սխալ մ'է Ս. Գիրքին այս տողը, յայտնութեամբ մը համոզէ՛ զիս, որպէս զի կարելի ըլլայ ինծի՝ փոխել թիւր գնացքն այս կեանքիս, եւ որպէս զի աւելի ուժո՛վ պլլուիմ հաւատքիս բիւրեղ խոյակին։*

*«Մեզ փորձութեան մի՛ տանիր»։ Տղայ հասակէս ցայսօր, վախու ճամբաները զոր մինակս կտրեցի, եկեղեցին ուր մնացի հիւանդ, ճաշի սեղանին տակ կամ գլուխս սնարին դնելէ առաջ՝ միշտ կանգ եմ առեր Տէրունական աղօթքիդ այս հատուածին առջեւ։ Ի՞նչ կերպ աղաչանք է ասիկա՝ չեմ հասկնար։ Կեանք ունենալ ու սո՛ւրբ ապրիլ, չքաւե՞լ բնաւ վտանգի ցանցին որ փորձութիւնն ինք է։*

*Կը նայիմ ետեւ՝ մանկութեանս տարիներուն, որոնց մէջ չէի խնայեր ճանճին կեանքը պատուհանին վրայ, եւ որոնց մէջ թուղթ պատռելու չափ զբօսալի էր ինծի՝ թեւերը փրցնելը ծաղիկներուն վրայ թռչտող խե՛ղճ թիթեռնիկին։*

*Կը նայիմ ետեւ՝ պատանութեանս խենթ օրերուն՝ ուր սիրտեր խոցած եմ կեղծիքով, եւ ուր սուտ խօսիլս հնարք նկատած եմ եւ յաջողիլս՝ մրցանակ։*

*Այդ օրերէն իբր կտակ՝ միտքս պահած ունիմ ցաւագին յիշատակներ։ Ինչ փախչող զուարթութիւնս փոթեր շինեց դէմքիս վրայ, ճակտիս վերեւ ակօսներ պեղեց, ու աւելի քան երբեք սգացի ես իմ մէջս՝ այն անանուն, այն անհաւոր չգիտեմ ինչը որուն Խիղճ կ'ըսեն։ Ատիկա մեծցաւ,*

ծառացաւ ներսիդիս, ու տեսայ անոր տիրապետող զօրութիւնը, որ չեղ մէկ քայլիս կը նայէր՝ էութիւնս ցնցելու, որ «մե՛ղք ես» կ'ըսէր ցած ձայնով մը՝ երբ ինքզինքիս ընէի. որ «մի՛» կ'աղաղակէր՝ երբ ուրիշին ընել ուզէի։

Ներէ՛, Ա՛ստուած, մանաւանդ ա՛յն մեղքերուս զորս գիտութեամբ գործեցի։ Խղճմտանքիս չարչարանքը կը բաւէ անոնց։

Վիժած, անարգ երջանկութիւններու հասնելու համար կամ ստոր չահերու առթիւ տարուեցայ Քու Անունդ կրկնելու։ Անանկններու՝ որոնց դիմաց ինծի կը մնար յիսուսեան վեհութիւն մը ցուցնել՝ հայհոյեցի, անէծքի չանթս մխեցի անո՛նց կուրծքին՝ որոնց ներում վայել էր. բռունցքս վեր առի, երբ բախտը ժանիքով երեւցաւ դէմքիս։ Ըրի, ու կը զղջամ։ Անոնք որ հաւատացին եւ անոնք որ կոպտութիւնս տարին՝ իրաւ որ երջանիկ են ; քան թէ ես՝ իմ ներքին դատաստանիս առջեւ...։

«Իրիկուան սպասէ օ՛րդ գովելու համար, մահուան սպասէ կեանքդ գովելու համար»։ Ամէն արշալոյս որ իրիկունին դիմէ՝ տխրութիւն մը կ'իջնայ վրաս։ Տուներու մէջ երբ լամբաները սկսին վառիլ, կը տեսնամ յոյսիս կանթեղը որ կը մարի։ Օրս ինչո՞ւ չէր անցուցած պարտականութեանս լրումով կամ գթութեան գործով մը՝ զոր առիթը դիմացս ալ հանած էր։ Այնպէս որ, Տէ՛ր, անըստոյգ սարսափով մը լեցուած՝ կը նայիմ մե՛ծ Հանգիստիս, որովհետեւ ներբողի վանկ մը չունիմ անցուցած կեանքիս համար։

Քու Շնորհէդ ցօղ մը՝ շո՜ղ մը Քու Սէրէդ՝ եւ անապառ Բարութենէդ մէ՛կ շիթ մը կաթեցուր վրաս, որպէս զի ըլլամ ինչ որ կ՚երազեմ, եւ ունենամ վայելքը՝ ինկածներուն օգնելու։ Ժամանակիդ անսահման փաթոյթէն քակէ՛ ինծի կաժ մը միջոց, սատենականին խրախճանքէն դեռ մի՛ վռնտեր զիս, Տէ՛ր։ Արտոյտներուն եւ աքլորնեներուն հետ պիտի ըլլամ փառաբանել այդ Նոր կեանքս՝ որուն առաւօտը արեւոտ էր ու գիշերը անամպ։ Իրիկուըններըը՝ փախչող, մեռնող լոյսերուդ առջին, աչքս սեւեռած հորիզոնի Նուազ ճաճանչներուդ վրայ, պիտի ունենամ հոգիի այն անդորրութիւնը որ ինծի «Լոյս զուարթ»ը պիտի երգել տայ սիրտիս խորերէն՝ պաշտումի եւ հիացումի անձայն երաժշտութեամբ մը։

Քու Անունիդ մէջէն հովերը կ՚երգեն, Ե՜ովա կոչուիս Դուն թէ Ալլահ։

Յիշէ՛ ապաշխարողիս ձայնը ամէն անգամ որ գիշեր ատեն գորտեր եղտիւրներու մէջ կրկռան։

Եւ ամէ՛ն անգամ որ դրօշի սպիտակ լեզու մը կայմերուն ծայրը ծածանի, ամէ՛ն անգամ որ աղկիոններ բանան իրենց թեւերը շուշան՝ ծովերուդ եւ երկինքներուդ գեղակապոյտ տարածութեանը մէջ, յիշէ՛, Ա՛ստուած, հոգիները անոնց՝ որ զղջացին ու մաքրուեցան իրենց մեղքի սեւութենէն։

ԹԷՈԴԻԿ

# Թ. ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆԸ



Ճարտասանութիւնը կամ հռետորութիւնը լաւ խօսելու եւ ո՛ր եւ է խնդիրի մը մասին ուրիշը համոզելու արուեստն է։ Այսպէս սահմանած են զայն Կուինտիլիանոսէն, Արիստոտէլէն սկսեալ՝ մինչեւ մեր օրերու ճարտասանները։ Այսպէս, մինչդեռ հռետորութիւնը արուեստ մըն է, պերճախօսութիւնը լաւ խօսելու բնածին յատկութիւնն է։ Արիստոտէլ ճարտասանութիւնը երեք ընդհանուր եւ մեծ ճիւղերու կը բաժնէ. — 1. — *Ապացուցական* կամ *Կացրդական*, 2. — *Բաղխոհական* եւ 3. — *Ատենական*։ Ապացուցական կամ Կացրդական ճարտասանութիւնը ո՛ր եւ է բանի մը պարսաւը կամ գովեստը կ'ընէ. հետեւաբար, ապացուցական կամ կացրդական ճառեր են ներբողեանը, դամբանականները, ծնունդի կամ հարսնիքի կամ շնորհակալութեան կամ շնորհաւորութեան համար արտասանուած խօսքերը։ Բաղխոհական ճարտասանութեան նպատակն է մէկը համոզել օգտակարին համար եւ զայն խորշեցնել վնասակարէն՝ հետեւաբար բաղխոհական ճարտասանութեան մաս կը կազմեն բոլոր խրատական եւ յորդորական ճառերը, եւ ամէն անոնք՝ որոնցմով գեղեցիկ բան մը կը սորվեցուի ունկնդիրներուն։ Իսկ ատենական ճարտասանութիւնն է ամբողջութիւնը ամբաստանութեան կամ ջատագովութեան ճառերուն, որոնք, բնակա-

նաքար, ամենէն աւելի, կը գործածուին դատարաններու մէջ, դատաւորներուն առջեւ, ամբաստանուած մը պաշտպանելու կամ հատուցում պահանջելու համար: Հետեւաբար, փաստաբանները ամենէն աւելի կ'ուսումնասիրեն հռետորութեան այս ճիւղը, որ այնքա՛ն դժուարին է բայց այնքան ալ կարեւոր: Ճարտասան մը ճարտասանութեան այս երեք ճիւղերուն մէջ միեւնոյն կերպով չի խօսիր. կացրդական եւ բաղխոհական ճառերուն մէջ աւելի կը ջանայ կամքերն ու խիղճը յուզել իր ունկնդիրներուն, որովհետեւ ա՛տ պէտք է. իսկ ատենական ճառի մը մէջ կը ջանայ փաստեր ալ առաջ բերել, որովհետեւ հոն ստիպուած է միտքերը հաւանեցնել իր ըսածներուն: Ճառ մը, ի՛նչ տեսակի որ ալ վերաբերի, վեց մասեր կը պարունակէ միշտ, որոնք, ընդունուած եւ նուիրագործուած բառերով կը կոչուին. — յառաջաբան, առաջարկութիւն, պատմութիւն, ցուցում, յորդոր եւ վերջաբան: Յառաջաբանով ճարտասանը իր ունկընդիրներուն միտքը կը պատրաստէ խօսելիք նիւթին. առաջարկութեան մէջ երեւան կը բերէ այն զանազան խնդիրները որոնց վրայ պիտի խօսի, կը բաժնէ զանոնք կարգաւ: Յետոյ պատմութիւն ըսուած մասին մէջ ճշմարտօրէն ու յստակօրէն կ'ըսէ բոլոր ըսելիքները, զորս ցուցումին մէջ փաստաբերութեամբ կը հերքէ կամ կը հաստատէ. յետոյ կը յորդորէ ունկնդիրները՝ շարժելով անոնց սիրտն ու կիրքերը եւ վերջապէս կ'աւարտէ ճառը 'մերթ համառօտ քաղուածքը ընելով ամբողջ 'ըսածներուն, մերթ այնպէս յուզումնալից լռութեան մը մէջ ձը-

գեղով ներկաները: Ճարտասանութեան Մէջ մեծ կարեւորութիւն ունին ձայնին ելեւէջները, ձեռքի, գլխու եւ աչքի շարժումները, արտասանութեան յստակութիւնը որոնց գեղեցկութենէն կախում ունի, թերեւս ամէնէն աւելի, արտասանուած ճառին յաջողութիւնը:

Մեր մէջ, հին ատեն, բաւական հանճարեղ հռետորներ գոյութիւն ունեցած են. Պրոյերեսիոս Հայկազն եւ Դաւիթ Անյաղթ այս մասին անմոռանալի անուններ թողած են, ոչ միայն մեր՝ այլ եւ Յոյներուն մէջ, որովհետեւ Աթէնք ու Բիւզանդիոնի ալ մասնակից եղած են անոնց ճարտասանական տաղանդին փայլքին: Յետոյ՝ տակաւ՝ ճարտասանութիւնը մեր մէջ սկսաւ սահմանափակուիլ սոսկ սրբազան քեմբասացութեան մէջ: Սրբազան կամ կրօնական քեմբասացութիւնը այն է զոր եկեղեցիին բեմէն կրօնաւորներ կը խօսին ժողովուրդին: Այսօր, իրապէս ճարտասան ու պերճախօս անուան արժանի անձեր չունինք դժբախտաբար:



# 1. ԷՄԻԼ ԶՕԼԱՅԻ ԴԱՄԲԱՆԱԿԱՆԸ

## ԱԼՖՈՆՍ ՏՕՏԷԻ ԴԱՄԲԱՆԻՆ ԱՌՋԵՒ



*Ձեռքերս պսակներով լեցուն են եւ անթիւ անհամար ծաղկըներ ունիմ դնելու համար այս շիրմին վրայ, ուր պիտի քնանայ Ալֆոնս Տօտէ, սիրուած բարեկամը, մեծ մատենագիրը, մեծ վիպասանը զոր կ'ողբայ Ֆրանսական հայրենիքը։*

*Սա՛ առաջին ծաղիկները բերուած են ամէն անոնցմէ, որոնք զինքը ճանչցան, իրեն մօտեցան, որոնք ապրեցան իր եղբայրական մտերմութեան մէջ։ Եւ անոնցմէ շատերը հեռուէն կուգան, երեսուն տարիներէ աւելի՝ անամպ, անմռայլ բարեկամութենէ մը. Նուազ հեռաւորներ ալ կան, արդիններ ալ կան, վասն զի Տօտէ ամէն օր սիրտեր կը նուաճէր. զինքը սիրողներուն ալիքը հետզհետէ ստուարացաւ իր գոյութեան մէկ ծայրէն միւսը՝ կարծես մինչեւ հոս արքայական թափօր մը ձեւացընելու իրեն համար։ Սա միւս ծաղիկները բերած են իր ազնիւ ընթերցողները, որոնք պաշտօն տուին ինծի զանոնք իրեն տալու։ Անոնց խուրձը անհուն է, որ կուգայ մարդոց հիացումէն եւ խանդավառութենէն ա՛յն պատանիներուն՝ որոնց իմացականութիւնը կը բացուի կեանքին առջեւ, սիրատարփութենէն՝ կիներուն որոնք սարսռացին, լացին՝ զգուանքի եւ գորովի ա՛յնքան էջերու վրայ։ Ամբողջ հիացած ժողովուրդ մը կայ ետեւս,*

որ կը բերէ իր յուզումը, իր լայնցած եւ կախարդուած հոգիին շնորհակալիքը։ Եւ այս բրաբիոնները, վերջապէս, սա՛ ծաղիկները եւ սա անմեռունակ դալարինները կը ղրկեն իր համհարզները, մատենագիրները, նաեւ ամէն անոնք որ այս աշխարհիս մէջ տրիտուրներ կը բաշխեն, տէրերը եւ զօրաւորները, որոնց պաշտօնն է պատուել ազգը՝ մեծ մարդերը։ Տաղանդը, հանճարը չէր մեծնար ո՛չ պատիւներով, ո՛չ ճամարտակութիւններով։ Զայն տօնել՝ մինչեւ իսկ մահուան առեն՝ ողջամիտ գործ մը կատարել է միայն ժողովուրդին փառքին համար, ուր փարոսի մը պէս վառեցաւ ան։

Տօռէ եղած է ինչ որ ամէնէն աւելի հազուագիւտ, ամէնէն աւելի սիրուն, ամէնէն աւելի անմահ կայ գրականութեան մը մէջ. պատուական եւ զօրաւոր բնատիպ հանճար մը, կեանքին ձօնն իսկ. զգալ եւ զգացնել անձնական ա՛յնպիսի ուժեղութեամբ մը, որ իր գրած ամէնէն դոյզն էջերն անգամ իր հոգիին թրթռացումը պիտի պահեն մինչեւ մեր լեզուին վախճանը։ Եւ ասոր համար էր որ եղաւ էակներու ստեղծագործող մը, վասն զի անոնց շունչ կուտար, կը կենդանացնէր զանոնք եւ կը շարժէր կենսառատ մթնոլորտի մը մէջ։ Աշխարհի ամէն կողմերը զաւակներ ունի Տօռէ, միս ու ոսկոր ունեցող ճշմարիտ զաւակներ՝ ծնած իր գրական ամենակարողութենէն, զորս կ'արմկենք մայթերուն վրայ, զորս կը ճանչնանք եւ որոնց անունը կուտանք։ Եւ վիպասանի մը համար ասկէ աւելի մեծ փառք, ասկէ աւելի փայլուն եւ տեւական յաղթանակ չի՛ կրնար ըլլալ։

*Եթէ ե՛ս ընտրուեցայ տալու համար հոս Տօթէի յարգանք մը՝ բացարձակ, վերջնական, միակ աղաղակով մը, ուր իմ բոլոր անձս երեւար՝, ո՛չ թէ միայն անոր համար է որ իր ընկերը եւ բարեկամը եղած եմ, եւ այնքան տարի քով քովի ապրած եմ իր հետ, այլ մա՛նաւանդ — վասն զի վկայ մըն եմ, վերջին վկայ մը որ կրնայ ըսել ինչ որ կը խորհէինք իր գործին վրայ մենք ամէնքս՝ որոնց գործերը մեծցած են իրենին մօտ։ Ախոյեաննե՛ր, ա՛հ, այո՛, վասն զի ամէնքս միեւնոյն գաղափարները չունէինք, երբեք մէկ վաշտի մէջ ծառայած չենք։ Այլ սակայն բարի նիզակակիցներ էինք եւ յստակատես՝ մեզմէ իւրաքանչիւրին թողլով իր փառքին օրինաւոր բաժինը։*

*Եւ Տօթէ միշտ մեզի համար եղաւ ամէնէն անկախ միտքը, բանաձեւներէ ամէնէն աւելի զերծ միտքը, իրողութիւններու առջեւ ամէնէն աւելի պարկեշտ միտքը։ Արդէն ուրիշ տեղ ըսած եմ, յարգալից իրապաշտը եղաւ միջին ճշմարտութեան, զոր կը կենդանացնէր միայն իր գորովին ու երգիծանքին անցամաքելի հոսանքովը, մինչդեռ մենք առաւել կամ նուազ ծպտեալ քնարերգակներ էինք վիպական դպրոցէն սերած։ Անոր յաւիտենական արժանիքը պիտի ըլլայ խոնարհներուն արգահատող սէրը, անմիտները եւ չարերը հալածող յաղթական ծիծաղը — ա՛յնքան բարութիւն եւ ա՛յնքա՛ն արդար երգիծանք սարսուռուն մարդկութեամբ մը կը ջրդեղեն իր գիրքերէն իւրաքանչիւրը։*

*Հոս ըսել իր կեանքը՝ միթէ ամէն մարդ չի՞ գիտեր զայն։ Խօսիլ իր բազմաթիւ գործերուն վը-*

րայ՝ մինթէ ամէն յիշողութիւններու մէջ չե՞ն անոնք։ Գրած է քանի հրաշակերտներ։ Սաֆօյի մէջ կայ անմարելի կիրքով լեցուն տրտունջ մը, որ սէրը պիտի ղօղանջէ Երգ Երգոցին եւ Մանոն Լէսգոյի չափ։ Նապապին, Նումա Ռումէսթանին մէջ էջեր կան, որոնք հիանալի պատկերներ, կեանքոտ ստեղծումներ են, անկորնչելի մեր մատենագրութեան մէջ։ Իր վէպերէն մէկ քանիները մանաւանդ պիտի մնան բացարձակ հրաշալիքներ, մարգրիտներու փափկութեամբ, թանկագին մետաղի հաստատութեամբ, որ անշուշտ դասական պիտի ըլլան կատարեալ օրինակներու իմաստով։ Եւ այս իրողութիւնը միշտ կը պատահի. երբ դամբանը բացուի, կը տեսնուի թէ հիացումը ի զուր մեծ եղաւ ողջ մատենագիրի մը համար, թէ բնաւ պէտք եղածին պէս սքանչացում պատճառած չէ ան. մեռած մատենագիրը բարձրացնելու հարկը կ՚զգայ մարդ։ Կորուստը ո՛րքան մեծ, ամայութիւնը յանկարծ ո՛րքան բերանաբաց, որ կարծես ո՛ր եւ է ծնելիք մատենագիր չպիտի կրնայ լեցնել զայն։ Եթէ ստիպուած ըլլայի վերջնական տեղ մը նշանակել Տօտէին, պիտի ըսէի թէ կը գտնուի առաջին կարգին մէջ այն նուիրական փաղանգին, որ ճըշմարտութեան բարւոք պատերազմը պատերազմեցաւ՝ ԺԹ. դարուն այս երկրորդ կիսուն մէջ։ Այս դարուն փառքը պիտի ըլլայ դէպ ի ճշմարտութիւն քալելը ո՛րչափ հսկայական աշխատութեամբ զոր աշխարհ երբեք կատարած ըլլայ։

Եւ Տօտէ մեր ամէնուս հետ գտնուեցաւ, ամէնուէն քաջասիրտներուն, ամէնէն համարձակներուն

մէջ, վասն զի պէտք չէ սխալիլ թէ իր գործը հրապոյրի եւ քաղցրութեան կողմէ մէկ եղաւ ա՛յն գործերէն՝ որոնք ամէնէն աւելի բարձր ձայնով արձակեցին արգահատանքի ճիչը, արդարութեան ճիչը։ Տօտէի գործը ասկէ վերջը մասն է այն ընդարձակ խուզարկութեան զոր պիտի շարունակէ մեր սերունդը. այդ գործը պիտի մնայ իբրեւ վճռական հաւաստիք մը, ամուր եւ տրամաբանական շարքը ընկերական վաւերագրերուն, զորս թողուցին Սթանտալ եւ Պալզաք, Ֆլոպէռ եւ Կոնքուռները։

Եւ քանի որ այս մեծանուն երէցներուն անունը տուի, թոյլ կու տա՞ս ինծի, սիրելի Լէօնս, (Տօտէի զաւակը) դուն՝ զոր տեսայ գրեթէ օրրանին մէջ, դուն՝ այնքան մատղաշ տակաւին եւ փառաւոր արդէն՝ թոյլ կու տա՞ս ինծի որ քու փոքրիկ մանկութենէդ յիշատակ մը յիշեմ։ Արդէն սկսած էր փթթիլ խանդավառ երեւակայութիւնդ, եւ երբ Մեծն Ֆլոպէռ, ազնիւն Կոնքուռ հասակագեղ, սիգաճեմ գնացքով ձեր տունը ընտանի, բարեկամական եւ անուշիկ սեղանի պիտի նստէին, մանկական հիացկոտ աչքերովդ զանոնք կը դիտէիր, եւ ցած ձայնով հայրիկիդ կը հարցնէիր. «Հսկանե՞ր են ասոնք». որպէս թէ հեռաւոր եւ հրաշալի գաւառէ մը դիւցազներ եկած ցամաք ելած էին հոն։ Եւ իրաւցնէ հսկաներ, ճշմարտութեան եւ գեղեցկութեան գործաւորներ էին, եւ այդ հսկաները գտնելու կ'երթայ հիմա հայրիկդ գերեզմանին մէջ, ինքն ալ անոնց չափ մեծ, կատարած գործովը միեւնոյն հասակէն, միեւնոյն եղ-

բայրութեան, միեւնոյն փառքին մէջ պառկելու համար։ Զորս եղբայր էինք մենք, երեքը արդէն մեկնեցան, եւ ես մինակ կը մնամ։

Քեզ համբուրեմ, սիրելի Լեոնս, թէ՛ իմ տեղս եւ թէ՛ անոնց տեղը՝ որ ոչ եւս են. քեզի կը յանձնեմ համբուրել Լիւսիէն եղբայրդ, Էտմէ քոյրիկդ, ըսել սքանչելի մայրիկիդ, որ խորհրդական է եւ ներշնչող, թէ իր արցունքները մերիններն են, թէ այս անհուն բաղմահոծ ամբոխը իր արցունքները կուլայ։ Վշտաբեկ սիրտեր կան միայն հոս։

Ցրանսական հայրենիքը կորսնցուց իր փառքերէն մէկը, եւ թող վերջապէս քնանայ իր անմահութեան բարի քունը բազմավաստակ մատենագիրը, տառապեալ մարդը, հանճարով եւ վիշտով երկու անգամ օծուած եղբայրս։

## 2. ԴԱՄԲԱՆԱԿԱՆ

### ԱԻԵՏԻՔ ՂՈԻԿԱՍԵԱՆԻ (*)

«Ես եկի զի զկեանս ունիցին»։

«Սրբազնագոյն Հայրապետիս հրամանով ինձ կը վիճակուի այսօր խօսք մի ասել՝ իբրեւ երախտագիտական անոյշ խունկ Հայ բարեգործի անմեռ յիշատակին։ Ծունկի կուգամ տիրոջս հրամանի առջեւ, կը խոնարհիմ բարեգործութեան սուրբ գաղափարի առջեւ ու թուլիկ թոթովանքով կ'ար-

(*) Արեւելեան հայերէնէն նմոյշ մը ունենալու համար, այս դամբանականին լեզուն անփոփոխ կը պահենք։

*տայայտեմ այն հիացմունքը, որոնք կը ծփծփան եկեղեցական Հայրերուս կրծքի ներքեւ:*

*«Քրիստոնեայ Հա՛յ եղբայրներ, դուք ամէնքդ սուգ կը կապէք Աւետիք Ղուկասեանի մահուան շուրջը, իսկ ես կը հիանամ անոր դագաղի առաջ: Դուք եկած էք սեւ հողերու անլոյս ծոցն ուղարկելու նորան. ես նորա փառաւոր վերածնութիւնը կը տեսնեմ: Դուք նորա կեանքի փառաւոր վերջալոյսն ողջունելու եկաք, ես այդ վերջալոյսի մէջէն նոր կեանքի բոցավառ արշալոյսը կը տեսնեմ ու կ'ողջունեմ: Եւ այս մահուան պատճառած մեր կարճատեւ վշտի մթին ամպերը շուտով պիտի ցրուին ձեր ճակտէն ու դուք ամէնքդ՝ ժպտուն աչքերով, այս նոր կեանքը պիտի աւետէք ինձ հետ միասին: Կեանք՝ կեալ, մնալ ասել է, յարատեւ լինել աշխարհիս վերայ, սրտերի աշխարհում. մարմինը չի՛ մնայ, բայց միայն մարմինը չէ՛ ամբողջ մարդը. հոգին, միտքը, սիրտը, ձըգտումները, հաւատքը, յոյսը, սէրը, որոց պսակը բարեգործի մատներով է հիւսւում, անմահ կը մընան: Այս իմաստով՝ մեռնիլ ընդ միշտ եւ կամ ապրիլ յաւիտեան, մարդուց՝ իրենից կախուած է: Չէ՞ք հաւատար. գնանք շրջելու աշխարհի գերեզմանոցներ ու տեսնենք թէ ինչպէս հաւասար ու նման ծնուած մարդիկ անհաւասար ու աննման մեռած են: Ահա՛, մի շարք կարճ ու երկայն գերեզմաններ, ականջ կախեցէք այս տապանաքարերու վերայ. նոցա տակից եւ ոչ մի ձայն: Ոյք են յաւիտենական մոռացութեան դրուած այդ լուռ քարերու տակ պառկածներ, նոքա, որոց կեան-*

քը ո՛չ չարիք, ո՛չ բարիք արտադրեց. ապրեցան լոկ իրենց համար. ապրեցան համր, մեռան ու համր մնացին։ Նոցա յիշատակի վերայ ո՛չ սիրոյ արցունք, ո՛չ վշտի շիթ, ո՛չ անէծքի տարափ տեղաց։

«Աչքերնիդ վեր վերուցէք այն կողմ. այն ի՞նչ շիրիմներ են, որոց վերայ նզովքի փուշ է բուսած օրհնութեան վարդերու փոխանակ. եւ ո՞յք են այն պատառատուն հանդերձներով՝ բոկոտն, հերարձակ աղքատներ, որ մարմնացեալ անգթութիւն դարձած քարեր կը նետեն այն գերեզմաններու վրայ, որոց վերայ օրհնութեան խունկ չի մխայ, լուցած մոմեր չեն վառի, որոց մէջէն լոյս չի գայ։ Այդ այն քրիստոնէից գերեզմաններն են, որոնք իրենց կենդանութեան ժամանակ այլոց արցունքով գծեցին կեանքի ճանապարհը օրօրոցից մինչեւ գերեզման։ Արդար զայրոյթի մի թնդիւնով դուն էլ ակամայից մի քար ես նետում այն քարակոյտի վերայ, որի տակը չար մարդու նշխարքն են դըրուած եւ երեսդ շուռ տալով խոյս ես տալիս այդ գերեզմանից։

«Ահա ուրիշ գերեզմաններ, բայց խօսուն՝ անլուռ ցյաւիտեան։ Գործուած բարիքները դոցա վերայ ծլել՝ ծառ են դարձել, սաղարթ կապել ու հովանաւորել նոցա շիրիմն ու դամբարան. մշտական այցելուներին խունկն ու աղօթքը, օրհնութիւն ու մոմ լոյս կ՚տան, փայլ կ՚տան այն ամէն յիշատակին, որի վերայ յետնորդներին աչքն է իջնում երկնից մաքուր ցօղի նման։ Այդ գերեզմանների տակէն ձայն կ՚գայ, կ՚քաջալերէ, կ՚խրախուսէ, յ՚օրհնէ ուխտաւոր յետնորդներուն դարերով եւ

Իւր կեանքը կը շարունակէ . նոքա կ'ապրին , կեանք ունին , չեն մեռած ։ Նման խօսուն գերեզմաններ են արձանաւորների , սուրբերի , բարեգործների ձայնը գրքերի ծալքերում , այդ ձայներով ապագայ սերունդները կը դաստիարակուին ։

«Այս տեսակ գերեզմաններու առջեւ հիացմունքով լցւում է սիրտդ եւ ինքդ քեզ բացագանչում ես՝ «Ընտի՛ր մահ , որ բիւր անգամ գերազանց ես ապարդիւն փառաւորուկ կեանքից ։» Այս գերեզմանների քովն ես միայն հասկանում Երկնաւոր Վարդապետի անսուտ խօսքը թէ , «Ես եկայ , որ կեանք ունենաք , որ չմեռնիք ։» Եւ չմեռան բարոյական արիները , հանճարները , բարեգործները . մէկն իւր շնորհքով , մէկն իւր առատաձեռնութեամբ անմեռ կեանք շահեցան , խօսուն ու խրատական գերեզմանները ։ Ի զո՜ւր , ի զո՜ւր այդ շիրիմներուն առջեւ , համբո՜յր սեւ հողերուն ու դամբարաններին ։ Այս տեսակ երանելի գերեզմաններին թիւն այսօր մէկով կ'աւելնայ ։

«Երբ մարմնի մահը կ'գայ եւ մարդու լեզուն բերնին մէջ կը քարանայ , այնուհետեւ գործերը , ոգին , գաղափարները պերճախօս կը դառնան ։ Աւետիք Ղուկասեանցի գործերն այսօր լեզու կ'առնեն ու իր փառքը կը պատմեն . լսենք նոցա ։

«Հայ նահապետական ընտանիքի հարազատ զաւակ լինելով՝ իր սիրտը խնկաման մ'էր շինել , ուր հաւատքն է բուրել Հայ . Եկեղեցու Սրբազան բեմի առաջ . այդ հաւատքը , այդ սէրը մարմնացնում են այսօր ։ Իր քրտանց վաստակից նա կտակում է Ս . Էջմիածնին 60,000 րուբլի դրամ , որի

տալով բարձրագոյն կրթութիւն պիտի ստանան նոյն Եկեղեցւ նուիրուելու պատրաստակամութեամբ կրօնաւորներ։ Ինչ հրաշալի միտք մեզ խղճող հզօր կարիքի առաջ. Ս. Լուսաւորչի ձեռքով վառուած հոգեւորութեան խարոյկ մը կայ Ս. Էջմիածնի Սրբազան տաճարում, որոյ մէջէն պահապան հրեշտակը կայծ է վերցնել միշտ, մօտեցուցել ընտիր կրօնաւորներու շրթունքներին եւ ուղարկել նոցա ցաք ու ցրիւ Հայոց տներ, սիրտեր վառելու՝ հաւատի, սիրոյ համերաշխութեան կրակով։ Աշխարհի բուքերու եւ անձրեւներու առաջ՝ այդ խարոյկը նսեմացաւ, փոքրացաւ։ Ոգեւորութեան այս սուրբ կրակը բորբոքելու կուգայ իր անմոռաց կտակով Ղուկասեան Աւետիքը։ Մեր խնկելի տաճարը թող օրհնէ նորա գործն ու յիշատակ։

«Աւետիք Ղուկասեան Սրբազան Կաթուղիկոսին տրամադրութեան տակ կը դնէ նաեւ 5 հազար ռուբլի, կարօտեալներին համար։ Ն. Ս. Օծութիւնը թող օրհնէ սորա գործն ու յիշատակ։ Ղուկասեան Աւետիք օգնութեան կը հասնի եւ այնտեղ, 10,000 ռուբլի կը թողու Պարսկաստանի Հայոց վարժարաններուն։ Մայրենի դաստիարակութեան անձնուէր մշակներ թող օրհնեն սորա գործն ու յիշատակ։

«Թէպէտ քրիստոնէի սիրտով Աւետիք Ղուկասեանը կը սիրէր նաեւ Ս. Երուսաղէմի Հայոց Վանքը, ուր երկնաւոր Վարդապետին Ս. Ոտքերն են ոխել։ Այդ վանքին նուէր կ'տայ 5,000 ռուբ-. Երուսաղէմի Հայոց Վանքի սրբակրօն միա-

բանները թող օրհնե՛ն սորա գործն ու յիշատակ։ Աւետիք Ղուկասեան ի կենդանւոյն թանգարանչինեց, ուր պիտի պահուին գրականութեան փայլուն մնացորդներ. իսկ այդ թանգարանը պահպանելու եւ զանազան կերպով արդիւնաւորելու համար 25,000 ռուբլի թողած է. մեր գրականութիւնը սիրող անձինք թող օրհնեն սորա գործերն ու յիշատակ։

«Անկարող եմ թուել կտակին բոլոր կէտերն՝ որոց համար կտակած է այս Հայ բարեգործն ընդամէնը 133,000 ռուբլի։ Անկարող եմ ընել կտակին ամէնէն բանաստեղծական, ամէնէն սքանչելի կտորի մասին. այդ Ղուկասեանի կարգադրութիւնն է միակ զաւակի՝ դստեր համար, որուն վրայ լռելն է խոհեմութիւն։ Այստեղ ճշմարիտ Հայ մարդու եւ ընտիր հօր հոգին իր ամբողջ փայլովն է հանդէս գալիս։ Այստեղ հարազատին սէրը նմանւում է նոյն իսկ հայրենի տաճարի եւ բարեկեցութեան սիրոյ առջեւ։ Ակամայից՝ միտքս կ՚գայ Ս. Գիրքից Աբրահամի հաւատական աղօթքն երբ իր միակ որդին զոհ. կ՚տար իր պապերուն Աստուծուն. «Իմ պապերուս արդար Աստուած, որ զիս հանեցիր Քանանացւոց աշխարհէն, օտարներից անխառն պահեցիր, որ առաւել սիրելի դարձուցիր ինծի համար իմ պանդխտութիւնը, իմ բնակութեան փոքրիկ վայրը՝ քան օտարի շլացուցիչ փառքը, քե՛զ, քե՛զ նուէր եմ բերում աշխարհիս ամէնէն թանկ բանը՝ միակ զաւակս»։ Ինչ անուշ կ՚գայ այս ձայնն իմ ականջիս, երբ Հայ մանկանց ձայնն օտար թովիչ ձայներու վար-

ժուեցաւ, աչքն օտար փայլերով շլացաւ. երբ օտար անապատներում թափառուն զաւակներ գերազանց համարուեցան հայրենի տաճարից մեր պապերուն հաւատին, իրենց հարց համար։ Հայ. Եկեղեցւոյ անուան ու հաւատի խնկարկուներ թող օրհնեն սորա գործն ու յիշատակ։

«Իր այս կտակով անմահութեան դաս մը կ'տայ մեր հարուստ Հայ եղբարց Աւետիք Ղուկասեան։ Օրհնեա՜լ ձեռք Հայ բարեգործ սերմնացանի, որ լի ափերով բարիք սերմանեց մեր իսկ նուիրական անդաստանի վրայ, եւ կ'աճին դոքա եւ նոցա հովանիին տակ շատերը կը հանգչին կեանքի բարկ արեւից։ Հայ մեծատուններ որոց անուանը պատիւ բերաւ Աւետիք Ղուկասեան, թող օրհնեն սորա գործն ու յիշատակ։ Օրհնեալ եւ դարձեալ օրհնեալ Աւետիք Ղուկասեանի յիշատակ, անուն ու գերեզման։ Մեզ կը մնայ երախտագիտական անուշ զգացմունքներ տարածել այն անդուռն, աներդ բնակարանին մէջ, ուր պիտի հանգչի անմնման բարեգործը, կը մնայ սրտագինս աղօթել։ Նա՝ որ արիւնլուայ՝ Խաչի վրայից սիրտ կուտար լքեալ մօրն ու սիրելի աշակերտաց, Նա թող ափոփէ Աւետիք Ղուկասեանի արժանաւոր ամուսնուն, սիրասուն զաւակի եւ սիրելի եղբարց ու հարազատների վշտաբեկ սիրտը։ Նա թող ընդունէ Ղուկասեանի բերած այս մարմինը, Հայոց Ս. Սեղանի վրայ իր փառքի համար եւ հանգիստ շնորհէ Հայ բարեգործի ոսկերց՝ հողերու մէջ, անմեռ հոգուն՝ երկնից օթեւանում. Ամէն։»

# Ժ. ՆԱՄԱԿՆԵՐ

Նամակը գրաւոր խօսակցութիւն մըն է երկու անձերու միջեւ, որոնք իրարմէ հեռու կը գտնուին: Գրական սեռերուն ամէնէն դիւրինը կը նկատուի նամակագրութիւնը, սովորաբար. սակայն պէտք է ըսել որ ճիշդ խօսակցութեան պէս նամակ մը գրելու համար պահանջուած յատկութիւնները շատ դիւրաւ գործադրելի չեն: Նամակ մը պէտք է պարզ ըլլայ, ամէն բանէ առաջ. չունենայ ոճի ու դարձուածքի այն կնճռոտ աղուորութիւնները որոնք տեղ ունին, զոր օրինակ՝ բանաստեղծութեան մը մէջ. յետոյ, նամակ մը, պէտք է բնական ըլլայ, բացարձակապէս այնքան՝ որքան կարելի է. բռնազբօսիկ խօսակցութեան մը ձեւը պիտի առնէր անշուշտ նամակ մը՝ որուն մէջ թեթեւսոլիկ ու եթերական բացատրութիւններ կը վխտան: Խնդիրը «Գրական նամակներ» ըսուածներուն վըրայ չէ՛ անշուշտ. անոնց մէջ բանաստեղծութիւն ալ կը մտնէ, ճարտասանութի՛ւն ալ, զարդարուն ոճ ալ:

Նամակները կը բաժնուին երկու մեծ ճիւղերու. — 1. — Գործի նամակներ եւ 2. — Բարեկամական ու ընտանեկան նամակներ: Գործի նամակներուն մէջ կը մտնեն առեւտրական, վաճառականական, սեղանաւորական նամակները, պաշտօնական կտակները, աղերսագիրները, վկայագիր-

ները, յանձնարարութեան նամակները, եւ վերջապէս ամէն անոնք՝ որոնք գործի մը՝ գործառնութեան մը շուրջ կը դառնան: Իսկ բարեկամական ու ընտանեկան նամակներուն մէջ կը գտնուին նոր տարիի կամ անուան տօնի, կամ հարսնիքի, զաւակի ծնունդի եւ ուրիշ ո՛ եւ է ուրախառիթ խնդիրի մը առթիւ գրուած շնորհաւորական գրութիւնները, տխուր առթի մը մէջ գրուած ցաւակցական նամակները, ընտանիքի անդամներու միջեւ փոխանակուած նամակները, եւայլն:

Գործի նամակներուն ոճը աւելի խիստ եւ աւելի կտրուկ պէտք է ըլլայ միշտ. միտքի ու երեւակայութեան ո՛ր եւ է դեր չկայ անոնց մէջ. զուտ դրական ոգի մը պէտք է ունենան ու ըլլան՝ կարելի եղածին չափ պարզ: Միւս՝ ընտանեկան ու բարեկամական նամակներուն մէջ՝ ոճը միշտ պարզ մնալով հանդերձ, նիւթին հետ կրնայ տխուր կամ զուարթ, կամ կատակաբան շեշտ մը ունենալ իր մէջ. սակայն պէտք է զգուշանալ միշտ հասարակ գռեհիկ ձեւերէ: Ասոնց մէջ մանաւանդ գրողը պէտք է նկատի առնէ ինքզինքը ու այն անձը՝ որուն կ'ուղղէ իր խօսքերը, ու այս կրկնակ քննութիւններուն շնորհիւ պէտք եղած դրոշմը եւ գոյնը տայ իր բացատրութիւններուն:



# 1. ՄԱՐԴ ԵՒ ՄԱՀ

## (ԹՈՒՂԹ՝ ՍԱՆՈՒՀԻԻՆ)

*Հայկուհի՛ ,*

*Հայկուհի՛ , Նամակդ երէկ գիշեր կարդացի ։ Սիրտս լեցուեցաւ , որովհետեւ տունդ պարպուեր է ։ Հապա՛ , չի պարպուիր տունն , ուրկէ կը վերանայ մանուկն , ուրկէ կը վերնայ մանկան օրօրանն ։ Անոր տեղ աշխարհիս վրայ բա՛ն մը չի կրնար բռնել ։ Ի զո՛ւր այնուհետեւ կը խօսակցինք , ի զո՛ւր գիրք կը կարդանք կամ «առ Աստուած կը կարդանք» , ի զո՛ւր կը տաղենք կամ կը դրենք , ի զո՛ւր կը խորհինք , եւ պիտ'ըսէի՝ ի զո՛ւր այն կորուստէն յետոյ կ'ապրինք . երբ չի շարժիր օրօրանն , երբ չի մրմնջեր հրեշտակն , անշարժ եւ աններդաշնակ է համայն յաւիտեան ։ Մարդս , որ ծանօթութենէ ծանօթութիւն ու զարգացումէ զարգացում կ'ընթանայ , մերթ ընդ մերթ (այսպէս եմ ես) կարօտ կ'զգայ պարզութեան ու տգիտութեան վիճակին , յորում կը գտնուէր . պէտք կը զգայ փոխադրուիլ օրօրոցին մէջ . փոխադրուիլ անմեղութեան դրախտին մէջ . կը մոռնաս յայնժամ մեղմիւ օրօրանին , եւանդագին կը համբուրես մանկիկն որ իր անունն անգամ լաւ չի գիտեր տակաւին , լեզուդ կը ջանաս մանրել միավանկել , եւ մանկական խանդաղատական լեզուով՝ անոր*

անուշ խօսքեր ընել՝ որոնց քաղցրագոյն ճիչերով եւ աղուագոյն ժպիտներով կը պատասխանէ հրեշտակիկն։ Ա՜հ, այդ գգուանքներուն ու խօսակցութեանց միջոցին վրայէդ ո՜րքան բեռ կը թողուս յանդգնայս, որքա՜ն զուարթութիւն կ՚ստանաս, որքա՜ն երջանիկ զքեզ դուն կը զգաս։ Այն անզօր եւ անբարբառ էակին գրկախառնութենէդ ու լեզուակցութենէդ զօրութիւն ու պերճախօսութիւն կը քաղես. օրօրանէն երբ հեռանաս, աշխարհ մը կերպարանափոխելու չափ զքեզ հզօր ու հանճարաւոր կը գտնե՜ս...։

Եւ այժմ ոչ եւս է մանկիկը...։ Եւ մեռաւ նա մինչդեռ կը խնդային մարդիկ։ Դիմակներուն ընդմէջէն՝ անմանկ էակ՝ անդիմակ անփառունակ անցնելով, իր անկենդանութիւնն աշխարհի բարեկենդանութեան մէջէն համեստաբար պտտցնելով, տուրք տաճարին թանձրամած ստուերներն առ վայր մի լուսաւորելով՝ գնաց մտաւ «մօրն համայնից մթին ծոցն»։ Անտարբե՜ր նուագեցին քահանաներ մահու շարականները, մինչ դիմակաւորներն ալ անկարեկի՜ր անդին կ՚երգէին, կ՚երգէին սպանդարամետական երգերն։ Այն քնքոյշ մարմնին վրայ որ մայրական ծոցին մէջ դեռ երէկ կը խայտար, այն զուգավառ աչուկներուն վրայ որոնք քրոջը համբոյրներուն տակ կը շողային առաւօտուն զուարթաբար, այն այտերուն վրայ որոնք այնքա՜ն համով ա՜յնքան հոտով էին երբ մանուկն արթըննար ու թաթիկներն երերցնէր՝ թեւերն ալ թիթեռնիկի պէս տակաւ տարածանէր, այն գլխուն վրայ՝ որուն համար մայրիկն իւր մազին հիւսքն իսկ ծանր

կը համարէր, կոշտ եւ կարծր հողն. ու քարեր փշուր ու սուր, խառն ընդ հողն, ափով ու բահով արագ արագ նետուեցան, ու ձայնիկ մը, ճիկ մը չհանեց բնաւ մանկիկն...:

Ինչ է մահն. այդ հողին եւ այդ էակին ընդ մէջ հասարակ ինչ բան կայ: Անձեւ, անձայն, անշարժ, անշունչ, անկենդան, այսպէ՛ս է հողն. արդ՝ ինչպէս կրնար հող ըլլալ այն արարածն որ հիանալի ձեւ ունէր, որ հրեշտակի թեւ ունէր, որ ձայն ունէր դաշնակալի, նայուածք աստեղալի որ ո՛չ ինք միայն կը շարժէր, այլ որուն համար օրօրանն ալ կամաւոր կը շարժէր, ու մօր թեւերն ու շրթունքներն ալ կամաւոր կը շարժէին, որ ո՛չ միայն կենդանութեամբ էր օժտեալ, այլ եւ իւր շուրջ ալ կենդանութիւն կը սփռէր, մինչեւ անդամ թուղթի կտորներուն վրայ ուր քոյրն՝ Հայկուհին՝ կենդանալիր կը նկարագրէր գեղն ու կորուն աղուոր աղբարիկին: Ու հիմայ հուրն ու շունչը, ու թեւերն ու թեւածութիւնները, ու շրթունք ու մրմունջք, եւ ակնարկ եւ ժպիտ եւ արտասո՛ւք, հիմայ հո՞ղ պիտի՝ ըլլան այդ ամէնն: Այդ ամէնուն տեղ, գերեզմանն եթէ բանար հիմայ, բա՞ն մը պիտի գտնէր անյարիր եւ անդեղեայ որ ոսկոր ու հո՞ղ պիտի դառնայ: Ինչպէ՜ս կարելի է այդ...:

Ահ, ինչ գիտուն է բնութիւնը, ինչ ագէտ է մարդը: Ինչ հրաշալի կարողութիւն հիւլէին որ չէ բանական. ինչ ապիկարութիւն՝ մարդուն, այն էակին որ է «միայն բանական»: Ջեւել ձեւացնել կապկօրէն՝ մեր գործն այդ է. իսկ բնութեան գործն

է սանձել՝ սքանչացմամբ յաճախ եւ է զի սոսկմամբ ըզմարդն համակել։ Թաքչե՛լ, ինչպէս գիտէ բնութիւնն. ապշի՛լ՝ այդ միայն գիտէ մարդկութիւնը։ Այս մեր փոքրիկ երկրագունդն, որուն՝ տիեզերքի մէջ կէտի մը չափ կարեւորութիւն ունենալուն ուր ուրեմն համոզուեցանք, այդ փոքրիկ կէտն անգամ, այո՛, մարդուն համար անհունութիւն մ'է տակաւին. մարդուն՝ որ ո՛չ քանի մը հազար ամեակ հետէ, այլ քանի մը հարիւր հազար տարիներէ հետէ կ'ապրի հողագունդին վրայ. արբունքի հասած մարդկութեան համար՝ կ'ըսեմ՝ դեռ մեծաւ մասամբ առեղծուած մ'է հողագունդն. ի՛նչ թաքուն բաներ ունի, դեռ հողն ի՜նչ խորհուրդներ ունի մեր միտքին համար, զոր աստուածային կ'անուանենք։ Ահաւասիկ մեր միտքին առջեւ կը կանգնի մեծ հարցական կէտ մը, — փոքրիկ մանուկ...։

Փոքրի՛կ մանուկ մը։ Ի՞նչպէս ծնաւ, ի՞նչպէս մեռաւ ան. կ'ուզեմ ըսել, կեանքն ի՞նչ է, մահն ի՞նչ է. ի՞նչ է մարդն՝ որ հողեղէն էակ մահկանացու՝ հրեշտակներու գոյութեան ու հոգիի անմահութեան գաղափարն ունեցաւ. տագնապի ժամուն աչերը երկինք ամբարձաւ. որ ոճիրի մը խոստովանութեան պահուն, հանապազ շառագնեցաւ, եւ մահավճիռին ի լուր միշտ սասանեցաւ. որ իր ցանկութեանց յագուրդ տուաւ եւ դեռ չյագեցաւ. որ իր սիրածին տենչանքներուն տեսաւ լրումն ու լացաւ։ Ի՞նչ է մարդն...։ Իրա՞ւ է որ կեանքի մեխանիք օրէնքներուն ենթարկուած է եւ զմարդն՝ ստորաքարշ անասուններու նման՝ այն Աստուածն. ի-

*րաւ չէ՞ որ մարդն յատուկ հանդիսաւոր ստեղծում մ'ունեցաւ, Ցաւիտենականին ձայնն ու հրամանն Աղեն դրախտին մէջ յստակօրէն իմացաւ, խօսքով ու խնդքով ու կամքով այն առաջին օրէն առատապէս օժտուեցաւ, ու չարամտեցաւ՝ որքան գիտութեան ծառին չմօտեցաւ....:*

*Իրաւ է, իրա՛ւ է, Հայկունի: Կը հաւատամ... կը հաւատամ ես որ գիտութեան ծառին պտուղն է պատճառ. կը խնդրես գիրք մը որ ընթեռնուս ու թարգմանես, ե՛ւ օգտուիս, ե՛ւ մխիթարուիս. գիրք մը որ հոգիդ զուարճացնէ, որպէս կ'ընէին ակնարկներն ու ժպիտներն ու ճռուողիւններն անմեղ մանկիկին որուն օրօրանն ահա դատարկ կեցած է....:*

*Ի՞նչ գիրք տամ քեզի. բան մը չի կրնար — ըսի — բռնել անոր տեղ, անմանկ տղեկին տեղ: Ի՞նչ կայ գիրքերուն մէջ. գիտութի՛ւն. մանաւանդ այն մատեաններուն մէջ՝ զորս սովորաբար կը վերծանեմ ես՝ կայ ճշմարտութիւնը, անհրապարանոց՝ անհեղ ճշմարտութիւնը: Ատի՞ է մարդուն երանութեան համար հարկ եղածը: Հարկ եղածն է մեզի — տգիտութիւն, անգիտակցութիւն, անմեղութիւն. վա՜հ, անմեղն հո՜ն է, հողին մէջ, քարին տակ. եւ երկիրն որ՝ Նախնի ժողովուրդներու համեմատ՝ «մայրն է գից եւ մարդկան եւ ամենայնի», երկիրն՝ որ ըստ Գալիլէի յաւէտ կը շարժի, երկիրն է՝ ասկէ ետքը՝ մայր եւ օրրան վաղամեռիկ մանկանն անտիական:*

*Հոգիի այնպիսի տրամադրութիւն մ'ունիմ, կը տեսնես, զի կը նախանձիմ անոնց՝ որոնք ալ չեն աղ-*

*րեր։ Վերջերս հրատարակուեցաւ Յովհ. Սեթեանի բանաստեղծութիւնը «Զորոց ոչ եւս են»։ Ի՛նչ գեղեցիկ էր, ի՜նչ ճշմարիտ։ Արդարեւ, անոնք միայն են երանելի, անոնք որ «ի մահ ննջեցին» ըստ Սաղմոսերգուին...։ Թերեւս, Հա՛յկուհի, մանուկին սեւաւաքօղ օրօրանին վրայէն, կ'ընդնշմարես արտասուքներուդ ընդ մէջէն, արշալոյսներ երանութեան ու մեծութեան. ծաղկահասա՛կ՝ չէ դեռ մուտ գտած հոգիիդ մէջ գրայուսաբեկութիւնն, — թունաւորիչ ու թառամեցուցիչ յուսաբեկութիւնը։ Արդ շարունակէ՛ սեւեռել աչերդ սեւերէն վեր. սեւ ու թախիծ՝ սիրտին ազդող այն սպիտակ քարերէն վեր, սարերէն ու սանդղաձեւ ուղիներէն վեր, նայէ՛ յար. նայէ՛ անքթիթ՝ արշալոյսին. եւ յուսա՛ քեզի համար, եւ սիրէ՛ միշտ աւելի գրականութիւնը՝ որ կոչումդ է եւ որ, իցի՜. թէ, երանութիւնդ ալ ըլլար։*

ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ



## Զ. ՄՈՒՇԵՂԻ ՆԱՄԱԿԻՆ ԱՌԹԻՒ



*Սիրելի Սմբատ,*

*Կարդացի նամակդ, ժամավաճառ ըլլալու խօսքեր մը ըրած ես, չգիտեմ թէ բարեկամի մը նամակը կրնա՞յ ժամավաճառ ընել։ Մարդ որքան ալ որ զբաղած ըլլայ՝ սրտակիցէ մը եկած թուղթը այն զգայութիւնը կուտայ իրեն, ինչ զգայու-*

*թիւն որ կուտայ պաղ օդի հոսանք մը՝ արեւէն նեղուած մարդուն։*

*Ան ինչ խորունկ դառնութիւն մը կայ, երեւոյթով հանդարտ տողերուդ տակ։ Ինծի կ'ըսես. «Կարդա՛, դու ալ քեզի դաս մը կրնայ ըլլալ. կեանքի ճամբուն վրայ պիտի հասնիս՝ անանկ տեղ մը ուր կը գտնուիմ ես այսօր։» Ու քանի կը յառաջանաս նամակիդ մէջ, բառերն ալ կ'սկսին հեւալ իրենց տակ պահուող յուսահատութեան ուժգնութենէն եւ՝ վերջապէս՝ ներքինդ փոթորկող դառն յուզումը կը պայթի վերջին տողերուդ մէջ տխուր շեշտով մը։ «Ես որ կատարելապէս անձնուէր բարեկամ մըն էի Արշէնին՝ եւ առ հասարակ ամէն մարդու համար բարի, հիմա միտք ունիմ այդ ճամբէն դառնալ եւ ըլլալ չար մը, անխի՛ղճ մը, մոլի՛ մը, սիրտս պաղեցնելու համար միայն, ի՞նչ կ'ըսես։»*

*Չէ՛, սիրելիս, չէ՛, դուն չար մը չես կրնար ըլլալ Արշէնի համար, անտարբեր մը՝ թերեւս այո՛. բայց ո՛չ չար մը։ Ո՜հ, որքան դժուար է այս պարագային մէջ չար մը ըլլալ։ Անակնկա՞լ մը պիտի ըլլայ արդեօք ձեզի, երբ ըսեմ որ այդ տեղէն ես ալ անցած եմ շատոնց։ Տառապանքներուն ամէնէն ահռելին է «չհասկցուիլը» այն բարեկամէն որուն նկատմամբ այնքան ազնիւ եղած ես ու այնքան սիրուն, եւ որուն՝ կեանքիդ մէջ բան մը չես խնայած։ Բայց չես կրնար բռնադատել որ անոր սիրտը ուզած եղանակովդ բաբախէ, ու եթէ ուզես՝ այն միամիտ, պզտիկ տղուն պիտի նմանիս, որ ջուրին մէջ ցոլացող առարկայ մը կը խնդրէ։*

Գալով «անխիղճ» մը, «մոլի» մը ըլլալու խնդրին, անգղիացի Լորտ Բանաստեղծին կերպարանքը կ'առնես. կ'ուզես ընդվզիլ, ըմբոստանալ կեանքին դէմ, արհամարհող մը ըլլալ։ Բայց ամէն պարագայի մէջ, նոյն հանճարը իր անհագին տաղանդովը ու քնարական ճիչերովը մէկտեղ՝ մարդկութիւնը այդքան չարագրգռելու երեւոյթը չունի երբեք։ Ջայլտ Հառոլտի հեղինակը անիծեց կեանքը, թքաւ ամէն բանի վրայ ու մարդը գաճաճ մը նկատեց։ Սիրեց Աստուածաշունչը որովհետեւ անոր մէջ Եհովան բամբ ձայնով մը կը խօսէր ու չսիրեց Աւետարանը որովհետեւ փափուկ ու անձնուրաց միստիքականութեան խտացումն էր ան։ Ծովը երգեց, որովհետեւ ան կը մռնչէր։

Ու անոր քով որքա՜ն անուշ է դէմքը Շէլլիին, որ նոյն հանճարեղ լորտին բարեկամը եղաւ, ինք ալ Անոր չափ՝ թերեւս աւելի՛ դառնացաւ կեանքէն։ Հալածուեցաւ իր ծնողքէն։ Անգլիայէն ստիպուեցաւ հեռանալ՝ որովհետեւ կեանքի շրջանակը կը նեղնար հոն իրեն համար։ Բայց ինք չատեց մարդը, աւելի արգահատեցաւ՝ քան արհամարհեց զանիկա։ Անոր համար է որ Շէլլին իր իմաստասիրութեամբը այնքան բարձր է Անգղիացի Բանաստեղծէն։ Ասոր դէմքը մութ է. Շէլլիինը լոյսի մէջ կը ցոլայ։ Ան՝ ատելութեան, արհամարհանքի անսահման ճիչն եղաւ. Շէլլի՝ սիրոյ, օրհներգի անհուն աղաղակը։

ՕՐԱԿ

# 3. ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆԻ ԱՆՏԻՊ ՄԷԿ ՆԱՄԱԿԸ



*Պա՛րոն,*

*Ներեցէ՛ք եթէ պատասխանս ակամայ քիչ մը երկարաձգեցի։ Շնորհակալ եմ ձեր այդ ողջոյնէն․ սիրեցի այդ ողջոյնը՝ ծարաւի հանճարի մը այդ ջերմ ընդգրկումը։*

*Ձեզ խաբուեր․ այն համեստ գաղափարները՝ որոնք որոտալու հետ բուրել, չանթելու հետ բուժել գիտեն՝ այն գաղափարները պատրաստ եմ չինել իմ կողմէս։ Սակայն կը ցաւիմ որ չեմ բոլորովին՝ ինչ որ դուք կը նկատէք ձեր պչրող գրիչովը։*

*Այն դափնիները զորս դուք իմ ճակտիս բոլորել կ'ըղձաք, կը ճնշեն արդէն ճակատս։ Ի զո՜ւր կը թօթվէք ձեր ծաղկապսակ քնարը, հանճարի այդ վեհ սիրտը ի զո՜ւր կը սարսէք։*

*Թո՛յլ տուէ՛ք, ազնի՛ւ բարեկամ, որ ձեր այդ ջերմ համակրութեան դիմաց սիրտս լուռ զողդողջէ։*

*Դուք զիս լաւ նկարագրեր էիք, արտօսրի պէս լռիկ եւ հառաչի պէս մթին, դուք որ երկինքի ցոլքերուն պէս խայտալ եւ չանթի նման որոտալ գիտէք։ Խօսեցէ՛ք եւ սաւառնեցէ՛ք, պերճախօ՛ս բարեկամ, եւ թո՛յլ տուէք որ բեւեռային երկրի պէս ցուրտ՝ տխուր եւ դալկահար ճակտի մը վրայ՝ լոկ լուռ խորշոմներ ծալլուին — ցաւերո՜ւ թերթեր․ եւ հանճարը չրթունքներուն մէջ մեռնի, քանի որ ձեր կրակոտ ճակատը անգամ պերճախօս*

հանճարի մը քեզ կը ներկայէ։ Չեմ ուզեր հոս խօսքս երկարել։

Սիրտերու խօսակցութիւնները տերեւներու շուքին վերապահենք, ազնի՛ւ բարեկամ...։

Այնպիսի նիւթեր ունիմ, որոնց վրայ խօսելու տեղ մերթ որոտալ. մերթ բուրել, մերթ սարսռիլ հարկ է։ Վսեմ յիշատակներ, խոկումներու վրանին տակ — դողդոջ հրեշտակներ են անոնք։

Պիտի խօսիմ անոնց վրայ որչափ որ արտասանելու համար շուրթերս այրին։

Այն նշանաւոր օրը պիտի յիշատակեմ, ուր իրարու ձեռք թոթուեցինք, այն օրը՝ ուր ամէն հոգի զմայլում մ'ունէր։

Կ'ուզեմ բարեգործական այն հանդէսէն վսեմ գործերու փունջ մը քաղել։ Կարի կը գուրգուրամ այն հանդէսին վրայ, զի մէկ հատիկ է։

* * *

Հորիզոնին վրայ վարդերու հրդեհ մը կը ծաւալէր, լոյսերն անգամ խռովիլ՝ աժգունիլ եւ մարմըրիլ կ'սկսէին։

Թաւուտքի մը դայլայլիկը Մայիս 30ի առաւօտը կը հծծէր։

Բիւզանդիոնի կապոյտ գօտին կը ծփծփար։

Ճակատս երազները օրօրոց մը դարձած էր, կը դողդոջէր։

Ոսկեզօծ տարեր ընդնշմարեցի, վարդերու աճիւնին մէջէն կայծ մը կը բարձրանար — երկինքէ լուսալիր բիբը։ Լուրջ Վոսփոր մը կը ծիծաղէր, կ'ուռէր ու կը փրփրէր ու կը սոնքար։

Նուագներու, կէցցէներու եւ ծափերու ներ-

դաշնակութիւն մը, արտագրուած ժխոր մը Գուզ-կունճուկի նաւամատոյցը թնդացուց։

Շոգենաւ մ'էր այս ժխորը չնչողը. սիրտեր կը բաբախէին, ամէնը դունատ էին, կը հեւային։

Երեւակայէ՛ զիս ալ, բարեկա՛մ։

Չեմ գիտեր թէ ի՛նչպէս ինքզինքս այս շոգե-նաւը նետեցի։ Կը քալէինք, կ'երազէի, կարծես դաշ-նակ մ'էր եւ հոգիս մեղեդի մը։ Յանկարծ ձայն մը զիս ցնցեց, տեսիլ մը սառած նայուածքն յա-փըշտակեց, երիտասարդ մըն էր այն, ատգոյն այ-տերէն՝ խարտեաշ մօրուք մը վար կը թափէր, կար-ծես թէ անձին ներսը սրբազան բան մը կ'որոտար, իրեն հետ ձայնն ալ կը դողդղջէր, ձեռքը գան-ձանակ մը կար...ա՛հ, այդ անձը... լուսինի այդ սիրահարը, յառաջդիմութեան աշակերտը թըշ-ուառներու անդունդին հսկող այդ լոյսը, ճանչցի եւ սարսռացի. Պ. Գէորգ Զօպանեան էր այդ անձը, պարծանօք եւ յարգանօք կը յորջորջեմ, փա՛ռք իրեն որ մէկ քանի տարիէ ի վեր հանդէսներու մէջ իր գանձանակովը կ'երեւայ, ամբոխը կ'ակնածի այդ պատկառելի մուրացկանէն, սիրաէ՛ն կուտայ։

Այդ գանձանակն ինկած լումաներն հին գլուխ մը չարժելու կը ծառայէին, ուր գաղափարները ժանգոտած են։

Աշխատի՛նք որ միշտ վարժարանները վերա-կանգնելու օգնող այդ Առաքեալներուն ճակատին վրայ միացող քրտինքը չառաւին։

Երանի՜ անոնց որոնք իրենց անշուք կեանքին հետ հսկայ փա՛ռք մը կը տանին։

*
* *

*Չեմ դանդաղիր մատուցանել իմ անկեղծ շնորհակալիքս հանդէսը կազմակերպող մարմինին։*

*Այս տարի աւելի շքեղ է իր ճակատը, աւելի մեծ էր իր փառքը, վասն զի Հիսարի դպրոցին ազգասէր աշակերտուհիներուն անմեղ սիրտերն ալ ծափահարեցին։*

*Կը փութամ շնորհակալ ըլլալ որբերու մեծանձն բարեկամին, որ բարեհաճեցաւ Ս. Փրկչեան վարժարանի աշակերտները չզրկել հանդէսէն։*

*Ս. Փրկչեան որբե՛րը, անդունդը թափած այդ շողերը, ա՜հ, անոնք ո՜րչափ շնորհակալ ըլլալ գիտեն, իրենց ձեռքը սեղմող ձեռքին մէջ դողդողալ՝ եւ փայլփլած աչերն փղձկիլ կը սիրեն, արտօսրը անոնց հոգիէն կը բղխի, անոնք աշխարհի վրայ բարերար սիրտի սիրահար են լոկ։*

*Հանդէսին ներկայ գտնուող այդ որբերուն մէջ չտեսայ մէկը որ ժպտէր կամ զմայլէր, ամէնքն ալ տխուր էին եւ կ'ապշէին, մութ էին՝ իրենց ճակատագրին պէս։*

*Օրհնեա՜լ ըլլայ այդ թշուառներուն բարեկամը, թո՛ղ ինք այդ որբերուն աղօթքը հետը տանի, անոնք ալ իր յիշատակը. ինք որչափ անունը ծածկէ, փառքը չի կրնար ծածկել։*

ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ



# Դ. ԼԵՒՈՆ ԴԱՒԹԵԱՆ

*Սիրելի Սմբատ Դաւթեան էֆէնտի,*

*Երէկ իրիկուն ստացայ ղրկած մահագոյժդ, որ զիս կը հրաւիրէր Մայր-Եկեղեցին, դագաղի մը շուրջ, Լեւոնին՝ քսանամեայ Լեւոնին դագաղին շուրջ։*

*Լեւո՛ն, քսա՛ն, մա՛հ, սո՛ւգ. բառերու այս աղէտալի երրորդութիւնը ո՞չ ապաքէն բաւ է, ու շատ իսկ չէ՞ յուզմա՛մբ յուզելու համար բանաստեղծ հոգիս։*

*Թուեցաւ ինծի թէ Ռաֆայէլի սղագրութիւնն ունիմ աչքիս տակ, երկտասանեակ տողի մէջ, շուրջը սեւ շրջագիծ մը թանձր, ու գլուխը մանգաղ, խաչ ու ջահ անհեղ խորհրդանշանն, եւ իր համառօտութեամբ ու խորհրդաւորութեամբ կեանքի ու մահուան վրայ թելադրելով ինչ որ էջե՛ր ու էջե՛ր անկարող են յայտնել։*

*Երբ դեռ քանի տարու էինք, երբ դեռ քանի տարու չէի, մահուան կը փափաքէի, նախադասելով անապատն ուր կեանքը՝ եւս քան զեւս տարաձայնական՝ իբրեւ բեռ մը պիտի ծանրանար ուսիս վրայ։ Մինչեւ այն տարիքը, կեանքի մինչեւ ա՛յն շրջանը՝ որ Լամարթինի հրաշավէպին վրայ գեղեցկագոյն անուան միացած՝ ոսկեդարու համանըշութիւն ստացաւ կատարելապէս, մինչեւ քսան տարին՝ աշխարհս արդարեւ դրախտ մըն է մարդուն համար. գարուններուն երկարջեն կեանքի այդ շըր-*

Ջանքին, եւ աշունները նոր հարսի թարմ դունա-
գեղութիւններն ունենալ մեզի կը թուէին. ձմրան
ու ցրտին օրերը՝ հուր բաքախումներու, շղթայ մըն
էին, երբ մեկնող ծիծեռնակին վիզէն կախուած՝ զոր
անզգալաբար կը տանինք, կամ որ մեզ կը տանի
յանգգայս նոր ծիծեռնակին ընդառաջ. եւ ամառն
երբ ոսկեզօծ արուեստահանդէսն է բնութեան, ուր
սքանչացումէ սքանչացում կ'երթանք՝ մեծաշող
արփիին ներքեւ ցորեկը, եւ գիշերը՝ այն Մեծ Արջ
համաստեղութեան ներքեւ՝ որ ուրիշ Ռաֆայէլի մը
շնորհիւ ա՛յնքան նուիրական եղաւ մեր սիրտին —
այն վիպական տարիքին։ Եւ նոյնպէս մեր կեանքն
ալ բարոյական. յոգնութիւն չէինք զգար բնաւ
մեր արշաւանքներէն երազներու ընդմէջէն, եւ ո՛չ
ալ իրական կեանքէն՝ որ իր աղուամաղն եւեթ
չօշափել կուտար դեռ անկոշտակալ մեր ձեռուը-
ներուն. մեր արտասուքները սիրոյ էին կամ զմայ-
լումի՝ անդառուն ընթերցումներէն եւ իրերու տգեղ
ներքներեւութեանէն դեռ չմաշած չմթնցած մեր
անքթիթ աչուըներէն յուշիկ գլորած կաթիլներ՝
ցօ՛ղի մանաւանդ քան արտասուքի, եւ ժպիտն
անբաժան էր յաւէտ մեր աչուըներէն, երբ որ սէ-
րի կամ զմայլումի լացը լայինք ալ. — ժպի՛տն՝
որոյ դահիճը պատրանքն է, յետ քսանամենի կեան-
քի օրերն են արտաքի՝ ու ներքին ներքներեւ-
ութեան ուր միեւնոյն արեւուն ու միեւնոյն աս-
տեղատունին ներքեւ լիովին տարբեր կը տեսնեն
մեր աչքերը ամէն բան. Լեւո՛ն....։

Լեւոնին աչքերը՝ առ յաւէտ փակուած լոյսին՝
դեռ կը պահեն ժպիտը. եւ այդ դիակնային ա-

կանթեղներ որոնց մենք չենք տեսներ այլեւս բիբե-րը, յարաժամ կը տեսնեն ինչ որ՝ աւա՜ղ՝ անդարձօրէն անմեռանելի եղաւ մեր տեսանելիքին։ Կուլա՛ք ձեր վաղամեռ հօրեղբօրորդիին վրայ, սիրելի, Ս. Դուրեան էֆէնտի՛։ Բայց ինչո՞ւ լաք անոր վրայ, որ դեռ չէ լացած։ Պիտի լա՛ր... պատճա՛ռ մը, որպէս զի մենք չլանք...։ Ա՜հ, ինչ սիրտ ունէր, ի՜նչ վարք, ի՜նչ գլուխ. որքա՜ն էր յանկուցիչ իր դէմքին ու հոգիին գեղով Լեւոն Դուրեան։ Լեւոններն այսպէս կ՚ըլլան. ես անուան ազդեցութեան կը հաւատամ։ Ամէ՛նքն ալ վէպ մը ունին — որովհետեւ կ՚արգահատի՛մ ես վէպ չունեցող երիտասարդներուն վրայ. ամէնուն ալ ճակտին ամէնէն չեշտեալ խորշոմն իբր ազին է տեսանելի՝ սիրտին վէրքին։ Բոլոր Լեւոններն ալ կը սիրեն ու կը սիրուին։ Եւ ժամանակը, ժանգոտ ժամանակն՝ որպէս կը կոչուի, ժանիք ակռայ չունի՝ թուի՝ Լեւոններուն համար։ Չեն ծերանար։ Բայց...։

Բայց կը մեռնի՜ն...։ Եւ ես, որ զձեզ կը յորդորէի չարտասուել Ձեր Լեւոնին համար, ամէնէն տաք արտասուքներն ահա կը թափեմ, սիրելիդ իմ...։

Ո՛չ, չե՛մ երթար Մայր-Եկեղեցի. դագաղին չուրջ չե՛մ ուզեր երեւալ հէ՛գ Լեւոն Դուրեանին։ Եկեղեցին հարկ է գերեզմանատուն երթալ...։ Ու քան տարիներու հողածրութեան տեսարանն՝ անկէ մորմոքիչ՝ ո՞հ կրնա՞յ ըլլալ տեսարան...։ Լեւոն Մոմճեանը քանէն ետքը դըրինք հողը. սակայն դարձեալ գերեզմանատունին

*մէջ տիրող յուզումն անհամեմատելի՛ բան էր· քարացա՛նք յուզումէ՝ բոլոր յուղարկաւորներս ալ, մինչդեռ խեղճ ծերունի հայրը բէրվանէի պէս փոսին շուրջը կը պտտէր՝ մօտենալով ու հեռանալով, եւ արդէն... այրա՛ծ, սպառա՛ծ. — քանզի ամիս մը չանցած՝ Լեւոնին քով տարինք ողբացեալ Միքայէլ Մոմճեանն ալ։*

ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ

---

# 5. ԱՆՑԻՊ ՆԱՄԱԿ ՄԸ

## *ՕՔԹԱՎ ՖԷՕՅԵԷՆ*

### ԻՐ ԴԱՍԸՆԿԵՐՆԵՐԷՆ ՄԷԿՈՒՆ

*Չեմ գիտեր աւելի տխուր բան մը, սիրելի բարեկամ, քան այն վհատութիւնը որով կ'ընկճուի մարդուս հոգին, երբ տղայութենէն ելլելուն, գործօն կեանքի մէջ մտնելու վայրկեանը հասնելով՝ կը փնտռէ իրականացումը այն բոլոր երազներուն զորս ունեցած էր։ Մինչեւ այդ վայրկեանը երեւակայական աշխարհի մը մէջ ապրած էր, շա՜տ հեռու, աւա՜ղ, դրականէն։ Աշխարհս նկատելով ա՛յնպէս ինչպէս որ է, նոյն տպաւորութիւնը կ'ունենամ՝ ինչ որ պիտի ունենար մէկը որ միայն հովուերգութեանց մէջ հովիւներ տեսած ըլլալով՝ դէմ առ դէմ գտնուէր այդ կոշտ խաշնարածներուն կամ աղտոտ ու ցնցոտաւոր հովուու-*

հիներուն — տխուր ներկայացուցիչներ հովուական կեանքի ։

Մինչեւ այն ատեն աշխարհս ճանչցած կ'ըլլանք վէպի ձեւին տակ, որ պատմութիւն կը դառնայ, ամէն իրականութեանց պէս ։ Ցուրտ է, անգոյն եւ չահեկանութենէ զուրկ ։ Ի՞նչ ընել, երբ երեւան կուգայ տափակութիւնն ապարէզին զոր ճակատագիրը ընտրել պիտի տայ քեզի ։ Ուրեմն ո՛չ մէկտեղ ապաստանարան մը չկա՞յ կեանքին այս երաշտութեան դէմ, միտքին համար ապաստանակ մը՝ այս նիւթական ջրհեղեղին մէջտեղ ։ Կեա՞նքը, ի՞նչ ժպտուն գոյներու ներքեւ կը տեսնէի զայն ։ Այո՛, ես ալ իմ ապագաս վէպի մը մէջ դրած էի ։ Մարդերը գիրքերու մէջ միայն ճանչցած էի, եւ հոն՝ բոլոր կեանքերը արկածներով խառնուած են որոնք, զուարթ կամ տրտում, միշտ արկածներ են եւ տեղ չեն թողուր հասարակ կեանքի պակուցիչ միօրինակութեան ։

Եւ հիմայ, կը ցաւիմ այս դժբախտ պատրանքին վրայ, որ անհետանալով պարապ մը թողուց սիրտիս մէջ ։ Ի զուր կ'ուզեմ լեցնել զայն ։ Ա՛լ բանէ մը հաճ չեմ առներ ։ Իմ բոլոր ուսմունքներս անհամ կ'երեւան ինծի, ո՛չ թէ իրենցմով, այլ այն նպատակին պատճառով որուն կը ձգտին, յամր ու դրական ։ Սիրով պիտի բաժնուէի այս ամէնէն, փնտռելու համար իմ կորսուած անուշ պատրանքներս ։ Անոնց պիտի հետեւիմ՝ մտովին փոխադրուելով այն երեւակայական աշխարհին մէջ ուր կը վայելէի զանոնք ։ Անկարող կենակցելու այն մարդերուն հետ որոնք կ'ապրին հիմակ՝ Նոր

քաղաքներուն, նոր պալատներուն մէջտեղ, պիտի կենակցիմ անոնց հետ որոնք կ՚ապրէին իմ երազներուս մէջ։

Կրնայ ըլլալ որ վերջին դարու կեանքը մերինէն աւելի գունագեղ, աւելի բանաստեղծական եղած չըլլայ, եւ սակայն դժուարաւ կը հաւատամ այս բանին։ Եթէ հիմակուանէն աւելի դժբախտ դասակարգեր կային այն ատեն, կային նաեւ որոնց կեանքը նուազ ցաւոտ էր, նուազ անկենդան քան մեր կեանքը։ Այն ատեն բանաստեղծ չկար, բայց բանաստեղծութիւն կար։ Ցուր ոտանաւորներով կը հռչակէին արժանիքը, գերագոյն առաքինութիւնները։ Երեք դարէ ի վեր, թերեւս գեղեցիկ քերթուածներ կը գրուին, բայց ամէն ինչ կորսուած է իր բանաստեղծական ձեւը։ Առաքինութիւնը մերկացած է այլ եւս այն խանդավառութենէն որ չէր կասեցներ զայն զոհողութենէ մը ետք, ո՛չ ալ թոյլ կուտար որ սէրը ըմբռնուի առանց անձնուիրութեան։

Բայց ինչպէս դէմ ելլել այն դարուն որուն մէջ կ՚ապրիմ։ Ինչպէս հասնիլ բանաստեղծական բարեբաստիկ թուականի մը, անցողակի պարագայի մը բերմամբ, կամ վաղանցիկ բարքերով, եւ կամ մարդու մը աւելի՛ վաղանցիկ կեանքովը։

Խոստովանէ՛, բարեկամս, որ վշտալի բան է այս մելամաղձոտ մտածումներով սնանիլը, երբ քսա՛ն տարեկան ենք դեռ։

ՕՋԹԱՎ

# ԺԱ. ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ



Նկարագրութիւնը գրականութեան եւ ճարտասանութեան ամենէն կարեւոր մասերէն մէկն է, եւ ընդհանուր կերպով խօսելով՝ կարելի է ըսել թէ անոր միջոցաւ կրնան ըսուիլ շատ մը բաներ եւ արտայայտուիլ գաղափարներ ՝ հաւասարապէս՝ առանց անհրաժեշտ պէտք մը զգալու գրական ուրիշ ճիւղերու, ուրիշ ձեւերու եւ արտայայտութեան ուրիշ միջոցներու: Նկարագրութիւնը արդէն, գրական ո՛ր եւ է արտադրութեան մէջ, շատ կարեւոր դեր մը խաղալու կոչուած է: Վէպ մը, զոր օրինակ, առանց նկարագրութեան, բացարձակապէս չնչին արժանիք մը միայն պիտի ունենար անշուշտ գրական ու զգացական կրկնակ տեսակէտներով: Նկարագրութեան միջոցաւ առարկայ մը, տեղ մը, շէնք մը կամ անձ մը կամ գործողութիւն մը կը ներկայացուի ա՛յնպէս՝ որպէս է իրականին մէջ: Եւ թուղթին վրայ, առանց գոյնի ու ներկի, լոկ բառերով հիւսուած, նկարուած այդ պատկերը որչափ բնական ըլլայ, որչափ մօտ ըլլայ ճշմարիտին, որչափ ուժգին կերպով պատրանքը տայ ներկայացուած առարկային, անոր տեղին, շէնքին, անձին կամ գործողութեան՝ այնչափ աւելի յաջող կ'ըլլայ: Այս է, ընդհանրապէս, նկարագրութիւնը՝ գրականութեան մէջ. սակայն երկու տեսակներու բաժնուած է ճարտասաններու կողմէ, ու

*Նկարագրութիւն* (Description) անունը տրուած է՝ երբ խնդիրը առարկայ մը կամ տեղ մը պատկերելուն վրայ է. իսկ *Նկարագիր* (Portrait) ըսուած է այն նկարագրութեան՝ որով անձ մը կը ներկայացուի: Լաւ ու պէտք եղածին չափ յաջող նկարագրութիւն մը ընելու համար՝ գրողը կամ քերթասացը նախ կարելի եղած մանրամասնութիւններով քննած ըլլալու է նկարագրելիք անձը կամ շէնքը կամ տեղը կամ գործողութիւնը, եւ ատոնցմէ ամէն մէկին յարակից հանգամանքները ուսումնասիրած, պատճառները, արդիւնքները տեսած, հիւրացուցած ըլլալու է, ու առաջին հարուածով նկարագրուելիքին ընդհանուր տպաւորութիւնը տալէ ետք ընթերցողին կամ ունկնդրին, պէտք է անցնի հետզհետէ համբերատար կերպով գծելու մասերը առաջադրուած պատկերին, մինչեւ որ ցցուի ան իր ամբողջութեամբը՝ գեղեցիկ, նկարուն ու ազդեցիկ, եւ կենդանիի ուժը ներարկէ հոգիներէն ներս: Նկարագրութիւնը շատ դիւրին կը կարծուի սովորաբար, սակայն կատարելապէս կանոնաւոր ու տպաւորիչ նկարագրութիւն մը, որուն մէջ ոչինչ պակաս մնացած ըլլայ, իրապէս գրական ուսումնասիրութեան մը չափ արժէք ունի, որովհետեւ նոյն ինքն ուսումնասիրութիւն մըն է արդէն, բառին լայն իմաստովը:

# 1. ՍՈՒՐԲ ՄԵՍՐՈՊԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ



1898 Հոկտ. 26ին՝ պիտի այցելէի Օշականի Եկեղեցին՝ Ս. Մեսրոպի գամբարանովը կրկնակի նուիրականացած այդ սրբավայրը։ Երկու օր առաջ սիրտս տրոփման մէջ էր. միամիտ ու անպայման երկիւղածութենէ մը բռնուած՝ գերագոյն վարժապետին ո՛տքը պիտի երթայի. — Ճամբուն վրայ յանգղգաստից փոխադրուած հեռաւոր Թուականի մը այն սրտաճմլիկ ժամուն՝ ուր խաչանիշ չողիւնով արտափայլող դագաղ մը կը տարուէր՝ աշակերտաներու սգաւոր խումբի մը ու աշխարհական ամբոխի մը երգերովն ու հեծկլտուքներովը, երեւակայութիւնս տխուր վայրերուն ամայութիւնը սըգազարդեց մեռելական հանդէսի մը դիւթական պատկերովը՝ որ պարիկներու հողմածայն թեւերուն վրայ կը հեռանէր սուրացող կառքիս։ Բայց այդ անուշ պատրանքը լուծուած էր, երբ կառքէն իջած՝ Օշականի քարաբլուրէն վեր կ՚ելլէի մտախոհ ու սրտաթունդ։

Գիւղի եկեղեցին հասած՝ ներս մտայ ստորերկեայ փոքրիկ մատուռէն՝ որուն աջակողմը կը տեսնուէր ցած ու անշուք գամբարանը, անդիմադրելի այլայլում մը խուովեց զիս, չէի ուզեր հաւատալ թէ անոր ներքեւ փոշի դարձած ոսկորներ կենային. ինծի համար Մեսրոպն՝ ապրող ու գրապէս ներշնչող հոգի մըն էր. ափ մը հողի տակ ի՞նչ-

ողջէս կրնային թաղել կենդանի գիրը։ Անթարգմանելի հակասութեամբ մը ընդվզած բոլոր էութիւնս՝ խուլ քրթմնջիւն մը կը հանէր իր խորքէն. անմահներու ճակատագիրը ծաղրելու համար տարքուած կատակ մը կը թուէր ինծի այդ մարմարիոնէ կափարիչը։

— Հարկ էր սակայն մտածել անոր, ծնրադրել ձոյլ հիացումի մը մէջ, ու համբոյրի տաք շրթունքներով քարի մը պաղ երակներուն մէջէն ծծել հոգեկան կայծեր՝ երկայն դարերով իրենց կրակին անշէջ պահող նուիրական նշխարներէն։

Ցեռոյ՝ սեւեռուած ա՛յնքան մեղմ մտամփոփումով՝ որ ուշակորոյս նուաղումի մը կրնար տանիլ զիս՝ ցնորակոծ դեդեւումի մը հեշտ վայր. կեանները զգացի։ Մինչեւ այն ատեն, հոգիներու հետ ապրիլ սիրեցի, հիմա ոգի մը տեսնելու գաղափարը կը ժպտէր ինծի. չեմ գիտեր թէ ի՛նչ տեսակ անստուեր ունայնացումի թալուկ մը՝ կապոյտ շլացումով մը կը պատէր հոգիս, ու ես երջանի՛կ պիտի ըլլայի թէ ամէն բան լռէր իմ մէջ ու շուրջս, անմի՛տ հպարտութեանս հետ՝ որ արդէն կծկուած ու խորտակուած՝ խոնարհագոյն գետնի մը վրայ դամած էր զիս։ Ահ, այդ ցնորքը՝ գիտակցութեանս բոլոր տարիներուն հետ պիտի չուզէի փոխանակել։ Պէտք չէ՞ր որ՝ երազի մը չափ՝ բանդագուշանքն ալ մեր մտաւոր կեանքի մէկ պայմանն ըլլար։ Ի զո՛ւր սպասեցի սակայն տղայ մարդկութեան թաքուն կողերուն մէջ սաղմնող ջլախտի մը հրաշալիքին. անողոք իրականութիւնը պատերու թանձրութեան ու քարին կարծրութեան

*վրայ կրթնած՝ նո՛յն կը մնար միշտ աչքիս առջեւ ։ — Զգայական այդ վրդովումիս մէջ տխեղծ ու բոպիկ մանկութեանս դեղնած ու վեհերոտ վայրկեանները ետ դարձած էին. Այբուբենի առաջին դասին մոռացման վիշտը կսկիծի մը խայթոցը արթընցած՝ անհուն տենչանքի մը փոխուած էր կուրծքիս տակ. ու եթէ Մեծ Վարդապետին ստուերագիծ ձեռքը տեսնէի գէթ՝ ոսկի տառերով մագաղաթի մը վրայ, կամ աննման Քահանայապետին զոհար գիրերով զարդարուած լանջապանակ տախտակը գէթ տեսնէի, առաջին ու անգիտակից շարժումս՝ պիտի ըլլար անգամ մըն ալ ծնրադրել ու թախանձագին խնդրել իրմէ, — Աղուոր Ա. Բ. Գ. էդ դաս մը տուր ինծի ։*

ԵՂԻՇԷ ԵՊԻՍԿ. ԴՈՒՐԵԱՆ

## 2. ԸՆՏԱՆԻՔԻՆ ՏԵՐԸ

*Պարտէզ մը կը մտնէք, կը դիտէք ինչ որ բընութիւնը արտադրած է հոն թարմ ու ծիծաղուն, ինչ որ արուեստը, խնամքը ներդաշնակած են հոն աղուոր ու զարդարուն. Ծաղիկները կը տեսնէք մասնաւոր ածուներու մէջ գոյնզգոյն, իրարու հետ հաշտ ու համաձայն. Թերթեր, տերեւներ վառվըռուն, փայփլուն. Թուփերուն կը նայիք մատղաշտունկերը կը դիտէք իրարու քով իրարմէ հեռի, գետնէն բուսած կանանչ ու սիրուն, կը նշմարէք*

հոսն կեանքը, կեանք մը երանաւէտ որ կը ծլի կը քաղքոջի։ Ու հեշտին ուրախութիւն մը կը պարարէ սիրտերնիդ։ Գո՛հ էք։

Սակայն...ինչէ՞ն է որ պահ մըն ալ աչքերնիդ չորս կողմ կը պտտցնէք ու հին կոճղ մը կը փընտըռէք անոնց մէջ. ուրիշ անգամ տեսած էիք զայն հոն, մայրի մըն էր գօսացած, կամ եղեւին մը ծերացած, որ այն պարտէզին մէջ կանգնած էր անտառան, եւ հնութեան պատկառանքը կը բուրէր հոն. չկա՛յ հիմայ, ո՞ւր է այս կոճղը. հինաւուրց հաստաբմատ ծառ մըն էր, ո՞ւր է ան՝ վերցա՞ծ է մէջտեղէն, եւ սակայն դեռ երէ՛կ հոն էր։ Միսակ մնացած են հիմա ծառերն ու ծաղիկները. ո՞ւր է այն հին կոճղը, նախախնամութիւնն էր անիկա պարտէզին. ո՞վ դպաւ անոր։

* * *

Պարտէզ մը արդէն ընտանիքն ալ,.ու ծերը՝ նախախնամութիւնը։ Ձեր գիտեր՝ համամի՞տ էք ինծի, ո՛վ դուք որ ծեր մը ունիք ձեր ընտանեկան մարկին տակ՝ անկիւնը նստած, ծեր մը որ կը նախագահէ ձեր սեղանին ու օրհնութիւն կուտայ անոր։

Կը յարգէք զինքը, կը գուրգուրաք անոր վըրայ եւ աղէ՛կ կ'ընէք. իր կարկամած սիրտին հրճուանքն ուխտի մրմունջ մըն է որ առ Աստուած կ'ուղղուի ձեզի համար։

* * *

*Անձայն անշշուկ կեանք մըն է անիկա իրեն մէջ ամփոփուած, բայց կը լեցնէ ձեր տունը։ Ներութիւնը՝ շնորհ մը, օրհնութիւն մը պարգեւուած է իրեն զոր կը սփռէ իր շուրջ եւ անով կը պահպանէ ձեր նիստն ու կացը։ Պահապան հրեշտակն է ձեր յարկին։*

*Իղձն ու տենչանք դադրած են իր հոգիին խաղաղ ալքերուն մէջ, ձեզմո՛վ միայն երջանիկ, ձեզի՛ նուիրուած է ամբողջովին։*

*Ոչինչ է կինը, տարիներու բեռին տակ ճնշըւած, անկար աղկաղկ էութիւն մը. բայց ի՜նչ մեծ է այն ոյժը զոր կը ներշնչէ ձեզի՝ միմիայն իր շունչովը։*

*Ապահովութեան պէս բան մը կ'զգաք ձեր մէջ, երբ տրտմութեան վայրկեաններուն, իր մօտն ապաստանիք. բան մը չունի խեղճը ձեզի տալու, իր աղօթքը միայն ունի ու զայն կուտայ բոլոր հոգիովը, եւ այնչափը բաւական է ձեզի։ Կը սիրէք զայն, պարտականութիւն մը չէ՛ անիկա ձեզի համար, այլ բնական զգացում մը որ կը կապէ ձեզ իրեն հետ ու... դառնութեամբ նայիլ կուտայ այն անկիւնին զոր օր մը կը լքանէ եւ ուր սովոր էիք դուք տեսնել զինքը։*

*
* *

*Առաւօտները, գործի գացած ատեններնիդ, երբ իր ձեռքը համբուրէիք ու «Մնաս բարով»ը ըսէիք, ջերմ մաղթանքներ կը բղխէին իր սիրտէն ու կ'ընկերանային ձեզի — ծերի մաղթանքներ՝ հաւատքով լեցուն։*

Իրիկուններն անկողնէն կը սպասէր ձեզի՝ անձկոտ, անհանգարտ՝ երբ քիչ մը ուշանայիք։ Աչքերնուդ մէջ կը կարդար ձեր ուրախութիւնը կամ վիշտը, երկուքին ալ մասնակից՝ առանց իսկ գիտնալու։

Պատմութիւններ ունէր միշտ, հին օրերու յիշատակներէն քաղուած, ալեւորի պատմութիւններ, պարզ ու միամիտ խորհրդածութիւններով որոնք յաճախ իմաստասիրութեան դաս մը կ'արժէին։

Դուք ամէն ինչ էիք իրեն համար, կեանքի շրջումներուն մէջ երբ ուրիշներ անարգէին, արհամարհէին ձեզ, ինք իր գիրկը կը բանար ու կը գըրկէր ձեզ. հոն յարգի էիք դուք ու թանկագին։

Արիւնը սառած էր իր երակներուն մէջ, բայց իր շունչը տաք էր, իր սէրը օտարի սէրը չէր՝ նիւթապաշտ ու յեղյեղուկ՝ կրակ չունէին իր զգացումները, բայց անարատ էին ու անայլայլ։

Հաւատքի ճրագ մը կը վառէր իր հոգիին մէջ, ծերունի հաւատացեալի հոգի։ Եթէ պատրանքներ խաւարեցնէին ձեր սիրտը, նոյն ճրագը կը լուսաւորէր զայն։

* * *

Ընտանիքի ծե՛րը։

Ոչինչ է ինքը, տարիներու բեռին տակ ճընշուած՝ անկար աղկաղկ էութիւն մը, բայց երբ ոչընչանայ, պարտէզին կոճղն է որ կը պակսի։

Ընտանիքի ծե՛րը, տանը օրհնութիւնը, թող ըլլայ ան՝ մեծ մայր մը կամ մեծ հայր մը եւ կամ ...հօրաքոյր մը։

ԱՏՐՈՒՇԱՆ

# Յ. ԾԻԾԱՂՆԵՐՈՒ ՏԱԿ

Դիտա՞ծ էք որ կեանքի պատկերներուն տխուր ու մթին կողմերը շատ անգամ լոյսերու մէջէն ու ծիծաղներու տակ կը պարտկուին, որոնց հանդիսատես կ'ըլլանք անխռով զուարթութեամբ մը։ Այս մտածումը կը պաշարէր զիս առջի իրիկունը, եւ պաշարած է ամէն անգամ երբ, այս եղանակին Սիւքին ներկայացումներուն կը գտնուիմ ուր թեթեւ երաժշտութիւն մը, խաղեր, ծափեր, ծաղկեփունջեր՝ վաղանցիկ հաճոյքի մը պատրանքը կուտան. եւ սակայն հացի համար մղուած, պայքարին ու մարմնական չարաչար աշխատանքներու ամէնէն բիրտ ու իրական տեսարանն է որ կը պարզուի հոն, մեր աչքին առջեւ, զմեզ խնդացընելու համար։ Մարդիկ որոնք դուրսը, իրենց ճամբուն վրայ կեցող տղոց կամ աղքատ կիներու ողորմութիւն մը նետած էին՝ բարիք մը ընելու համար, հոն՝ կրկէսին մէջ, նոյն բարեմիտ երեւոյթով կը ծափահարեն մանկատի աղջկան մը, որ օդին մէջ կը տատանի գլխիվար, ակռաներուն անցուցած երկաթէ պզտիկ օղակ մը ուրկէ խոշոր մարդ մը կախուած է, — իբր թէ ծաղկեփունջ մը եղած ըլլար՝ այդ մատղաշ շրթունքներուն մէջտեղ։ Մարդը կը դարձընեն պարսատիկի մը պէս, մոլեգին արագութեամբ, եւ խեղճ աղջիկը կը տատանի միշտ գլխիվար, իր երկու ման-

րիկ տուքերուն ծայրը տրափէզին անցուցած՝ ջղաձգական շարժումներով, աչքերը իրենց կոպիճներէն դուրս, այտերը կաս կարմիր, ակռաներուն մէջ սեղմած երկաթեայ օղակը՝ անագին ծանրութեամբ բեռովը։ Կը հիանանք, կարծիքներ կը փոխանակենք, եւ հանդիսականներ կան որ կրկնութիւնը կը պահանջեն՝ անագին քրքիջներ արձակելով։

Յետոյ, կարգը ուրիշներունն է՝ նոյն տանջանքները տալու իրենց մարմիններին. դէմքերնին ժպտուն ու անայլայլ պահելու պայմանաւ, որպէս զի հանդիսականներուն փափուկ սիրտերը չյուզուին։ Նուագածութիւնը կը գինովցնէ այդ լարախաղացներն ու ձիամարզիկները, որոնց դէմը կեցած է միշտ վարպետնին՝ մագնիսական նայուածքով ու խարազանը ձեռքը բռնած, զոր կը չաչեցնէ ատեն ատեն, ձիերուն ու ձիաւորներուն համար. Ճարտար գողտրիկ խաղերուն կը խառնուին գժուարիններ, ոստումներ՝ որոնք իրենց վտանգը ունին, հաւասարակշռութիւններ՝ որոնց կորուստը կրնայ աղէտաբեր դառնալ։ Եւ կ՚ուզենք որ չարունակեն, կրկնեն՝ աւելի՛ եղական, աւելի՛ վըտանգալից փորձեր ընելով։ Ու դուրս կ՚ելլենք, աղուոր ժամանցի մը տպաւորութեանը տակ։

Կը յիշէ՞ք Իւճէնը։ Եթէ չտեսաք զինքը, իր հմայիչ անուանէն դատելով՝ հմայիչ արուեստագիտուհի մը երեւակայեցիք թերեւս։ Արուեստագիտուհի մըն էր իրա՛ւ, հազիւ տասներկու տարեկան, յինքզինքը համակ տառապանքի նուիրած. որուն մէջ կը կայանար, սակայն, բոլոր ճարտարութիւնը

եւ տուանց որու, գոյութեան պատճառ չկրնար ունենար հասարակութեան աչքին։ Այդ ցաւտանը դէմքով ու վատիտ մարմինով աղջիկը, ոսկեհիւս սիրուն հագուստ մը հագած՝ երբ առաջ կ'անցնէր ոստոստելով, կ'սպասէինք որ պար մը պարէ կամ մանկական երգ մը երգէ. Եւ ահա՛, նուագախումբին մելամաղձոտ մէկ եղանակին հետեւելով՝ կ'սկսէր մարմնական գալարումները, որոնք հեռուէն կը սատանայական, սրտաճմլիկ դառնալով։ Գետինը, հողին վրայ, երկու ոտքերը բազուկներուն պէս ուղղաձիգ ու քովընտի կարկառելով՝ դամուած կը մնար վայրկեան մը. կուրծքը, կռնակը կ'ուռեցնէր հեռուէն աներեւակայելի ցցուածքներով. օձի պէս կը սողոսկէր գետնին վրայ, երեսը հողին տուած, եւ իբրեւ վերջին ու լաւագոյն խաղ, գլուխը ծունկերուն մէջ առած ու երկու ձեռքերով սրունքները բռնած՝ կը սկսէր թաւալիլ կրկէսին շուրջը, մսակոյտ մը, անճանաչ առարկայ մը դարձած այլ եւս՝ շարունակելով այսպէս մինչեւ որ զանգակը ազդարարէր թէ հերիք է։

Եւ երբ կուգար սովորական խոնարհութիւնը ընելու, հազիւ ծափի մը արժանանալով՝ գերեզմանէն ելած մըն էր կարծես, ա՛յնքան գունատ ու այլայլած կ'ըլլար դէմքը։ Հէ՛գ պզտիկ աղջիկ, որ այդ վայրկեանին ողորմուկ նայուածք մը կ'ուղղէր դէպ ի իր հասակակից օրիորդները, որոնք շքեղ զարդուզարդերով բազմած օթեակին եզրը՝ կը խնդային իր վրայ ու կը զրօսնէին իրմով։

* * *

Ձեմ գիտեր ինչո՛ւ, կրկէսին մէջ ուշադրութիւնս ամէնէն աւելի սեւեռած կը մնայ դէպի ճակատի ցած ու լայն բացուածքը, որ վարագոյրով մը ծածկուած, բեմական դուռի մը կամ խուցի տեղ կը ծառայէ, որուն ետին խառնիխուռն կ՚սպասեն, ներկայացման ամբողջ տեւողութեանը միջոցին, մարդերն ու ձիերը՝ մէկտեղ ընելով իրենց արդուզարդը, մէկտեղ ապրելով գրեթէ ամէն գիշեր։

Ներսը, խոնաւ ու կիսաղօտ բակ մը կայ, քանի մը բաժանումներով՝ լաւագոյն նժոյգներուն համար, որոնք արտիստներէն աւելի խնամքի կը կարօտին. գարշ հոտ մը, վատառողջ մթնոլորտ մը, խառնիխուռն ու կեղտոտ ամէն ինչ։ Եւ սակայն, երբ մեղմիւ վեր կ՚առնուին վարագոյրին երկու ծայրերը՝ շուտ մը գոցուելու համար, մաքուր, փողփողուն, հրապուրիչ տեսքով աղջիկներն են որ դուրս կուգան, կամ երիտասարդներ՝ գունագեղ, փայլուն հագուստներ հագած՝ ամէնքն ալ թեթեւաշարժ, ամէնքն ալ ծիծաղկոտ, ամէնքն ալ երջանիկ երեւոյթով։

Ո՜հ, այդ վարագոյրը՝ կեանքի մէջ ալ չունի՞նք զայն միթէ, — ողբերգութիւններ, թշուառութիւններ, կեղծիքներ պարտըկող վարագոյրը, որուն ծալքերուն տակէն որքա՜ն փողփողուն տիկիններ, մաքուր պատանիներ դուրս կ՚ելլեն՝ գոհունակ, հպարտ դէմքերով, կրկէսի մը արուեստագէտներէն աւելի ճարտարութեամբ վայլեցնելով արուեստական պարկեշտութիւնը իրենց անձին ու բռնազբօսիկ ժպիտը դէմքերնուն։ Եւ տասնեակներն են

որ ամէնէն աւելի մաքրասէրներն ու անկեղծները կը ձեւանան երբեմն՝ աշխարհային կամ ընտանեկան շրջանակներուն մէջ։

Իրական կեանքի ինչ մանրանկարներ կան դեռ այդ գրօսավայրին մէջ, քանի մը կանգուն տարածութեամբ բոլորակ հողին վրայ ուր միմոսը կամ ֆլօունը՝ գլուխը փայտէ ցանկապատին զարնելով ու գետնի վրայ թաւալելով՝ տխուր ճըշմարտութիւններ ու սուտ հեգնութիւններ կ'արձակէ հանդիսականներուն երեսին, յաւիտենապէս քրքիջներ առաջ բերելով։

Իր սիրային յայտարարութիւնները, օրինակի համար, որոնք կ'սկսին անձնասպանութեան սպառնալիքով ու կը վերջանան անտարբեր ու ծիծաղելի հեռացումով մը, քիչ մը կոշտ՝ բայց հարազատ ընդօրինակութիւն չե՞ն սալոնի բարքերուն։ Միշտ կը խնդայ ու կը խնդացնէ այդ մարդը, — ատ ըլլալով իր դերը, — բայց իր խնդուքներուն տակ արհամարհոտ, հեգնոտ բան մը սքօղուած է անոնց նկատմամբ, որոնց ներկայութենէն կախում ունի սակայն իր ապրուստը. արհեստով ծաղրող մըն է, որուն մեծագոյն արժանիքը կը կայանայ միամիտ ձեւանալուն մէջ։ Եւ անոնք իսկ հանդիսականներէն՝ որոնք կ'զգան թէ այդ ողորմելի միմոսին ակնարկած դիրքերուն ու ձեւացուցած գռեհիկութիւններուն մէջ գտնուած են իրենք ալ՝ կը խնդան անգիտակցաբար ու կը ծափահարեն մեքենաբար։ Ո՞վ է միամիտը, ծափահարուո՞ղը թէ ծափահարողը։

ՄԵՆԱՍԷՐ

# Կ. ՄԵՌԵԼՈՑ

Գերեզմաններու ուխտագնացութեան օր մը, ուր մեր նախորդներու յիշատակները կը կցուին ներկային հետ, եւ այսօրուան կեանքը՝ վաղուան խոստացուած կեանքին։

Բոլոր դերեզմանատուները ուր սովորաբար կեանքը սակաւ է եւ տխրութիւնը մեծ՝ — մանաւանդ սարսռացնող տխրութիւնը —, այսօր տխուր կենդանութիւն մը կ'ստանան՝ կեանքովը անոնց, որոնք կ'երթան խռովել մեռութիւնը եւ լռիկ տրտմութիւնը գերեզմաններու, քահանայի մը արծաթասէր ձայնին ելեւէջներուն մէջ դնելու համար, իրենց բոլոր ըղձանքը, եւ մաղթելու համար հաւաքով՝ հանգիստ իրենց մեռելներուն։ Այդ մոռցուած վայրերը այսօր լեցուն են. խանձած խոտերուն մէջ աղջիկներ թեւ թեւի կը պտտին. աղտոտ ու խորտուբորտ ուղիներուն մէջ սեւազգեստ կիներ գերեզմաններ կը փնտռեն. կիսափուլ պատերուն եւ խոշոր ծառերուն վրայ տղաք կ'ոստոստեն։ Ոմանք գերեզմաններու տխրութեան մրուրը կը քամեն, ուրիշներ՝ անոր անգիտակցութեանը մէջ երջանիկ՝ աւելի կը զուարճանան քան թէ կ'ողբան։ Եւ երբ թէ ամբողջ կեանքին հակասութիւններով լեցուն ըլլալը բաւական չըլլար, այս տարբեր աշխարհի մը նախադուռին մէջ ալ հակասութիւններ չեն դադրիր։ Հոս լացող մը, հոն խընդացող մը, հոս տրտում մը, հոն զուարթ մը կու-

գան լեցնել այդ վայրերը, որոնք, կարծես, միայն մահուան խորհուրդովը լեցուն՝ անխուր ըլլալ կը պարտին։ Հոսանքի մը ուժգնութիւնը ունի թախիծը, որ հոդ՝ այդ վայրերուն մէջ՝ կը տիրապետէ, եւ ուր քու անցեալդ կը պարզուի այն տարտղնած անկանոնութեան մէջ, որ սա գերեզմանները ցոյց կուտան, ա՛յնքան այլազան եւ ա՛յնքան տարօրինակ կարգաւորութեամբ մը։ Շուրջդ, ամէն կողմէ, գերեզմաններ կը պաշարեն զքեզ՝ ոտքերուդ տակ, առաջքդ. ետեւդ, աջդ, ձախդ, վերջապէս ամէն կողմ գերեզմաններ, գերեզմաններ։

Հոս կոտրած փայտէ խաչ մը, հոն սիւն մը, հոն պզտիկ մարմարեայ քար մը, ճերմակը, սեւը, ճոխը, պարզը, հողայինը եւ քարայինը, ամէնքն ալ գերեզմանի մը մատնանիշ կ՚ընեն։

Նոյն իսկ խոտերը որ ոտքերուդ կը կառչին, եւ քարերը որ քայլերուդ կը զարնուին, միշտ գերեզմաններ են որ կը յիշեցնեն քեզի։ Գիրերը որ աչքերուդ կը հանդիպին իրենց առաջին տողէն «Աստ հանգչի»ով կ՚սկսին եւ մահուան խորհուրդը կը պարունակեն իրենց մէջ։ Պատկերները զորս քարերուն վրայ դրոշմուած կը տեսնես յաճախ, վեղարներու ծալքեր են եւ կամ տաղաւարաններու պատկերներ, որոնց դատաստանը Աստուծոյ կը թողուս։

Եւ այդ հոյլին մէջ, այդ խառնակութեան մէջ զոր գերեզմանները ցոյց կուտան, մանուկներու գերեզմաններէն մինչեւ ծերերու գերեզմաններու, երիտասարդներէն մինչեւ չափահասներու գերեզմաններու կը հանդիպիս, որոնք երջանիկ թէ դըժ-

բաղդ, միշտ միեւնոյն եղբայրացութեան է որ կը հասցնեն զքեզ, աշխարհի ունայնութեան անփոխանակ վկաները հանդիսանալով։ Եւ այդ ամէնուն առջեւ ալ միեւնոյն խորհրդածութիւնն է որ կուգայ տեղաւորուիլ միտքիդ մէջ՝ թէ պիտի գայ օր մը՝ ուր դուն ալ պիտի վերջանաս, բանաձեւով մը որ «Աստ հանգչի»ով կ'սկսի եւ «Ամէն»ով կը վերջանայ։

Բայց, փոխանակ գերեզմաններու այս աշխարհին մէջ մոռնալու՝ կեղծիքի եւ պաշտամունքի աշխարհը որուն մէջ ամէն՝ ամէն օր կ'ապրինք, դարձեալ կը քննենք իրերը այն աչքով որով պիտի նայէինք աշխարհիս մէջ։ Ու վայրկեանի մը մէջ՝ չար մտածումի մը պէս ուղեղէդ ներս կուգայ սպրդիլ սա կասկածը թէ՝ «արդեօք այս գերեզմաններու աշխարհին մէջ կեղծիքը դադրա՞ծ է։» Եւ այլեւս կասկածոտ աչքերով նայիլ կ'սկսիս տապանագիրներուն, որոնց մէջ, առանց բացառութեան, եկեղեցականները «Հովիւ քաջ լեալ» եւ աշխարհականներ «Այր առաքինի եւ բարերար լեալ» կը մեկնին «յաշխարհէ աստի։» Եւ ծաղր մը կուգայ թառիլ շրթներուդ վրայ, երբ՝ բոլոր ջանքերուդ հակառակ՝ չես գտներ տապանաքար մը, որ անկեղծութիւնը ունենար ըսելու թէ՝ այն որ հոդ կը հանգչի՝ խարդախ մըն էր, խաբեբայ մըն էր, տընաւեր մըն էր, չար մըն էր։ Եւ ինքնիրենդ կ'անդրադառնաս՝ եկեղեցականէն մինչեւ աշխարհականը՝ զքեզ շրջապատողներուն վրայ, ո՜ւր իրենց կոչումին եւ պարտականութեան անգիտակիցներու ահագին խումբ մը կը տեսնես՝ սա հեռուն կեցող

քահանայէն սկսեալ որ դրամին ցանկութեամբը ժողովրդին ազնուութիւնը կը շահագործէ, մինչեւ ահագին հպարտութեամբ ճոխացեալ մեծատունը, որ աշխարհի ամէնէն նուիրական բաներուն տարազով իր շուրջինները կը կողոպտէ։ Ու կը զարմանաս թէ ինչպէս անոնք ալ օր մը «Հովիւ-քաջ» եւ «Այր բարերար» պիտի ըլլան գերեզմանին մէջ, որ պարտ էր աւելի իրենց դատապարտութեան քան գովասանքի վայրը ըլլալ։ Ու կը դողաս դուն քու մէջդ՝ մտածելով թէ օր մը գուցէ քու ալ չունեցած մէկ յատկութիւնդ քեզի պիտի վերագրեն։

Ու այս տխուր գաղափարը ցրուելու եւ մոռնալու համար, ա՛լ կը հրաժարիս տապանաքարերը կարդալէ. բայց չես կրնար ազատել անձդ այն ցաւագին տպաւորութիւններէն որ տխուր պատկերներու, սրտայոյզ եւ աղեխարշ տեսարաններու շարունակական յաջորդութիւնը առաւօտէն մինչեւ իրիկուն կը պատկերացնէ աչքերուդ։ Մերունի կիներ՝ գերեզմաններու վրայ հակած՝ լացի եւ ողբի արտայայտութեամբ կ'աշխարեն իրենց զաւակներու գերեզմաններէն վար՝ այն ռամիկ բայց հաստատուն եւ անխախտ հաւատքով թէ իրենց ըսածը կը լսուի մեռելէն։

Սեւազգեստ կիներ, սգաւոր աղջիկներ, այրեր, մանուկներ կուլան կը հեծեն, հառաչանքներ կ'արձակեն, եւ ասոնց ամէնուն մօտ ալ քահանաներ՝ որոնք արագ արագ կը կարդան, աւելի սովակին համեմատութեամբ, քան պաշտօնին եւ պարտականութեան գիտակցութեամբ։ Ու այս ընդ-

հանուր խառնակութեան մէջ, որ գերեզմաններու շուրջը կը յածի եւ ընդհանրական ձգտումի մը երեւոյթը ունի, անծանօթ շունչ մը կ'զգաս որ վերստին կը տիրապետէ, եւ զքեզ պարտաւորութենէ եւ գիտակցութենէ մղուածի մը պէս կը մղէ երթալ ծնրադրելու գերեզմանի մը առջեւ, ուր սիրելի մը ունիս հանգչած։

Գերեզմանը՝ այդ խոշոր անդունդը եւ անքառնալի արգելքը վայրկեան մը քօղի մը պէս կը պատռի, եւ հոն՝ միտքիդ մէջ նորէն ցաւագին արտայայտութեամբ մը կենդանութիւն կ'առնեն կեանքի բոլոր դրուագները մեր այն սիրելիներուն՝ որոնք այդ գերեզմանին մէջ գտած են իրենց վերջին հանգիստը։

Կը փոխադրուիս դէպ ի այն օրը, որուն առաւօտը չկար այլեւս՝ այդ հողակոյտին տակ հանգչողին համար, եւ վերստին ստուերին մէջ, որ գերեզմանին մթութենէն ծնունդ կ'առնէ եւ մահուան ցրտութենէն կը դողայ, տեսնել կը կարծես ցուրտ մարմինը եւ պաղ ճակատը անոր՝ որուն վերջին ու ցուրտ համբոյրը դրոշմեցիր։

Գերեզմաններու այս օրը կը վերակենդանացընէ հանգուցեալ սիրելիներու յիշատակը նոյն իսկ սիրտիդ մէջ, փշրելով պատուարը գերեզմանին եւ արգելքը հողակոյտին. թերեւս եկեղեցական կարգաւորութեանց ամէնէն իմաստուններէն մէկն է, որ մարդուն վրայ պարտաւորութիւն կը դնէ չը մոռնալ այն անցեալ սերունդը՝ որ մեր ծնունդին եւ գոյութեան պատճառ եղաւ։

Գերեզմաններու յարգանքը՝ հնագոյն կրօնք-

ներէ նուիրագործուած՝ արդէն ինքնին հոգեկան պահանջ մըն է զոր ակամայ կ'զգայ մարդ, եթէ երբեք կրէ մահուան տպաւորութիւնը սիրելիի մը կորուստով։

Եւ տարուան այս օրերը մեր մէջ ա՛յնքան քիչ եւ ա՛յնքան դէշ կը յարգուին որ՝ մարդ տարակոյս կ'ունենայ հաւատալու թէ մեր մէջ մեռելներու յարգանքի զօրաւոր գաղափար մը եւ նախնիքներու հանդէպ պարտականութեան մեծ գիտակցութիւն մը կը գտնուի։

Ա. Ա. ԱԼՊՕՅԱՃԵԱՆ



# Ճ. ԱՇՈՒՂԸ



Եղական տիպար մըն էր Կ...., որ քանի մը տարիէ ի վեր Իզմիր Թափառելէ վերջը, անցեալ շաբթու մեկնեցաւ իր բնավայրը՝ եղբայրական սրտազեղ սիրով վիզիս փարելով վերջին անգամ։ Ժողովրդային Աշուղ մը, զոր գաւառի խորերէն չեմ գիտեր ո՛ր հով բերեր էր Իզմիր։ Քանի մը տարի առաջ, դիպուածը ղրկած էր զինքը աչքերէս։ Կինն ու երկու մանչուկները Ս. Կարապետի խնամքներուն յանձնած՝ ինքը, ձեռքը հին ջութակ մը, գիւղէ գիւղ, քաղաքէ քաղաք, երգելով՝ կը հասնէր վերջապէս հոս։

Հինգշաբթի իրիկուն մը՝ Աղքատախնամին սեղանին առջեւ եկեր էր՝ ամչկոտ ու գլխիկոր։

Ջութակը կոտրեր է եղեր, նորի մը պէտք ունի։

— «Աղանե՛ր, Ս. Կարապետ վկայ, կը բերեմ կուտամ նորէն, ձիկ երկու մէճիտիէ տուէք», — եւ իր անտես աչքերէն, յուզումը, քանի մը կաթիլ դուրս այտերուն վրայ կը գլորէ։

Ուզածը առաւ գնաց, եւ անկէ ետքը երբեմն կուգար նորէն, Ջութակ մը կուրծքին սեղմած՝ խոշոր քսակին խորէն, քրտինքով շահուած մէճիտիէներով իր պարտքը վճարելու համար։ Քիչ ատենի մէջ գաղթականներու սիրականը դարձաւ Կ...ը, այնչափ անուշ էր ձայնը, որ Ջութակին դողդոջ շեշտերուն խառն՝ իրեն կը կապէր հոգիդ՝ փողոցէն անցած ատենը։ Շատեր իրեն բաղդ կը հարցնէին. ինքն ալ ամէնքը կը գո՜հացնէր, մանաւանդ զանոնք, որ ծննդավայրի յիշատակով մը կը մխային։ Շարունակ զուարթ էր եւ ուրախ էին իր գուշակութիւնները։ Առաւօտէն մինչեւ իրիկուն փողոցէ փողոց երգելով ու նուագելով կը շրջէր, իր բնիկ երկրին հազարաւոր պիւլպիւլներուն պէս, սա՛ տարբերութեամբ, որ անոնք տաքուկ բոյնի մը մէջ կը հանգչէին իրիկունը՝ ձագուկներու քով, մինչ մեր երգիչը կ'երթար անծանօթ արձարանի մը անկիւնը, գլուխը տախտակի մը կրթնած՝ հեռու իրեններէն։

Շարունակ կ'իյնայի իր հետ, գութի միացած գորովագին զգացումով մը։ Երբեք օր մը վհատ չտեսայ զինքը։ Աշխարհի գոյներն ա՛լ ոչինչ են իրեն համար, կը մտածէի. ո՛չ գարնան վարդերը, ո՛չ ալ ձմրան սպիտակ եւ անարատ ձիւնը պիտի դիտէ «Սիփնա սարերի» ստորոտն ու գագաթը։

Ի՞նչ կ'արժէ Ապրիլը իրեն համար։ Ասիկա առիթ մը եղաւ որ ամէնուն համակրանքը կրկնապատկի իրեն համար։ Կ... սիրականը եղաւ ամէնուն։

* * *

Անցեալները, քանի մը շաբաթ չ'երեւցաւ։ Զբաղումներու մէջ մոռցեր էի զինքը, երբ օր մը հանդիպեցայ իրեն փողոցին անկիւնը։ Գրեթէ չճանչցայ, անխօսուկ, անձայն տխուր բան մըն էր դարձեր։

— Ի՞նչ ունիս։

— Աղա՛, ես երկու ամիս է խապրիկ մը չեմ առեր յիմ տունէս, յիմ լաճերաց։ Չեմ գիտնայ, ի՞նչ են եղի»։

Մխիթարեցի զինքը, կրցածիս չափ։

Քանի մը օրէն ձեռքը թուղթով ու երգելով եկաւ դպրոց. իրիկուն էր, արձակման ժամը։ Զիս իր խօվուշը տարաւ։ Տունէն նամակ եկեր էր, կարդացի իրեն։ Փետուրէ գրիչով գրուած ըլլալու էր, հաստ թուղթի մը վրայ, զուցէ գիւղին տէրտէրը կամ վարժապետը, որոնց տուն տուած էր Աշուղին կինը։ Այնչափ պարզ եւ այնչափ տըխուր, որ դեռ յիշած ատենս սարսուռ մը կուգայ վրաս։

«Հերի՛ք է, կարօտցանք քեզի, տեսնես՝ Մըկըրն ու Արօն գալուդ ճամբը կը քաշեն։ Մե՛ղք ես, դուն չե՞ս մեղքնար մեզի...»։

Կարդացած ատենս շրթունքը կը դողար, եւ ինքը՝ ժողովրդային այդ երգիչը առանց հեծկըլտուքի, եղնիկի պէս արտասուել սկսաւ։ Ու նա-

մակը երբ տուփ իրեն, առաւ դողդո՜ջ մատներով շօշափեց, իրարու ետեւ՝ թերեւս տասն անգամ՝ համբուրեց եւ ապա սեղմեց կուրծքին, որուն տակ սլացող հառաչը ա՛լ չէր կրնար զսպել. եւ հեծկլտալ սկսաւ։ Հինգ օր չանցած՝ Ջուլթակը կուրծքին սեղմած՝ եկաւ «Մնաս բարով» ըսելու Համբուրեցի ճակատը։ Երգելով նուագելով մեկնեցաւ. քաղքէ քաղաք, գիւղէ գիւղ քալելով պիտի երթայ։ Յոյսը կը փայլի սիրտին մէջ, անոր շողերը կը լուսաւորեն իր մութ ճամբան։ Ինք ալ իր կարգին պիտի երթայ լոյս տալ պապենական մութ հիւղակին, երբ վերստին սիրէ եւ առանց տեսնելու համբուրէ իր սիրտի հատորները։

Գնա՛, Աստուած քեզի հետ, հէ՛գ Աշուղ։

Ռ. ՈՐԲԵՐԵԱՆ

## 6. ԱՅԳԵԿՈՒԹ

Գաւառացիին ամէնէն զուարճալի եւ հրապուրիչ աշխատութիւններէն մէկն է նաեւ այգեկութը, վասն զի՝ ձանձրացած առօրեայ զբաղումին անայլայլ միօրինակութենէն՝ իրեն համար այդ այգեկութը, այդ միջանկեալ դէպքը, բերանփոխ կերակուրի մը ախորժն ու համն ունի, պզտիկ շեղում մը, բարեդէպ անջատում մըն է ան՝ սովորական կեանքի հոգերով ու մտածումներով ծանրա-

ցած աշխատութիւնէն, եւ, կիրակնօրեայ զուարճութեան մը յարածի պէս, գաւառացին ուրախ զուարթ կը փարի այդ աշխատութեան՝ որ աւելի զբօսանք մըն է։

Եւ մէկը զուրկ չի մնար այդ հաճոյալի այգեկութին հրապոյրներէն, վասն զի ամէն տուն՝ որ ընտանիք մը կը կազմէ, որ պզտիկներ ունի՝ ունի նաեւ ափ մը այգի որուն խաղողը կ՚ուտէ՝ եւ քաղցուէն չարոց, բանդակ եւ ուրիշ զանազան անուշեղէններ կը պատրաստէ պզտիկներուն համար, որոնք առանց անուշի չեն կրնար ըլլալ։ Այնուհետեւ ի՞նչ կ՚ուտէ աղքատը Մեծ-Պահքի խստամբեր օրերուն մէջ զոր խանդակաթ երկիւղածութեամբ մը տակաւին չ՚ուզեր աւրել, իր պաշտելի բարեմտութեան եւ միամտութեան մէջ։ Այսպէս, փոխանակ բանւորներ ու գործաւորներ վարձելու եւ անոնց կթել տալու իր այգին, ինքն է որ, էսնաֆը, խանութը կը գոցէ ու մեծով պզտիկով այգիները կը թափի։

Ամէն դասակարգ՝ անխտիր՝ կը մասնակցի այս աշխատութեան, որ՝ թէեւ ըստ ինքեան տաժանելի, բայց դերազանցապէս հրապուրիչ բան մը դարձած է. իր ձեռքով աշխատած, կթած ըլլալու, իր յոգնութեան պտուղը վայելելու գիտակցութիւնը՝ պզտիկ բաներ չեն կրնար ըլլալ բնականապէս, մանաւանդ անոնց համար որ բոլոր տարին խանութի մը անկիւնը կծկտած՝ միտքի զբաղումներով, հաշիւներով կ՚ընդարմանան՝ մոռնալով մարմինին իրաւունքները, որոնք պահանջումներն իսկ են կեանքին։

Այսպէս, առտուն կանուխ, երբ կ'արթննամ արեւէն առաջ, արդէն իսկ փողոցներուն մէջ յուզուող խրախճանքին արձագանգը կու գայ կը հասնի ականջիս։ Սայլերու միօրինակ ճռնչիւնը, սայլորդներուն յիմարական բացագանչութիւնները, որոնք իրար զգուշութեան կը հրաւիրեն բաղխումները նախատեսելով, ու հակառակ այս նախազգուշութեան, գրեթէ ամէն փողոցի անկիւն, սայլերու իրար խաչաձեւելէն յառաջ եկած աղմուկը, վայնասունը գրեթէ անհանդիստ կ'ընեն զիս։

Ճամբաները անվերջանալի անցուդարձ մը կը բզզայ, եւ ասիկա՝ գաւառին մէջ անսովոր է՝ փողոցներուն ու ճամբաները մի՛շտ ամայի, մի՛շտ լուռ, մի՛շտ անդորր ըլլալուն։ Թեւերնին սակառներ անցուցած կիներ եւ աղջիկներ, կողովներու շարժուն բլրակ մը իրենց կռնակին առած՝ էշեր եւ ձիեր, հնձաններով, սակառներով ու կողովներով բեռնաւորուած սայլեր՝ բոլորը մութնուլուսուն կ'երթան ու կ'երթան։ Հնձաններուն մէջ, սակառներուն ու կողովներուն քով, պզտիկներ կը տեսնեմ, արցունքոտ աչքերով ու ժպտուն դէմքով պզտիկներ՝ որ իրենց մայրիկին հոգին կերած են, լալով կանչուըռտելով այգեկութի երթալու համար, եւ երբ դեռ արցունքի կաթիլները իրենց կայտառ այտերէն վար կը գլորին, միեւնոյն ատեն հոգեկան հրճուանքի մը սանձարձակ պոռթկումը, ծիծաղը իրենց դէմքերուն վրայ կը փթթի. — պզտիկ վարդէ սիրտեր՝ որ մէկ վայրկեանի մէջ կը թոշնին ու կը վերածաղկին։

Ու մենք ալ կ'երթանք այգեկութի, քանի մը

բարեկամներու հետ, որոնք աշխատակցիլ կուգան՝ իրենց այգեկութը յաջորդ օրուան մնացած ըլլալով։

Օդը հիանալի է եւ նպաստաւոր։ Անուշ զեփիւռ մը կը թրթռայ մթնոլորտին մէջ, պատառ պատառ ամպեր կը ծածկեն երբեմն տաքուկ արեւը, եւ հեռուն, պարապ դաշտերուն մէջ, զոր լոյսը կ'ողողէ, ամպերուն ձգած անկանոն ու հսկայ շուքերը հաճոյալի վէտվէտում մը, պիսակաւորում մը կը շինեն։ Բնութիւնը, հակառակ իր կիսաւեր վիճակին, ամէնէն գողտրիկ քերթուածն է մինչ զոր երբեք կարդացած ըլլանք։ Տերեւաթափ ծառերու կմախքները տխուր տեսք մը ունին, եւ չոր տերեւներու խշրտուքը՝ բաւական յուզիչ կերպով մօտալուտ քայքայումին գաղափարը կուտայ։ Որթատունկերուն տերեւներն ալ դեփ դեղին՝ չորցած են, բիւրեղային զգայնութեամբ եւ դիւրաբեկութեամբ՝ զգուշ հպումներէն իսկ փշրուելու պատրաստ։ Լայն ակնարկ մը բաւական է այգեկութին ընդհանուր պատկերը ընդգրկելու համար։ Այգիներու իւրաքանչիւր բաժնին մէջ վայրահակ գլուխներ՝ կարմիր ու ճերմակ շապիկներով, թափթփած ու նախնական հագուստներով աղջիկներ ու կիներ կը շարժին։ Աղջիկներուն բարախուն կուրծքերէն եւ բարակ շրթունքներէն դուրս թռչող միամիտ երգեր ու ժողովրդային անիմաստ խաղերու նուրբ խաղեր օդը կը թնդացնեն՝ այգեկութին պարզունակ հովուերգութիւնը հիւսելով՝ ամէն մէկերնիս կարգ կարգ կը հետեւինք՝ հատոց ու կողով ի ձեռին։ Ցօղաթուրմ տերեւներուն եւ արցունքոտ խաղողներուն հպումը՝ հեշտալի սարսու-

ւորութիւն մը կ՚ընէ կթողին վրան, որ ամէն վայրկեան ճութ մը ըմբոշխնելու փորձութեան չի դիմանար, միշտ այլեւս չուտել ուխտելով ու վայրկեան մը վերջը նորէն մոռնալով, ճիշդ գինեթողութեան ջերմեռանդ ուխտաւորներու պէս։

Ըռանդի տարապայման պոռթկումով մը կ՚աշխատինք՝ զիրար քաջալերելով, իրարու անձնասիրութիւն գրգռելով եւ կարգը ամէնէն առաջ ծայր հանելու անմեղ փառասիրութեամբ համակուած։ Վա՛յ անոր որ ետ կը մնայ, դանդա՛ղը, եւ ինչ անողորմ խօսքերով կը բարձրացնենք, կը կատղեցնենք այն խեղճը՝ որ կթուած որթերուն մէկ աննշան տերեւին տակ երկու ողկոյզիկ խաղող մոռնալու դժբաղդութիւնը ունեցած է։ Հիմա ալ իմ ակօսիս մէջ մոռցուած ողկոյզ մը գտնելու փոյթը իրենն է։ Եթէ այգին ճամբու վրայ է, «Բարի լոյս ձեզ, պէրէքէթլի ըլլայ։ — Աստըծու բարին, օրերդ շատ ըլլայ» յանկերգի մը պէս հազար անգամ կը կրկնուի։ Եւ աննկարագրելի ախորժակով մը կ՚ուտուի խաղողն ու պանիր հացը, գրեթէ օրը չորս անգամ, ամէն դադարի միջոցին։ Ինչ սոսկալի ախորժակ, Աստուա՛ծ իմ, բայց աշխատութիւնը, մաքուր եւ առողջ օդը՝ մարդուն ախորժակը կը կատղեցնեն։ — Եւ այս օրինակ պայմաններու մէջ միայն այգեկութի տաժանելի աշխատութիւնը հրապուրիչ պիտի կրնար ըլլալ, վասն զի դիւրին բան չէ առտուընէ մինչեւ իրիկուն կիսահակ դիրքի մէջ, արեւի կրակէ ճառագայթներուն տակ աշխատիլ։ Օրը տարաժամած է արդէն, արեւը կը ցամքի հետզհետէ աշնանային

հիանալի երիկուն մը, եւ մենք, յոգնած ջարդըւած՝ տուն կը վերադառնանք սիրտերնիս գոհունակութեամբ ողողուած եւ ուրախ զուարթ։

Քաղաքը, ամէն դրան առջեւ, հնձաններու մէջ խաղող կը թնդեն եռանդագին՝ իրենց ջղուտ սրունքները սոթտած երիտասարդներ. կիները, թեւերնին վեր սոթտած, մազերնին գլուխին վըրայ ամփոփած, առջեւնին գոգնոց, պախուրներով քաղցու կը կրեն, վրանին գլուխնին անուշ լոկոնած անառակ տղաքներ հոն հոս կը վազվռտեն, կը պոռչըտան, կը ծեծկուին ու կը հայհոյեն փորձ սատամբակի յաջողակութեամբ։

Տեղ տեղ ալ, հրապարակներու մէջ, սկզբնական մամուլներով խաղողին թնդուած ողկոյզները կը ճնշեն։

Եւ այսպէս, այգեկութը, պատկերալից, նըկարչական, ծիծաղկոտ՝ կը շարունակուի քանի մը օրեր։

ԿԱՐՕ

# 7. ԿՈՐՍՈՒԱԾ ՆԱՒԱԿԸ

Գզտիկ ալիքներով սարսռացող ծովուն վրայ նաւակը կը սահի անշշուկ։ Հեռաւոր լեռներու տարտամ վէտվէտումին ետեւ ճերմակ լուսին մը կը ժպտի։ Քիչ մը աւելի մօտ, ցամաքի սեւ զանգուած մը կայ անծանօթ, ստուերին վրայ ցցուող,

ուրկէ նաւակը կը հեռանայ միշտ։ Ու ալիքները հեռզհետէ կ'արծաթազօծուին երկայն ճառագայթէ մը որ լուսնէն կը հոսի։

Մինաւոր նաւակին մէջ որ կը սահի շուքի մը պէս՝ կին մը շղարշի ծփանքներու մէջ, սպիտակ ու շնորհալի, ընկողմանած է։ Իր երկայն սեւ վարսերէն երկու գանգուրներ ճակտին վրայ ինկած՝ տրտմութիւն մը կը դնեն իր դէմքին անվրդով սպիտակութեանը վրայ։ Իր աջ բազկին մէջ որ մերկ դէպ ի մէջքը կը կորանայ, գողտրիկ մանկիկ մը՝ գլուխը այդ մաքուր լանջքին վրայ դրած կը քնանայ։ Իր թարթիչները, պզտիկին նայած ատեն, գոցուած են գուրգուրանքով մը որ իր շրթունքին վրայ ժպիտ մըն է թողեր տրտմօրէն՝ անուշ ժպիտ մը։ Ճերմակ թափանցիկ քօղերը իր աղջիկի վճիտ ու թարմ մարմինին վրայ կը բաբախեն զուարթ, լանջքին ու ազդրերուն չքնաղ կորութիւնը թուլօրէն կաղապարելով։ Ու իր մէկ ոտքը, նուրբ ու պաշտելի շղարշի ծալքի մը մէջէն դուրս ելած՝ յասմիկի թերթի մը պէս, կուրին տախտակին վրայ իր շնորհալի ձեւը կը թողու այնքան փափկօրէն որպէս թէ ճերմակ թռիչ մ'ըլլար։

Ու, ալիքներէն համբուրուած, նաւակը հաճոյքէն կը սարսռայ, տանելով Մայր-Սէրն ու Անմեղութիւնը դէպ ի Անուրջքի Երկիրը։

* * *

Զուարթ զեփիւռները կը ճլուըլան կնոջ մազեր..ն մէջ։ Արծաթի ալիքները՝ ճառագայթով գի..ն վցած՝ կ'երգեն։ Վերը՝ երկինքին մէջ՝ փալփը-

լուն բիւրեղներ պզտիկ լոյսի կաթիլներով կը զը-ւարթացնեն մութ կապոյտը։ Ու մանկամարդ կնոջ մաքուր ու միամիտ հոգին՝ երազի մը երանաւէտ փթթումովը կը լեցուի։

*
* *

«Քնացի՛ր, զաւակս, քնացի՛ր, երկինքին դող-դոջուն լոյսերուն տակ։

«Հիմա ժպտուն հորիզոնը պիտի երեւայ մշտա-կան արշալոյսներու. քնացի՛ր, զաւակս, մինչեւ որ հասնինք իրականութեան ափունքը։

«Հրեշտակները անմեղ հոգիիդ մէջ ոսկեթել երազներ թող հիւսեն, վճիտ քունդ լուսաւորող։

«Կուրծքիս բաբախումը քունդ անո՛ւշ անուշ օրրէ. չեմ գիտեր շրթունքիդ վարդերը ինչե՞ր կը փափսան։

*
* *

«Հեռուն, ջինջ սպիտակութիւններուն մէջ, ծի-րանի լեռներ թաղուած կը խոկան. արթնցի՛ր զա-ւակս, արթնցի՛ր։

«Արշալոյսը փառքի ովկիան մըն է. հոն ալ բլուրներներու վրայ լոյսերը կ'երգեն։

«Ու լոյսով ողողուած լեռները բուրումներ կը մխան. յաւիտենական ծաղկումին ու մշտափթիթ դալարներուն մէջ անուրջքի երկիրը կը դողդղայ։

«Հոն՝ ծաղիկները, կանաչները ու դաշնակաւոր թռչունները ընկեր պիտի ըլլան քեզի. արթնցի՛ր մանկիկ, ու ժպտէ՛։

«Այն թարմ մարմանդներուն մէջ, որոնց վրայ գոյնզգոյն ծաղիկները ծիածաններ կը ցանեն, ոս-

*կի թիթեռնիկ մը պիտի ըլլաս, սիւքերուն պէս երջանիկ...»։*

*Ու երազը՝ ալիքներուն երգէն օրուած՝ քնացաւ։*

*
* *

*Լուսինը՝ տրտմելով՝ վար իջած է լեռներուն ետեւէն։ Ծովը մթնցած է՝ ամփոփուող թախծութեան մը պէս։ Հեռաւոր ալիքներուն վրայ թըռչունի թեւի մը պէս կ՚երեւայ մանրցած նաւակը։ Երկինքին մէջ՝ որ մտածկոտ ջուրերուն վրայ կը հակի, փափուկ լոյսերը կը մեռնին մելամաղձօրէն։ Ու յանկարծ, ծովուն խորութիւններէն, որպէս թէ յանկարծ ցաւ մը ինկած ըլլար հոն, կը բարձրանայ անհուն ձայն մը ողբական, խորո՜ւնկ հեծեծանքի մը պէս...։*

*
* *

*Այդ գիշերէն ի վեր, վերջալոյսէն ետքը, երբ ալիքները կը սեւնան մթութեամբ, շատ անգամ ծովեզրին աւազներուն վրայ ստուեր մը կը թափառի, ժամերո՜վ։ Իր քայլերուն ձայնը չի լսուիր, որպէս թէ սեւ փետուր մը ըլլար՝ հովէն տարուբեր։ Բայց, երբեմն, յանկարծ, գլուխը երկնցուցած, անխլիրտ՝ մտիկ կ՚ընէ ալիքներուն տարօրինակ երգին, ու յետոյ, խորո՜ւնկ, խորո՜ւնկ կը նայի անորոշ հեռաւորութիւններուն, ուր գնաց նաւակը որ տարաւ ծաղկահասակ Մայր-Սէրն ու Անմեղութիւնը...։*

Ա. Տ.

# Ց. ՁԻՒՆԸ

Հատիկները ճերմակ ձիւնին որ ծի՜ւ ծի՜ւ կը թափթփին հիմա թխպոտ ամպերն ի վար. գուցէ ոմանց համար շուշան ծաղիկներու թերթիկներն են կաթնաթոյր, զոր երկինքի կոյս դաշտերու լանջքերէն փունջ փունջ քաղելով՝ դէպ ի վար՝ մեզի կը նետեն մատուռները անտես հոգիներու։ Ահ, սակայն, փերթ փերթ փետտուող թերթերը այդ անբիծ երկինքի շուշաններուն, զորս կը մաղմղէ մոլուցքը ցրտագին հովերու, ցայտուն կերպով չե՛ն պատկերացներ մեր աչուըներուն՝ ալիքը կեանքին ու պատանքը մահուան։

Ու հիմա, դուրսը, խեւ բուքը կճող հիւսիսին՝ հեգեսարտուռ վայնասուններ հանել կուտայ ո՛չ միայն սա դիմացի տերեւազուրկ գօս ծառերու անտառա՛կէն, այլ խարխլած անպատսպար տնակէն անկրակ աղքատին։

Անտառներն ու այգեստանները, վաղուց ձմրան դալուկն են հագեր, ուր այլեւս չեն երգուիր ո՛չ թռչնակին երգն աղու եւ ո՛չ հոտաղին սրինգին ձայնը մելանուշ։

Ի՜նչ ալ տխուր երեւոյթ մըն են առեր սա ճաղատ լերան ծործորները ծաղկածին, ուր գարնան երբեմն քաղցրակարկաչ վտակը, հիմա պղտո՛ր ալիքներով կարծես ողբերգեր կը հիւսէ իր ամայի ափերուն վրայ։ Հոն կանաչաբեր թուփեր չոր խըռիւներ են դարձեր՝ գօշ մօրուքներու նման, որոնց թաքստոցներէն շատոնց խոյս տուած են քաղցրագրուցիկ թռչունները ոստոստուն։

Ձմրան գիշերները աւելի տխուր են քան ցորեկները՝ ո՛չ լոյս կայ, ո՛չ լուսնակ. երկինք սեւ կապարի գոյն մը ունի։ Ո՞ւր են այն պայծառ գիշերները ու ծիծղուն դէմքով նազելի լուսնկան, որուն ցոլքերը արծաթէ՝ կը ցոլցլան բեկբեկուն թէ՛ ծոցը պապղուն ալիքներուն, թէ՛ ժպտող աչքերու անմեղ ծիծաղներուն եւ թէ՛ տամուկ աչքի մը արցունքի կաթիլներուն մէջ։ Հիմա, սակայն, ան ալ չ'երեւար. ամպեղէն թուխ քօղ մըն է ծածկեր իր կաթնածոր դէմքին վրայ։ Ամայի են սիրուն ափունքներն ալ այն ծովակին ուր ամրան տապ օրին անուշ ու զով հովեր կարծես ճերմակ ծաղիկներ կը բանային անոր կապոյտ լոյծ կուրծքին վրայ։ Այն սեւ սեւ ցցուն ժայռերն ալ՝ նման սիրտի վէրքերուն՝ հիմա մոլեգին ալիքներու ձեռքը խաղալիկ դարձած են, որոնք աւելի նոր ու խո՛ր վէրքեր կը պեղեն անոնց սիրտին վրայ։ Ամէն ինչ տխուր է, ու բնութիւնը սուգի տուն մըն է դարձեր, ուրկից կը լսուին միայն մերկ ծառերու կոծն ու հովերու կոծանքը եւ մռնչիւնը կատղած պախրցիին։

Բուն ձմեռը կը տիրէ աղքատին երդիքին տակ, անոր կեանքին ու սիրտին մէջ։ Ա՛հ չքաւորութիւնը յաւիտենական ձմեռ մը չէ՞ միթէ բաղդի անժառանգներու համար։

Ձմրան խստաշունչ օդերուն մանաւանդ յիշենք զանոնք, երբ՝ վառարանին չուրջը նստած, ծոցը ջերմիկ սենեակին՝ կը դիտենք հատիկները ճերմակ ձիւնին որ կը թափթփին ծի՛ւ, ծի՛ւ թխպոտ ամպերուն ծուէններէն։

ՍՍԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

# ԺԲ. ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Պատմութիւնը՝ ճշմարիտ յիշատակումն է անցած դէպքերու, եւ այդ դէպքերուն՝ ընկերական, կրօնական, քաղաքական, գրական կամ գիտական կեանքի վերաբերելուն համեմա'տ է որ Պատմութիւնը կ'ըլլայ ընկերական կամ եկեղեցական կամ քաղաքական կամ գրական կամ գիտութեանց պատմութիւն:

Պատմագիր կ'ըսուի այն որ մարդկային մտաւորական կեանքին այդ զանազան փուլերէն մէկուն կամ առհասարակ ամէնուն միասին նկարագրութիւնը կ'ընէ: Պատմագրութիւնը, հակառակ գրական իրերանցիկ ու դժուարակնճիռ պահանջումներով խնողուն սեռ մը չըլլալուն, ունի պայմաններ որոնց դէմ մեղանչելով՝ արտադրուած ամբողջ պատմութիւնը կ'իյնայ կարեւորութենէ: Պատմագիրը՝ ինչպէս կենսագիրը՝ որ միակ անձի մը կեանքին պատմագիրն է, պէտք է ունենայ վեց յատկութիւններ. — Ա. Բացարձակ անկողմնակալութիւն, այսինքն իրերու քննութեան եւ բացատրութեան մէջ կատարելապէս չէզոքի մը դիրքը բռնել, անձնական համակրութիւններէ չմղուիլ այս կամ այն անձին նպաստաւոր, այս կամ այն դէպքին աննպաստ գրելու համար. — Բ. Ամէն դէպք առհասարակ գիրի չառնել անմիջապէս, որովհետեւ պրպտուած աղբիւրներուն մէջ կրնան գտնուիլ

եղելութիւններ՝ որոնք ո՛ր եւ է կարեւորութիւն չունին իրենց իսկութեան մէջ, մանաւանդ ապագայ սերունդներու համար, եւ որոնք, ատենին իբր այժմէութիւն ունեցող խնդիրներ՝ արձանագրուած կամ բերնէ բերան տարածուած ըլլալով՝ տարիներ ետքը գրուած պատմութեան մը նիւթին ամբողջական ու կենդանական յատկութեան աւելի՛ կը վնասեն. — Գ. Պարապ զարդարանքներով չպճնել ոճը եւ անտեղի խորհրդածութիւններ չընել. կատարուելիք անհրաժեշտ խորհրդածութիւններն ալ պատմութեան ընթացքին մէջ, անզգալի կերպով խառնել, ձուլել եւ երբեք անոնցմէ չանջատել վարդապետական շեշտով մը քարոզ տալու պէս. — Դ. Կարգ ու միութիւն պահել պատմութեան մէջ, եւ մանր մունր ու շատ անգամ անկարեւոր միջանկեալ դրուագներու համար ամբողջութիւնը հատուկտոր չընել. — Ե. Միշտ պարզ եւ միշտ բացայայտ ու յստակ ոճ մը գործածել, ու ջանալ կարելի եղածին չափ լաւ նկարագրել ամէն բան. տեսարան, մարդ, տեղ կամ եղելութիւն՝ բարձրաքանդակի մը աղուորութիւնով զայն դնելու համար ընթերցողին միտքին առջեւ եւ մինչեւ դէպքերուն տեղի ունեցած վայրը փոխադրուած ըլլալու խաբանքը տալու համար անոր. — Զ. Բայց երկարաբան ըլլալէ պէտք է խորշիլ. պատմաբան մը որ կ'երերցնէ ու կ'երկնցնէ խօսքը՝ զայն դարձնելով ու ծամծմելով շարունակ՝ ձանձրոյթ ու նեղութիւն կը պատճառէ անշուշտ: Միւս կողմէ, խիստ կտրուկ եւ կարճաբան ըլլալէ ալ ետ կենալու է, կցկտուր դէպքեր չձգելու համար մէջտե-

ղը․ ժանաւանդ ծայրայեղ եւ՝ հետեւաբար տաղտկալի՝ քուն նիւթէն դուրս խոտորումներէն պէտք է վախնալ: Առնէք, այս վեց յատկութիւնները, որոնց մէջ թէ՛ հոգեկան եւ թէ՛ գրական յատկութիւններ կան, իրարու քով գալով միայն կրնան առաջ բերել պատմագիրը որ արդիւնաւոր ու տաղանդաւոր ըլլալու փառքը կրնայ ունենալ:

Պատմութիւնը հին ատենը չէր այն՝ ինչ որ է այսօր, արդի գրականութեանց մէջ: Պատմութիւնը այսօր կատարեալ ապացուցական գիտութեան մը վիճակը առնել սկսած է կամ առնել կը ձգտի հետզհետէ: Հիներուն մէջ՝ լսուած, զտնուած ամէն բան գիրի կ՚առնուէր․ այսօր պատմագիրը պատասխանատու է իր գրածին վաւերականութեան․ ու ասիկա է որ պիտի նպաստէ որպէս զի բովանդակ ազգութեանց ճշգրիտ պատմութիւնները հետզհետէ զտնուին, շարադրուին, ստեղծուին, երեւան բերուին ու ամբողջացուին՝ ազգագրութեան, հնախօսութեան, լեզուաբանութեան եւ քննադատական գիտութեանց օժանդակութիւնով:

Իսկ պատմութեան իմաստասիրութիւնը բոլորովին նոր գիտութիւն մըն է, որ՝ օգտուելով զանազան ազգերու անցեալ պատմութեանց ուսումնասիրութիւնէն՝ կը բարձրանայ ընդհանուր եւ միակ պատմութեան մը յղացման, ու առհասարակ բոլոր ազգերու վերաբերող օրէնսգիտական ու այլ խնդիրները կը քննէ: Պօսիւէ, Մոնթէսքիէօ, Վիքօ, Կրաթռի, եւայլն՝ պատմութեան ուսումնասիրութեամբ զբաղած են: Իսկ իբր պարզ, այլ ընտիր պատմագիր՝ օտարներէն անուններ յիշելու բնաւ

հարկ չկայ, այնքա՛ն հանճարեղ պատմիչներ ունեցած էինք, մանաւանդ հին ատենը: Եղիշէ, Խորենացի, Յովհան Մամիկոնեան, Մովսէս Կաղանկայտուացի, Ղեւոնդ Երէց, եւայլն՝ ամէնքն ալ, առաւել կամ նուազ յաջող պատմութիւններ ձգած են: Եղիշէ՛ն մանաւանդ կրնայ պատմագրութեան իբր տիպար ներկայացուիլ: Նոր ատեններս Միջազգային պատմագրութեամբ կ'զբաղի Վենետիկի Մխիթարեան Հ. Մ. Նուրիճան, եւ գրական պատմագիր մը եղած է Հ. Գ. Զարբհանէլեան:



# 1. ՖԷՐՏԻՆԱՆ ՏԸ ԼԷՍԷԲՍ

*Երբ որ շոգենաւը Կարմիր Ծովէն Սուէզ կը հասնի, ձախիդ՝ ծառաստաններու մէջ կեցած հսկայի թխաթոյր արձան մը աչքիդ կը զարնէ հեռուէն։*

*Մօտենալուդ՝ այս զանգուածին ձեւը կը ճշդուի, գիծերը կ՚որոշուին, արոյրէ հաստատակուռ արձան մըն է դրուած հոդ։ Դէմքին վրայ, զոր արեւը այրած կը թուի, հպարտութիւնն ու բերկրութիւնը կը ցոլան։*

*Սուէզի Ջրանցքին բերանը զետեղուած այդ արձանը Ֆէրտինան տը Լէսէբսինն է, անոր՝ որ այս մեծագործութիւնը ի գլուխ հանեց Կարմիր Ծովը Միջերկրականին կցելով։*

*Քսան երեք տարիէ ի վեր յորմէ հետէ բացուած է Սուէզի Ջրանցքը, ինքը կը կենայ հոդ՝ չարունակելով հսկել, կարծես, իր մեծ գործին վրայ, հօր մը պէս՝ որ չափահաս եղող զաւկին քովիկը կը կենայ դեռ, թէեւ իր ներկայութիւնը աւելորդ է։*

*Ու այդ արձանէն՝ զոր համայն աշխարհ կ՚ողջունէ իր անցուդարձին մէջ, մարդկային միտքը ակամայ կ՚երթայ Բարիզի Պատժական Ատեանին առջեւ, ունկնդրել այն երկար արդարացումին զոր՝ զինքը փրկելու համար, իր վերջին տարիները անջինջ արատէ մը հեռու պահելու համար, առաջ կը բերեն։*

*Երեւակայեցէ՛ք այս մեծ Ֆրանսացին՝ խարեբայութեան եւ վստահութեան զեղծումի ամբաս-*

տանութեան դէմ ինքզինքը պաշտպանելու հարկին մէջ։

Ի՞նչ կը խորհի արդեօք այս պահուս իր մետաղէ արձանը՝ անդին։

Ի վաղուց գիտէինք որ Կապիտոլէն հեռու չէ Տարպեան ժայռը։

Պատմութիւնը առեն առեն այս պակուցիչ դասերը կու տայ մարդկութեան, անոր անհաստատ ու խարխուլ ճակատագիրը չմոռցնելու համար։

Ու երբ դատաւորներն ու փաստաբանները իրենց պաշտօնը կատարեն ու դատապարտութեան կամ անմեղութեան վճիռով մը վերջանայ այս եղերերգական ամբաստանութիւնը, Բանամայի պատմութիւնը պիտի մնայ յաւիտեան՝ մարդկային յանդըգնութիւնը կասեցնելու համար, երբ անդին Սուէզը շարունակէ կոչում ընել խիզախ ձեռնարկներու։

Որը պիտի յաղթէ երկուքէն։ Մարդկութիւնը չի կրնար յետադարձ շարժումներ ընել, յառաջդիմութիւնը իր բարձր կոչումն է, ու ի՛նչ որ ալ ըլլան արգելքները, լախտի հարուածները որքան իջնա՛ն ուժով, առեն առեն, ան պիտի շարունակէ միշտ հաւատալ ու աշխատիլ անվհատ։

Բանաման կրնայ քայքայիլ. բայց ահա Կորընթոսի պարանոցը կը բացուի ու յաջողութիւնը ձեռնարկու մարդոց՝ կ՚անհետացնէ բաղդին խըստութեան թողած վհատութեան զգացումը։

Խորհեցանք որ անօգուտ չէր մեր ընթերցողներուն ներկայացնել այս եզական մարդուն դէմքը. եզական՝ այնքան իր մեծագործութեամբը որքան իր վերջին դժբաղդութիւններովը։ Այս ծերունին

*որ ԺԹ րդ· դարը իր անդուլ գործունէութեամբը կը լեցնէ, մեծ օրինակ մը ու մեծ խրատ մը կը մարմնացնէ զոր մեր հասարակութիւնը պէտք էր ճանչնալ։ Կոմս Ֆէրտինան տը Լէսէբս 1805ին ծնած է Վէրսայլ։ Դիւանագիտական ասպարէզն ընտրող ընտանիքի մը կը պատկանի. ինք եւս այս ասպարէզը գրկած էր ու Աղեքսանդրիոյ մէջ Ֆրանսայի հիւպատոս եղած ատեն, ձեռք անցուց Սուէզի ջրանցքը բանալու արտօնութիւնը, զոր ի գլուխ հանեց 1869 Նոյեմբերին։ Այս գործին 400 միլիոն ֆրանք, մերձաւորապէս քսան միլիոն ոսկի ծախք եղաւ, եւ մինչեւ ցարդ իր տուած շահը միայն երկու միլիառ ֆրանքէն՝ այսինքն հարիւր միլիոն ոսկիէն աւելի է. շահը ուրեմն հնգապատիկը եղած է մինչեւ ցարդ դրամագլուխին։*

*Ընդհանուր նաւարկութեան ու քաղաքակրթութեան համար Սուէզի ջրանցքին օգուտները անհաշուելի են։*

*Այս մեծագործութիւնը այն օրական պզտիկ քայլերէն չէ որով մարդկութիւնը կը յառաջանայ իր շաւիղին մէջ, այլ մեծ ոստում մը որով քանի մը տարի միջոցը մէկ վայրկեանի մէջ կը կտրուի։ Տը Լէսէբս 74 տարու էր արդէն երբ Բանաման բանալ ձեռնարկու եղաւ. ասոր ցաւալի պատմութիւնը չպիտի ընենք. բայց հաստատուած իրողութիւն մըն է որ անյաջողութիւնը պէտք է վերագրել ո՛չ թէ բնութեան յարուցած արգելքներուն, այլ անոնց զորս մարդիկ, թշնամիներ, շահադէտներ ստեղծեցին։*

Գ. ԶՕՀՐԱՊ

# 2. ԲԱԲԵԼՈՆ

Հնութեան այս մեծ քաղաքը՝ որ երկար ատեն կեդրոնն եղած էր բաբելական հին ժողովուրդին, մասնաւոր պարագայով մը կը տարբերի հին Եգիպտոսէն, հնութեան եւ մեծազօր փառքի ուրիշ վայրէ մը։ Եգիպտոս տակաւին կը պահէ նմանութիւնը վայրերու ու տեսարաններու որոնք հնագոյն ժամանակներու մէջ հանդիպեցան Աբրահամի, Յովսէփի եւ Մովսէսի աչքերուն։ Միայն մէկ բացառութեամբ մը այս հին երկրին բոլոր ճարտարապետական փառքը գրեթէ առանց մնացորդի անցած գացած է։ Եւ զարմանալին այն է որ երկրին բնական դիմագծութիւններն ալ այնչափ փոխակերպուած են անճանաչելի ըլլալու աստիճան. բայց այս պակասին դէմ եզական փոխարինութիւն մը եղած է Բաբելոնի, որով անոր երեւոյթը աւելի ճշդօրէն պատմուած է քան անոր ժամանակակից եղող ուրիշ ո՛ր եւ է երեւելի մայրաքաղաքներուն երեւոյթը։ Ո՛չ Թէփէի, ո՛չ Մեմփիսի, ո՛չ Նինուէի եւ ո՛չ ալ Շօշանի համար գտնուած է ականատես պատմիչ մը որ անոնց յատակագիծը եւ պատկերը մեզի աւանդած ըլլայ։ Բայց Բաբելոն բարեբաղդութիւնն ունեցած է խիստ հետաքրքիր ու կարող ճանապարհորդի մը եւ Պատմաբանի մը դիտողութեան ու հետազօտութեան առարկայ ըլլալու։ Հերոդոտոս, հնութեան անուանի

*պատմիչը, անձամբ՝ գացած տեսած է զԲաբելոն եթէ ոչ իր բոլոր փառքին մէջ, գէթ իր ամբողջութեամբը, եւ ետքը անոր նկարագրութիւններն ու պատմութիւնը հաստատուած ու վաւերացուած են ուրիշ ճամբորդներէ որոնք իրմէ յիսուն տարի վերջ այցելեցին Մեծ Քաղաքին՝ երբ ան ա՛լ իյնալու վրայ էր։*

*Երկրագունտին վրայ եղած ո՛չ մէկ քաղաք հին ժամանակ մեծութեան կողմէ հաւասարած է Բաբելոնի։ Իր բնական դիրքը մեծապէս նպաստեց այս մեծութեան, անոր հաստատումին ատեն ու նաեւ ապահովեց անոր մեծութիւնը յետոյ։ Անոր հիմնադիրները օգուտ քաղեցին այն երրորդական կոչուած երկրաբանական դարու վերաբերող ահագին ապառաժէն, որ կ'երկարաձգուի Սուրիական Անապատի երկայն հակուղիղ մակարդակէն մինչեւ Միջագետի Ջրատական աւազանը։ Այս կերպով հիմնադիրները՝ օգուտ քաղելով աշխարհիս հին դարերուն մէջ կատարուած երկրաբանական փոփոխութիւններէն՝ մէկ կողմէն ունեցան չոր ու հաստատուն ժայռ մը, երկրորդական դարուն վերաբերեալ ժայռը, որուն վրայ կարելի էր որ հանգչէր մեծ եւ բարգաւաճ քաղաք մը. միւս կողմէն ալ քաղաքին պաշտպանութեան համար, անոր հարաւային կողմին վրայ ունենալով անհուն ճահիճ մը կամ լիճ մը որ այդ ատենները կը տարածուէր կուգար Պարսկական ծոցէն։ Այս գերազանց վայրին վրայ Բաբելոն կը կենար, եւ ճիշդ անանկ գիծի մը վրայ էր որ Միջերկրականի ծովեզրերուն եւ Իրանեան լերան միջեւ կատարուած վաճառա-*

կանութեան միջնադարը կը գտնուէր. նաեւ ճիշդ այն կէտին վրայ ուր Եփրատ աւելի խորունկնալով՝ անհուն տարածութենէ մը կը փոխուի կ'ըլլայ նաւարկելի գետ մը, ուր նաեւ խորունկ, ճոխ ջրատական կաւէն դիւրին էր շինել այն աղիւսները որոնք ամէնէն սկիզբէն նիւթ հայթայթեցին Բաբելոնի վիթխարի շէնքերուն համար։ Բաբելոն չէր նմաներ աշխարհիս այն երկրորդ դասու քաղաքներուն որոնք անկէ ետք ծաղկեցան, եւ որոնք կը վերաբերէին մարդկային քաղաքակրթութեան երկրորդ աստիճանին։ Այդ կարգի քաղաքները ամրացած եւ ամփոփուած էին իրենց միջնաքաղաքին մէջ, կամ իրենց եօթը բլուրներուն վրայ, ինչպէս Աթէնք եւ Հռոմ կամ ինչպէս Երուսաղէմ։ Այս ամենահին քաղաքակրթութեան ծնունդ եղող քաղաքը լայնօրէն կը տարածուէր։ Իրաւ է որ մեր արդի քաղաքակրթութեան մէջ քաղաքներ կան՝ որոնք աւելի ընդարձակ են, քանզի որոշ սահմաններ չունին եւ կը տարածուին առանց որմերու, առանց ո՛ր եւ է որոշ գիծով մը սահմանափակուած ըլլալու։ Բայց, թէ՛ հին եւ թէ՛ նոր՝ չկայ քաղաք մը որ երբեք հաւասարած ըլլայ անոր որոշ շրջափակին, որ առնուազն 50 մղոնի տարածութիւն մը իր մէջ պարփակած էր, Նինուէի պէս. միայն թէ՝ աւելի ընդարձակ սահմաններով երկիր մըն էր որ իր մէջ գրկած էր։ Անտառներ, դարաստաններ, պարտէզներ՝ խառնըւած տուներուն հետ՝ ա՛յնպիսի կերպով մը որ յաւէտ կուտար անոր մեծ քաղաքի մը արուարձանին կամ թէ բուն քաղաքին երեւոյթը։ Սակայն,

ասով հանդերձ, քաղաքի մը կանոնաւորութիւնը եւ կարգաւորութիւնը պահուած էին, փողոցները ուղիղ էին եւ իրար կը կտրէին ուղիղ անկիւնով մը։ Այս ձեւը Եւրոպայի թէ՛ հին եւ թէ՛ նոր քաղաքներուն մէջ քիչ անգամ գործածուած է, թէպէտ ասիական քաղաքներուն գրեթէ ընդհանրական ձեւն է. տուները երեք կամ չորս յարկով էին, եւ այս՝ հին քաղաքներուն մէջ սովորական բան մը չէր, Տիւրոս միայն բացառութիւն ըլլալով, ու ետքն ալ Հռոմ։ Բայց քաղաքին մէջ ամէնէն աչքի զարնող բանը հրապարակային շէնքերու ահագին մեծութիւնն էր, որոնց նմանը ո՛չ առաջ ու ո՛չ վերջը տեսնուած չէ։ Այս ահագին շէնքերը աւելի ուշադրաւ կ'ըլլային տեղին տափարակութեան պատճառաւ՝ ուրկէ վեր կը բարձրանային մինչեւ անգամ իրենց փլատակներուն մէջ անոնց հսկայական դէզերը որոնք կարծես կը տիրապետեն միօրինակ դաշտավայրին փառաւորութեան եւ չքեղութեան, եւ այնպիսի ազդեցութիւն մը կ'ընեն մարդուս վրայ որուն նմանը չէր կրնար երեւակայուիլ ո՛ր եւ է ուրիշ տեղ մը։

ՅԱԿՈԲՈՍ Հ. ՃԷՃԻՋԵԱՆ



# ԺԳ. ՎԷՊԸ



Վէպը թարգմանութեան հետ արդի ժամանակներուն, արդի սերունդին եւ արդի գրական սաղոններուն համար գրականութեան ամէնէն կարեւոր սեռն է: Վիպական սեռը կը պարունակէ այն գրուածները, որոնք կը շահագրգռեն առհասարակ ամէն ընթերցող, իրենց պարունակած կիրքի ու արկածի պատմութիւններովը՝ որոնք հիմնուած են մերթ մտացածին ու մերթ ճշմարիտ դէպքերու վրայ: Ասոնք՝ վիպասանին ձեռքին տակ՝ կըրնան գաղափարային գեղեցկութեան մը հասցուած ըլլալ եւ կամ նկարուիլ այնպէս՝ որպէս են իրականութեան մէջ: Ու ասկէ առաջ կուգան վիպասանութեան երկու ճիւղերը. — Իրապաշտ (Réaliste) վէպը եւ գաղափարապաշտ (Idéaliste) վէպը: Իրապաշտ վէպը կը տեսնէ մարդը, մարդուն կեանքը, երկիրը եւ բնութիւնը այնպէս՝ ինչպէս որ են. գաղափարապաշտ վէպը կը սաւառնի ստեղծուած՝ գեղեցի՛կ, բարի՛, աննտգիւտ աշխարհներու մէջ, եւ կը գործէ՝ նոյնքան գեղեցիկ, բարի եւ անըռգիւտ անձնաւորութիւններով:

Վէպը, սակայն, ընդհանուր կերպով կը բաժնուի վեց տեսակներու. — 1. *Առասպելական վէպ*, որուն մէջ տիրող ոգին առասպել է. — 2. *Ծովային վէպ*, որուն մէջ ծովերու վրայ կը խօսուի ամէնէն աւելի. — 3. *Պատմական վէպ*, որուն մէջ

վիպասանը պատմութեան վերաբերեալ դէպք մը կ'առնէ եւ գրականօրէն ու արուեստով կը հիւսէ զայն. — 4. *Իմաստասիրական վէպ*, որ ճշմարտութիւններ ապացուցանելու կը ձգտի. — 5. *Բարքերու վէպ*, որուն նիւթը կը կազմէ ընկերութիւնը եւ 6. *Ներքին կեանքի վիպասանութիւնը*, որուն մէջ կ'ուսումնասիրուին մարդկային հոգեկան վիճակն ու կիրքերը: Այս բաժանումը, ինչպէս կը տեսնուի, վէպի նիւթին համեմատ է, ինչպէս որ իրապաշտ եւ գաղափարապաշտ վէպի բաժանումն ալ գրուածքի նկատմամբ էր. բայց կայ նաեւ երրորդ բաժանում մը վիպասանութեան մէջ, վէպերու մեծութեան համեմատ. — 1. *Բուն վէպը*, — 2. *Վիպակը*, եւ 3. *Մանրավէպը*: Վիպակը կարճ վէպ մ'է, նուազ բեղուն նիւթի մը վրայ հիւսուած, որ սակայն պէտք է ունենայ բուն վէպին բոլոր յատկութիւնները՝ անոնց վրայ աւելցնելով նաեւ՝ քիչ բառով շատ հասկցնելու անհրաժեշտութիւնը: Որովհետեւ վիպակը չունի բուն վէպին պէս ուզածին չափ երկարելու իրաւասութիւնը, հեղինակը պէտք է ջանայ ամէն նկարագրութիւն, ամէն անցք, ամէն դէպք դնել ընթերցողին աչքին առջեւ արագօրէն, առանց երկար տատանումներու:

Վիպասանութիւնը գրական անանկ սեռ մ'է որ ձեւերուն այդ բազմաթիւ այլազանութիւններովը ո'ր եւ է հաստատ ու սահմանափակ կանոնի մը չի կրնար հպատակեցուիլ. միայն թէ, ընդհանուր գիծերու մէջ, վէպ մը պէտք է անպատճառ պարունակէ դէպքերու ճշմարտանմանութիւն, նկարագիրներու յստակութիւն, դերակատարներու

յաջող ընթացութիւն: Վէպի մը նիւթը եւ դերակատարները ընտրելէ ետք, կուգայ վէպին շէնքին կառուցումը, բան մը որ փորձառութիւն եւ վիպասանական արուեստի ուսումնասիրութիւն կը պահանջէ: Բայց պէտք չէ մոռնալ որ, ինչպէս կը վկայէ նոյն ինքն անգլիացի հռչակաւոր վիպասան Սըր Ուոլդըր Պէռընդ, եթէ գրող մը օժտուած չէ վիպասանական կարողութեամբ, ամէն ուսումնասիրութիւն՝ եթէ ոչ կատարելապէս անօգուտ՝ գէթ շատ արդիւնաւոր ալ չի կրնար ըլլալ: Վիպասանը պէտք է ձգտի վէպին կեանքը վառ պահելու՝ առաջին էջէն մինչեւ վերջինը. ու ասիկա շատ դիւրին գործ չէ: Վիպասան մը, պէտք է նաեւ գիտնայ համեմատութիւն դնել վէպին զանազան մասերուն մէջ ու ներդաշնակեցնել զանոնք ամէնքը իրարու: Օտար գրականութեանց մէջ մեծ վիպասաններ եղած են Աղեքսանտր Տիւմա Հայր եւ Որդի, Ուալթըր Սքօթ, Անթօնիօ Ֆօկացցարօ, Թուբըռ, Վօլթէռ, Վիքթօր Հիւկօ, Կի տը Մօբասան, եւայլն, ու մանաւանդ Պալզաք եւ Ֆլօպէռ որոնք Էմիլ Զօլայի հետ իրապաշտ վէպը կանգնած հաստատած են ընդհանուր աշխարհի գրականութիւններուն իբր նոր հիմ: Հայերս ալ ունեցած ենք մեր վիպասանները, որոնց մեծագոյն մասը, մանաւանդ Ռուսահայերուն մէջ, պատմական-վէպեր արտադրած են եւ իրաւունքո՛վ անմահացած: Ա-արօնեան ռուսահայ նոր վիպասան մըն է: Թուրքահայերու մէջ վիպասանական հիւղը մեծ ընդունելութիւն գտած է անցեալ դարու կէսէն իսկ սկսեալ. բայց բաւական ժամանակ միեւնոյն բարգ-

մանուքիւններու մէջ սահմանափակուած մնաց. մինչեւ որ նոր բողբոջ մը, նոր իղձ մը գրականութեամբ զբաղողներուն մէջ, մղեց զանոնք, որպէս զի իրենք ալ փորձեն նոյն ճիւղը: Քիչ շատ յաջող վիպասաններ ունեցած ենք, բայց զուտ վիպասան չենք ունեցած. մեր մէջ ամէն գրող, գոնէ վիպակով մը փորձած է վիպասանական սեռն ալ: Իբր վիպասան, Գրիգոր Զոհրապ մեծ համբաւ կը վայելէ, Տիկին Տիւսաբ գրած է Արաքսիա, Մայտա, եւայլն. բայց ամէնէն առաւել վէպ արտադրողն է Քասիմ, որ ժողովրդական վիպասանութեան ճիւղը կը մշակէ, ժողովուրդին մտածածը կը գրէ. թերեւս ասոր համար իսկ փափաքածէն աւելի միակողմանի ըլլալով քիչ մը: Իբր Թրքահայ վիպասան կարելի է յիշել նաեւ անունը Կամսարականին՝ որ «Վարժապետին աղջիկը» արտադրած է: Նոյնպէս՝ Լեւոն Մեղքոսեան եւ ուրիշներ: Իսկ Ց. Ալփիար Իզմիրցին իբր հրապարակագրող առաջին տեղը կը գրաւէ եւ այսօր ամէնէն շատ սիրուած գրիչն է, կրնայ ըսուիլ:

# 1. ԱՌԱՋԻՆ ՋՐԿԱՆՔԸ

Քիչ մը ետքը պիտի արթննայ՝ յօրանջելով ու երախայի բռունցքովը շփելով արտեւանունքը։ Իր վստահող նայուածքը սենեակին մէջ, չորս դին պըտըտցուցած ատեն՝ բոլոր խաղալիկները իրենց տեղը կարգաւ շարուած պիտի գտնէ, համոզակատար եւ անտրտունջ արարածները՝ որին ոտքը որին թեւը կոտրած՝ զինքը գոհացնելու առջի պատրաստակամութեան մէջ սպառելով։

Պառկած տեղէն՝ փոքրիկ սրունքները օդին մէջ պիտի երերցնէ քիչ մը, ու տոտիկներուն հետ ալ պիտի խաղայ, յետոյ պիտի կանչէ.

— Նե՜ննէ՜ է։

Վարժուած է որ իսկոյն պատասխանեն իր առջի կոչին, ու պիտի զարմանայ քիչ մը՝ երբ որ Նեննէն ուշանայ քովը վազելու։ Առաջին անգամն է որ պիտի պատահի իրեն այս տարօրինակ եւ անտանելի բանը, յապաղում մը իրեն դէմ՝ որ սորված է միշտ չքեղ անտարբերութեամբ մը դիտել այն արտօնյանքը որ իր մէկ ու կէս տարու մանկիկի հրամաններուն համար կը ցուցուի միշտ։

Ու անհամբեր՝ դառնալով անկողնին մէջ՝ պիտի կանչէ նորէն։

— Նե՜ննէ՜ է։

Ան՝ ժամ մը առաջ գնաց հեռացաւ, այս վերջին անգամուն ալ նորէն ինքը քնացնելէ ետքը

*մանկիկը՝ այն Պարտիզակի երգերովը զորս ես ալ հիմայ կամայ ակամայ գոց ըրած եմ քիչ մը։*

*Քունին մէջ մեղմիկ համբոյր մը դնելէ ետքը զաւկիս ճակտին վրայ, որ քիչ մըն ալ իր զաւակն է հարկաւ, քաշուեցաւ գնաց ոտքին մատներուն վրայ կոխելով։*

*Նոր շրջազգեստը հագած էր, վերջին նուէր զոր մեկնելէն առաջ տուինք իրեն. ու՝ գեղը տանելիք սնտուկները կապած՝ մեր տունէն մեկնելէ առաջ, երբ որ եկաւ ձեռուընիս պագնելու՝ կինս ու ես արցունք մը կարծեցինք տեսնել իր գեղացիի անմեղ աչքերուն մէջ։*

* * *

*Արթննալուն՝ Նեննէն չի կար. բայց ծնողքը՝ հոգածու՝ սպասեցին անոր զարթումին ու հազար տեսակ խաղերով ջանացին որ չփնտռէ իր սընտուն։*

*Իր մանկական ուշադրութիւնը զբաղեցաւ ատոնցմով, բայց իր փոքրիկ կեանքին մէջ այս առաջին բաժանումին պարապը չլեցուեցաւ շուտով. ի՛նչ որ ալ ըրինք, նորէն միջոց մը Նեննէն յիշեց. ան ատեն լացաւ պոռաց՝ կարծելով որ մօտ տեղ մը պահուըտած էր միայն եւ զինքը զայրացնելու համար չէր գար իր քովը։ Վերջը՝ կամաց կամաց՝ գիտակցութիւնը, անմռունչ ու անխօս ընկճումը եկաւ — աւելի մեծ աղէտի մը, անդարմանելի կորուստին գիտակցութիւնը։ Իր լացը որ բարկութեան լացն էր մինչեւ այդ վայրկեանին՝ փոխուեցաւ, հեզ ու խոնարհ դարձած*

համոզուած լալը եղաւ։ Իր սուգը ամբողջ ամիս մը տեւեց։

Մարդկային զգացումները հողերու մէջ թաղուած հին քաղաքներու կը նմանին. ո՛րչափ որ պեղումներու շնորհիւ աչքի առջեւ ելլեն անոնք՝ այնքան իրենց խորունկութիւնը կը պակսի։ Այսպէս ալ հիմայ իր կսկիծը նուազ արտայայտուած՝ աւելի ինքնամփոփ, աւելի սպառիչ էր ամէն չցուցադրուած զգացումներու պէս, վասն զի աւելի անկեղծ էր։ Բայց կարօտի վայրկեաններ կ'ունենար երբեմն՝ աղ. միջոցներուն. իր ձեռքի խաղալիկները մէկդի կը նետէր, արհամարհելով ատելով՝ իր ուշադրութիւնը ու իր վշտին յիշատակը ձեռքէն խլող այս դաւերը ու հատնումով ու անձկանօք լեցուն ձայնով մը կը հարցնէր,

— Նե՞նէ է։

— Նենէն պիտի գայ։

Ա՛լ հիմայ գիտէր այս խօսքին սուտ ըլլալը, բայց կը հաւատար. սուտը սփոփանք մը կ'ըլլար այս պարագային մէջ եւ մանկիկը ինքնախաբութեան առաջին փորձը կուտար եւ անձնատուր կ'ըլլար սուտ. — Ինչպէս մարդկային տկարութիւն որ ահաւոր ստուգութիւններէն կը խուսափի միշտ, մխիթարութեան միջոցներու մէջ ամէնէն պատիրը կուրութեամբ կը գրկէ, այն անբուժելի հիւանդներուն նման որոնք իրենց վիճակին գիտակից՝ զիրենք մաշեցնող հիւանդութեան գոյութիւն չունենալուն մտադիւր կը հաւատան, եթէ սանկ հաւատիք մը ընծայուի իրենց։

Ամիսներ անցան սանկով. ես կը հետեւէի իր

վիճակին այլափոխութեանցը․ իր ցաւը երթալով կը մեղմանար՝ առանց բոլորովին անհետանալու․ ինչպէ՜ս ըսեմ, կ՚անուշնար գրեթէ ու իր հառաչանքով լեցուն ձայնը երգի մը պէս կը կրկնէր ատեն ատեն։

— Նե՛նն՛էն։

Տարի մը ետքը բերնի վարժութեամբ մը միայն այս անունը կուտար․ ժամանակը ահա ասանկ իր պաշտօնը կատարեց։

Հիմայ, մենք էինք որ իր անունը կը յիշեցնէինք իրեն։ Առջի հեղ՝ այս անունը արտասանելուս՝ զարմանքով ու հարցումներով լեցուն աչքերը մեզի դարձան․ յետոյ մտածումի մը մէջ ինկաւ պահ մը, եւ քիչ վերջը, իր փոքրիկ գլուխը թօթուեց մէկդի ընելու համար կարծես իր միտքը լլկող չարչարող գաղափարը ու խաղալիկները պահանջեց մեզմէ։ Յայտնի եղաւ որ իրեն համար Նեննէն դադրած էր իրականութիւն մը ըլլալէ, յիշատակ մը դառնալու համար։

* * *

Հինգ տարի վերջը, Նեննէն վերադարձաւ Պարտիզակէն։ Եազմա կապած, շալվար հագած անճանաչ կնիկ մըն էր․ իր արեւակէզ դէմքը տգեղցեր ու պառուեր էր․ ո՞ւր էր մեր մօտ եղած ատենուան շնորհալի եւ երիտասարդ կինը։

Յետոյ, այս հինգ տարիները անջրպետ մը բացեր էին․ անիկայ որ մեր ընտանիքէն էր ատեն մը, հիմայ օտարական մը դարձեր էր․ երկու կողմէն կը զգայինք ասիկայ։ Բայց երբ որ Արամիս ձայնը

լսեց՝ չդիմացաւ. իր չնչին նուէրներու առարակը դեռին ,մոռցաւ՝ անոր քով վազելու համար: Դեռ միտքս է տեսարանը. Արամս նախ վախցաւ, ետքը զարմանքի զգացում մը ունեցաւ այս կնոջ դէմ.

— Նէնէդ եկա՛ւ, կ՚ըսէինք իրեն:

Սովորական համբոյրներով կը ծածկէր տղուս երեսը, բայց փոխադարձ ո՛ր եւ է սիրոյ արտայայտութիւն մը չստացաւ. մանուկը հետաքրքիր՝ մանրամասն քննեց այս կնոջ տարօրինակ տարազը, ու միջոց մը՝ եազմեան վար քաշեց գլխէն. աս եղաւ իր միակ շարժումը, յետոյ ձգելով Նէննէն՝ իր մօրը քով վազեց:

Կարծեմ թէ այն քանի մը օրուան մէջ որ այս կինը մեր տունը մնաց, իրենց յարաբերութիւնները բարւոքեցան քիչ մը. վերյուշումը եկաւ, անցեալին եղծուած գիծերը աղօտ կերպով մը ճրշդուեցան մինչեւ աստիճան մը իր միտքին մէջ. բայց ասիկա նոր յօշոտում մըն էր որ եղաւ իր սիրտին համար: Անիկայ իր երախայի երեւակայութեամբը դիւթիչ պատկեր մը պահած էր իր Նէննէէն, ու ահա իրականութեան մէջ այդ պատկերը իր չնորհազուրկ ու ծիծաղելի խկութեանը մէջ երեւան կուգար. այս կի՞նն էր այն որուն համար այնքան արցունք թափած եւ կսկիծ զգացած էր:

Աւելի աղէկ չպիտի՞ ըլլար որ անեղծ մնար իր մանկական յիշողութեան մէջ մնացած դիմագիծը: Հիմայ պզտիկ դորով մը կ՚սկսէր ցուցնել անոր հանդէպ, բայց ասիկա աւելի պարտքի ձեւով բան

մըն էր, քան ինքնաբուխ սէր մը. իր տղայական գիտակցութիւնը կ'ըսէր իրեն որ ապերախտ մէկը պիտի սեպուէր թէոր երեսդարձնէր այս աղքատիկ կնկան, ու մի միայն այս կշտամբանքէն ազատելու համար, կը յօժարէր ինքն ալ փոխադարձ համբոյր մը առնել իր Նեննէին սեւցած այտերէն։

Եւ խորհեցայ ինքնիրենս որ բաժանումի մը ցաւը վայրկեանին միայն կրնայ դարմանուիլ. յապաղուած վերադարձ մը նոր կսկիծ մը կուտայ՝ քաղցր յիշատակ մը եղծանելով։

Գ. ԶՕՀՐԱՊ

# Զ. ԿԱՂԱՆԴԻ ՆՈՒԷՐԸ

Կանաչ ծածկոցով սեղանին առջեւ, որուն վրայ պզտիկ լամպայ մը կը վառէր, գլուխ գլխի կը նստէին մայր ու տղայ ամէն գիշեր։

Տիկին Աննիկ՝ կարի խոշոր ծրարը քովը՝ ասեղ ծեծելով շարունակ, մինչ Վահրամ յաջորդ օրուան դասերը կը պատրաստէր։ Եւ մերթ ընդ մերթ կը ձգէին իրենց աշխատութիւնները՝ բառ մը ըսելու համար իրարու, յոգնութիւն առնելով վայրկեան մը իրարու նայուածքի մէջ։ Ցետոյ, յանկարծ երկուքին ալ միտքը հեռու կը փախչէր. ներկայէն. մէկունը դէպ ի անցեալ, միւսինը դէպ ի ապագան։

Վահրամ՝ ապագային կը մտածէր շարունակ, կրկին ու կրկին կը հաշուէր միտքին մէջ այն հինգ

երկար տարիները զորս պիտի անցընէր տակաւին վարժարանին մէջ՝ իր մօրը ձեռքին աշխատութեամբը ապրելով, անոր աչքին լոյսին, արիւն քրտինքին գինը ուտելով սպառելով իր ուսանողի ապիկար կեանքին մէջ։ Եթէ մէյ մը դպրոցէն ելլէր սակայն, ինչե՞ր չպիտի ընէր անոր համար, իր խեղճ մօրը համար, որ իր երեսունըհինգ տարեկան հասակին մէջ՝ վաստակի բեռին տակ կըքած՝ ծեր կ'երեւար արդէն։ Եւ աչքերը գաղտուկ գիրքին վրայէն վեր առնելով՝ կը նայէր անոր՝ այն գորովագութ խանդաղատանքի անձառարտայայտումովը, զոր զաւակ մը մօրը համար միայն կրնայ զգալ աշխարհի վրայ։

Կաղին տկար ցոլքերուն տակ՝ աւելի նիհար, աւելի հիւծած կ'երեւար ան իրեն. աչքերուն կոպերէն խորունկ գիծ մը սկսելով՝ իր սեւ սեւ խոնչոր արտեւանունքներէն ինկած թելի մը պէս՝ այտերն ի վար կ'երկննար. մազերուն մէջ, տեղ տեղ ճերմակներ ցանցնուած էին. մոմի պէս հալած մատներուն մէջ, ասեղը կը դողար, եւ թելը անցուցած ատեն լոյսին կը մօտենար, կը մօտենար իբր թէ իր աչքերուն լոյսը հատած սպառած ըլլար։

Խեղճ տղուն սիրտը ելած՝ երկու ձեռքերովը երեսը կը ծածկէր՝ պահելու համար արցունքի կաթիլները, որոնք հոգիին խորունկէն բրթած՝ հալած կապարի հատերու պէս գիրքին վրայ կ'իյնային անմռունչ։

Մայրը, այն պահուն, անցեալին մէջ մոլորած՝ իր երջանկութեան օրերը կը յիշէր, երբ ամուսինը ողջ էր տակաւին, երիտասարդութեան բոլոր հաճոյք-

ները, բոլոր քաղցրութիւնները, զորս վայելած էր իր ամուսնական կեանքին մէջ, մեծ՝ անհատնում սիրոյ մը լուսեղէն մթնոլորտին մէջ ապրելով եօԹը տարի շարունակ: Միտքը կուգար իր սիրած անձին հետ պսակուած օրը՝ եկեղեցին՝ լոյսերու, խունկերու եւ երգերու զգլխիչ արբեցութեան մէջ. յետոյ իր Վահրամին ծնած օրը, երբ իր էութենէն բղխած այդ հրեշտակը իր գիրկը առեր էին. տարի մը ետքը՝ անոր մկրտութիւնը. ժանեակներու, ժապաւէններու մէջ, ծաղկի մը պէս գեղածիծաղ այդ պէպէքը, որուն վարդի պէս այտերը դտակին նուրբ բեհեզին տակէն կը խնդային իրեն, եւ կլորիկ գիրուկ բազուկները, ձիւնաթոյր շրջազգեստին շղարշներուն մէջէն, իրեն կը կարկառէր: Հիմակ կը դառնար կը նայէր նորէն անոր վտիտ դէմքին, որուն՝ արիւնի պակասութենէն քաշուած աժգոյն մորթը կզակներուն կը փակչէր. շրթունքները ցամքած, հիւանդոտ գգաստութիւն մը կ՚արտայայտէին. աչքերը միայն, սուր սեւ աչքեր, կը Թնդացնէին այդ տասներեք տարեկան տղուն դէմքը, որ փթթելէ առաջ կը խանձէր անշուշտ սընունդի, զբօսանքի եւ զուարթութեան պակասութենէն: Ճիշդ իր հօրը դէմքն էր, անոր պէս խելացի. ու անոր կերպարանքը, անոր Թրթռուն, զգայուն շեշտը ունէր ձայնը, եւ իր զաւկին վրայ կը գտնէր դժբաղդ մայրը՝ վերակենդանացումը այն ամէն հրապոյրներուն, զորս Թաղեր էր ամուսինը գերեզմանին պաղ քարին տակ:

Խե՜ղճ կին, իր սիրելիին մահուան վրայ ազատօրէն լալու տխուր սփոփանքն ալ չէր ունեցած:

Պզտիկ սուգ մը կրցած էր պահել, աղքատի սուգ մը։ Անոր հիւանդութիւնը առեր տարեր էր իր խնայողութիւնները, եւ եօթը տարեկան զաւկին հետ մեն մինակ մնալով աշխարհի վրայ՝ ստիպուած էր՝ մէկ կողմէն ժպտիլ անոր երեսին, խաղալ անոր հետ, եւ միւս կողմէն՝ ձեռք առնել այն միջոցները որով կարելի ըլլայ պէտք եղած դաստիարակութիւնը տալ անոր, եւ պատուաւոր կերպով պահել իր տունը. մէկուն չդիմեց, իր սիրտը մէկուն չբացաւ, բոլոր ոյժը ժողվեց ու կար կարող եղաւ։

Կար կը կարէր, նուրբ կարեր, առտուընէ մինչեւ իրիկուն, գիշերներն ալ աշխատելով՝ հազիւ ութը ղրուշ օրական կը շահէր։

Օրթագիւղ՝ խեղճ թաղի մը մէջ կը բնակէին։ Տղան Կեդրոնական Վարժարանը ընդունուած էր ձրի. ութսուն ղրուշ շոգենաւի եւ ցորեկուան ուտելիքի ծախք կը վճարէր. մնացած գումարով կը հոգացուէին իրենց ուտեստի, հագուստի բոլոր պէտքերը։ Երբեմն ալ շաբաթներով գործ չէր գտնուեր. այն ատեն էրիկ մարդու շապիկներ կ'արդկէր, եւ այսպէս խեղճուկրակ կ'ապրէին եօթը տարիէ ի վեր։

Իր չքաւորութեան եւ տառապանքներուն գաղտնիքը մէկը չէր գիտեր սակայն. դպրոցին մէջ կոկիկ հագուած մաքուր տղայ մըն էր Վահրամ, միշտ փայլուն կօշիկներով, նոր գուլպաներով, ու աղքատ տղոց չափահաս արթնութեամբը զգալով թէ ինչ կ'արժէին անոնք իր մօրը. կը դողար որ մելանի արատ մը, կամ ցեխի փոր մը չցատքէ

վրան։ Փոխադարձաբար մայրն ալ՝ տեսնելով տղուն իր վրայ-գլխուն համար ունեցած խնամքը՝ կը մաչէր որ չէր կրնար ձեռք մը աղուոր զգեստ չինել տալ անոր։ Ու՝ մէկուն չկրնալով վստահիլ իր անձկութիւնները, որոնք ա՛լ չսեղմելով սիրտին մէջ, դուրս կը պոռթկային՝ իր ասեղին հետ կը խօսէր, այդ պզտիկ գործունեայ ասեղին, որուն կը պարտէր ամէն բան, զոր բարեկամի մը պէս կը սիրէր, եւ որ կը բզկտէր, կ՚արիւնոտէր իր մատուըները՝ յուզմունքի]վայրկեաններուն մէջ, կարծես ֆիզիքական ցաւով մոռցնել ուզելով անոր ներքին ցաւը, կսկիծը՝ իր անգործադրելի մնացած բաղձանքներուն։ Խեղճ կնոջ հաստատ մտածումն էր աւելի դրամ շահիլ։

Ի՛նչ փափաքներ ունէր Վահրամին համար. բայց՝ ո՛րչափ ալ աշխատասէր՝ բան մը չէր կրնար աւելցընել. ի՞նչ ընէր, ի՞նչ ընէր...։

— Եթէ մեքենայ մը ունենայի՜... գոչեց յանկարծ՝ բարձր ձայնով ինքն իր հարցումներուն պատասխանելով։

Վահրամ աչքերը վեր առաւ, մօրը նայեցաւ, յետոյ նորէն գլուխը կախեց անխօսուկ։ Եթէ մեքենայ մը ունենա՛ր, անշուշտ այդքան չէին տկարանար եւ մատները չէին ծակծկեր։ Ի՞նչ ընէր մօրը մեքենայ մը գտնելու համար...։

*

* *

Երկար ատենէ ի վեր բոլորովին փոխուած էր Վահրամ. ա՛լ առջի մաքրասէր խնամոտ տղան չէր։ Առտուըները լուացուածին պէս փողոց կ՚ելնար. եւ իրիկունները, մութը կոխելէն առաջ,

*դռնէն ներս չէր մտներ։ Ամառը փոշիներու մէջ թաթխուած, յոգնած, քրտնած՝ ձմեռը մինչեւ կէս մէջքը ցեխերու մէջ փաթթուած, ձեռքերը ոտքերը ցուրտէն սառած, կօշիկները ջուրերու մէջ՝ տուն կուգար։ Ա՛լ գիշերները կանաչ սեղանին առջեւ չէր նստիր իրեն հետ, ու կերակուրին՝ քունը աչքէն կը վազէր։ Շատ անգամ, եկածին պէս, անկողինին վրայ կ'իյնար՝ առանց բերանը պատառ մը բան դնելու։ Խեղճ մօրը սիրտը փորը կը հատնէր. ո՞ւր կ'երթար այնչափ կանուխ, եւ ի՞նչու ուշ կը դառնար։ Ի զո՜ւր կը ջանար տղան հարցուփորձ ընել, միշտ անորոշ պատասխաններ կ'ստանար. — Դպրոցին ժամանակացոյցը փոխուեցաւ. — Ի՞նչ ընեմ, մա՛մա, շոգենաւին չեմ հասնիր կոր։*

*Մայրը կը հասկնար որ տխուր բան մը մտած էր իր տղուն կեանքին մէջ, զոր յամառաբար իրմէ կը ծածկէր։ Առաջները յուսաց որ մանկական հաճոյք մըն է, կ'անցնի. բայց վեց ամիսէ ի վեր կը շարունակէր այս կեանքի անկանոն ընթացքը՝ առանց իր աղաչանքներուն զիջում մը, իրեն համար մէկ օր մը բացառութիւն ընելու. եւ իր տղուն զգալապէս տկարանալը նշմարելով՝ արդէն իսկ յանդիմանութիւններ կ'ուղղէր անոր։ Յետոյ կը զղջար. վասն զի միշտ առջի խանդակաթ, զգայուն զաւակն էր Վահրամ, միեւնոյն հոգածութիւնները, միեւնոյն անուշ սիրտը ունէր իրեն համար, եւ զայն վիրաւորել չէր ուզեր ամենեւին, բայց կրնա՞ր անտարբեր մնալ անոր ապրելու կերպին։*

*Անգամ մը որ խստիւ կը հարցաքննէր զայն նո-*

քէն, տղան սկսաւ լալ։ Ուրիշ անգամ մը վերջապէս բերնէն փախցուց թէ Կաղանդին ամէն բան պիտի կիմանար։

Այն ատեն որոշեց որ սպասէ. գիտէր իր տղուն հաստատամիտ բնաւորութիւնը, ճիշդ հայրն էր։ Տարեգլխուն քանի մը օր միայն մնացեր էր, եւ այդ օրերուն մէջ ամէնէն աւելի մտատանջութիւններ կրեց. իրա՞ւ բան մը կար ուրեմն։

*
* *

Սակայն, եթէ օր մը անոր ետեւէն երթար Տիկին Աննիկ, պիտի տեսնէր որ, փոխանակ Օրթագիւղի չոգենաւը մտնելու, ցամաքի ճամբան կը բռնէր Վահրամ, եւ ոտքո՛վ կ'երթար մինչեւ Կեդրոնական Վարժարան, այդ աւելորդ ծախքը խնայելու համար։ Ձիւնին բուքին կը քալէր ու կը քալէր՝ ձեռքերը վերարկուին գրպաններուն խորը՝ դէմքը կիսովի օձիքին մէջ պահած՝ մերթ ընդ մերթ կանգ առնելով ճամբուն եզերքը, շունչ առնելու համար, նորէն կը շարունակէր իր տաժանելի ուղեւորութիւնը՝ սառոյցի կտորուանքէն վար սահելով իյնալով շատ անգամ, երբ իր ոտքերը ա՛լ չէին բռներ։

Երբեմն բուքը ա՛յնքան թանձր ու սաստիկ կ'ըլլար որ կոխած տեղը չէր տեսներ։ Այն պահուն կը փորձուէր անկէ անցնող թրամվայի մը մէջ նետուիլ, բայց հզօր խորհուրդ մը այդ տկար տղան կը կեցնէր։ Ի՞նչ էր այդ գաղտնիքը՝ մարդ չէր գիտեր. բայց գերազանց բան մը ըլլալու էր. վասնզի անոր ուժովը այդ պզտիկ տղան մեծ բնութեան հետ կը մաքառէր։

*Միեւնոյն բանն էր ցորեկուան ճաշի առեն. ալ ո՛չ մրգավաճառին, ո՛չ նպարավաճառին խանութէն ներս կը մտնէր՝ իր տասը փարանոց հացին հետ քիչ մը ընկոյզ կամ պանիր գնելու համար։ Կը նայէր կարմրուկ փայլուն խնձորներուն, կլորիկ սերկեւիլներուն, եւ՝ իր մանկական, առողջ ախորժակին մէջ՝ բերնին թուքերը կուլ տալով կը հեռանար մինակ՝ անկիւն մը, իր ցամաք հացի կտորը կրծելու։*

*Կաղանդին առտուն կանուխ, երբ Տիկին Աննիկ անկողինէն ելաւ, Վահրամ կը քնանար տակաւին, սուտ քուն եղած ապահովապէս։ Գորովալից մայրը՝ ոտքին մատներուն վրայ կոխելով՝ կամաց կամաց քովի սենեակը անցաւ իր սովորական ժողվըտուքը ընելու, ուր կանաչ ծածկոցով սեղանին վրայ կը կենային ուղղի իրիկուընէ մնացած պտուղներուն աւելցուքները՝ պզտիկ պզտիկ պնակներու մէջ։ Ցանկարծ բան մը զարկաւ աչքին, սեղանին մէջտեղը դրուած կարի մեքենայ մըն էր նոր նոր, փայլուն ընկուզենիէ կափարիչով. վրան ալ թուղթ մը փակցուցեր էին։ Մօտէն նայեցաւ. իր տղուն գիրն էր, ու կարդաց*

Նուէր Կաղանդի՝ Մամային համար։

*Միեւնոյն վայրկեանին, կամացուկ մը սենեակին դուռը բացուեցաւ, ու եկաւ իր թեւերուն մէջ ինկաւ Վահրամ. «Մի՛ սրդողիր, մա՛մա, կ՚ըսէր, չոգենաւի համար տուած դրամովդ առի. անո՛ր համար իրիկունները ուշ կը մնայի...»։ Ու համբոյրներով կը ծածկէր իր մայրը, սրբելով անոր արցունքները որոնք այտերէն ի վար կը վազէին։*

* * *

# Յ. ԿՈՅՐԸ

(Գիւղական յիշատակներ)

*Խիտ կանաչներով պատած բուներէն վեր բարձրացող ծառերուն հսկայ ճիւղերը կը տատանէին մութին մէջ՝ երերուն ստուերներ յօրինելով։ Ամառնային ծաղիկներու կծու ու ծանր հոտ մը կը տարածուէր հանդարտ օդին մէջ՝ գինովցնող բուրումներով։ Սեւ լռութեան մէջ մեքենաբար կը լսուէր միջատի մը բզզիւնը որ երբեմն կը մոռցուէր նոյն իսկ իր միօրինակութեանը մէջ։ Եւ հեռուէն շունի մը ձայնը կուգար, որ խեղճուկ, հիւանդ հաչիւնով մը կուլար։*

*Վայրկեանները կ'անցնէին ծանր ծանր, եւ տեսնել կը կարծէիր ամպերուն թաւալիլը որոնց գիծերը ջնջուած էին սեփ սեւ երկինքին վրայ։ Յանկարծ, երբ շանը հաչիւնը կը մարէր յուսահատ ճիչերու մէջ՝ երգի մը եղանակը թրթռաց, որ հետզհետէ կը մօտենար։ Ձայնը հիանալի էր. առանց ճիգի, եղանակը կը հոսէր, դողդղալով, անուշ եւլեւէջներով։ Մէկէն կը բարձրանար, դիւթիչ, ուժեղ, եւ ահա կ'իջնէր նորէն, կը մարէր՝ իբր թէ ճնշուած կուրծքէ մը կ'ելլէր։*

*Կամաց կամաց, երգին եւ գիշերուան ազդեցութեանը տակ գինով՝ կը թուէր ինծի որ աներեւոյթ պարիկներ էին որ օդին մէջ կ'երգէին,*

մինչ ձայնին երազուն անուշութիւնը կարծես կը հաստատէր պատրանքս։

Քիչ մը ետքը՝ ձայնը դադրեցաւ, եւ մօտակայ մարգերուն մէջէն դանդաղ խշրտուք մը լսուեցաւ։

Ամէնքս ալ, լուռ, անշարժ՝ ընկողմանած էինք խոտերուն վրայ, միտքերնիս տարբեր մտածումներու մէջ թափառուն։

Հիմա կը հասկնայի որ այն ծառերուն ներքեւ մարդկային կուրծք կը կ'ուռէր յուզումներով։

Մութի ծալքերով եւ անհամար ստուերներով շրջանակուած՝ անկարելի էր տեսնել քայլ մը անդին, բայց արդէն թեթեւ ոտնաձայն մը մեզի կը մօտենար։

Զվախցանք. տանը վարձուորներէն մէկը ըլլալու էր՝ պարտէզին մէջ մնացած. բայց նոյն վայրկեանին իսկ երեսիս շունչ մը զգացի, եւ ծանօթ ձայն մը կ'ըսէր ինծի։

— Կ'աղաչեմ, ո՞ւր եմ։

Անմիջապէս հասկցայ. կոյրն էր։

Դեռատի աղջիկ մըն էր՝ սիրուն, խարտեաշ՝ որ հօրը հետ միասին կ'ապրէր մեր տանը մէկ սենեակը. կոյր էր, բայց գոց աչքերը պատճառ մը եղած չէին աւրելու դէմքին ամբողջ հրապոյրը, ցաւոտ հրապոյր մը։ Քովս նստաւ եղեամէն թրջուած խոտերուն վրայ։

— Դո՞ւն էիր երգողը, ըսի կամաց ձայնով մը, իբր թէ վախնայի խանգարել շուրջս ծանրացող լռութիւնը։

— Այո՛, ըսաւ, եւ պահ մը ետքը աւելցուց. օ՜հ, խենթեցե՞ր էի այս գիշեր, յիշատակներէս

*չարչարուած՝ պարտէզ փախայ, եւ՝ մոռնալով ամէն բան՝ երգեցի, — հիմա չեմ գիտեր ո՞ւր եմ, խարխափելով հասայ հոս։*

*Միշտ հետաքրքիր եղած էի գիտնալ խեղճ աղջըկան անցեալը. առիթը չուզեցի փախցնել, եւ հարցուցի.*

*— Ի՞նչ յիշատակներէ յուզուած էիք։*

*— Վա՜ղը, ըսաւ ծանր ծանր, եղբօրս մահուան տարեդարձն է։*

*— Եղբօ՞րդ...։*

*— Ա՛խ, հիմա մի՛ հարցներ, պատասխանեց, վաղն առտու կը պատմեմ քեզի։*

*Գիշերը բաւական յառաջացեր էր, տուն դարձանք։ — Անհանգիստ անցուցի մնացած ժամերը. եւ դեռ բոլորովին չէր լուսցեր, երբ ելայ։ Կողմնակի պատուհանէ մը կը տեսնուէր ընդարձակ դաշտ մը որ կը վերջանար լեռներու շարքով մը։ Հեռուն, միայնակ չոճի մը իր հաստ ճիւղերը կը տարածէր։ Դեռ գիւղը կը քնանար։ Հեռուէն բոժոժներու հնչուն ձայն մը կուգար. գիւղացիներ էին որոնք ձիերու վրայ ամաններով կաթ բերած՝ կանուխէն մօտակայ տեղերը կը տանէին։ Քիչ մը ետքը, աքաղաղները խօսիլ սկսան, անոնց խառնուեցան ոչխարներուն մայիւնը եւ հորթերուն բառաչիւնը։*

*Վարը, տան տիրուհին արթնցած էր արդէն եւ կովու մը ետեւէն կ'երթար՝ խթանով մը զայն դիմացի դաշտը քշելով։ Վար իջայ, տասը վայրկեանէն ամբողջ գիւղը արթնցած էր։ Հոսկէ մարդ մը կ'երթար՝ մշակի գործիքները ուսերուն վրայ ա-*

ուած, հոնկէ աղջիկ մը կ'երեւար որ կաթ կը բերէր։

Լեռներու երկու ծայրերուն մէջտեղը խտացած գորշագոյն ամպերը հետզհետէ կը ճերմկնային, կը վարդագունէին. հորիզոնին վրայ ցրուած բոլոր ամպի պատառները դէպ ի հոն կը վազէին։ Հինգ վայրկեան ետքը, թեւ թեւի կը քալէինք թարմ խոտերուն վրայ։

Հօտերը արածելու կը հանէին, ոչխարներուն մէջէն կ'երթայինք ծծելով մաքուր օդը, որուն մէջ վայրի ծաղիկներուն հոտը խառնուած մեղրի համ ունէր։

Եղեամէն թրջուած խոտերը մեր ոտքերուն տակ ճնշուելով՝ իրենց ներքեւ պահուած մանուշակներուն հոտը օդին մէջ կը տարածուէր։

Եկեղեցիին զանգակը տարտամօրէն կը ղօղանջէր, հեռուն այծերը խենթի պէս կը ցատկռտէին թաւուտներուն մէջ։

Ծառի մը տակ նստանք, եւ մինչդեռ աչքս մեր առջեւ փռուող Մարմարային կապոյտին մէջ կը մոլորէր, կոյրն ինծի իր պատմութիւնը պատմեց։

Այն ատեն իմացայ որ քանի մը տարի առաջ եղբօրը հետ երջանիկ կ'ապրի եղեր, երբ ծաղկախտի համաճարակի մը միջոցին՝ եղբայրը կը վարակուի։ Զինքը հեռու կը պահեն եղբօրմէն, եւ հայրը մինակ կը հսկէր զաւկին վրայ։ Մայրը մեռած էր արդէն։

Իրիկուն մը, չդիմանալով, հակառակ արգելքին, կամաց կամաց եղբօրը սենեակը կ'իջնէ, հազար վարանումներով, ու վախերով, չէ՛ թէ իր անձին համար, այլ այն ահռելի անակնկալին՝ զոր

պիտի ունենար սենեակին անկիւնը եղբայրը պառկած տեսնելով։

Կը յաջողի եղբօրը սենեակը սպրդիլ, մինչդեռ հայրը՝ յոգնած՝ քնանալու գացեր էր։

Այդ գիշերը, առտուան դէմ, հիւանդին վիճակը կը գէշնայ, հոգեվարքը կ'սկսի, եւ ա՛լ չեն կրնար զինք անկէ բաժնել։

Քոյր եւ եղբայր, իրարու հետ կը խօսին, գըլուխ գլխի, արցունքներով։

Մեռնելու մօտիկ, եղբայրը կը խնդրէ քրոջմէն որ երգէ։ Աղջիկը աղուոր ձայն ունէր։

Արցունքներէն խղդուած, խեղճը իր եղանակներուն է՛ն անուշը, է՛ն տխուրը կ'երգէ։

Դեռ երգը չաւարտած՝ եղբայրը կը մեռնի։

Հետեւեալ օր ինք ալ հիւանդ էր։ Ծաղկախտը իրեն համար աւելի անգութ եղաւ. կեանքը չառաւ, բայց աչքին լոյսը յաւէտ ցամքեցուց։

Երբ այս պատմութիւնն աւարտեց, գլուխն ուսիս դրաւ թեթեւօրէն եւ սկսաւ հեծկլտալ. ո՜հ, ի՜նչ տխուր են առանց արցունքի հեծկլտանքները...։

Յետոյ շտկուեցաւ ու նորէն սկսաւ երգել իր երգը, այն երգը որ առջի գիշերն ալ երգած էր։

Հիմա երգը աւելի տխուր կուգար ինծի, աւելի ցաւոտ։

Ու երգին եղանակն ա՛յնքան անուշ, ա՛յնքան յուզիչ էր որ խօսուն ցաւ մը, ներդաշնակուած հառաչ մը կը թուէր ինծի։

ԶԱՊԷԼ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

# 4. ԶԱՐԴ

Անիկա գեղեցիկ ու սիրուն օրիորդ մ'էր որ ճակատագիրին վրիպումովը, կարծես, ծնած էր բարձր դասակարգէ ընտանիքի մը մէջ։ Զունէր ո՛չ օժիտ, ո՛չ յոյս, բնա՛ւ միջոց՝ որով կարողանար ինքզինքը փայլեցնել, սիրելի ընել, եւ վերջը՝ հարուստ ու պատուաւոր մարդու մը կին ըլլալ։ Հարկ եղաւ, ուրեմն, կարգուիլ գործակատարի մը հետ, որ փոքր պաշտօնով կը ծառայէր Կրթական Նախարարութեան մէջ։

Խեղճը՝ զարդարուիլ չկարողանալուն համար՝ պարզ եւ անշուք մնաց, դժբաղդ ստորադասեալի մը պէս. ինչու որ կիները դասակարգով կամ ցեղով իրարմէ չեն տարբերիր, այլ իրենց տեսքը, շնորհքը եւ հրապոյրը զիրենք կ'ազնուացնէ. անոնց բնածին նրբութիւնը, վայելչութեան բնազդումն եւ միտքի ճկունութի՛ւնն է ահա իրենց կարգապետը՝ որով հասարակ ժողովուրդին աղջիկները կը հաւասարին մեծատուն կիներուն։

Անդադար կը վշտանար անիկա՝ զգալով որ ծնած էր ամէն փափկութիւններու ու պերճութիւններու համար. կը վշտանար տեսնելով իր բնակարանին աղքատութիւնը, պատերուն մերկութիւնը, աթոռներուն մաշած երեւոյթը, պաստառներուն տգեղութիւնը։ Այս ամէնը, որ թերեւս իր դասակա՛րգէն ուրիշ մը նշմարելու իսկ չէր, զինքը

կը տանջէր ու կը զայրացնէր։ Իր անշուք տունին ծառայող փոքր Գրըթոն սպասուհիին երեւոյթը կ'արթնցնէր իր մէջ ցաւագին վիշտեր եւ խելացնոր երազներ։ Կը մտաբերէր այն լռին նախասենեակները, արեւելեան օթոցներով ծածկուած պատերով, պղնձէ բազմաստեղնեան աշտանակներով լուսաւորուած՝ ուր երկու բարձրահասակ սենեկապաններ՝ կարճ տափատ հագած՝ լայն թիկնաթոռներու վրայ կը մրափէին ջերմաբաշխին տաքութենէն թմրած։ Կը մտաբերէր հինաւուրց մետաքսով պատած այն մեծամեծ սրահները, ազնիւ կահկարասիները, որոնց վրայ լի էին սնոտի պաճուճանքներ, եւ այն պչրող ու անուշաբոյր սրահիկները ուր մտերմագոյն բարեկամներու հետ խօսակցութիւն տեղի պիտի ունենար ժամը հինգէն սկըսեալ, ազնուական եւ բարձր դասակարգէ անձերու հետ, որոնց ուշադրութիւնն անձկալի եւ ցանկալի է ամէն կիներու։

Երբ կը նստէր ճաշելու, երեք օրուան սփռոցով ծածկուած կլոր սեղանին առջեւը՝ դէմ առ դէմ իր էրկանը՝ որ բանալով ապուրի ամանը երբ ցնծալից կը բացագանչէր՝ «Ահ, հիանալի ապուր, ասկէ ընտիր ինչ կրնայ ըլլալ…», իր միտքէն կ'անցնէին ազնիւ կերակուրներ, փայփլուն արծաթեղէններ, պատի օթոցներ որոնք լի էին նշանաւոր մարդոց պատկերներով եւ կամ նորատեսակ թռչուններով դիւթական անտառներու. միտքէն կ'անցնէին համեղ կերակուրներ՝ հիանալի սպասներու մէջ բերուած՝ եւ ականջներու տակ հծծուող փաղաքշական խօսքերը, զորս կիները՝

ափինքսի ժպիտով՝ կը լսեն, ուտելով միանգամայն կարմրախայտի կարմիր միսն եւ կամ դշխոյահաւի զիստերը։

Ջուներ ան՝ զարդարանք, գոհարեղէն, ոչինչ. մինչդեռ այնքան կը սիրէր այդ բաները։ Կ'զգար որ անոնց համար ստեղծուեր է. — ո՜րչափ կը տենչար հաճելի եւ ցանկալի ըլլալ, հրապուրիչ եւ փափաքելի երեւալ։

Ան ունէր հարուստ բարեկամուհի մը որ իր վանակից ընկերուհին եղած էր. չէր ուզեր երթալ զայն տեսնել, ինչու որ անկէ դառնալուն՝ սաստիկ կը վշտանար, օրերով կը նստէր կուլար՝ սիրտին ցաւէն եւ յուսահատութենէն։

Օր մը էրիկը ուրախ դէմքով մը տուն դարձաւ՝ ձեռքը նամակի լայն ծրար մը բռնած՝ — «Նայէ՛, ըսաւ, աս քեզի՛ համար է։»

Իսկոյն ձեռքէն յափշտակելով՝ պատռեց ծրարը, դուրս հանեց թուղթ մը որուն վրայ սա խօսքերը տպուած էին։

«Հասարակաց Կրթութեան Նախարարն եւ Տի-
«կին Գէորգ Ռամբոննօ կը խնդրեն Պարոն եւ
«Տիկին Լուազէլէն հրամել Նախարարատունը՝ ե-
«րեկոյթն անցնելու համար, Յունուար 18, Բշ.
«օրը։»

Փոխանակ ուրախանալու, ինչպէս էրիկը կը սպասէր, դժգոհութեամբ հրաւիրագիրը սեղանին վրայ նետեց՝ մրմնջելով։

— Ինչո՞ւ բերիր, ես ի՞նչ ընեմ...։

— Բայց, սիրելիս, ես կը կարծէի որ գոհ պիտի ըլլաս, բնաւ դուռնէն դուրս չես ելլեր՝ ահա գե-

ղեցիկ առիթ։ Շատ դժուարութեամբ ձեռք ձգեցի այդ հրաւէրը, դիւրին չէր, ամէն պաշտօնեայի չեն տար։ Այնտեղ բոլոր պաշտօնական անձերը պիտի տեսնես։

Տիկինը զայրացկոտ աչքերով կը նայէր անոր, եւ ի վերջոյ անհամբերութեամբ ըսաւ,

— Ի՞նչ կ՚ուզէիր որ հագնէի այդ երեկոյթին երթալու համար։

Էրիկը այդ մասին մտածած չէր։

— Հապա այն զգեստը որով թատրոն կ՚երթաս, չա՛տ աղուոր է... ըսաւ պարոնը թոթովելով, ու յանկարծ՝ ապշած, այլայլած՝ լռեց, տեսնելով որ կնիկը կուլայ։ Երկու խոշոր արցունք դանդաղ կ՚իջնէին աչքին անկիւններէն՝ դէպ ի բերնի անկիւնները։

— Ի՞նչ եղաւ քեզի, ի՞նչ եղաւ, գոչեց մարդը կակազելով։

Սակայն բուռն ճիգ մը ըրաւ, զսպելու իր վիշտը ու հանդարտ ձայնով սրբելով իր թաց այտերը։

— Ո՛չինչ, ըսաւ տիկինը, զգեստ չունիմ, հետեւաբար չեմ կրնար երթալ այդ հանդէսին, հրաւիրագիրը քու պաշտօնակիցներէդ մէկուն տուր՝ որուն կինը ինձմէ աւելի լաւ զարդարուած ըլլայ։

Էրիկը՝ վշտացած՝ յարեց.

— Ուրեմն, Մաթիլտ, ըսէ՛, քանի՞ ոսկի պէտք է վայելուչ շրջազգեստի մը համար զոր ուրիշ առիթներու մէջ ալ գործածել կարենայիր։

Քանի մը րոպէ մտածեց, միտքէն հաշիւներ ըրաւ՝ խորհելով միանգամայն այնպիսի գումար մը առաջարկել, որ խնայասէր գրագիրին կողմէ չը

մերժուի: Վերջապէս տատամսելով ըսաւ.

— Ճիշդ չեմ գիտեր, բայց կարծեմ թէ քսան ոսկիով կրնամ գործս տեսնել:

Ամուսինին գոյնը նետեց թեթեւ մը, որովհետեւ նոյն իսկ այդքան գումար մը հրացան մը գնելու համար կը հաւաքէր՝ յառաջիկայ ամառը իր մէկ քանի բարեկամներուն հետ Նանտէռի դաշտը որսորդութեան ելլելու նպատակով. արտոյտ որսալու պիտի երթային կիրակի օրերը: Բայց՝ տեղի տալով կնոջը՝

— Լա՛ւ, ես քեզի կուտա՛մ քսան ոսկի, ըսաւ, միայն թէ ջանա՛ գեղեցիկ զգեստ մը ունենալ:

Հանդէսին օրը քանի՛ կը մերձենար, Տիկին Լուազէլ տխուր, տագնապալից կ'երեւար, թէպէտ իր զգեստը արդէն պատրաստ էր: Իրիկունը էրիկը ըսաւ.

— Զարմանալի՜ բան, ի՞նչ եղաւ քեզի որ երեք օրէ ի վեր յուզուած ես:

— Կը զայրանամ, պատասխանեց տիկինը, որ գո՞հար մը, ադամանդ մը, բա՞ն մը չունիմ վրաս անցընելու, աւելի աղէկ է որ չերթամ այդ երեկոյթին:

— Բնական ծաղիկներ դիր. այս եղանակին մէջ փառաւոր բան է. տասը ֆրանքի երկու երեք հատ հիանալի վարդ կրնաս գնել:

Բայց տիկինը չհամոզուեցաւ բնաւ:

— Ո՛չ... ո՛չ... հարուստ կիներու մէջ աղքատ երեւնալէ նուաստագոյն բան չի՛ կրնար ըլլալ:

Էրիկը յանկարծ գոչեց.

— Է՜հ, խելք չե՞ս ըներ, կնիկ: Գնա՛ բարե-

կամուհիիդ՝ Տիկին Թօռէսթիէի եւ խնդրէ՛ որ քանի մը գոհարեղէն փոխ տայ քեզի, այնքա՜ն մտերիմ էս հետը, որ կրնաս ուզել ։

Կինը ուրախութեամբ գոչեց.

— Իրա՛ւ, ամենեւին միտքս եկած չէր ։

Հետեւեալ օրը իր բարեկամուհիին տունը գնաց ու պատմեց անոր իր տագնապը ։ Տիկին Թօռէսթիէ մօտեցաւ հայելիով դարանի մը, գոհարատուփը հանեց, բերաւ ու բացաւ՝ ըսելով Տիկին Լուազէլին ։

— Ընտրէ՛, սիրելիս ։

Նախ եւ առաջ աչքին զարկաւ ապարանջան մը, յետոյ մարգարիտէ մանեակ մը, յետոյ վենետիկեան խաչ մը՝ ոսկիով ու գոհարեղենով հրաշալի կերտուած ։ Կը փորձէր այդ զարդերը հայելիին դիմաց, կը վարանէր՝ չկրնալով թողուլ հեռանալ, եւ կը հարցնէր միշտ.

— Ուրիշ տեսակ չունի՞ս, ասոնցմէ զատ ։

— Ինչո՞ւ չէ, փնտռէ՛, չգիտեմ թէ որո՛ւն աւելի կը հաճիս ։

Յանկարծ տեսաւ սեւ կերպասէ տուփի մը մէջ շքեղ ադամանդէ քառամանեակ մը. սիրտը սկըսաւ բաբախել անզուսպ տենչէ ։ Ձեռքերը կը դողային զայն բռնելով. անցուց վիզին շուրջը զգեստին վրայէն ու զմայլեցաւ ինք իր անձին վրայ ։ Յետոյ, տարտամ, սիրտը դողդող՝ հարցուց.

— Կրնա՞ս ինծի փոխ տալ աս միայն ։

— Ինչո՞ւ չէ, ամենայն սիրով ։

Տիկին Լուազէլ իր բարեկամուհիին վիզը փաթթուեցաւ, պագտուեցաւ, յետոյ շուտով հեռացաւ գնաց տանելով քառամանեակը ։

Պարահանդէսին օրը հասաւ։ Տիկին Լուազէլ յաջողութեամբ փայլեցաւ. — գեղեցկագոյնն էր բոլոր կիներուն մէջ, վայելուչ, շնորհալի, ժպտալից, չէն ու զուարթ. բոլոր էրիկ մարդիկ կը նայէին, կը հարցնէին անոր անունը՝ փափաքելով հետը ծանօթանալ։ Տէրութեան պաշտօնեաները բոլորը կ'ուզէին շրջապարն անոր հետ պարել։ Նոյն իսկ Նախարարներուն ուշադրութեան առարկայ եղաւ։

Կը պարէր արբշռութեամբ, եռանդով, գինովցած, հրճուանօք՝ այլ եւս ոչինչ մտածելով բաց ի իր գեղեցկութեան տարած յաղթանակէն.— իր յաջողութեան փառքին մէջ, տեսակ մը երջանկութեան ամպով համակուած, որ առաջ կը բերէ ընդհանուր յարգանք ու զարմանք, որ ցանկութիւններ կ'արթնցնէ։ Այն կատարեալ յաղթանակը, որ ա՜յնքան քաղցր է կանացի սիրտերու։

Առտուն, ժամը չորսին մօտ ելաւ հանդէսէն։ Իր ամուսինը կէս գիշերուընէ ի վեր կը մրափէր ամայի սրահի մը մէջ՝ ուրիշ երեք պարոններու հետ, որոնց կիները զուարճութեան մէջ էին։

Էրիկը փողոց ելլելու համար բերած վերնազգեստը կնոջը ուսերուն վրայ ձգեց. — որ հասարակ պարզ հագուստ մ'էր առօրեայ գործածութեան համար, եւ որուն անչքութիւնը չէր միաբանիր պարահանդէսին զարդարուն զգեստին վայելչութեան հետ։ Կինը զգաց այդ բանը եւ ուզեց փախչիլ հեռանալ, որպէսզի չնչմարեն զինքը ուրիշ կիներ՝ որոնք կը փաթթուէին չքեղ մուշտակներու մէջ։

Լուսաշէլ կ'ուզէր կեցնել զինքը․

— Սպասէ՛․ դուրսը կը մնա, կեցի՛ր երթամ կառք բերեմ։

Բայց ան՝ անուշադիր՝ արագ քայլերով կ'իջնէր սանդուխէն։ Փողոցին մէջ կառք չգտան, սկսան փնտռել, կանչելով հեռուէն անցնող կառքերը։

Իջան դէպ ի Սէն, յուսահատ, դողդղալով՝ գտան վերջապէս գետափին վրայ գիշերաշրջիկ հին կառքերէն մէկը, որոնք մթննալէն յետոյ կը տեսնուին՝ կարծես իրենց խեղճութենէն ցորեկը երեւնալու ամչնալով։

Կառքը տարաւ զանոնք իրենց բնակարանը Մարթիր փողոցը։ Տրտում տխուր բնակարաննին մտան, կնկանը համար ամէն ինչ վերջացեր էր, իսկ էրիկը կը մտածէր որ ժամը տասնին հարկ էր նախարարատուն գտնուիլ։

Ուսերը ծածկող զգեստները հանեց, հայլիին դէմը անցաւ որպէսզի անգամ մ'ալ ինքզինքը տեսնէ իր փառքին մէջ, բայց՝ յանկարծ գոչեց։ Քառամանեակը չկար վիզին շուրջը։

Էրիկը, կէս հանուած արդէն. «Ի՞նչ եղաւ». հարցուց։

Դառնալով իր էրկանը՝ խելքը գլխէն թռած՝

— Տիկին Ֆօռէսթիէի քառամանեակը… չի կա՛յ… վրաս չէ…։»

Մարդը ոտք ելաւ վարհուրած.

— Ի՜նչպէս… ի՜նչ… կարելի՜ չէ։

Եւ սկսան փնտռել զգեստին եւ վարարկուին ծալքերուն մէջ, գրպաններուն մէջ, ամէն տեղ։ Եւ բան մը չգտան։

Էրիկը կը հարցնէր . — Ապահով գիտե՞ս որ վրադ էր՝ պարահանդէսէն ելած ատենդ ։

— Այո՛, ձեռքո՛վս դպայ նախարարական գաւիթին մէջ ։

— Եթէ փողոցին մէջ կորսնցնէիր՝ իյնալու ձայնը կրնայինք լսել ։ Կառքին մէջ ինկած ըլլալու է ։

— Այո՛, հաւանական է ։ Կառքին թիւը նայեցա՞ր . . . ։

— Ո՛չ, դու՞ն ալ չնայեցար ։

— Ո՛չ ։

Մէկ մէկու երես կը նայէին սարսափած ։ Վերջապէս Լուադէլ կրկին հագուեցաւ ։

— Երթամ, ըսաւ, ոտքով քալած ճամբաներս նորէն անցնիմ, թերեւս գտնեմ ։

Եւ ելաւ գնաց, իսկ կինը ուժաթափ՝ երեկոյթին հագած զգեստներով նստաւ աթոռի մը վրայ, քնանալու անկարող, վհատ եւ չուարած ։

Էրիկը տուն դարձաւ ժամը եօթին ։ Բան մը գտած չէր ։

Ոստիկանատունը գնաց, լրագիրներու խմբագրատունը գնաց՝ վարձատրութիւն խոստանալով . հասարակաց կառքերու ընկերութեանց դիմեց . մէկ խօսքով ամէն տեղ, ուր որ յոյս մը զինքը կը մղէր ։

Տիկին Լուադէլ ամբողջ օրը սպասեց՝ նոյն չուարած դրութեան մէջ՝ այդ ահաւոր թշուառութեան առջեւ ։

Մարդը իրիկունը տուն դարձաւ հիւծեալ եւ գունատ դէմքով . բան մը գտած չէր ։

— Հարկ է որ, ըսաւ, գրես բարեկամու-

*հիիդ թէ կոտրեր ես քաղաքամանեակին շղթան եւ ղրկած ես նորոգելու. այդ կերպով ժամանակ կը շահինք։*

*Կինը նստաւ գրեց էրկանը թելադրութեամբ։*

*Շաբաթ մը վերջը ամէն յոյս կտրած էին։ Եւ Լուազէլ հինգ տարուան չափ ծերացած՝ ըսաւ թէ պէտք էր փոխարինել այդ գոհարը։*

*Հետեւեալ օրը առին դատարկ տուփը եւ գացին ակնավաճառին, որուն անունը տուփին մէջ գրուած էր։*

*Ակնավաճառը իր տետրակները նայեցաւ եւ յայտնեց թէ ինքը չէր ծախած այդ քաղաքամանեակը, այլ միայն տուփը ծախեր էր։*

*Այն ատեն մէկ ակնավաճառէն միւս ակնավաճառին գացին՝ փնտռելով անոր նման զարդ մը, երկուքն ալ միտքի առջեւ բերելով զայն՝ վիշտով եւ տագնապով համակուած։*

*Բալէ Ռուայալի խանութներէն մէկուն մէջ գտան ադամանդէ քաղաքամանեակ մը, որ լիովին կը նմանէր միւսին, իրենց փնտռածին։ Քառասուն հազար ֆրանք կ'արժէր։ Երեսունը վեց հազար ֆրանքի պիտի զիջանէր ակնավաճառը։*

*Խնդրեցին ուրեմն ակնավաճառէն որ չվաճառէ զայն երեք օր, եւ պայման դրին որ ակնավաճառը ետ առնէ երեսունը չորս հազար ֆրանքի, եթէ մինչեւ Փետրուարի վերջը գտնուէր կորսուածը։*

*Լուազէլ իր հօրմէն ժառանգած էր տասն եւ ութը հազար ֆրանք, մնացածը փոխ առնել պէտք էր։*

Եւ սկսաւ փոխ առնել. մէկէն հազար ֆրանք, միւսէն հինգ հարիւր ֆրանք, հինգ Լուի ասկէ, հինգ Լուի անկէ։ Պարտամուրհակներ տուաւ, կործանիչ պայմանագիրներ ստորագրեց, վաշխառուներու եւ ամէն տեսակ փոխատու անձերու հետ գործ ունեցաւ, իր գոյութեան մնացած մասը, ինչպէս եւ իր ստորագրութիւնը վտանգի տակ դրաւ՝ առանց գիտնալու թէ տակէն պիտի կրնա՞ր ելլել, եւ՝ զարհուրած ապագայի տառապանքներէն՝ աղետալի տնանկութենէն, որ իր վրայ պիտի ծանրանար, բոլոր այն նիւթական զրկումներէն եւ բարոյական տանջանքներէն, որոնց հեռանկարը աչքին առջեւն էր՝ գնաց գնեց նոր մանեակը՝ դընելով վաճառականին սեղանին վրայ երեսունը վեց հազար ֆրանքը։

Երբ Տիկին Լուազէլ տարաւ մանեակը տուաւ Ֆօռէսթիէ տիկնոջ, ան դժգոհ կերպով մը ըսաւ.

— Աւելի կանուխ բերելու էիր, կրնայի ես ալ անոր պէտք ունենալ։

Սակայն տուփը չբացաւ։ Տիկին Լուազէլ վախի մէջ էր։ Եթէ յանկարծ նշմարելու ըլլար փոփոխութիւնը, ի՞նչ պիտի ըսէր, ի՞նչ պիտի մտածէր, զինքը գող չպիտի՞ կարծէր։

Տիկին Լուազէլ շուտով ճանչցաւ՝ կարօտ, չքաւոր կեանքի բոլոր արհաւիրքը։ Սակայն դիւցազնաբար ձեռք զարկաւ այդ կեանքին։

Աղախինը ճամբեցին, բնակարաննին փոխեցին, առաստաղի մը ներքեւ մանսարդ մը վարձեցին։

Տնարարութեան ծանր գործերը ինք կատարեց, եւ խոհանոցի քստմնելի աշխատութիւնները յանձն

առաւ. սպասները լուաց՝ իր վարդագոյն եղունգները մաշեցնելով եղոտ ամաններու կամ սաներու յատակներուն վրայ։ Աղտոտ կտաւեղէնները, շապիկները եւ խոհանոցի ջնջոցները օճառով կը լուար եւ ապա կը չորցնէր՝ չուանի մը վրայ կախելով. աղտերն ու աւլուքները փողոց կ'իջեցնէր ամէն առտու, եւ ջուրը վեր կը տանէր՝ ամէն յարկի վրայ շունչ առնելու համար կայնելով։ Եւ հասարակ ժողովուրդի զգեստ հագած՝ ամէն օր կ'երթար պտղավաճառին, բանջարավաճառին կամ մսավաճառին, կողովը թեւը առած՝ ծախքերը անձամբ ընելով եւ ամէն մէկ բանի համար սակարկելով, երբեմն նախատինք ալ լսելով։

Ամէն ամիս հարկ էր վճարել պարտամուրհակները, եւ ուրիշներ առնել՝ ժամանակ վաստկելու համար։

Իսկ երիկը կ'աշխատէր իրիկուընները վաճառականի մը հաշիւները մաքուրի քաշելու, եւ շատ անգամ գիշերները ընդօրինակութեամբ կ'զբաղէր էջին հինգ սու ստանալով։

Եւ այս կեանքը տասը տարի տեւեց։

Տասը տարի վերջը ամէն ինչ վճարեր էին, բոլոր վրայէ վրայ գումարուած վաշխառութեանց տոկոսները հատուցեր էին։

Տիկին Լուազէլ շատ ծերացած կ'երեւար. աղքատ բանուորի մը կնիկ դարձեր էր։ Խառն ի խուռն մազերով, անխնամ հագուած, կարմիր ձեռքերով, բարձրաձայն կը խօսէր, տախտակները կը լուար, բայց երբեմն իր էրկանը բացակայութեան միջոցին, կը նստէր պատուհանին առջեւ եւ կը

մտածէր այն անցած գացած գիշերահանդիսին վըրայ, ուր ինքը այնչափ գեղեցիկ ու շքեղ երեւցած էր։

Ի՜նչ եղած պիտի ըլլար արդեօք, եթէ այդ զարդը կորսուած չըլլար. — ո՞վ գիտէ. ինչպէս կեանքը տարօրինակ է եւ փոփոխական, ինչպէս քիչ բանով մարդս կրնայ կորսուիլ կամ ազատիլ։

* * *

Տիկին Լուազէլ, կիրակի՛ օր մը, Եղիսեան դաշտը գացած էր պտոյտ մը ընելու՝ շաբաթական աշխատութիւններէն շունչ առնելու համար. տեսաւ յանկարծ տիկին մը որ կ'զբօսնէր տղու մը հետ։

Տիկին Ֆօռէսթիէն. էր ան, միշտ առոյգ, միշտ գեղեցիկ եւ միշտ հրապուրիչ։ Տիկին Լուազէլի սիրտը յուզուեցաւ։ Խօսէ՞ր արդեօք հետը. հիմա որ պարտքերը վճարեր էր, կրնար ամէն ինչ պատմել, ինչո՞ւ չէ։

Մօտեցաւ եւ «Բարեւ, Ժան», ըսաւ։

Միւսը չճանչցաւ եւ զարմացած կը նայէր թէ ի՜նչպէս այդ հասարակ կինը իր անունը ընտանեբար կ'արտասանէ։

— Բայց... տիկին... ես ձեզ չեմ ճանչնար, կը սխալիք անշուշտ... ըսաւ թոթովելով։

— Ո՛չ, ես Մաթիլտ Լուազէլն եմ։

— Ո՜հ, իմ խեղճ Մաթիլտս, ի՜նչպէս փոխուեր ես, ձայնեց Տիկին Ֆօռէսթիէ։

— Այո՛, քեզ չտեսնելէս ի վեր շատ դժնդակ օրեր տեսայ, շատ աղքատութիւն... եւ այդ ամէնը քու պատճառովդ...։

*— Ի՛մ պատճառովս... ի՞նչպէս։*

*— Կը յիշե՞ս այն ադամանդէ քայուամանեակը զոր դուն ինծի տուեր էիր Նախարարական երեկոյթին երթալու համար։*

*— Է՛...։*

*— Զայն կորսնցուցե՛ր էի։*

*— Ի՜նչպէս, քանի որ ինծի վերադարձուցիր։*

*— Ես քեզի վերադարձուցի ուրիշ մը՝ յար եւ նման, եւ ահա տասը տարի է որ անոր դրամը կը վճարէինք. — կրնաս հասկնալ թէ այդ բանը դիւրին չէր մեզի համար, որ հարուստ չէինք...։ Ինչ որ է, հիմա վճարած ենք պարտքերնիս, եւ ես սրտանց գոհ եմ։*

*Տիկին Ֆոռէսթիէ կանգ առաւ։*

*— Ադամանդէ քայուամանեա՛կ մը գնեցիր՝ իմ տուածս փոխարինելու համար։*

*— Այո՛, չկրցա՞ր զանազանել։ Հա՛, շատ նման էին իրարու։*

*Եւ այս բառերը զրուցած ատեն՝ կը ժպտէր պարծենկոտութեամբ։*

*Տիկին Ֆոռէսթիէ սաստիկ յուզուած՝ անոր երկու ձեռուըներէն բռնելով, ըսաւ.*

*— Ո՜հ, խե՛ղճ Մաթիլտս, չէի՞ր գիտեր որ իմ քայուամանեակս կե՛ղծ էր՝ եւ շատ շատ հինգ հարիւր ֆրանք կ'արժէր...։*

ԿԻ ՏԸ ՄՕՓԱՍԱՆ

# 6. ՔՂԱՐԱ



Երէկ իրիկուն անոր սենեակն էի, հիւանդանոց գացի իրեն եւ, հակառակ ակարութեանը, ընդունեց զիս։ Կաշիէ մեծ թիկնաթոռի մը մէջ նստած էր եւ գլուխը յենարանին վրայ՝ մէկ կողմէն միւսը թաւալեց իմ ներս մտնելս լսելով ու ստիպեց ինքզինքը բարեւառուքի տեղ ժպտելու։ Ի՛նչ դէմք, ի՛նչ դէմք, Աստուած իմ, այդ մատաղ, այդ հազիւ քսան երկու տարեկան աղջկան դէմքը՝՝ բոլորովին ճերմակ, անարիւն եւ կնճռոտած ցաւագնութեան ծերութեամբը։ Շրթները սեղմ սեղմ կը դողդողէին — իբր թէ մօտ ըլլար լալու։ Ջերմը անոր բիբերը կը բանայ՝ կը բանայ — իբր թէ պակուցումով՝ մահը տեսնէր իր առջին։ Եւ թոքախտը անոր ուսերը կը նեղցնէ, կը բարակցնէ վիզը։ Վտիտ, յոգնած, սարսռալից՝ կը հառնի, կը մաշի կեցած տեղը՝ կարծես աչքիդ առջեւ։ Մայրն ալ քովիկը բան մը կը հիւսէր։ Անշշուկ անոր մօտ նստայ եւ խեղճ դերասանուհիին վիճակին վրայ տեղեկութիւն հարցուցի։

— Գիշերը չի քնանար ըսաւ, բարի կինը, ո՛չ միայն հիւանդութիւնը արգելք կ՚ըլլայ, այլ վարժուած ալ չէ կանուխ պառկելու։ Գիշերները բեմին վրայ անցուն անցընելու սովորութիւնը հիմա

*ա՛լ Թող չի տար որ կէս գիշերէն առաջ անկողին մտնէ։ Շատ ուրախ եղայ, երբ ըսի իրեն թէ այցելութեան էք եկեր։ Իր սիրական նիւթերուն վրայ կը խօսակցիք հետը եւ շատ հաճոյք կը պատճառէք։*

*Սակայն իմ բերանս խօսք չեր գար՝ անոր ըսելու։ Անչափ ընկճուած կը տեսնէի զինքը այդ կուրծքը փորող հիւանդութենէն, որ չէր ուզեր յոգնեցնել խօսեցնելով, ու կը դիտէի երկու ճըրագները որ հայելիին դիմաց կը վառէին, երբեմն ճաթռտելով ու ջերմ կաթիլ մը սահեցնելով մոմապնակին վրայ։ Անոնց լոյսերը թէ՛ հայելիին մէջ կը ցոլանային եւ թէ՛ գոց ապակիներուն մէջտեղերը՝ ուր կ՚ստանային կարմրորակ, մարմրուկ գոյն մը հրդեհի ցոլացումով։ Սենեակը մահագուշակ երեւոյթ մը առած էր։ Քլարա ձեռքը երկնցուց դէպ ի իմ կողմս։*

*— Դիմացս չէ՞ք գար նստիլ, ինչո՞ւ եւ տխրապահուըտած էք։*

*Խոյս կուտայի միշտ դիմացը նստելէն՝ երեսը ուղղակի չտեսնելու համար, այնչափ կը կսկծացընէր հոգիս։ Առջին հրեցի Թիկնաթոռս՝ ոտքերուն անիւները մեղմիկ գլորելով։ Դարձեալ ուզեց ժպտիլ ինծի, սակայն դէմքին վրայ ցաւագին կնճիռ մը եղաւ միայն։ Եւ այդ կապոյտ աչուկները, որ դժուարութեամբ կը փակուէին անգամ մը որ զանոնք կը բանար, իրենց անողորմ մահէն սարսափած նայուածքը կը յառէին վրադ՝ քեզմէ օգնութիւն մը խնդրելով յուսակտուր աղերսանքով։ Ինքզինքս բռնադատեցի խօսք բանալու*

թատրոնի՝ եւ թատերագիրներու մասին, խօսեցայ երկար ատեն, վասն զի խելացի աղջիկ մըն էր ան եւ հոգեկից արուեստագիտուհի մը, քանի մը անգամ թատերաբեմը թունդ ելած եւ լալագին նայած էր անոր։

Մերթ ընդ մերթ կարճ պատասխան մը կուտար ինծի, չատանալով մտիկ ընել ըսածներս, ինքզինքը չյոգնեցնելու համար։ Ես խօսած ատենս միանգամայն կը խորհէի — արդեօք սիրա՞ծ էր ան, հաւանօրէն ոչ. չեմ գիտեր՝ ինչ տեսակ բան մը կար իր վրայ, որ գուշակել կուտար թէ ան սիրած չէր, անփորձ աղջկան մը կերպը ունէր ան, եւ հակառակ իր արհեստին պճնասիրութեանը՝ շատ պարզ կը հագուէր, Գերմանացի աղջիկներուն պէս թոյլ, կուսական ոճով օձիք մը՝ որուն բոլորտիքը արիւնակաթ բուստէ մանեակ մը կար, եւ թեւն ալ ուրիշ մէկ երկու աննշան զարդեր։

Այդ գաղափարը թէ երբեք սիրած չէր ան, աւելի գթալի կը ներկայացնէր անոր ճակատագիրը։ Վասն զի միշտ կը մեղքնանք այն դժբաղդները որ աշխարհէն կանուխ կ'երթան, առանց այդ աղետալի կիրքէն փոթորկատանջ ըլլալու։ «Ան չապրեցաւ» կ'ըսենք, եւ իրօք ալ սիրելն է ապրիլը։ Մահը զանի ամբողջութեամբ իրեն կը պահէր եւ արդէն դրած էր ցուրտ ձեռքը անոր կուրծքին վրայ։

Սաստիկ հով մը զայն ցնցեց եւ այտերը վարդագունեցան։ Ծրագները դողդղացեր էին եւ մայրը հասած՝ անոր փարած էր։ Կլարա թաշկինակը բերնին տարաւ եւ կարմիր նշան մը ձգեց հոն։

Խե՛ղճ աղջիկ, ահա կը հատնի՛, կը մեռնի՛ — ո՞վ պիտի լայ անոր վրայ։ Երբ բեմը կ'ելլէր, կըրնար բազմաթիւ հանդիսականներու աչքերէն արցունք քամել, բայց մահը միայն իր մօրը արցունքները վազցնել պիտի տայ։



# ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿԸ

Երես

Երես

Երես





